# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ

## ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՈՅ

Ի

Մ. ՎԱՐԴԱՊԵՏԷ ՄՈՒՐԱՏԵԱՆՑ

ՅԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՈՒԽՏԷ ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ

---

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ

Տ. Տ. ԳԷՈՐԳԱՅ

ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

ՀՐԱՄԱՆԱՒ

ՊԱՏՐԻԱՐՔԻ ՍՐԲՈՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

Տ. ԵՍԱՅԵԱՅ

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Կ. ՊՈԼՍՈՅ

Տ. ՄԿՐՏՉԻ

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

---

ԵՐՈՒՍԱՂԷՄ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ

1872

THE UNIVERSITY OF MICHIGAN LIBRARIES

Muratean(t)z Melkisedek
Patm...

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ
## ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑՒՈՅ

Ի

Մ· ՎԱՐԴԱՊԵՏԷ ՄՈՒՐԱՏԵԱՆՑ
ՅԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՈՒԽՏԷ ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ

---

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ Ս· ԷՋՄԻԱԾՆԻ
Տ· Տ· ԳԷՈՐԳԱՅ
ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

ՀՐԱՄԱՆԱՒ
ՊԱՏՐԻԱՐՔԻ ՍՐԲՈՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ
Տ· ԵՍԱՅԵԱՅ
ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Կ. ՊՕԼՍՈՅ
Տ· ՄԿՐՏՉԻ
ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՐՈՒՍԱՂԷՄ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ
1872

THE UNIVERSITY OF MICHIGAN LIBRARIES
Digitized by Google

GRAD
EREN
325
11 01-98

# Ի ՅԻՇԱՏԱԿ

ՀՈԳՒՈՅ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ԾՆՈՂԱՑ ԻՒՐՈՑ

ԵՐԱՄԱՑ ԵՒ ՀՌԻՓՍԻՄԵԱՅ

ԵՒ ՀՕՐԵՂԲՕՐ ԻՒՐՈՅ

ԿԱՐԱՊԵՏԻ

ՏՊԱԳՐԵՑԱՒ ՄԱՏԵԱՆՍ

ԱՐԴԵԱՄԲՔ

ԲԱՐԵՊԱՇՏ ՄԱՀՏԵՍԻ ԿԻՐԱԿՈՍԻ

ՔԱՐՈՒԿԵԱՆՑ ԲԻՆԿԵԱՆՑԻՈՑ

ՅՕԳՈՒՏ ԵՒ Ի ՊԱՅԾԱՌՈՒԹԻՒՆ

ԺԱՌԱՆԳԱՒՈՐԱՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ

ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ

Digitized by Google

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Այլ մեք մխիթարեսցուք․ քանզի եթող մեզ շնորհք գթութեանն Քրիստոսի զսուրբ Եկեղեցին Հայաստանեայց, զաւակ կենդանութեան և սերմն ազնուական աճման որդութեան, զկոյսն միշտ, զշառաւեղեալն յանախտ արմատոյն և զպատկերեալն ՚ի նմին իսկ ՚ի Փրկչէն ։*

Միխայէլ Ասորի․ Ի ճառին Քահանայութեան ։

ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ *առաքելական սուրբ Եկեղեցւոյ պատմական կեանքն, որ, իւր նախնականութեամբ և բազմադարեան արիական նահատակութեամբ, մեծ և նշանաւոր տեղ կը գրաւէ համօր Քրիստոնէութեան մէջ, խիստ սակաւ ուսումնասիրուած է խորազննին մտադրութեամբ ։ Հայաստանեայց Եկեղեցւոյ քրիստոնէական զինուորութեան պատմութիւնն, որ իւրաքանչիւր Հայ զաւակի համար ամենակարեւոր ուսումն պիտի լինէր, տակաւին և ո՛չ ուսանելեաց կար-*

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Այլ մեք մխիթարեսցուք. քանզի եթող մեզ շնորհք գթութեանն Քրիստոսի զսուրբ Եկեղեցին Հայաստանեայց, զաւակ կենդանութեան և սրբոյ աղաւնական աճման սրբութեան, զկոյսն միշտ, զշառաւեղեալն յանախտ արգանդոյն և զպատկերեալն 'ի նմին իսկ 'ի Փրկչէն:*

Միխայէլ Ասորի. 'Ի ճառին Քահանայութեան:

ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ *առաքելական սուրբ Եկեղեցւոյ պատմական կեանքն, որ, իւր նախնականութեամբ և բազմադարեան արիական նահատակութեամբ, մեծ և նշանաւոր տեղ կը գրաւէ հանուր Քրիստոնէութեան մէջ, խիստ սակաւ ուսումնասիրուած է խորազնին մտադրութեամբ: Հայաստանեայց Եկեղեցւոյ քրիստոնէական զինուորութեան պատմութիւնն, որ իւրաքանչիւր Հայ զաւակի համար ամենակարեւոր ուսումն պիտի լինէր, տակաւին և ոչ ուսանելեաց կար-*

Digitized by Google

գըն անցած է Ազգային Դպրոցաց մէջ։ Այս տխուր անտարբերութիւնն վաղուց արդէն գրաւած էր մեր ուշադրութիւնն, ուստի, երբ 1867ին վիճակեցաւ մեզ, Ս. Աթոռոյս Ժառանգաւորաց Վարժարանի մէջ, կրօնական ուսմանց դասախօսութեան պաշտօն վարել, անհրաժեշտ պարտք համարեցինք, թէ՛ ՚ի սէր մայրենի Եկեղեցւոյն և թէ՛ ՚ի սէր Ժառանգաւորաց Սանուց, Հին և Նոր Կտակարանաց պատմութիւնն ուսուցանելէն զկնի, մի կողմէն դաս առ դաս աշխատասիրել սոյն եկեղեցական պատմութիւնն և միւս կողմէն աւանդել աշակերտելոց։ Այն աշխատասիրութիւնն է ահա՛, զոր այսօր, սատարութեամբ բարեպաշտ Մահտեսի Միրակոսի Բինկեանցւոյ, կը հրատարակեմք յօգուտ Ազգային Դպրոցաց և ՚ի վայելս համօրէն զաւակաց Հայաստանեայց Եկեղեցւոյ։ Կը խոստովանիմք արդարեւ՝ որ մեծ գործ չէ մեր աշխատասիրութիւնն, և ոչ ամենայն մասամբ անթերի, սակայն կը խոստովանիմք ընդ նմին, որ կարեւոր է անպայման և օգտակար ամեն չափու և հասակի։

Խորագնին ընթերցողք պիտի նշմարեն անշուշտ, որ, մեր ներկայ աշխատասիրութեան մէջ, եկեղեցական պատմութեան հետ անընդհատ կապով շարունակուած են նաեւ ազգային քաղաքական և մատենագրական նը-

Digitized by Google

շանաւոր անցից և վաստակոց պատմութիւնն։ Այս ընթացքն յառաջ եկած է ինքնին, ոչ թէ մեր մասնական կամքէն, այլ ազգային եկեղեցական, քաղաքական և մատենագրական կենաց սերտ կապակցութենէն։ Այս երևոյթն այնչափ տեսանելի և զգալի է մեր ազգային կենաց մէջ, որ Քրիստոնէութեան սկզբնաւորութենէն 'ի վեր, մեր Հայրենեաց և Ազգի անցքերն առաւել եկեղեցական պատմութեան տիպար կը կրեն քան թէ քաղաքական։ Հետևապէս, յուսով եմք, որ մեր աշխատասիրութիւնն պիտի կարող լինի ոչ միայն եկեղեցական, այլ և ազգային քաղաքական և գրական կենաց նկատմամբ, ըզգալի օգուտ մատակարարել ուսանողներուն, թէ և չենք ժխտեր բնաւ պատմութեան նոյն ճիւղերու առաւել ընդարձակ և առանձին աւանդութեան կարևորութիւնն։

Պիտի նշմարեն ընթերցողք, որ մեր աշխատասիրութիւնն նկարագիր մ'է Հայաստանեայց Եկեղեցւոյ կենդանի զինուորութեան. իսկ ծիսից և արարողութեանց վերաբերեալ մասն, այն է իւրաքանչիւր տօնակատարութեանց և ժամակարգութեան մէն մի մասանց նախնական սկզբնաւորութեան, հաստատութեան և գործադրութեան ժամանակագրական պատմութիւնն, մեր փափաքանաց և հետազօտութեան համեմատ, չը

յաջողեցանք լիովին աւանդել։ Ուստի, յի-
շեալ պատմական ճիւղին նկատմամբ, մեր
աշխատասիրութեան մէջ գտնուածներէն ար-
տաքոյ, ուր որ կարող լինի սոյն տեղեկու-
թիւններ հաղորդել մեզ վաւերական ժա-
մանակագրութեամբ հանդերձ, կը խոստա-
նամք սիրով և շնորհակալութեամբ ընդու-
նել և ամփոփելով ու կանոնաւորելով հրա-
տարակել, կամ առանձին և կամ մեր երկրորդ
տպագրութեան մէջ. վասն զի մեք եւս մեր
կողմէն պիտի աշխատիմք, որչափ հնար է,
սոյն կէտն առանց հետազօտութեան չը թո-
ղուլ։

Մեք արդէն, մեր սոյն գրաւոր գործը
բարեխիղճ կերպիւ կատարելու համար, ջա-
նացած եմք ամեն առ ձեռն գտնուած նախ-
նի և արդի պատմական աղբիւրներն հետա-
զօտելով օգուտ քաղել եւ կարեւորներն
քաղուածել, մերթ համառօտելով և մերթ
ընդարձակելով։ Եւ այս նկատմամբ, մեր
նախնի մատենագրութիւններէն զատ, ար-
դեան պատմական երկասիրութեանց մէջ,
յաւէտ նպաստած են մեզ Հ. Յ. Կաթըր-
ճեանի Տիեզերական, և Հ. Գ. Զ. Ազգային
Դպրութեան Պատմութիւններն, որոնք, բաց
'ի պապական խմորէն, որով դժբաղդաբար
խմորուած են մասամբ, ուսումնասիրութեան
արժանի գործքեր են իրենց տեսակին մէջ։

Հուսկ ուրեմն, կը պարտաւորիմք յայտնել, որ մեր այն աշխատասիրութիւնն գրուած է առաւել զգայուն լեզուաւ, զոր գուցէ ոմանք անպատշաճ դատին պատմագրութեան. սակայն մենք փորձով գիտած եմք, որ ուսանողաց միտքն ու սիրտն համանգամայն զարգացնելու համար, խիստ արգասաւոր ազդեցութիւն ունին պատմական ճըշմարտութիւններն, երբ զուգախառն են կենդանի զգացմանց հետ։ Մանաւանդ որ մեր գրուածոյն մէջ, ոչ թէ բռնազբօսեալ, այլ ինքնաբուղխ է այն եռանդն և յառաջ եկած է այն Նուիրական սիրոյ զգացումէն, զոր ունիմք առ Մայրն մեր Ս. Եկեղեցի, զոր 'ի մանկութենէ սիրած եմք և կը փափաքիմք 'ի բոլոր սրտէ, որ ամէնքեան սիրեն և ճանաչեն զնա՝ որպէս ՅՕԴԱԿԱՊ ԱԶԳԱՅԻՆ ՍԻՐՈՅ ԵՒ ՄԻՈՒԹԵԱՆ, որպէս ՍԵՐՄՆ ԱԶՆՈՒԱԿԱՆ ԱՃՄԱՆ ՍՐԲՈՒԹԵԱՆ և որպէս ՇՆՈՐՀՔ ԳԹՈՒԹԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ, ՊԱՏԿԵՐԵԱԼ Ի ՆՄԻՆ ԻՍԿ Ի ՓՐԿՉԷՆ։

Մ. Վ. Մ.



Վասն զի ուղղափառ Հաւատոյ քո լուսով Եկեղեցի Հայոց, ոչ նուաղեցաւ. ՚ի բարի սերմանս ցորենոյդ՝ որոմն ոչ խառնեցաւ. զաղբիւր յստակ աւանդութեանց քոց՝ աղտաղտուկ ջուր օտարոտի ուսմանց ոչ պղտորեաց. ՚ի ստուգութեան և ՚ի ճշմարտութեան հացն քո կենդանական՝ մեռելական խմոր և հերձուած քացախութեան չարութեանն ոչ զանգեցաւ. յոսկի անբիծ Հաւատոյն և յարծաթ լուսատեսիլ Բանին՝ պղինձ ժանգահոտ և կապար սեւաթոյր ոչ գտաւ:

Յովհան Եզնկայէ:




Երեքսրբեան մի տէրութիւն,
Միով բնութեամբ Աստուածութիւն։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ
## ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑՒՈՅ

---

## ՆԱԽԱԳԱՒԻԹ

### Ա.

*Վիճակ և ապականութիւն մարդկութեան. — Ծնունդ Յիսուսի Քրիստոսի. — Կեանք նորա. Վարդապետութիւն և Վերջացումն.*

ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ մարդեղութենէն առաջ մարդկութիւնը խորին խաւարի մէջ էր։ Հեթանոսութիւնը կ'առաջնորդուէր լոկ բնական լուսով, իսկ Հրէութիւնը ընդնմին և օրինական յայտնութեամբ։ Սակայն մարդկութիւնը անկարող էր ինքնին իւր համար փրկութեան ճանապարհ պատրաստել, առանց աստուածային բարութեան, գթութեան և իմաստութեան։ Այս պատճառաւ մարդկութեան վիճակը տխուր էր և թշուառ, և նոյն ինքն մարդն իւր արժանաւորութենէն ընկած և անասնոց հաւասարած։ Հրաժեշտական կարևորութիւնը, որ Մեսիայէն

մինչեւ Դանուբ և Հռենոս կը տարածուէր և իւր մեծութեամբ կը պարծէր, զեղծեալ էր ամենատեսակ ապականութեամբ և կը ծառայէր ոչ միայն իւրոց՝ այլ և իւր տիրապետեալ ազգաց ամենատեսակ մոլորութեց, այն է եգիպտական անասնապաշտութեան, քաղդէական և փիւնիկեան աստեղապաշտութեան և մոգակրօնութեան: Սուսերամարտկաց կռիւը ուրախութիւն էր դարձած ժողովրդեան: Ամեն տեղ կանգնած էին Աստղկան և այլ չաստուածոց լկտի պատկերները: Ամեն տեղ թէատրոնաց անամօթ խաղերը մարդը գրգռած էին յանբանութիւն: Յունաստան, որ իւր փիլիսոփայութեամբ կը պարծէր, և որպէս թէ բազմաստուածութիւնը կործանած էր, հանդիսարան դարձած էր բարուց ապականութեան և պղծութեան: Վասն զի, Ստոյիկեանց քարոզականը, թէպէտ և շատերը կը զարմացնէր, բայց նմանողներ ունենալու անկար էր, ըստ որում նոյն իսկ փիլիսոփայից վարքը հակառակ էր իւրեանց վարդապետութեան: Առաւել վատ էր և միւս հեթանոս ազգաց վիճակն: Իսկ Հրէից ազգը, որ աստուածպաշտութեան աւանդապահ կոչուած էր, կը ծնանէր արդարև իւր ծոցէն ճշմարիտ աստուածպաշտներ և շատ անգամ նմանողութեան օրինակ կու տար ումանց բարեբարոյ հեթանոսաց, բայց մեծաւ

Digitized by Google

մասամբ շեղած էր յուղղութենէ։ Այսին, արդարեւ, Եգիպտոսի Միրիսեան լճի մօտ բընակող Հրէայք, Թերապեւտք կոչեցեալ, որոնք իրենց անձը նուիրած էին վարուց ըղգաստութեան, կը կերակրէին հացիւ ու ջրով և կը կրթէին 'ի պահս։ Այսին Մեռեալ Ծովու եզերքը բնակող Եսսէացի Հրէայք, որոնք կը պարապէին 'ի կրթութիւն վարուց, 'ի մըշակութիւն, 'ի հովուութիւն, 'ի ձեռագործս, և հեռացած էին զոհից պաշտամունքէ։ Բայց կայսին ընդ նմին և Փարիսեցիք ու Սադուկեցիք, որոց առաջինները, առանց հոգևորի, ըսկ. արտաքին պաշտամանց էին նախանձաւորք, իւրեանց անձը կարգելով Ս. Գրոց ըսկ նշանագիրներու հետ. իսկ վերջինները կ'ուրանային անմահութիւնը, յարութեան յոյսը և ընդ նմին վարձքն և պատիժ յետ մահուան։ Այս Թողունք թուել Հրէութեան բազմադիմի փոփոխութիւնները, որ գաղթականութենէ, հեթանոսական ընտանութենէ և պերութենէ յառաջացած էին։

Այսպէս էր ահա մարդկութեան վիճակը թէ Հրէից և թէ Հեթանոսաց մէջ Քրիստոսի մարդեղութենէն առաջ — ԽԱՒԱՐ և ԱՊԱԿԱՆՈՒԹԻՒՆ։ Բայց բարոյականութեան և նորոգութեան կարօտութիւնը զգալի եղած էր. և խաւարի մէջէն փրկութեան ակնկալութիւնը կը նշմարուէր. Հրէայք կը սպասէին

շփոթութեանց և քաղաքային հարստահարութեանց ենթարկուած՝ լաւագոյն փոփոխութեան կը սպասէին և ժամանակը հասած կը համարէին, թէպէտ և շատերը երկրաւոր փառաւորութեան ակնկալութեամբ։ Հեթանոսաց մէջէն շատերը, իւրեանց ժամանակի ապականութիւնն ու մոլորութիւնն մարդկային ձեռքով ուղղուիլն անհնարին համարելով գոգցես երկնաւոր օժանդակութեան կարօտութիւն կը զգային։ Պղատոն կ՚ասէր. «Մինչև երկնքէն մէկը չիջնէ, անհնարին է որ մարդկութիւնն ուղղուի։» Վերգիլիոս եկած հասած կը համարէր այն երջանիկ դարը, որում կը փափաքէր Կումեացի Սիբիլլան։

Արդ՝ այն մխիթարութիւնք և աւետիքը, որ խոստացուած էր մարդկութեան առաջին նախահօրն և նախամօրն, այն՝ որ երկրորդուած էր Աբրահամին, Սահակին և Յակոբին, այն՝ որ Մարգարէքը յաճախ և յայտնապէս գուշակած էին, ժողովուրդը բարութեան յուսով մխիթարելու համար, ահա այն երանական և մխիթարական աւետիքը կատարուեցաւ ԾՆՆԴԵԱՄԲ ՄԵՍԻԱՅԻՆ և ՓՐԿՉԻՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ։ Աստուած ինքն յայտնուեցաւ մարդուն, որովհետև Պղատոնի ասածին պէս. «Անհնարին էր մարդուն զԱստուած գտնել, և մանաւանդ գտնելէն զինքը ամենուն ծանուցանել։»

Ո՛նաւ այն զարմանալի Մանուկը, զոր մարգարէն անուանած էր Աստուած, Հզօր, Հայր հանդերձելոյ յաւիտենին և Իշխան խաղաղութեան (1)։ Ո՛նաւ Բեթղեհեմի մըսուրին մէջ Մարիամ սուրբ Կուսէն, որ Դաւթի տունէն էր, Նազարէթ գեղջէն, խօսեցած էր Յովսեփայ հետ, և կանխաւպէս աւետիք ընդունած էր հրեշտակէն՝ Հոգւով Սրբով ծնանելու համար։ Ո՛նաւ Որդին Աստուծոյ ՚ի կնոջէ և մաւու օրինաց տակ, որ օրինաց տակ եղածները որդեգրութիւն ստանան։ Անհասանելի էր աստուածային Մանկան ծընունդը, փառք որոյ և հրեշտակները երգեցան ՚ի գոհութիւն փրկութեան, որ անհասան էր մեղաւորաց (2), և աւետարանեցին երկնքի և երկրի մէջ հաստատուած նորոգ խաղաղութիւնը և հաշտութիւնը (3)։ Հրէաստանի հովիւները և Արևելից իմաստունները եկին հասին և երկիր պագին նորածին Փրկչին (4)։ Այսպէս, Հրէայք և Հեթանոսք — բոլոր մարդկութիւնն — Աստուծոյ Որդւոյ որրանին շուրջը հրաւիրեցան և իրենց փրկութիւնն ողջագուրեցին։

Քրիստոս ամենայնիւ իւր եղբարցը նըմանելու համար՝ Թլփատուեցաւ ութերորդ

(1) Եսայ. Թ. 6.
(2) Գաղատ. Դ. 4.
— Եփես. Ա. 6.
(3) Յով. Ա. 52.
(4) Մատ. Բ. 11.
— Ղուկ. Բ. 16.

Digitized by Google

օրը և կոչուեցաւ ՅԻՍՈՒՍ (օգնութիւն Աստուծոյ)։ Արդարն և երկիւղածն Սիմէոն իւր գիրկն առաւ Մանուկն տաճարի մէջ որպէս Փրկիչ Իսրայէլի և Լոյս հեթանոսաց, յայտնելով որ նա կայ 'ի գլորումն և 'ի կանգնումն բազմաց(1)։ Մարիամ և Յովսէփ Եգիպտոս փախուցին մանուկը Հերովդէսի մոլեգնութենէն ազատելու համար, (որ իւր թագաւորութեան նախանձորդ համարելով հետամուտ էր սպաննելու և Բեթղեհէմի մանկանց հետ արդէն սպանած կը կարծէր.) և հրեշտակի ակնարկութեամբ դարձան Նազարէթ(2)։ Յիսուս, իւր 12 ամեայ հասակին մէջ, ցոլացոյց արդէն տաճարին մէջ իւր աստուածեղէն իմաստութեան ճառագայթը, որով զարմացած մնացին Դպիրները և կարծուած Իմաստունները։ Որչափ աճեցաւ հասակաւ, այնչափ առաւել շողացոյց իւր իմաստութեան, ճշմարտութեան և շնորհաց ճաճանչը(3)։

Հրէական ազգը մարգարէութեան զօրութեամբ հաւատացած էր, որ Մեսիայի գալստենէն առաջ Եղիա մարգարէն պէտք է գայ նորա արքայութիւնը պատրաստելու համար(4)։ Եւ արդարեւ՝ երեւեցաւ Եղիայանձն Յովհաննու, որոյ ծնունդն աւետ-

(1) Ղուկ. Բ. 21—38.
(2) Մատ. Բ. 19—20.
(3) Ղուկ. Բ. 40—51.
(4) Մաղ. Դ. 5—6.

ցաւ Քրիստոսի ծննդենէն առաջ։ Քրիստոսի երեւելէն առաջ կանխեց և ասպարէզ եղաւ Յովհաննէս, իւր 30 ամեայ հասակի մէջ, և Տիբերեայ կայսեր թագաւորութեան ժամանակ հրապարակաւ կ'ուսուցանէր, որպէս վարդապետ ժողովրդեան, քարոզելով ապաշխարութիւն և երկնից արքայութեան մերձենալը, ջանալով հրէական թիւր կարծիքը ուղղել, որ Քրիստոսի թագաւորութիւնը աշխարհական փառաւորութեամբ կը կարծէին։ Ինքն անապատներու մէջ կը բնակէր և խստամբեր կեանք կը վարէր. կը խոստովանէր, որ իրմէն վերի եկողն իրմէն առաջ է, և առ ինքն դիմողները կը մկրտէր ջրով։ Յիսուս ինքն ալ եկաւ մկրտուելու Յովհաննէսէն Յորդանանու մէջ։ Երկնքէն հայրական յաւիտենական բարբառը վկայեց Նորա սիրելի որդիութիւնը։ Հոգին Սուրբ ըղձոն աղաւնոյ կերպարանաւ իջաւ Նորա վերայ, և այսպէս Աստուածութեան Երրորդութիւնը յայտնուեցաւ մարդկութեան։ Յովհաննէս յայտնեց այնուհետեւ որ ինքը պէտի մեղմանայ և Յիսուս պիտի աճի (1)։ Եւ արդարև, շատ ժամանակ չանցաւ, Հերովդէս չորրորդապետը բանտը դրաւ զՅովհաննէս, յորմէ յանդիմանուած էր իւր եղբօր Փիլիպպոսի Հերովդիադա կինը յափշ-

(1) Յովհ. գ. 30.

տակելուն համար, և Հերովդիոսի նենգութեանը զիջանել տուաւ :

Յիսուս մկրտութենէն յետոյ մեկնեցաւ յանապատ տեղի, ուր եղբարց — մարդկանց — նման փորձուեցաւ 40 օր սատանայէն և յաղթեց, ցոյց տալով մարդկութեան՝ փորձանաց յաղթելու ամենամեծ օրինակ : Նոյն սկսաւ հրապարակաւ քարոզել հրէական վարդապետաց նման :

Նախ կը քարոզէր աշակերտութիւն, որպէս և Յովհաննէս, բայց յետոյ մի առ մի սկսաւ յայտնել իւր զարմանալի նշանակը : Սկսաւ քարոզել, որ ինքն եկած է օրէնքը լրուցանելու, յառաջելու, լուսաւորագոյն զարծելու և տարածելու համար (1) :

Այս ճշմարտութիւնները և պատուէրները կ՚ուսուցանէր Յիսուս Քրիստոս իւր վարդապետութեամբ .

Յիսուս Քրիստոս կ՚ուսուցանէր, որ Աստուած հոգի է. սուրբ և արդար է որ երկրպագողները հոգւով և ճշմարտութեամբ երկրպագանեն Աստուծոյ (2) : Աստուած միայն բարի է, պարտ է սիրել զնա յամենայն սրտէ, յամենայն անձնէ և յամենայն զօրութենէ (3) :

Յիսուս Քրիստոս կ՚ուսուցանէր՝ թէ Հայր Աստուած կը ճանաչէ մարդկան սիրտերը, կը հոգայ նոցա համար, կը լսէ նոցա աղօթքը, կը թողու նոցա մեղքը (4), և այնչափ կը

(1) Մատ. Ե—Է.
(2) Յով. Դ. 23—24.
(3) Մատ. ԻԲ. 36—38.
(4) Մատ. Զ. 7—14—25—34 :

սիրէ · որ իւր Միածին Որդին տուաւ նոցա փրկութեան համար (1) : Իսկ իւր անձին համար կ'ասէր · որ ինքն ճշմարիտ Որդի Աստուծոյ է · մի և փառակից ընդ Հօր (2) · և 'ի նմանէ առաքեալ յաշխարհ : Կ'ասէր · որ իւր խօսքերը` Հօր Աստուծոյ խօսքերն են, և նորա պատուէրներն են, զորս ինքն եկ կատարէ երկրիս վրայ ճշմարտութեամբ · մարդկանց օգտի և բարութեան համար : Եւ պիտի գայ միւսանգամ դատաւորելու և իւրաքանչիւրին հատուցանել ըստ գործոց (3) · Միով բանիւ կ'ասէր որ ինքն է մեր ԿԵՐԱԿՈՒՐԸ · մեր ԼՈՅՍԸ · մեր ՎԱՐԴԱՊԵՏԸ · մեր ՀՈՎԻՒԸ · մեր ՃԱՆԱՊԱՐՀԸ · ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆԸ · ԿԵԱՆՔԸ և մեր ԲԱՐԵԿԱՄԸ (4) : Իսկ Հոգւոյն Սրբոյ համար կ'ուսուցանէր` թէ Հոգի է նա ճշմարտութեան, որ աշխարհս կարող չէ առնել · բայց պիտի գայ և մնայ իւր աշակերտաց հետ · Պիտի թարգման լինի վարդապետութեան և ուսուցիչ ամենայն ճշմարտութեան · փառաւորիչ իւր փառակցին և կշտամբիչ աշխարհի (5) · և առանց օգնութեան և նորոգութեան Հոգւոյն հնար չիցէ 'ի լաւ անդր փոխիլ (6) :

Յիսուս Քրիստոս կ'ուսուցանէր մարդկային ազգին նախկին վիճակի հանգամանքը, նորա անկումն, նորա վերստին կանգնելոյ միջոցն · նորա վախճանը և պարտքը · նորա մոլորութեանց պատճառները և անմահութեան հաստատութիւնը · ասելով` թէ աշխարհս ագարակ է · որուն մէջ Աստուծոյ կամքն ցանուած է ամէն բարի · իսկ չարութեան կամքն որոմն · բայց բարին և չարն խառն պիտի աճին մինչև հունձքի ժամանակը (կատարած աշխարհի ·) և այն ժամանակ պիտի որոշուին · ցորեանն (բարին) 'ի շտեմարանս Աստուծոյ · իսկ որոմն (չարն) 'ի հնոց հրոյն (7) :

(1) Յով. Գ. 16.
(2) Յով. Ժ. 30.
(3) Յով. Ե. 19—30. — Զ. 37—40. — Ը. 40—42.
(4) Յով. Զ. 35. 36. 48. 48. 51. — Ը. 12. 35. 51. — Ժ. 11. 14. — ԺԱ. 25. — ԺԴ. 6. — ԺԵ. 13. 14.
(5) Յով. ԺԴ. 10—17. 26. — ԺԵ. 26. — ԺԶ. 7—15.
(6) Յով. Գ. 5.
(7) Մատ. ԺԳ. 24—30. 36—43.

Digitized by Google

Յիսուս Քրիստոս կ'ուսուցանէր դարձեալ՝ թէ երկնաւոր Հօր կատարելութիւնը մարդկային կատարելութեան չափն է, այսինքն աստուածային պատկերը և նմանութիւնը պէտք է կատարելագործուած լինի մարդոյ մէջ (1)։ Պարտինք անշուշտ խոնարհ և անմեղ մանկան միտք ունենալ երկնային արքայութիւնը մտնելու համար (2)։ Պարտինք մեր անձին տկարութիւնը ճանաչել, որ է հիմն ճշմարիտ մեծութեան (3)։ և իմանալ որ արդարութեան ցանկալն և փափաքիլն աւետաբեր հրեշտակ է, և անշուշտ այն փափաքն պիտի կատարուի։ Պարտինք սրտի սրբութիւն ունենալ Աստուծոյ ընտանի լինելու համար, խաղաղասիրութիւն ունենալ, որ նշանակ է Որդիութեան Աստուծոյ։ Պարտինք ընկերին ողորմել, որով Աստուծոյ գութը կը գտնենք։ Պարտինք Աստուծոյ սիրոյ համար համբերել հալածանաց, որ է գրաւական մխիթարութեան Աստուծոյ և երանութեան յերկինս (4)։

Յիսուս Քրիստոս կ'ուսուցանէր նա՝ թէ եղբայրսիրութիւնն նորա աշակերտաց կնիքն է, նորա պատուէրները ճշգրտիւ կատարելն՝ զինքն սիրելու ցոյցն է (5)։ Թշնամիներուն 'ի բոլոր սրտէ բարերարելն՝ թշնամիներէն կրած զրկանաց միակ և գեղեցիկ հատուցումն է (6)։ Եղբայրսիրութեան պատուէրն հաւասար է աստուածսիրութեան պատուէրին (7)։ Առանց ցոյցի տուած տուրքն, 'ի մարդկանէ անտես աղօթքն, զուարթ երեսօք պահքն՝ գեղեցիկ մթերք են հատուցման մեծի աւուր համար ամբարուած (8)։

Յիսուս Քրիստոս կ'ուսուցանէր՝ թէ ցանկանալու ծառատակա հայելն՝ շնութիւն է, ոխութիւնն՝ եղբայրասպանութիւն, որով սիրոյն պղծութեան աղբիւր կը լինի (9)։ Այլոց թերութիւնները խստիւ պատելն՝ մեր անձը դատապարտութեան ենթարկել է. ասել և չառնելն, լսել և գործ չը դնելն՝ մեծ

(1) Մատ. Ե. 14—16. 45. 48։
(2) Մատ. ԺԸ. 3։
(3) Մատ. Ե. 3։
(4) Մատ. Ե. 3—12։
(5) Յով. ԺԵ. 10—15. 17։
(6) Մատ. Ե. 43—44։
(7) Մատ. ԻԲ. 37—40։
(8) Մատ. Զ. 1—7. 16—21։
(9) Մատ. Ե. 28—29. —ԺԵ. 19։

Digitized by Google

յիմարութիւն է․ որպէս թէ մարդ աւազոյ հիման վրայ տուն շինած լինի (1)։ Դարձեալ թէ՝ թեթեւամտութիւնն և արծաթոյ ու կերակուրի վրայ սաստիկ հոգալն առաքինութեանց սերմունքը հեղձուցանող փուշեր են (2)։ Մեղքը՝ բուն ծառայութիւն է և գերութիւն, չարագործութիւնն՝ որդիութիւն է սատանայի․ որ իսկզբանէ մարդասպան է, սուտ է և հայր ստութեան (3)։

Յիսուս Քրիստոս կ'ուսուցանէր՝ թէ իբրեւ աշակերտ Քրիստոսի մեր կրած բոլոր վշտերը մշտնջենաւոր ուրախութեան երկունք են․ և թէ՝ աղօթքով կարող ենք ստանալ ամեն բան․ ինչ որ Նորա կամաց համեմատ կը խնդրենք և կատարեալ վստահութիւն կ'ունենանք Նորա վրայ (4)։ Քրիստոս զինքն Ճշմարիտ որթոյ կը նմանեցնէ և բարեբարոյ քրիստոնեայքը՝ պտղաբեր բարունակներու․ այնպէս որ Նորա կամքը կատարողները կ'արժանանան Նորա բարեկամութեանը, ազգականութեանը․ երկնաւոր Հօր որդիութեանը և միւս կենաց մէջ կը վայելչանան Նորա մեծափառութեամբ (5)։

Այս բարձր և փրկարար վարդապետութիւնը կ'ուսուցանէր Յիսուս Քրիստոս բանիւ և գործով, կը հաստատէր մեծամեծ նշաններով։ Այս հրաշքները կը գործէր գործակցութեամբ Հօր (6), որ աշխարհ ամենայն 'ի միտ առնու, որ նա է Մեսիայն (7)։ Յիսուսի միակ կամեցողութեամբ ջուրը իւր բնութիւնը փոխեց և գինի եղաւ Կանայի

(1) Մատ. Է. 1—5. 21. 26-27.
(2) Մատ. ԺԳ. 3—7. 19—22.
(3) Յով. Ը. 34—44.
(4) Յով. ԺԶ. 20—27.
(5) Յով. ԺԵ. 1—10. —ԺԴ. 21—23.
(6) Յով. Ժ. 38.—ԺԱ. 41. —ԺԴ. 10—12.
(7) Յով. Ե. 36—Ժ. 25.

Digitized by Google

հարսանեաց մէջ[1]։ Նորա բարութեամբ և աճեցնող օրհնութեամբ միանգամ հինգ և միւս անգամ եւթն նկանակն այնչափ բազմացան, որ 4–5000 արք կերան, յագեցան, թողունք աւել կանայքն ու մանուկները[2]։ Նորա բանիւ շատ հիւանդութիւններ բըժշկուեցան[3] և մարդասիրութեամբ շատ հոգեւոր ախտեր դարմանուեցան[4]։ Նորա ամենազօր ձայնով մահը իւր աւարը յետ տուաւ[5]։ Հողմերը և ալիքները հնազանդեցան[6]։ Չար այսերը հալածական եղան դիւահարներէն, սարսափելով և խոստովանելով՝ որ նա է Որդի Աստուծոյ[7]։ Բարձրագոյն մարգարէութբ փայլեցոյց իւր մարգարէական պաշտօնն, վասն զի քաջ գիտէր մարդկան խորհուրդները[8]։ Յայտնապէս պատմեց իւր աշակերտացն ինչ որ պիտի կրէր ինքն և ինչ որ պիտի կրէին նոքա իւր վարդապետութեան

(1) Յով. Բ. 1—11։
(2) Մատ. ԺԴ. 15—21։ —ԺԵ. 29—39։ —Մարկ. Զ. 34. 44։ —Ը. 1—9։
(3) Մատ. Դ. 23—24։ —Ը. 5—13. 2—15։ —Թ. 20—30։—ԺԲ. 10—13։ — Յով. Դ. 47—52։ — Յով. Ե. 5։ —Թ. 9.
(4) Մատ. Թ. 3—7։
(5) Մատ. Թ. 18—25։ —Ղուկ. Է. 11—17։ —Յով. ԺԱ. 11—44։ —Մատ. ԺԱ. 5։—Ը. 10—17։—Եսայ. ԼԵ. 5։
(6) Մատ. Ը. 23—27։
(7) Մատ. Ը. 28—34։ —Մարկ. Ա. 23—28։ —Ե. 1—7—Ղուկ. Թ. 38—43։
(8) Մատ. Թ. 4։ — Յով. ԺԶ. 30։

Digitized by Google

համար (1)։ Մարգարէացաւ Եկեղեցւոյ հալածանաց և տարածման անցքերուն համար (2) նոյնպէս և հրէական տէրութեան կործանման համար, Երուսաղէմի տաճարին աւերման և խառն ընդ նորին վերջին դատաստանին համար (3)։ Պատմեց նա ինչպէս իւր աշակերտաց, նոյնպէս և իւր թշնամեաց կամ հալածչաց (4) ամեն բան, ինչ որ մօտ ժամանակին մէջ պիտի կրէր (5)։

Թէպէտ և Յիսուսի Քրիստոսի վարքն ըստ ամենայնի համաձայն էր իւր վարդապետութեան, հեզ էր ինքն և խոնարհ սրտիւ, և ոչ ոք կարէր յանդիմանել զնա վասն մեղաց (6)։ Թէպէտ և տեղ չը մնաց, որ նորա երախտիքը չը փայլէր, այն ինչ ինքն գլուխ դնելու տեղ անգամ չունէր (7)։ Թէպէտ անհուն մարդասիրութեամբ մեղաւորաց հետ կընստէր և կ՚ուտէր յուղղութիւն ածելու համար (8). սակայն խստասիրտ և անողոք հրէաները չը հաւատացին, և մանա-

(1) Մատ. Ժ. 16—25։ —Յովհ. ԺԵ. 18—21։ —ԺԶ. 1—4։

(2) Մատ. ԺԴ. 31—33։ —ԻԲ. 2—10։—Ղուկ. ԺԳ. 27—30։—ԺԴ. 16—24։

(3) Մատ. ԻԴ. 1. 2. 15—36։ —Մարկ. ԺԳ։

(4) Յովհ. Բ. 19—22։

(5) Մատ. ԺԷ. 21—22։

(6) Մատ. ԺԱ. 29։ —Յովհ. Ը. 46։

(7) Մատ. Ը. 20։

(8) Մատ. Թ. 11—13։ —Ղուկ. Ե. 30—45։ —ԺԵ։

Digitized by Google

ւանդ. Փարիսեցիք խոր խոցեցան իւրեանց կեղծաւորութիւնը ստէպ ստէպ յանդիմանելուն և կշտամբելուն համար (1) ։ Ուստի շատ անգամ դարան գործեցին և 'ի վերջոյ չորեքօրեայ մեռեալ Ղազարոսն յարուցանելուն համար՝ հաստատապէս սահմանեցին սպանանել զՅիսուս (2) ։ Արդարեւ՝ Յիսուս Փարիսեցիները չէր գրգռեր բնաւ 'ի սպանութիւն, բայց և երբէք ճշմարտութիւնը խօսելէն չէր խուսափեր ։ Պասեքատօնին Երուսաղէմ չոքաւ և առաւել քան զառաջինն սկսաւ յայտնապէս խօսիլ իւր մահուան և երեքօրեայ յարութեան վրայ (3) ։ Ստուգապէս գիտէր ինչպէս իւր մահը, նոյնպէս և իւր գործոյն տեւականութիւնը և յաւիտենականութիւնը, ուստի Զատիկն ուտելու ժամանակ ցոյց տուաւ իւր անհուն սէրը և խոնարհութիւնը. ցոյց տուաւ որ ամենէն մեծը ամենուն սպասաւորն է. ցոյց տուաւ, որ թագաւորք, իշխանք, մեծամեծք, իմաստունք և օրէնսդիրք, ամենքն առհասարակ պարտք ունին ժողովրդին—իւրեանց եղբարցը—սպասաւորելու և ոչ թէ հրամայելու

(1) Մատ. Ե. 20։—ԺԲ. 24—42։—ԺԵ. 1—20։
(2) Մատ. ԺԲ. 14—15։ —Ղուկ. ԺԱ. 53. 54։ —Յով. Ժ. 32—45։ —ԺԱ. 46—56։
(3) Մատ. ԺԶ. 21—22։ —Ի. 18—19։—Մարկ. Ժ. 33. 34։—Ղուկ. ԺԸ. 31—32։

և իշխելու․ ուստի անպատում խոնարհութեամբ լուաց աշակերտաց ոտքերը յօրինակ մարդկան, հաստատեց Գոհութեան կամ Հաղորդութեան խորհուրդը, որպէս իւր յիշատակ և նշան Նոր Կտակարանի (1)․ որպէս զի մինչև ՚ի կատարած աշխարհի նոյն խորհրդով ժողովուին իւր աշակերտները և հաղորդութիւն ունենան իւր հետ հոգւով և կեանքով, ինչպէս որ առաջ ասած էր թէ՝ «Մարմին իմ ճշմարիտ կերակուր է և արիւն իմ ճշմարիտ ըմպելի (2)։»

Յիսուս Քրիստոս թէ ՚ի սկզբան իւր վարդապետութեան և թէ ՚ի կատարածին, փորձեցաւ մարմնոյ ակարութեններէն, բայց միշտ յաղթող հանդիսացաւ։ Զրախօսուեցաւ Փարիսեցիններէն, Հրէից խորհրդականներէն և նոցա դրդմամբ ամբաստանուեցաւ ժողովրդէն (ոգէտ և իւր բարերարն ու թշնամին չըճանաչող ժողովրդէն) որպէս հայհոյիչ օրինաց և որպէս մնասակար կայսեր։ Մատնուեցաւ իւր մի աշակերտէն, երիցս ուրացուեցաւ միւսէն, լքեալ մնաց մնացեալ աշակերտներէն, ոլոռն ոլոռն արտասուք թափեց անմեղն և անարատն, քա-

(1) Մատ․ ԻԶ․ 26—28։—Մարկ․ ԺԴ․ 22—24։—Ղուկ․ ԻԲ․ 7—20։—Յով․ Զ․ Ծ1—Ծ9։—ԺԳ․ 1։—Մաղաք․ Ա․ 11։—Եբր․ Է․ 9։—Ծնն․ ԺԴ․ 18։—Սաղ․ ՃԺ․ 4։

(2) Յով․ Զ․ Ծ6։



Digitized by Google

մեզ ցամաքեցոյց մարդկային անօրէնութեան դառն բաժակն, նախատանօք մեռաւ խաչի մահուամբ, և սակայն միշտ խոստովանեցաւ ճշմարտութիւնը, միշտ աղօթեց իւր հալածիչներուն համար. վասն որոյ և երբոր մարդկութիւնը անզգայացաւ և ապերախտ գըտաւ, անմռունչ բնութիւնը սարսեցաւ և շարժեցաւ, 'ի միջօրէի խաւար կալաւ պաշխարհ և հին օրինաց վարագոյրը պատառեցաւ, դժոխքը իւր աւարը դարձոյց և բերան հեթանոսի խոստովանեցաւ թէ՝ «Արդարեւ՝ այրս այս արդար էր և Որդի Աստուծոյ:»

Այսպէս կնքեց Յիսուս իւր կեանքը — արդարութեամբ, ճշմարտութեամբ, մարդասիրութեամբ, ներողութեամբ — Յովսէփ Արեմաթացիի ձեռքով թաղուեցաւ նորափոր գերեզմանի մէջ, յաղթեց մահու, և երեք օրէն յետոյ յարութիւն առնելով երևեցաւ աշակերտաց և ընդ նոսին բովանդակաշխարհի: Քաջալերեց իւր աշակերտները, Գնացէք, ասաց, յաշխարհ ամենայն, քարոզեցէք և մկրտեցէք. գնացէք և մի երկընչիք, զի ես յաղթեցի աշխարհի. զի ես ընդ ձեզ եմ մինչեւ 'ի կատարած աշխարհի: Քաջալերեց, օրհնեց և յաղթական փառքով երկինքը վերացաւ:

Digitized by Google

## Բ.

### Գալուստ Հոգւոյն Սրբոյ. — Նորոգութիւն մարդկութեան։

ՅԻՍՈՒՍ կատարեց իւր մարդասիրութեան ամենամեծ գործը. իսկ Հոգին Սուրբ պէտք է հաստատէր իւր փառակցի վարդապետած փրկարար ճշմարտութիւնները և նորոգէր մարդկութիւնը։ Հրէից Պենտեկոստէի տօնը հասած էր և հանդիսաւոր շքեղութեամբ կը տօնուէր, որպէս եօթներորդ շաբաթ Պասեքին, որպէս յիշատակ Սինէական օրէնդրատուութեան և որպէս տարեգլուխ նուիրման նորահաս պտղոց և հնձոց։ Առաքեալները և աշակերտները, Մատաթիայի ընտրութեամբ լրացուցանելով երկոտասանից թիւն, 'ի նշան երկոտասան ազգացն Իսրայէլի, Սիոն վերնատան մէջ ժողովուած՝ անհամբեր կը սպասէին։ Յանկարծ երկնային հնչիւն մի եղաւ և բոլոր տունը սաստիկ հողմով լցուեցաւ։ Իջաւ Հոգին Սուրբ ժողովելոց վերայ հրեղէն լեզուաց կերպարանաւ և իւրաքանչիւրին վերայ նստաւ։ Այս նշան էր կատարեալ յատակութեան, զօրութեան և եռանդեան, որով պիտի հաստատուէր Քրիստոնէութիւնը աշխարհիս վերայ։ Անկաւ ուրեմն նորոգութեան երկնային սեր-

Digitized by Google

մը, որով պէտք է վերածնուէր մարդկութիւնը հոգեւոր վերածնելութեամբ։ Գըտաւ մարդկութիւնը իւր նորոգ արարչագործութիւնը, ըստ գեղեցիկ բանի նախնի Հարց Եկեղեցւոյ։ Առաքեալները զօրացան աւետարանական քարոզութեան պաշտօնին մէջ։ Հաւատացելոց թիւը օր աւուր սկըսաւ բազմանալով (այն ինչ 120 էր միայն ցգալուստ Ս. Հոգւոյն)։

Յուզեցաւ և շարժեցաւ մարդկութիւնն ՚ի հիմանց, որովհետեւ աներեւոյթ, անպատրաստ և խաւարամած անդունդներուն վրայ շրջող Ս. Հոգին իջաւ սրտերուն խորքը։ Մ՛ի կողմէն սրտերը կակղեցան, բարքերը քաղցրացան և սիրով ու միաբանութեամբ կապուեցան. իսկ միւս կողմէն հալածանաց փոթորիկները սաստկացան։ Սակայն գարնանային հովերը օգտակար են երկրին քան թէ վնասակար։ Նոքա օդը կը մաքրեն, սերմերը կը սփռեն և կը պտղաբերեն։ Այսպէս եղան և Քրիստոնէութեան դէմ յուզուած հալածանաց մրրիկները։ Նոքա առաւել տարածեցին աւետարանական սերմերը և զօրացուցին ճշմարտութիւնը։ Նոյն հալածմունքները սփռեցին առաքեալները յԱրեւելս, յԱրեւմուտս, ՚ի Հարաւ և՚ի Հիւսիս, որով և Հրէութիւն ու Հեթանոսութիւն խոնարհեցան Քրիստոնէութեան

Digitized by Google

անյաղթ զօրութեան առջեւ, և փրկչի սքան-չելի խօսքը կատարուեցաւ թէ՝ «Ես յաղթեցի աշխարհի»։ Կործանեցան վաղվաղակի քրիստոնէական միաբանութիւններ — Եկեղեցիներ — և Քրիստոսի Խաչը որպէս յաղթական դրօշ փայլեցաւ Հեթանոսութեան աւերակներուն վրայ։

Այսպէս հիմնուեցաւ և մեր ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՆ, որ շատ նշանաւոր է իւր նախնականութեամբ և Արեւելից մէջ կրած հալածանքներով, ինչպէս պիտի տեսնենք իւր Պատմութենէն։



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ
# ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՈՅ

---

## ԱՌԱՋԻՆ ՇՐՋԱՆ

Քրիստոնէութեան սկզբնաւորութենէն մինչեւ նորին յաղթական տարածումն բովանդակ Հայաստանի մէջ։

**34–302**

### Ա.

*Քարոզութիւն Աւետարանին և հաստատութիւն Հայաստանեայց Եկեղեցւոյ. — Հալածանք. — Նահատակութիւնք. — Պատմական տեսութիւն այն երեքդարեան շրջանին նկատմամբ. — Առաքելական պաշտամունք Եկեղեցւոյ։*

ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԻՒՆՆ աւետարանուեցաւ Հայոց Ազգին Թադէոս և Բարդուղիմէոս առաքելոց անձնադիր քարոզութեամբ՝ Աբգարու և Սանատրուկի թագաւորութեան ժամանակ։ Այս մասին միաբարբառ կը վկայեն, ինչպէս ազգային պատմական յիշատակարանք և աւանդութիւնք, նոյնպէս և եկեղեցական ու արտաքին ժամանակագ-

Digitized by Google

րութիւնք օտարաց։ Ասորի և Հայաստանեայց Եկեղեցին կարէ բացարձակ անուանիլ Հեթանոսութեան մէջ հաստատուած ԱՌԱՋԻՆ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻ, որոյ սկզբնաւորութեան պատմութիւնը այսպէս կ'աւանդեն պատմագիրք, առնլով Եդեսիոյ դիւանական մատեաններէն, զորս կարդացած են Եւսեբիոս Կեսարացին 4դ դարուն մէջ, իսկ Խորենացին 5դին մէջ։

Քրիստոսի քարոզութեանց և հրաշագործութեանց մխիթարական աւետիքները կը պատմուին Աբգար Հայոց թագաւորին, և նա, անբուժելի հիւանդութեամբ, (բորոտութեամբ, ըստ ասորական գրոց) վարակուած լինելով՝ հրեշտակութեամբ և թըղթագրութեամբ (1) կը թախանձէ զՅիսուս, գալ իւր աթոռանիստ քաղաքն Եդեսիա, բժշկել զինքն հիւանդութենէ և նոյն քաղաքին մէջ խաղաղական կեանք վարել, հեռի հրէական ատելութենէ և հալածանքէ, որոց ենթարկուած էր Պաղեստինի մէջ։ Յիսուս կ'երանէ Աբգարու մեծահաւատ բաղձանքը, որ առանց տեսնելու կըհաւատայ, և

(1) Աբգարու և Քրիստոսի թղթագրութիւնը, որոց մասին Խորենացին ընդարձակ կը խօսի, օտարազգի հնախոյզներէն ոմանք անվաւերական համարեցին. բայց շատ նշանաւոր պատմագէտներ ևս, ինչպէս են Տիլլմոն գաղղիացի, Քաւէ անգղիացի, Վելտէ գերմանացի և այլք, նոյն թըղթոց վաւերականութիւնք արդարացուցին։

Digitized by Google

կը խոստանայ իւր Համբարձմանէն զկնի իւր աշակերտներէն մէկը անշուշտ առաքել առ Թագաւորն, նորա հիւանդութիւնը բժշկելու և երկնաւոր մխիթարութեամբ մխիթարելու համար (1)։

Շուտով կը հասնի մխիթարական ժամանակակէտը, և ահա Թադէոս կը մտնէ Եդեսիա (որ Հայոց Թագաւորութեան նոյն ժամանակեայ աթոռանիստն էր, ուր փոխադրուած էին մեհենական գրեանքն ու նախորդ աթոռակալաց դիւանները,) և իւր առաքելական քարոզութիւնը կը սկսի նոյն իսկ արքունական պալատէն։ Աբգար կը հաւատայ, կը բժշկուի իւր հիւանդութենէն և կը մկրտուի. նորա օրինակին կը հետեւին Թագաւորական գերդաստանը, իշխանական արքունիքը նախարարներով հանդերձ, և նոցա հետ միասին Եդեսիոյ բնակիչները։ Շուտով կը փակուին մեհեանները և կռատունները. աւետարանական լոյսը կը ճառագայթի սրտերուն մէջ և Քրիստոսի յաղթական դրօշին տակ կը տաղաւարին բազմութիւնք հաւատացելոց, ջրով և հոգւով մկրտուած, և հաւատով, յուսով ու սիրով միացած, որով և կը հաստատուի Հայաստա֊

(1) Աբգարու քրիստոնէական դարձին վրայ մանրապատում կերպով կը խօսին՝ Ղերուբնա Եդեսացին, Մովսէս Խորենացին, Ճառընտիրք, Լիակատար Վարք սրբոց և այլն։

նեայց Քրիստոնէական Եկեղեցին, որուն և Տեսուչ կամ Եպիսկոպոս կը կարգուի Թագաւորի խոյրարար Ադդէն, հաւանութեամբ հաւատացելոց և ձեռնադրութեամբ Թադէոս առաքելոյն :

Աբգար այս երկնաւոր այցելութեամբ զմայլած, իւր գեղեցիկ օրինակին հետեւորդ առնելու բաղձանքով կը գրէ Թղթեր քանի մի աթոռակալաց, այն է Տիբերիոսին (երկիցս) Պարթեւաց Արտաշէս և Ասորեստանի Ներսէհ Թագաւորներուն (1) : Իսկ առաքեալն Թադէոս, Եդեսիոյ բնակչաց դարձէն զկնի, կ'ուղեւորի Հայաստանի Շաւարշան կամ Արտազ գաւառը, ուր կ'իշխէր Աբգարու հօրաքեռ որդին Սանատրուկ, որպէս հրամանատար զօրաց Հայոց աշխարհին, և այն տեղ եւս քրիստոնէական լուսով լուսաւորելով զՍանատրուկ, Նորա Սանդուխտ դուստրը, նախարարներ և բաւականին ժողովուրդ, Զաքարիա անունով մէկը եպիսկոպոս կը ձեռնադրէ հաւատացելոց վրայ, և քարոզելով վերին Հայոց մէջէն կ'անցնի Աղուանք և անտի 'ի Կապադովկիա, ուր և Տեսուչ կը ձեռնադրէ իւր Թէոփիլոս աշակերտը :

Մինչդեռ Թադէոս այսպէս կը շարունակէ իւր առաքելական պաշտօնն, յան

(1) Խորենացի. Գիրք Բ. Գլ. ԼԳ:

կարծ իրերը կերպարանափոխ կը լինին ։ Աբգար իւր գրած թղթերուն տակաւին պատասխան չընդունած՝ կը վախճանի և իւր Անանէ կամ Անանուն որդին և Սանատրուկ հօրաքեռ որդին միմեանց հակառակ թագկապելով կ'ուրանան քրիստոնէութիւնը, որով և կը յուզին երկպառակութիւններ քաղաքային կենաց մէջ և հալածանքներ քրիստոնէութեան դէմ ։ Անանուն նահատակել կը տայ Ադդէ եպիսկոպոսը, որ յանձն չառնուր խոյր յօրինել այն գագաթին, որ չերկրպագէր Քրիստոսին — և ինքն յետ սակաւ ժամանակի արքայական պալատը նորոգելու միջոցին սեան տակը հոսելով կը վախճանի ։ Սանատրուկ կը տիրէ Եդեսիոյ այն երդումով, որ նորահաւատ քրիստոնէից վնաս չը հասցնէ, բայց իւր երդումն դրժելով շատերը կը տանջէ և Աբգարու գերդաստանը սրէ կ'անցընէ, բաց 'ի աղջիկներէն և Հեղինէ թագուհիէն (յորմէ շատ բարիք տեսած էր) որ երթալով իւր ծննդեան երկիրն Խառան և անտի յԵրուսաղէմ, Կղօդդիոսի ժամանակ պատահած սովի միջոցին կը դարմանէ շատ աղքատներ, և կը թաղուի հոյակապ շիրմի մէջ, ինչպէս և կը պատմէ Յովսեպոս ։

Սանատրուկին հալածանաց հրդեհը բորբոքած ժամանակ՝ Թադէոս իւր առաքելա-

կան այցելութիւնը կը շարունակէր և շատերը կ'աշակերտէր Աւետարանին, 'ի շարս որոց էին և Ոսկեանք, որք դեսպանութեամբ Հռովմէն Սանատրուկի մօտ գալով՝ կը հանդիպին Թադէոս առաքելոյն և նորա քարոզութիւնը լսելով կը հաւատան ու կը մկրտին և իւրեանց մեծի անուանն Խրիւսի (Ոսկի) լինելով՝ ամենքը միասին Ոսկեանք կ'անուանին։ Սոցա աշակերտներն են Սուքիասեանք, որ Արտաշէսի Թագաւորութեան ժամանակ Ալանաց երկրէն եկան Հայաստան Սաթենիկ տիկնոջ ազգականութեան պատճառաւ, և Արտաշատ քաղաքի մէջ յարեցան Ոսկեանց քարոզութեանը։

Քրիստոնէութեան տարածման վրայ Սանատրուկի զայրոյթն առաւել սաստկանալով՝ կը նահատակէ Շաւարշանի մէջ Թադէոս առաքեալը, իւր Սանդուխտ դուստրը, որոց առաքինական կատարմամբ շատերը կ'ընդունին Քրիստոնէութիւնը, ընդ որս էին Սամուէլ նախարար և Զարմանդուխտ տիկին։ Յետ ժամանակաց կը նահատակէ նոյնպէս Բարդուղիմէոս առաքեալը, (մորթազերծ մահուամբ Արեբանոս քաղաքի մէջ) որ Պարսկաստանի, Հնդկաստանի, Երջանիկ Արաբիոյ և Խորասանի մէջ Աւետարանը քարոզելէն վկնի՝ դարձած էր Հայաստան, և որպէս ամոլ և պաշտօնակից Թադէոսի, որ-

պէս հոգեւոր Հայր Հայաստանեայց՝ կը քարոզէր Մեծին Հայոց Գողթան գաւառի և Հերայ ու Զարեւանդի մէջ և աշակերտած էր շատերուն հետ միասին և Սանատրուկի Ոգուհի կամ Թագուհի քոյրը, որ նոյնպէս նահատակեցաւ իւր եղբօր ձեռքով։

Ինչպէս Թադէոսի և Սանդխտոյ, նոյնպէս և Բարդուղիմէոսի նահատակութիւնը առաւել բազմացոյց հաւատացելոց թիւը. վասն զի հալածանաց մէջ է քրիստոնէութեան աճումն, որպէս և ամենայն ճշմարտութեան։

Թադէոսի և Բարդուղիմէոսի Հայաստանի առաքելութեան գործակից կը համարուին Թովմաս, Յուդայ—Թադէոս և Եղիշէ (Յակոբ Տեառնեղբօրէն ձեռնադրուած), որ աւետարանական քարոզութեամբ շատերը աշակերտելով՝ նահատակեցաւ Աղուանից աշխարհին՝ Ուտի գաւառին մէջ, (70 Թուականին)։

Այսպէս ուրեմն, եթէ պատկերացնենք մեր առջեւ Հայաստանեայց Եկեղեցւոյ սկզբնաւորութեան և հաստատութեան առաջին շրջանին առաջին դարերը, կը տեսնենք ակներև, որ Քրիստոնէութիւնը Հայոց Թագաւորական արքունիքէն սկսելով փրկարար կերպիւ յեղաշրջուած է Հայաստանի երեսը, Միջագետքէն մինչեւ Աղուանք և Գողթանէն մինչեւ Կապադովկիա, եթէ ոչ համայն մա-

ղովուրդը վերածնելով դէթ աւետարանական հուրը հեթանոսութեան մէջ արկանելով։ Իսկ թէպէտ Առաքելոյ յաջորդները հալածմամբ ընդդէմ զինեցան Քրիստոնէութեան յայտնի տարածմանը, բայց Քրիստոնէութիւնը անընդհատ շարունակեց իւր զօրաւոր ազդեցութիւնը։ Քանզի ոչ հովիւք պակասեցան Հայաստանէն մինչեւ Տրդատայ և Գրիգորի ժամանակները, և ոչ նահատակք, և որչափ որ խստիւ արգիլուած էր եկեղեցական յայտնի համախմբութիւններն ու քարոզութիւնները, դարձեալ կը կարդանք պատմական յիշատակարանաց մէջ հովուական անուններ, որոց մի քանիսն արդէն յիշեցինք և մի քանիսն ևս արժան կը համարինք յառաջ բերել ժամանակագրական կարգաւ։

Զաքարիա եպիսկոպոս, աշակերտ Թադէոսի, Մեծ Հայաստանին մէջ (40–70) (1)։

Թէոփիլոս, եպիսկոպոս աշակերտ Թադէոսի, փոքր Հայաստանի կամ Կապադովկիոյ մէջ, (40–70) (2)։

Կոմսի եպիսկոպոս, Մեծ Հայաստանին մէջ. աշակերտ Բարթուղիմէոսի (67–90) (3)։

Բարսամա եպիսկոպոս Եդեսիոյ, Հայկազն (108–120) (4)։

Բաբելաս եպիսկոպոս, յաջորդ Կուսմայ, 'ի

(1) Վարք Սրբոց։
(2) Վարք Սրբոց։
(3) Օրբէլեան. Պատմ. Սիւնեաց։
(4) Վարք Սրբոց։

Digitized by Google

Պողթան և 'ի Սիւնիս (90_120)(1)։

Մելքիոր վանահայր Թանահատի վանուց 'ի Սիւնիս (150_170)(2)։

Փաղմաս եպիսկոպոս Պոնտոսի, որ մերձակայ գաւառներէն 40 եպիսկոպոս հրաւիրելով (որոց մէջ կային անշուշտ և հայ եպիսկոպոսներ) ժողով կազմեց 150 թուականին(3)։

Զոտիկոս եպիսկոպոս Կոմանայ քաղաքի Հայոց (160_190)(4)։

Աղեքսանդր եպիսկոպոս փոքր Հայաստանի կամ Կեսարիոյ (210_230)(5)։

Փիրմիլիանոս եպիսկոպոս նոյն քաղաքի (230_270)(6)։

Ակակիոս եպիսկոպոս Ամթայ կամ Տիգրանակերտի (250_280)(7)։

Մեհրուժան եպիսկոպոս մեծ Հայաստանի (250_280)(8)։

Արքեղայոս եպիսկոպոս Միջագետի Հայոց (260_280)(9)։

Լեւոնդիոս եպիսկոպոս Կեսարիոյ (272_290)։

Վլասիոս եպիսկոպոս Սեբաստիոյ Հայոց (290_315)(10)։

Պետոնդիոս եպիսկոպոս (292), յորմէ ձեռ-

(1) Օրբէլեան, Պատ. Սիւնեաց։
(2) Օրբէլ. Պատ. Սիւնեաց։
(3) Եւսեբիոս, Պատ. եկեղ։
(4) Եւսեբիոս. Պատ. եկեղ։
(5) Եւսեբիոս, Պատ. եկեղ։
(6) Եւսեբիոս. Բասէ և այլք։
(7) Վարք Սրբոց։
(8) Եւսեբիոս. Պատ. եկեղ։
(9) Փաւէ. գերբի։
(10) Վարք Սրբոց։

նադրեցաւ Գրիգոր Լուսաւորիչ (302) (1)։

Եթէ մտածենք, որ Քրիստոնէութեան առաջին երեք դարերուն մէջ, (որ մենք առաջին շրջան անուանեցինք) ոչ թէ տաճարներն, այլ տուներն, գետնափորներն, մենաւոր անապատներն և. այրերն էին ապաստանարան հաւատացելոց, ուստի իւրաքանչիւր ոք յանձն իւր եկեղեցի էր, նոյն ինքն քահանայ, մարմինք իւրաքանչիւր սուրբ սեղան և հոգիք նոցուն պատարագ ընդունելի։ Եթէ մտածենք որ նոյն ժամանակները հաւատացեալք շատ անգամ կ՚աքսորուէին անապատներ և անմարդաբնակ կղզիներ, որպէս զի իւրեանց կենաց և վարուց հետեւողներ չունենան։ Եթէ մտածենք որ նոյն ժամանակ դպրութիւնը ծաղկած չէր Հայաստանի մէջ, և եղած մեհենական մատեանները և քաղաքային յիշատակարանաց դիւանները առ հասարակ հալածիչներու ձեռքն էին, որոնք քրիստոնէից յիշատակը ջնջել կը ջանային, քան թէ դիւաններու մէջ մուծանել և անմահացնել։ Եթէ այս ամեն պատմական պարագաները մտաբերենք,

(1) Զարմանալի չէ, որ սոյն հովուաց մէջ կան այնպիսիք, որք հայազգի չեն, բաւական է որ քրիստոնէական հօտին տեսուչ եղած են Հայաստանի գաւառաց մէջ, իրենց տեսչական յաջորդութիւնը Հայաստանի առաքեալներէն՝ Թադէոսէն և Բարդուղիմէոսէն շարունակելով, որովհետեւ այն ժամանակ քրիստոնէական ազգային եկեղեցեաց բաժանումներ չըկային։

այն ժամանակ աւելի կը համոզուինք, որ Քրիստոնէութիւնը անընդհատ տեւականութիւն ունեցած է Հայաստանի մէջ, մանաւանդ երբ որ այն նահատակութեան և հալածանաց դէպքերը յառաջ բերենք. որոնք կը յիշուին պատմութեան մէջ մինչեւ Տրդատայ ժամանակը, և որոնք վերոգրեալ հովուական անուններէն աւելի մեծ ապացոյց են Քրիստոնէութեան յարատեւութեանը առաջին շրջանին մէջ։

Թողունք Ոսկեանց և Սուքիասեանց նահատակութիւնը, որ մոլեգինն Արտաւազդայ թագաւորութեան ժամանակ կատարուած է։ Խորենացին, առնլով Կեսարիոյ Փիրմիլիանոս եպիսկոպոսի Հալածանաց Պատմութեան անունով գրքէն, կ'ասէ որ, քրիստոնեայք այնչափ բազմացած էին Հայաստանի մէջ Խոսրովու (հօր Տրդատայ) թագաւորութե ժամանակ, որ նոյն արքայն ստիպուեցաւ սաստիկ հալածանք յարուցանել։ Կը վկայէ նոյնպէս և Տերտուղիանոս թէ՝ 140 թուականին բազմաթիւ քրիստոնեայք կային Հայոց աշխարհին մէջ։ Իսկ Տրդատայ համար կը պատմուի թէ՝ այնչափ զայրացած էր քրիստոնէից աճման դէմ (իւր քրիստոնէական դարձէն առաջ,) որ հալածանաց երկու հրովարտակ հանեց, որ խստիւ արգելուի Քրիստոնէութիւնը։



Digitized by Google

Այս ամէնը յայտնապէս կը ցուցնեն ուրեմն, որ Թադէոսի և Բարդուղիմէոսի առաքելական ջանքը և Թափած արիւնը անօգուտ չանցան Հայաստանի մէջ. այլ նոցա քարոզած աւետարանական հիման վրայ հաստատուած Հայաստանեայց Եկեղեցին (Հայ քրիստոնեայք) և հաւատը անխախտելի մընաց, Թէպէտ և երբեմն հալածուելով և երբեմն սրտերու ծածկութեան մէջ ամրանալով։ Այս պատճառաւ է, որ մեր Եկեղեցին իւր հաստատութեան և առաքելականութեն քարինք կ՚ընդունի զԹադէոս և զԲարդուղիմէոս, և նոյն առաքելականութեան մէջ է իւր նախնականութիւնն ու անկախութիւնն։ Կը մնայ մեզ ուրեմն մի քանի խօսք եւս նոյն ժամանակեայ քրիստոնէական ներքին սովորութեանց վրայ խօսիլ։

Պատմական յիշատակարանք, Հայաստանեայց Եկեղեցւոյն նկատմամբ, առանձինն ոչինչ չեն աւանդեր քրիստոնէական ներքին սովորութեանց մասին։ Աւստի անկասկած պարտինք ընդունել, որ մեր Եկեղեցին առաջին շրջանին մէջ կը վարուէր առաքելական սովորութեամբ, այն է կը կազմէր որպէս մի քրիստոնէական գերդաստան, որոյ անդամները կապուած էին իրարու հետ հայրական, որդիական և եղբայրական կապով, հպատակելով մի միայն աստուածային կա-

Digitized by Google

մեց և աւետարանական պատուիրանաց։ Ամենէն ընդունակները և վարքով ու բարքով անարատները կ'ընտրուէին Տեսուչ և Սպասաւոր, միւսներուն ուսուցանելու և սպասաւորելու համար։ Այս ընտրութիւնը կը լինէր վկայութեամբ հաւատացելոց, ձեռնադրութեամբ Առաքելոց կամ եպիսկոպոսաց ու աղօթիւք ամենեցուն, հանգոյն ընտրութեան Մատաթիայի, եօթն սարկաւագաց և այլոց, ինչպէս կ'աւանդէ մեզ Գործք Առաքելոցն (1)։ Նայելով տեսչութեան և սպասաւորութեան պաշտօնին ընտրուածները կը կոչուէին Եպիսկոպոս, Երէց, Սարկաւագ, և շատ անգամ Եպիսկոպոսութիւնը և Երէցութիւնը անխտրաբար իրարու տեղ կը գործածուէին (2), ինչպէս և Առաքեալք անգամ երբեմըն երէց կ'անուանին (3)։ Ընտրելոց անպայման պարտքն էր ուսուցանել և առաջնորդել աւետարանական լուսով և կատարել հոգեւոր պիտոյքներ. իսկ հաւատացելոց պարտքն էր իսպառ հրաժարիլ հեթանոսական պաշտամունքներէ և քրիստոնէական փրկարար վարդապետութեանը հպատակիլ, որ կը պատուիրէր ազատութիւն 'ի մեղաց, սէր, արդարութիւն, ճշմարտութիւն,

(1) Գործ. Ա. 21—26։—Զ. 2—7։
(2) Գործ. Ի. 17. 28։—Տիտ. Ա. 5—7։
(3) Ա. Պետ. Ե. 1։—Բ. Յովհ. Ա. 1։—Գ. Յովհ. Ա. 1։

Digitized by Google

ողորմածութիւն, և այլն ։

Քրիստոնէութեան մէջ նոր ընդունուողներէն, ըստ պատուիրանին Քրիստոսի[1], կը պահանջուէր կատարեալ հաւատ, յոյս, սէր և որդեգրութեան ջերմեռանդն բաղձանք, և ապա երեք անգամ ընկղմամբ[2] 'ի ջուրս կը կատարուէր Մկրտութեան խորհուրդը յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ 'ի նշան լուացման և ազատութեան 'ի մեղաց և որդեգրութեան ամենասուրբ Երրորդութեան ։ Երբ ամբողջ գերդաստաններ Քրիստոնէութեան ծոցը կը դիմէին, նորածիններն և նորահասակներն ևս կը մկրտուէին, այն պայմանաւ որ ընդ զարգացման հասակին անպատճառ կրթուէին աւետարանական պատուիրանաց մէջ, որոյ մասին և կը պարտաւորուէին ծնողք և կնքահարք և մկրտողք ։

Յետ մկրտութեան հաւատացեալքն կը դրոշմուէին և կը կնքուէին խորհրդաւոր Դրոշմով[3], 'ի նշան զօրութեան և զինուորութեան Յիսուսի Քրիստոսի։ Այսպիսի սրբութենէն յետոյ նոքա նա և Սուրբ կ'անուանէին, 'ի նշան որոշման 'ի հեթանոսաց ։

Ընտանեկան կեանքը, որ հիմն է մարդկային ընկերականութեան և վառարան քը-

(1) Մատ․ ԻԸ․ 20։
(2) Յով․ Գ․ 4։
(3) Գործ․ Ը․ 17—18։—ԺԸ․ 5—6։—Եբր․ Զ․ 2։

րիստոնէական բարեպաշտութեան, կը սրբուէր Մովսիսական Խորհրդով, որ որչափ եղծուած էր հեթանոսութեան ժամանակ, ընդհակառակն այնչափ մեծութիւն ստացաւ Քրիստոնէութեան շնորհիւ, որ կոչեցաւ Նշանակ սիրոյն Քրիստոսի առ Եկեղեցի(1)։ Իսկ կուսութիւնն կամաւոր էր և գովութեան արժանացած էր, մանաւանդ կուսութիւնն կատարեալ սրբութեամբ սրտի(2)։

Կեդրոն ժողովման հաւատացելոց էր խորհուրդն Հաղորդութեան «Բեկանել հացին»(3), զոր միասին կը կատարէին ի նշան միութեան ընդ Քրիստոսի և ընդ միմեանս։ Եւ որովհետեւ անհնար է հաղորդութիւնն ընդ Քրիստոսի առանց սրբութեան, որպէս և անհնար է միութիւնն ընդ եղբարց, առանց կատարեալ սիրոյ. ուստի պարտաւորուած էին նախ զղջալ, ապաշխարել, սրբիլ, եղբարց հետ հաշտուիլ և ապա Գոհութեան հացը բեկանել։ Ի նշան կատարեալ սրբութեան և հաշտութեան ողջունելով կը տային միմեանց համբոյր սիրոյ կամ համբոյր սրբութեան(4)։

Վերոգրեալ բոլոր քրիստոնէական խորհրդաւոր սովորութեանց (զորս մինչեւ ցարդ ունի Հայաստանեայց Եկեղեցին) հետ միա-

(1) Ա. Կորն. Է. 11—39։
(2) Ա. Կորն. Է. 32. 34. 38։
(3) Գործ. Բ. 42. 46։—Ի. 7։
(4) Հռովմ. ԺԶ. 15։ — Ա. Կորն. ԺԶ. 20։

Digitized by Google

սին վառուած էին հաւատացեալքն անմահութեան սիրով, ներկայ կեանքը համարելով միայն բարեգործութեան և առաքինութեան միջոց. ուստի և աշխարհասիրութեան և ընչասիրութեան ցանկութիւնը մեռուցած էին իւրեանց մէջ։ Այս երկնային սէրն էր, որ կը վառէր հաւատացեալները զոհել իւրեանց ստացուածքը կարօտեալ եղբարց համար, ուրախութեամբ կրել ամեն հալածանք ու տանջանք, և քրիստոնէական մահուամբ նահատակութիւն՝ համարել կատարեալ ցնծութիւն։

Այսպէս ուրեմն, ինչպէս Քրիստոսի Աւետարանը, նոյնպէս և հաւատացելոց կեանքը, նոր էր հեթանոսաց համար. վասն որոյ և անդադար հալածանաց մէջ էին, մանաւանդ թագաւորաց և իշխանաց կողմէն, որոց առաւել ընդդէմ էր քրիստոնէական հաւասարութեան սկզբունքը. վասն զի վարժած էին նոքա ոչ միայն իշխել, այլ և 'ի շարս աստուածոց դասիլ և ժողովրդէն պաշտօն առնուլ։ Սակայն Քրիստոնէութեան առաջ կայսերք և թագաւորք եւս նուաճեցան, ինչպէս պիտի տեսնենք Երկրորդ շրջանին մէջ։



Digitized by Google

# ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆ

Քրիստոնէութեան յաղթական տարածմանէն Հայաստանի մէջ մինչեւ նորին դիմամարտութիւնը զրադաշտական մոգակրօնութեան ։

## 302–450

### Ընդհանուր տեսութիւն երկրորդ շրջանին վրայ։

ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ այս երկրորդ շրջանը, որ դարուկիսեան ժամանակամիջոց միայն կը պարունակէ, շատ նշանաւոր է ոչ միայն Հայաստանեայց Եկեղեցւոյն նկատմամբ, այլ և ընդհանուր Քրիստոնէութեան. վասն զի Քրիստոնէութեան յաղթութիւնը հանդիսապէս կատարուած է այս շրջանին մէջ, թէ՛ 'ի Հայաստան, և թէ՛ նաև հռովմէական լայնածաւալ պետութեան մէջ։

Այն երկնային կրօնքը, որ ըստ պատուիրանի և ըստ քաջալերութեան Հիմնադրին, սկսան քարոզել երկոտասան աննշան և առանց դպրութեան մարդիկ, երեքդարեան տոկալի հալածանքներէն յետոյ, յաղթեց աշխարհի գիտութեանը և զօրութեանը։ Հե-

Digitized by Google

թանոսութիւնը յամենայն զօրութենէ զինեցաւ Քրիստոնէութեան դէմ, որ սասանէ և բնաջինջ առնէ , բայց անհնարին եղաւ ։ Թողունք Հայաստանի մէջ կատարուած հալածանքները , Թողունք միւս անհատական տանջանարանները , տասն հանրական հալածանքներ գործ դրուեցան Հռովմէական տասն կայսերաց ժամանակ—Ներոնի , Դոմիտիանոսի , Տրայանոսի , Մարկոս Աւրելիոսի , Սեպտիմ Սեւերոսի , Մաքսիմիանոսի , Դեկոսի , Վաղերիանոսի , Աւրելիանոսի , Դիոկղետիանոսի , Լիկլիանոսի — և սակայն հուր , սուր , բանտ , կախաղան և հազարաւոր տանջանարանք չըկարացին քրիստոնէական կրօնի տարածմանը արգելք լինիլ ։ Ու ահա՛, այն ինչ Հայաստանի մէջ սէգն Տրդատ կը խոնարհի աւետարանական հեզ լծոյն տակ , հռովմէական պետութեան մէջ՝ մեհապանծն Կոստանդիանոս կը նուաճի , և Բեթղեհէմի մսուրին մէջ աւետարանուած Քրիստոնէութիւնը՝ արքայական աթոռներուն վրայ կը բարձրանայ . վասն զի Գողգոթայի վրայ տնկուած նախատանաց խաչը 'ի վեր քան զարեգակն կ'երեւութանայ Կոստանդիանոսին՝ սոյն նշանաբանիւ — Այսու յաղթեսցես ։ Այս է , որ պետի բռնաւորութիւնը խորտակէ , գերիները ազատէ , աղքատները սփոփէ և տկարները զօրացնէ ։ Այս է , որ աշխարհի վայրա-

դութիւնը և զգայական ցանկութիւնները պիտի սանձահարէ, կուռց պաշտամունքը եղծանէ, անոպայ Հրէութիւնը մեղմէ և հեթանոսական կարծեցեալ իմաստութիւնը ապշեցնէ: Եւ արդարեւ՝ երկրորդ շրջանին մէջ յաղթեցաւ և պարտեցաւ աշխարհ տըկարաց մեղմական զգօնութեամբ. յիմարեցաւ աշխարհի իմաստութիւնը. անկան կործանեցան Խաչի առջեւ հրէական ժողովրդանոցը և հեթանոսական բազմաստուածութիւնը: Ի զուր էր, որ կը ջրուէին և կը վըտարանդէին հաւատացեալները. ՚ի զուր հեղեղի նման կը թափէին քրիստոնէից արիւնը: Վտարանդեալները քրիստոնէական աւետեաց պատգամաւորներ դարձան և մարտիրոսաց արեան կաթիլները սերմն Քրիստոնէութեան: Շինական խուղերէն մինչեւ հռովմէական ինքնակալութեան աթոռը գրաւեց Քրիստոնէութիւնը, բոլոր տիեզերաց մէջ հնչեցաւ Աւետարանի փրկարար քարոզը և թագաւորները դայեակ դարձան Քրիստոնէութեան, իսկ թագուհիք՝ մանկակալք. ինչպէս գեղեցիկ գուշակուած էր մարգարէի բերանով — “Ահաւասիկ ամբարձից ըզձեռս իմ ՚ի վերայ ազգաց, և ՚ի կղզիս կանգնեցից զնշան իմ. և ածիցեն զորդիս քո ՚ի ծոցըս իւրեանց, և զդստերս քո ՚ի վերայ ուսոց իւրեանց բարձեալ բերիցեն: Եւ եղիցին

Digitized by Google

Թագաւորք դայեակք քո, և կանայք նոցա՝ ստնտուք քո(1)։

Բայց՝ եթէ մի առ մի հաշուենք թէ ինչ տոկալի բռնութեանց և բազմահնար տանջանարանաց տակաւ Քրիստոնէութիւնը առաջին երեքդարեան շրջանին մէջ և յաղթեց. կը դողանք և կը սարսռինք. վասն զի, 'ի սկզբանէ աշխարհի մինչև ցայսօր, ոչ մի եղեռնագործութեան դէմ այնպիսի տանջանարաններ չը տեսնուեցան, ինչ որ քրիստոնէից անմեղութեան դէմ հնարուեցան. և սակայն ոչ մի ինքնակալ այն փառքը չը ժառանգեց, ինչ որ ճշմարիտ քրիստոնեայք ժառանգեցին։ Թողունենք ընդհանուրը և 'ի մասնաւորի մեր Եկեղեցւոյն վրայ դարձնենք մեր նայուածքը։

Քրիստոնէութիւնը մի վսեմ և սքանչելի յաղթանակ կանգնեց մեր Հայոց աշխարհին մէջ յընթացս երկրորդ շրջանին։ Կործանեց նա կռապաշտութիւնը, սասանեցոյց քրմութիւնը և ծաւալեց լուսաւորութիւնը։ Այս շրջանին մէջ կը տեսնենք մեր Եկեղեցականութեան բուն նշանակութիւնը, պարտուց ճանաչումն և ժառանգաւորութեան կոչումն։ Այս շրջանին մէջ կը կատարուին, ինչպէս ազգային, նոյնպէս և տիեզերական երեք եկեղեցական Ժողովներ։ Այս շրջանին կը պատկանի հայկական գրոց գիւտը և հայ-

(1) Եսայ. խԹ. 22. 23.

ընի դպրութեան ոսկեղէնին դարու արգասաւորութիւնը։ Այս շրջանին մէջ կը կատարուի Աստուածաշունչ Գրոց հայկական Թարգմանութիւնը և կը բեղմնաւորի քրիստոնէական, քարոզական և մտաւոր դաստիարակութիւնը։ Այս շրջանին մէջ ծնունդ կ'առնուն քրիստոնէական ոգւով վառուած մատենագիրներ և ժամանակակից յառաջադիմութեան հետևող հայ զաւակներ։ Միով բանիւ, այս շրջանն է մեր ազգային քարոզական և մտաւոր կենաց շղթային ամենամեծ և խորհրդաւոր օղը, որուն վրայ կարեւոր կը համարինք ընդարձակօրէն խօսիլ, և իւրաքանչիւր իրողութեան վրայ ուրոյն ուրոյն խօսիլ։ Բայց որովհետեւ այս վերանորոգութեան և լուսաւորութեան հայրը ԳՐԻԳՈՐ ՊԱՐԹԵՒԱՑՆ է, այն Աստուծոյ ընտրեալ մարդը, որ իրաւամբ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ կոչուած է, ուստի պարտ և արժան է Գրիգորի և իւր Թագաւոր աշակերտ Տրդատայ դարձի պատմութենէն սկսիլ, որ սոյն Երկրորդ շրջանի դարագլուխը կը կազմէ։



# Ա.

Ծնունդ և դաստիարակութիւն Գրիգորի. — Ծնունդ կրթութիւն և թագաւորութիւն Տրդատայ. — Տանջանք Գրիգորի. — Գալուստ Հռիփսիմեան և Գայիանեան կուսանաց և նահատակութիւն նոցա: — Ելք Ս. Գրիգորի 'ի վիրապէն. — Սկիզբն քարոզութեան և քրիստոնէական վերանորոգութեան. — Հիմնութիւնք վկայարանաց. — Կործանումն մեհենաց.

Սասանեան Արտաշիր պարսիկ թագաւորի խորհրդով Անակ պահլաւունին Հայաստան գալով դաւադրութեամբ սուսերահար կ'առնէ Հայոց Խոսրով թագաւորը, և մինչդեռ 'ի փախուստ կ'անձապարէ, պաշարուելով Հայոց զօրքէն՝ գետավէժ կը մեռանի Երասխայ մէջ: Նորա ընտանիքը և որդիքը Խոսրովի հրամանաւ սրով կը կոտորուին, և այս կոտորածէն կ'ազատի միայն երկքամեայ մանուկ մի, զոր Աստուած պատրաստած էր Թադէոսի և Բարդուղիմէոսի առաքելութեանը յաջորդ հանդիսանալու և աւետարանական կենդանարար լոյսը համօրէն Հայաստանի մէջ տարածելու համար: Այս մանուկը, (որոյ յղութիւնը կ'աւանդեն Արտազու գաւառին մէջ, Թադէոս առաքելոյն տապանին մօտ և ծնունդն Վաղարշապատ քաղաքին մէջ,) իւր Սոփիա անուն հաւատացեալ ստնտուի, սորա եղբայր Եւ-

Թաղլիոս Գամիրացւոյ և Բուրդար անուն պարսիկ ամուսնոյն՝ խնամքով կը զերծանի 'ի Կեսարիա Կապադովկացւոց և այն տեղ մկրտուելով կըստանայ ԳՐԻԳՈՐ անուն։

Յետ սակաւ ժամանակի Արտաշիր Սասանեան զօրանալով՝ կը տիրէ Հայաստանի և օրամահ կ՚առնէ Խոսրովի գերդաստանը. բայց երկու նախարարք—Արտաւազդ Մանդակունի և Օտայ Ամատունի—կ՚ազատեն Խոսրովի երկու որդիքը. առաջինն կ՚առնու զՏրդատ և կը փախցնէ հռովմէական պետութեան մէջ. իսկ երկրորդն կ՚առնու զԽոսրովիդուխտ և կը տանի Անի ամրոցը։ Այսպէս, Տրդատ կը վարժի զինուորական կրթութեան մէջ Լիկիանոս զօրավարի մօտ. իսկ Գրիգոր պահլաւունին կը զարգանայ քրիստոնէական հրահանգօք և իմաստասիրական հմտութեամբ։ Գրիգոր 18 տարեկան հասակին մէջ կ՚ամուսնանայ Դաւիթ անունով մէկ մարդոյ Մարիամ բարեպաշտ դստեր հետ, և կ՚ունենայ երկու զաւակ՝ Վրթանէս և Արիստակէս։ Յետ ժամանակաց այս չնաշխարհիկ ամուսինները համաձայնութեամբ կը մեկնին իրարմէ, Մարիամ կ՚առնու Արիստակէս և իւր անձն ողջախոհութեան տալով կը սնուցանէ քրիստոնէական բարեպաշտութեան մէջ. իսկ Գրիգոր, թողլով զՎրթանէս դայեկաց մօտ, կ՚ուղեւորի առ Տրդատ. «Օհայ-

ընծեացն պարտս հատուցանել[1]» . վասն զի տեղեկացած էր որ իւր հայրն Անակ սպանած է Տրդատի հայր Խոսրովը ։ Տրդատ իւր քաջութեամբ փայլելով և մանաւանդ Գըթաց Հռչէ թագաւորին հետ ունեցած մենամարտութեան մէջ յաղթող հանդիսանալովը կը պսակուի արքայական թագով և կը դառնայ Հայաստան իւր հօր տեղը թագաւորելու ։ Երբ կը հասնի Եկեղեաց Երեզ աւանը՝ գոհութեան զոհեր կը մատուցանէ Անահիտին իւր յաղթութեան և արքայական փառաւորութեան համար . ուստի և հրաման կը տայ Գրիգորին (որ իւր զօրաց մէջ կը գտնուէր և քրիստոնէութեամբ յայտնուած էր ,) ընթրեաց սեղանի վրայ դրած ծաղկանց պսակներէն առնուլ, նոյնպէս և թաւ ոստեր , և մատուցանել Անահիտ դիցուհւոյն , որ ըստ հեթանոսական հասկացողութեան «Մայր էր ամենայն զգաստութեան , և նովաւ կեայր և կենդանութիւն կրէր աշխարհն Հայոց , և էր փառք ազգին»։ Գրիգոր կը հրաժարի այս հեթանոսական պաշտամունքէն և Տրդատայ զայրոյթը սաստկապէս կը բորբոքի . վասն զի վարժած լինելով Հռովմայ հալածասէր կայսերաց մօտ և հրահանգուելով քրիստոնէութեան թշնա-

(1) Թուղթ Արտիթեայ . Խոր . Գիրք Բ . Գլ . Ձ ։ Ագաթ .

մի փիլիսոփայից[1] ոգւով, կը խորշէր Քրիստո-
նէութենէ և վնասակար կը համարէր տե-
րութեան[2]։ Տրդատ Գրիգորի մտաց հա-
ստատութիւնը քայքայելու համար 'ի գործ
կը դնէ ողոքանք, խոստմունք, սպառնալիք և
հաճութեան նշոյլ անգամ չը տեսնելով կը-
սկսի մի զկնի միւսոյ 'ի կիր արկանել հռով-
մէական սարսափելի տանջանարանները և
գուցէ հռովմայեցի լէգէոնաց ձեռքով, ո-
րոնք իւր հետ եկած էին Պարսից դէմ պա-
տերազմելու համար։ Առաւել կը կատաղէ
Տրդատ, երբ կ'իմանայ Տաճատ նախա-
րարէն՝ թէ Գրիգոր Անակայ որդին է, որ
սպանեց զԽոսրով, և կը հրամայէ արկանել
մահապարտաց դուբն — 'ի խոր վիրապն Ար-
տաշատու[3]։ Հրովարտակներ կը հանէ ծա-
ծուկ և կամ յայտնի քրիստոնեայքը որոնել
և չարաչար մահուամբ պատժել և միան-
գամայն կը պատուիրէ ջերմեռանդն պաշ-
տօն մատուցանել Արամազդին, զդատ Ա-
նահիտին և քաջ Վահագնին[4]։

Այս միջոցին յանկարծ Հայաստան կ'ա-
պաստանի հռովմէական հալածանաց մրրիկ-
ներէն փախած սրբաէր կուսանաց գունդ
մի, գլխաւոր ունենալով զԳայիանէ և նորա

(1) Ագաթ։
(2) Ագաթ։
(3) Ագաթ։
(4) Ագաթ։

Digitized by Google

տուաքինութեան ընկերակից Հռիփսիմէ անուն մատաղ օրիորդը՝ Թագակալ տոհմէ, որ ինչպէս կը պատմեն, փախած էր Դիոկղետիանոսի հետ չը հարսնանալու պատճառաւ: Այս կուսանքը կը պատսպարուին Վաղարշապատ արքայանիստ քաղաքի մէկ հնձանին մէջ և իւրեանց ձեռաց վաստակով կը կերակրուին, վասն զի մէկը ապագործութեան արուեստ գիտնալով՝ ուլունքներ կը յօրինէ և զայն վաճառելով իւրեանց օրական պարէնը կը հայթայթեն: Յետ երկար հետազօտութեան զոյգ կ՚ընդունի Տրդատ Հռովմայ կայսերէն փախստականաց մասին և որոնելով կը գտնէ իւր Թագաւորական կայանքին մէջ: Երկու օր հետեւակ զօրքով տապարափակ առնելէն զկնի, ոսկիապատ գահաւորակներով, սպասաւորներով և շքեղ հանդերձներով իւր արքունիքը բերել կը տայ Հռիփսիմէն, և աքանչելի գեղեցկութեանը վրայ զարմանալով՝ կը ջանայ նորա անմեղութիւնը զոհել իւր մոլեգնութեանը: Բայց սրբասուն կոյսը կը յաղթահարէ Տրդատին և կը փախչի պալատէն, գոհութիւն մատուցանելով Աստուծոյ, որ պաշտպանն է անմեղութեան: Այս գահճապետն կը հանի և դառն տանջանօք Հռիփսիմէն կեանքէ կը զրկէ, ընդ նմին և նորա ընկերներէն 33 հոգի, որոց մարմինքն կ՚ընկենուն արտաքոյ

քաղաքին ։ Մի՛ւս օրը իւր երկու ընկերուհեաց հետ միասին տանջանքի կը մատնուի և Գայիանէն, որ առաջ արքայական պալատն կոչուած էր Հռիփսիմէն համոզելու համար, բայց նա ընդհակառակն քաջալերած էր մատաղ օրիորդը՝ առաւել իւր մարմնաւոր կեանքը զոհել, քան թէ իւր կուսական անմեղութիւնը ։ Նոյնպէս կը կատարուին 37 կուսանք և մնացեալները կը փախչին, որք մօտ 40 կը համարուէին ։ Սակայն Տրդատ շատ կը տրտմի Հռիփսիմէի մահուան վրայ, որ առանց իւր հրամանին և գիտութեն նահատակուած էր ։

Վեց օրէն յետոյ որսի կ'ելնէ Տրդատ և կը մոլեգնի, որպէս վայրենի անասուն, իսպառ կորուսանելով իւր բանականութիւնն ։ Տրդատի զգաստ քոյրը՝ Խոսրովիդուխտ հնգիցս տեսիլ կը տեսնէ, որով կը յայտնուի թէ՝ Արտաշատու վիրապին մէջ ձգուած Գրիգորը միայն կարէ բժշկել զՏրդատ, եթէ հանուի այն գբէն ։ Օտայ նախարարը իսկոյն Արտաշատ կ'ուղարկուի, և նոր Գանիէն Հայաստանեայց՝ Գրիգոր, յետ երկարամեայ կալանաւորութեանն, կենդանւոյն կը հանուի վիրապէն, մարմինն թխացեալ և սեւացեալ, և լուացուելով և նոր հագուստներ հագնելով կ'ուղեւորի 'ի Վաղարշապատ ։ Վայրենացած Թագաւորն ու նորա հետ միասին բոլոր մոլեգնեալ և փրփրեալ իշխանները և

բազմաթիւ պատահարները Գրիգորի առաջը կ'ելլեն, որ ծունր կ'իջնէ, կ'աղօթէ և սակաւ ինչ կը զգաստացուցանէ ։ Իսկ երբ իրենց յանցանաց համար թողութիւն կը խնդրեն զգաստացածները, Գրիգոր կը յայտնէ, որ ինքն բնութեամբ՝ նոցա հաւասար մարդ է, ուստի և կը յորդորէ զԱստուած միայն ճանաչել Արարիչ երկնի և երկրի, զնա միայն պաշտել և 'ի նմանէ խնդրել թողութիւն և փրկութիւն (1) ։

Այս քրիստոնէական յորդորանքէն յետոյ՝ ժողովել կուտայ Գրիգոր նահատակուած կուսանաց մարմիններն իւրաքանչիւրն իւր պատառոտուն զգեստով, (որ արքունական տանէն բերուած շքեղ պատանքներէն նախամեծար կը համարէր), կը նստի Թագաւորի հնձանին մէջ, ուր վկայուած էին կուսանքն, և կ'ըսկսի 66 օր քարոզել բազմախուռն ժողովրդին, որոնք ամեն կողմէն կը դիմէին աւետարանական ճշմարտութեան կենդանի ջրով իւրեանց պապակը զովացընելու ։ Այս քարոզութեամբ կը համոզէ Գրիգոր բոլոր բազմութիւնը դառնալ 'ի կռապաշտութենէ 'ի ճշմարիտ Աստուածգիտութիւն, խօսելով նախ Հօր Աստուծոյ և արարչագործութեան վրայ, երկրորդ Որդւոյն Աստուծոյ և նորա մարմնաւորութեան վրայ, և երրորդ Հո-

(1) Ագաթ ։

դւոյն Աստուծոյ և միանգամայն Եկեղեցւոյ վրայ (1)։ Այս քարոզութիւնը կը լինի որպէս ընծայութիւն կամ պատրաստութիւն մկրտութեան, որով այնչափ կը շարժի ժողովուրդը, որ համեմատ տեսլեան Գրիգորի իսկոյն կը սկսի շինել սուրբ Կուսանաց երեք վկայարանները, մէկը Հռիփսիմէի վըկայուած տեղը, միւսը Գայիանէի և երրորդը բնակութեան հնձանին տեղը։ Այն վըկայարանաց մէջ կ'ամփոփուին կուսանաց մարմինները իւրեանց հանդերձներով, թէպէտ և դիզուած կային Գրիգորի առջեւ անուշ իւղեր, ազնիւ խունկեր և թագաւորազուն օրիորդաց ու պատուական կանանց գունագոյն նարօտներ, ծիրանիներ և երկնագոյն ու սպիտակ դիպակներ։ Թագաւորն ինքն կը փորէ տապանաց տեղիքն և Աշխէն թագուհին ու Խոսրովիդուխտ օրիորդը իւրեանց հանդերձներով բրած հողը կը կրեն և դուրս կը թափեն։ Տրդատ հրաման կ'առնէ Գրիգորէն, մեծամեծ արձաններ կը բերէ Մասիս լեռնէն և իբրեւ կոթող յաղթութեան՝ կը տնկէ։ Գրիգորի տեսլեան համեմատ կը պատրաստուի և որոմնափակ կը լինի այն տեղին, ուր պիտի կանգնէր առաջին Եկեղեցին—ԷՋՄԻԱԾԻՆ—յանուն Միածին Որդւոյն Աստուծոյ, և սեղանատեղւոյն վրայ

(1) Ագաթ։

Խաչի յաղթական նշանը կը բարձրացընեն ։ Այս տեղ կը դիմէ ժողովուրդը խուռն բազմութեամբ, որպէս 'ի կեդրոն Հայաստանեայց հոգևոր միութեան և կ'աշակերտի աւետարանական վարդապետութեան ։ Այս տեղ բազկատարած կը հայցէ Գրիգոր և Աստուած կը բժշկէ հոգւով և մարմնով խօթացեալները, անդամալոյծները, ջրգողները, բորոտները և ամեն ախտաժէտները (1)։ Քրիստոնէութիւնը կը յաղթանակէ և հոգւով ու ճշմարտութեամբ երկրպագուները կը բազմանան ։

Երբոր այսպէս նոր հոգին և նոր կեանքը ամենուն մէջ կ'արծարծի, կը ջանան այնուհետեւ Հեթանոսութիւնը իւր վառարաններուն մէջ չիջուցանել և մեհեանները յեկեղեցի փոխարկել ։ Սակայն Գրիգոր անպատեհ կը համարի այս հնարքը, մեհենական շինուածները կը կործանէ, և Խաչն միայն իբրև կեդրոն ժողովման՝ զանազան տեղեաց մէջ կը կանգնէ ։ Տրդատ մեծապատ հրաման կը հանէ, որ դադրին հեթանոսական պաշտամունքները և ամենեքեան Քրիստոսի ամենաքաղցր լծոյն հնազանդին ։ Կ'առնու նա իւր հետ Գրիգորը, իշխանները և դրանիկ զօրքերը, կը շրջի բոլոր աշխարհին մէջ, կը բրէ կը կործանէ և կը հրդեհէ չաստուածոց մե-

(1) Ագաթ ։

հեանները, բագինները և պատկերները, այն է Տիւր (Հերմէս) դիցը՝ Արտաշատին մօտ, Բարշամինայինը՝ Դարանաղեաց Թորդանին մէջ. Արամազդինը՝ Անիի մէջ, Ոսկեմայր Անահիտինը՝ Եկեղեաց Երէզ աւանի մէջ. Նանէական դիցն՝ (Աթենաս) Թիլն աւանի մէջ, Միհրական դիցն՝ (Եփեստոս) Բագայառիճի մէջ։ Այս ծագման մեհեաններու պարգևներէն մասն կը հանեն աղքատաց և տառապելոց և քրմաց մանուկները քրիստոնէական հրահանգաց մէջ կըրթել կը ջանան։

---

## Բ.

Ընտրութիւն Ս. Գրիգորի և հայրապետութիւն. — Քրմութեան պատերազմը և քրիստոնէութեան յաղթանակը. — Սքանչելի տեսարան հայրապետական վերադարձի Ս. Գրիգորի, և մկրտութիւն հաւատացելոց յԵփրատ. — Տարածումն աւետարանական լուսոյ. — Քրիստոնէական Դպրոցք. — Մենաւորական կեանք Ս. Գրիգորի։

Երբ որ կ'եռար այսպէս համօրէն ժողովուրդը քրիստոնէական սիրով, այնուհետև կը ժողովէին առաջի Թագաւորին Նախարարք, իշխանք և բազմութիւն հաւատացելոց, և համակամ խորհրդով եւ հաւանութեամբ կ'ընտրեն հովուապետ կացուցանել համօրէն

Հայոց աշխարհին վրայ Թադէոսի և Բարդուղիմէոսի պարգեւական շաւակն Գրիգոր, որ յետ բազում դիմադարձութեան՝ 'ի վերջոյ կը ջնջանի հաւատացելոց աղաչանքին, աստուածային կամքը տեսնելով՝ ակներեւ իւր ընտրութեան մէջ ։ Գրիգորի յանձնառութիւնը անպատում ուրախութեամբ կը լըցուցանէ հաւատացելոց սիրտը, ուստի և վաղվաղակի կը պատրաստուին Հայաստանի զանազան գաւառներէն գումարուած երեւելի նախարարները և կուսակալները—(իշխանն Անգեղ տան, իշխանն Աղձնեաց, իշխանն Մարդպետութեան, իշխանն Թագակապ Ասպետութեան, իշխանն Սպարապետութե և Զօրապետութեան Հայոց աշխարհին, իշխանն Կորդուաց, իշխանն Ծոփաց, իշխանն Գարգարացւոց, իշխանն Մշտունեաց, իշխանն Մոկաց, իշխանն Սիւնեաց, իշխանն Ծոդէից, իշխանն Ուտիացւոց, իշխանն Շահապ Հեր և Զարեւանդ գաւառին, իշխանն Արծրունեաց աշխարհին)—և մեծաւ հանդերձանօք, բազմաթիւ հեծելովք և հրովարտակաւ Թագաւորին կը տանին ընտրեալն Գրիգոր Վաղարշապատ քաղաքէն Փոքրն Հայաստանի Կեսարիա քաղաքն Գամրաց, ուր կը ժողովուին եպիսկոպոսներ և քրիստոնէից բազմութիւն, և Գրիգոր կը ձեռնադրուի Ղեւոնդիոսէն ՀԱՅՐԱՊԵՏ բովանդակ Հա-

Digitized by Google

յաստանի, 302 Թուականին Փրկչի։

Մեծ Հայրապետն Հայոց Կեսարիայէն կ՚անցնի Սեբաստիա, իմաստուն գործակիցներ և վարդապետութեան պաշտօնեաներ կ՚ընտրէ, և այն տեղէն եպիսկոպոսաց Թըղթով և Յովհաննու Անկրոչի և Աթանագինեայ վկայի նշխարներով՝ կը դառնայ իւր հօտը մխիթարելու (1)։

Բայց Տարօն հասած ժամանակ՝ օրհասական Հեթանոսութիւնը զայրագին պատերազմ կը յարուցանէ Քրիստոնէութեան դէմ։ Զօրացած էին այն ժամանակ Տարօնոյ գաւառին մէջ Արձան և Դեմետրէ քրմապետները, որոնք քրմութեան մտալուտ բարձումն տեսնելով՝ կը գրգռէին բոլոր քուրմերը և տեղւոյն ժողովուրդը և Քրիստոնէութիւնը հալածել կը ջանային նոյն երկրէն։ Սակայն երկու արիւնահեղ պատերազմներէն զկնի՝ քրմութիւն ևս, այն հեթանոսական մթութեան խաւարամիտ սպասաւորութիւնը, ամօթահար կը յաղթուի և իւր վերջին շունչն կ՚արձակէ (2)։ Հիմնայատակ կը կործանուին Վահագնի, Անահիտայ և Աստղկան մեհեանները և երեքմեհեննեան Աշտիշատին մէջ կը հիմնուի Եկեղեցին Աստուծոյ, ուր կ՚ամփոփուին Կեսարիայէն բերուած նըշ-

(1) Ագաթ։

(2) Զենոբ Գլակ. Պատ. Երկրին Տարօնոյ։

խարները։ Ընդանոր կը մկրտուին Նոր Հայրապետի ուղեկիցները, նախարարները, զօրքերը և բազմութիւն մարդկան 100 հազար, ուրանոր Ս. Գրիգոր առաջնորդ կը թողու հաւատացելոց համար Զենոբ եպիսկոպոսը. Անտօն ու Կրօնիդէս կրօնաւորները, և ինքն կ'ուղեւորի դէպ 'ի Արարատեան աշխարհը։

Տրդատ իմանալով Հայրապետի գալուստը՝ արքայական դերդաստանով և զօրքերով դիմաւորելու կը պատրաստուի, և ընդ առաջ ելնելով կը սպասէ Բագրեւանդ գաւառի Բագուան քաղաքի մէջ։ Երբ նոյն քաղաքը կը հասնի Ս. Գրիգոր, անպատում մեծարանօք կ'ընդունուի գունդագունդ բազմութենէն. ամսօրեայ քարոզութք կը պատրաստէ բոլոր ժողովուրդը Մկրտութիւնն ընդունելու համար. կը պատուիրէ աղօթել և պահել պահս (Առաջաւորաց պահք), և ապա գումարելով Հայաստանի Նոր Յորդանանու — Եփրատայ — ափանց վրայ, կը մկրտէ նոյն գետոյն մէջ զԹագաւորն, զԱշխէն Թագուհին, զԽոսրովիդուխտն, զօրագունդը և բոլոր բազմութիւնը աւելի քան 4,000,000 հոգի, պատարագ կը մատուցանէ և ամէնքը կը հաղորդուին կենարար մարմնոյ և արեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի և կը փայլին լուսով Աւետարանին (1)։

(1) Ագաթ.

Աստէն հաւատացելոց բազմութեամբ շրջապատուած կը դառնայ Ս. Հայրապետն Վաղարշապատ քաղաքը և սկիզբն կ'առնէ շինութեան հոյակապ տաճարին Էջմիածնի, որոյ տեղին առաջուց պատած էր որմով։

Այնուհետեւ կը սկսի մեծավաստակ մըշակն Հայաստանեայց Եկեղեցւոյ տարածանել սփռել քրիստոնէական վարդապետութեան սերմունքը լայնատարած երկիրներու մէջ, որոյ քարոզութեանն սահմանք կը լինին Հիւսիսէն Սատաղ քաղաքը, Խաղտիք, Կաղարջք, Մազգութք և Կասպք. իսկ Հարաւէն Ամիդ, Մծբին, Նոր Շիրական, Մահքրտան և Կորդուք[1]։

Այսպէս ահա Լուսաւորիչն Հայոց, բոլոր աշխարհը քրիստոնէական հաւատքով լուսաւորելէն զկնի, լաւ իմանալով որ ուղիղ գիտութիւնը երբէք չըհակառակիր Աւետարանին, կը ջանայ նաև հաւատոյ մշտնջենաւորութիւնը և տեւականութիւնը ապահովել գիտութեամբ, ուստի և Տրդատայ օգնութեամբ դպրոցներ կը բանայ զանազան տեղեր։ Առաջին դպրոցին մէջ կը պարապի նոյն ինքն Տրդատ և Արշակունեաց տոհմի որեարն 'ի վարժս վարդապետութեան, որ և Թագաւորական Դպրոց կ'անուանուի. իսկ միւս դպրոցներուն մէջ կ'ուսանին բազմա-

(1) Ագաթ. Սոփ. Եկեղ. Պատ. Գ. 8.

Digitized by Google

թիւ մանկունք և պատանիք յոյն և սորի դպրութեամբ, որոց մէջ մանաւանդ քրմաց որդիքը յառաջասունք և ձեռասունք լինելով Ս. Գրիգորի, կը կարգուէին պաշտօնեայք և սպասաւորք Եկեղեցւոյ ։ Սոցա կարգէն էր Աղբիանոս, որ արքունական դրան եպիսկոպոս կարգուեցաւ և ապա եպիսկոպոս 'ի կողմանս Եփրատական գետոյն ։ Դարձեալ սոցա կարգէն էին սոյն եպիսկոպոսները — Եւտաղիոս Բասենոյ, Բասոս, Մովսէս, Եւսեբիոս, Յովհաննէս, Ագապէս, Արտիթէս, Արսուկէս, Անտոքէս, Տիրիկէս և Կիրակոս, թող միւս եպիսկոպոսները, որոց թիւը կը հասնէր մինչեւ 400, և երէցներն ու սարկաւագները, որոց թիւն բազում էր յոյժ ։

Հայաստան աշխարհը քրիստոնէական լուսով լուսաւորելէն զկնի՝ Ս. Գրիգոր կ'առանձնանայ մենաւորութեան մէջ աղօթելու իւր հօտի հոգեւոր աճելութեան և քարոզած ճշմարտութեանց արդասաւորութեան ու հաստատութեան համար, և դարձեալ այցելութիւն կ'ընէ հաւատացելոց ։ Շատ բնական է սոյն օրինակ կեանքը աւետարանական վաստակաւորաց համար, այն է առժամանակ մի խոյս տալ աշխարհային աղմուկներէն, մենաւորութեան մէջ կազդուրիլ բարձրախոհ մտածութեամբ եւ վերստին

դառնալ առ ժողովուրդն նորոգ զօրութբ ։ Ս. Գրիգորի մենաւորութեան օթարանը Գարանաղեաց Սեպուհ լեառն էր, Մանեայ այրը, ուր ճգնած էր Հռիփսիմեանց ընկերակից Մանէ կոյսը և 'ի վախճանին Ս. Գրիգորի ձեռամբ թաղուած ։

---

## Գ.

Ընտրութիւն և Ձեռնադրութիւն Ս. Արիստակիսի. —Ս. Գրիգորի և Տրդատայ Հռովմ երթալոյն վրայ.— Ժողով Նիկիոյ. —Վախճան երկրաւոր կենաց Ս. Գրիգորի և Տրդատայ.— Հայրապետութիւն Արիստակիսի, Վրթանիսի, Գրիգորիսի.—Սկիզբն կաթողիկոսութեան Աղուանից և Վրաց.—Յուսիկ և Փառներսէհ ։

ԹԱԳԱՒՈՐՆ ՏՐԴԱՏ, որպէս զի ժողովուրդը իր Լուսաւորչի մենաւորութեան ժամանակ հոգեւոր կարօտութիւններ չըկրէ, քանի մի նախարարաց պատգամաւորութբ կը հրաւիրէ Կեսարիայէն Ս. Գրիգորի որդիքը՝ Վրթանէս և Արիստակէս, և հաւատացելոց առաջարկութեամբ եպիսկոպոս կը ձեռնադրուի Արիստակէս իր առաքելանման հօրէն և նորան տեղապահ կը կարգուի։

Այս միջոցին ՄԵԾՆ Կոստանդիանոսի քրիստոնէական դարձի լուրը Հայաստան կը հաս-

Digitized by Google

նի և Տրդատ խնդակցութեան պատճառաւ կը պատրաստուի Հռովմ երթալ։ Կ՚աւանդուի թէ՝ իւր հետ կ՚առնու նաեւ զԼուսաւորիչն Գրիգոր, զԱրիստակէս և զՎրթանէս (Թէպէտ և Գրիգորի մենաւորական կենաց բաղձանքին նայելով՝ անհաւան կը թուի նորա երթալն Տրդատայ հետ 'ի քաղաքամայրն Հռովմ,) և արքայավայել մեծարանք գտնելով Կոստանդիանոսէն կը դառնայ 'ի Հայաստան մեծամեծ ընծաներով։ Քրիստոնէական սէրը և խնդակցութիւնը ամենայն գովութեան արժանի գործ է, մանաւանդ երկու թագաւորաց մէջ, որոց օրինակը չինող և հաստատող է ժողովրդեանն։ Սակայն վերջին դարուց հռովմէական կղերի իշխանասիրութիւնը ջանահնար եղած է տարօրինակ կերպարանք տալ նախնի դարուց քրիստոնէական եղբայրութեանը, և այս պատճառաւ կարկատած է Դաշանց Թուղթ (1) անունով գրուած մի Հայաստանեայց եկեղեցւոյ առաքելական անկախութիւնը պա-

(1) Կ. Վ. Շահնազարեան, միաբան Ս. Էջմիածնի, հիմնաւոր և բազմակողմանի բանադատութեամբ ցուցած է Դաշանց Թղթոյն եղջերուաքաղ ստութիւնը, հրատարակելով իւր աշխատասիրութիւնը նախ Երկրագունդ օրագրի մէջ, և ապա առանձին տետրակով 1862 ին Փարիզ տպագրուած։ Մխիթարեան միաբան Հ. Գար. Զ. նոյնպէս անվաւեր հրատարակած է յիշեալ Թուղթը։ Պատ. Հայերէն դպրութեան, պրակ. 1865 ամ, երես 121—124.

պական վերացական գլխաւորութեանը հը-
պատակեցնելու ճարտարամտութեամբ։ Այս-
կայն որչափ պապականութիւնը հեռի է նախ-
նի հռովմէական եկեղեցւոյ ուղղութենէն,
նոյնչափ հեռի է և քաղանց Բուղին ճշմարտու-
թենէ, ինչպէս և Հայաստանեայց եկեղե-
ցին փառաւորութեան հպատակութենէ։

Մինչդեռ Հայաստանեայց Եկեղեցին
Քրիստոսի անհաս մարդաւորութեան վրայ
կըզմայլի, հռովմէական պետութեան մէջ
արիոսական աղանդաւորութեան կասկած-
ները կը յուզին Քրիստոսի աստուածու-
թեան դէմ, և այս մոլորութեան առաջն առ-
նելու համար՝ 325 թուականին Նիկիոյ տի-
եզերական Ժողովը կը գումարուի, 318 հայ-
րապետաց ներկայութեամբ, ուր փոխանակ
Գրիգորի՝ ներկայ կըգտնուի Արիստակէս, և
նոյն Ժողովի Հանգանակն ու քանի մի Կա-
նոններ Հայաստան կը բերէ։ Ինչպէս սոյն
Ժողովի, նոյնպէս և Ս. Գրիգորի վարդա-
պետական գրուածոց վրայ առանձին պիտի
խօսինք 'ի կարգին։

Ս. Գրիգոր մենաւորութեան մէջ կը կնքէ
իւր բազմարդիւն կեանքը, որոյ մարմինը
յետնական հովիւները գտնելով կը թաղեն,
և յետ ժամանակաց կը յայտնուի Գառնիկ
ճգնաւորին, ուստի և Սրբոյն նշխարքը կը
բերեն 'ի Թորդան և անտի 'ի Վաղարշապատ։

Digitized by Google

Իսկ Տրդատ բաւական ժամանակէն յետոյ առանձնութեան փափաքով անգամ մը կը հրաժարի իր թագէն, կրկին կը կոչուի և կը թախանձուի թագաւորելու և նախարարաց խստասրտութեամբ կը թունաւորուի և կը վախճանի: Այսպէս կը կնքեն իրենց կեանքը Հայոց աշխարհի լուսաւորութեան երկու մեծ Տածիչները, մին մենաւորութեան մէջ, իսկ միւսն թունաւորուելով: Բայց իրենց անունները և արարքը անմահ կը մնան Հայոց Ազգի և Եկեղեցւոյ գոյութեան հետ. վասն զի մարդկութեան բարերարաց փառքը և վկայութիւնը ոչ կ'անյայտանան և ոչ կը թունաւորին:

Ս. Գրիգորի և Տրդատայ վախճանէն ըզկնի Հայաստան կը տարուբերի Հռովմէական և Պարսկական ազդեցութեան տակ: Այս երկու ազդեցութիւնը խաղաղ կը թուլցնեն Հայաստանի քաղաքական ոյժը և երկու կը բաժնեն, որով և խռովութիւնք, երկպառակութիւնք և կոտորածք կը յաճախեն: Եկեղեցւոյ հովիւները մեծ դժուարութեան կը հանդիպին: Մի կողմէն կը պարտաւորին երկու օտար պետութեանց հարստահարութիւնները մեղմելու միջնորդներ հանդիսանալ, միւս կողմէն կը ստիպուին նախարարաց և իշխանաց մոլութեանց դէմ մաքառիլ: Վասն զի արտաքին հրապարակական կռա-

պաշտութիւնը բարձունքէն զկնի՝ Քրիստոնէութեան առջեւ պատերազմ կը բացուի ներքին մոլութեանց հետ, պատերազմ, որ ոչ թէ միայն նոյն ժամանակի, այլ Քրիստոնէութեան տեւական և իրական պատերազմըն է, որ աշխարհիս կատարածի հետ միայն կարէ վերջանալ։ Ուստի և Ս. Գրիգորի յաջորդները, մեծ մասամբ, իշխանաց մոլութիւնները կշտամբելու համար կը կատարին մահուամբ, ինչպէս պիտի տեսնենք յետագայ պատմութենէն։

Ս. Արիստակէս (332 ին) հայրապետանալով՝ իւր հօր նման հոգ կը տանի ամենատեսակ բարեկարգութեան, կը խրատէ ու կը ջանայ ուղղել իւր հօտը բարեպաշտութեան և ճշմարտութեան ճանապարհով, և սակայն Չորրորդ Հայոց վերակացու Արքեղայոս իշխանի վատ արարքը յանդիմանելու համար կը սպանուի սրով Ծոփաց գաւառի մէջ, և կը թաղուի Թիլն աւանի մէջ։

Ս. Վրթանէս կը յաջորդէ իւր կրտսեր եղբօրը Արիստակիսին (339) և Եկեղեցւոյ պայծառութեանը նախանձախնդիր կը լինի. Երուսաղէմի Մակարիոս Պատրիարքէն կանոնական թուղթ մի բերել կուտայ և յարմարելով զայն՝ Հայաստանեայց բոլոր եպիսկոպոսներուն կ՚ուղարկէ։ Շատ աշխատանք կը կրէ Պարսից հարստահարութենէն ազգը զերծ կա-

Digitized by Google

ցուցանել, և այս անթիւ թուղթ կը գրէ Կոստանդին կայսեր և օգնութիւն կ'ընդունի. և ապա Տիրանայ թագաւորութեան ևս պատճառ կը լինի, ինքնին գնալով առ Կոստանդին: Սակայն իւր հայրապետութեան առաջին տարիներուն մէջ նախարարաց թերադրութեամբ յարձակումն կը կրէ լեռնականներէն, Տարօնոյ անդրանիկ Եկեղեցւոյ տօնախմբութեան ժամանակ, և հազիւ հազ սպանութենէ կ'ազատի. Նոյնպէս և Տիրանայ ախտամոլութիւնը յանդիմանելու համար ոչ սակաւ կը նախատուի:

Վրթանիսի հայրապետութեան առաջին տարին Աղուանք կը դիմեն առ Տրդատ և իւրեանց երկրի համար առաջնորդ կը խնդրեն. ուստի և Վրթանէս իւր երէց որդին՝ մանուկն Գրիգորիս՝ արքեպիսկոպոս կը ձեռնադրէ և Աղուանք կ'ուղարկէ: Ս. Գրիգորիսէն սկիզբն կ'առնու Աղուանից և Վրաց կաթողիկոսութիւնը (1), ուր կանխապէս քարոզուած էր Աւետարանը Լուսաւորչի առաքելական խնամատարութեամբ և երկու կողմանքն ևս Հայաստանի հայրապետական աթոռէն կ'ընդունէին առաջնորդներ: Վըրաստանի մէջ քարոզած էր Աւետարանը Նունէ կոյսը, որ Հռիփսիմեանց նահատակութեան ժամանակ փախած էր Վրաց աշ-

(1) Բուզ. Դպր. Գ. Գլ. Զ:

քայանիստ քաղաքն Մծխիթա, դարձուցած էր նոցա Միհրան իշխանն 'ի քրիստոնէութիւն, և Լուսաւորչի հրահանգով կործանած էր կռոց պատկերները, մանաւանդ ամպրոպային Արամազդայ պատկերը՝ մայրաքաղաքի հանդէպ եղած լերան վրայ, որոյ տեղը կանգնած էր Խաչի յաղթական նշանը. և ապա Ս. Գրիգորի ղրկած հովիւներու ձեռքով Վրաստանի բնակիչները ընդունած էին քրիստոնէական մկրտութիւն։

Գրիգորիս բանիւ և իւր առաքինական կեանքով քարոզէ կը հանդիսանայ Աղուանից երկրին մէջ, սակայն իշխանները չըկարենալով տանիլ նորա արդար կշտամբանքները, ձիու ագիէն կըկապեն և Վատնեան դաշտի մէջ գետնաքարշ աւնելով կը նահատակեն, որոյ մարմինը իւր սարկաւագները կը բերեն և կ'ամփոփեն Ալունեաց գաւառի Ամարաս աւանի մէջ, ուր կանխապէս եկեղեցի կար հիմնուած Ս. Լուսաւորչէն (1)։

Վրթանիսի հայրապետութեան ժամանակ տառապանքներ կը կրէ նոյնպէս Ասորոց Յակոբը Մծբնայ հայրապետը, Լուսաւորչի հօրաքեռորդին, և կ'անիծանէ Հայոց Մանաճիհր զօրավարը, իւր սարկաւագները ծովը ձգելու համար։

(1) Բուզ. Դպր. Գ. Գլ. Զ.



Digitized by Google

ցուցանել, և այս առթիւ Թուղթ կը գրէ Կոստանդին կայսեր և օգնութիւն կ'ընդունի. և ապա Տիրանայ թագաւորութեան ես պատճառ կը լինի, ինքնին գնալով առ Կոստանդին։ Սակայն իւր հայրապետութեան առաջին տարիներուն մէջ նախարարաց թելադրութեամբ յարձակումն կը կրէ լեռնականներէն, Տարօնոյ անդրանիկ Եկեղեցւոյ տօնախմբութեան ժամանակ, և հազիւ հազ սպանութենէ կ'ազատի. նոյնպէս և Տիրանայ ախտամոլութիւնը յանդիմանելու համար ոչ սակաւ կը նախատուի։

Վրթանիսի հայրապետութեան առաջին տարին Աղուանք կը դիմեն առ Տրդատ և իւրեանց երկրի համար առաջնորդ կը խնդրեն. ուստի և Վրթանէս իւր երէց որդին՝ մանուկն Գրիգորիս՝ արքեպիսկոպոս կը ձեռնադրէ և Աղուանք կ'ուղարկէ։ Ս. Գրիգորիսէն սկիզբն կ'առնու Աղուանից և Վրաց կաթողիկոսութիւնը (1), ուր կանխապէս քարոզուած էր Աւետարանը Լուսաւորչի առաքելական խնամատարութեամբ և երկու կողմանքն եւս Հայաստանի հայրապետական աթոռէն կ'ընդունէին առաջնորդներ։ Վրաստանի մէջ քարոզած էր Աւետարանը Նունէ կոյսը, որ Հռիփսիմեանց նահատակութեան ժամանակ փախած էր Վրաց աշ-

(1) Բուզ. Դպր. Գ. Գլ. Զ.

քայանիստ քաղաքն Մծխիթա, դարձուցած
էր Նոցա Միհրան իշխանն 'ի քրիստոնէու-
թիւն, և Լուսաւորչի հրահանգով կործա-
նած էր կռոց պատկերները, մանաւանդ ամ-
պրոպային Արամազդայ պատկերը՝ մայրաքա-
ղաքի հանդէպ եղած լերան վրայ, ուր տե-
ղը կանգնած էր Խաչի յաղթական նշանը. և
ապա Ս. Գրիգորի ղրկած հովիւներու ձեռ-
քով Վրաստանի բնակիչները ընդունած է-
ին քրիստոնէական մկրտութիւն։

Գրիգորիս բանիւ և իւր առաքինական
կեանքով քարոզիչ կը հանդիսանայ Աղուա-
նից երկրին մէջ, սակայն իշխանները չըկա-
րենալով տանիլ նորա արդար կշտամբանքնե-
րը, ձիու ագիէն կըկապեն և Վատնեան դաշ-
տի մէջ գետնաքարշ առնելով կը նահատա-
կեն, որոյ մարմինը իւր աշակերտները կը
բերեն և կ'ամփոփեն Ալունեաց գաւառի Ա-
մարաս աւանի մէջ, ուր կանխապէս եկեղե-
ցի կար հիմնուած Ս. Լուսաւորչէն (1)։

Վրթանիսի հայրապետութեան ժամա-
նակ տառապանքներ կը կրէ նոյնպէս Ասորոց
Յակոբը Մծբնայ հայրապետը, Լուսաւոր-
չի հօրաքեռորդին, և կ'անիծանէ Հայոց Մա-
նաճիհր զօրավարը, իւր աշակերտները
ծովը ձգելու համար։

(1) Բուզ. Դպր. Գ. Գլ. Զ.

Վրթանիսին կը յաջորդէ իւր կրտսեր որդին Յուսիկ, (355ին, ունենալով երկու որդի Պապ և Աթանագինէ,) որոյ կաթողիկոսութեան ժամանակ ուրացողն Յուլիանոս իւր պատկերն Հայաստան կ'ուղարկէ, և մինչդեռ Տիրան կ'ուզէ յիշեալ դիւանկար պատկերը կախել Ծոփաց արքունական եկեղեցւոյ մէջ, անվեհեր Հայրապետը ձեռքէն յափշտակելով կը խորտակէ և Տիրանայ հրամանաւ բրածեծ լինելով կը նահատակուի։ Դանիէլ Ասորին, որ քահանայ ձեռնադրըուած էր Լուսաւորչէն և քորեպիսկոպոս կամ հիւպերէտ կարգուած, Տիրանայ արած անգթութիւնը կը կշտամբէ, և այս յանդիմանութեան պատճառաւ խեղդամահ կը մեռանի և կը թաղուի Հացեաց Դրախտ անուն մենարանին մէջ։ Թէպէտ և ինքն Տիրան ևս Հռովմայեցւոց ցուցած մտերմութեան համար յետ ժամանակաց կը կոչուի Պարսից թագաւորէն, աչքերը կը խարուի և կը բանտարկուի Կուաշ աւանի մէջ։

Յուսիկի տեղ նախարարաց հաւանութեամբ կ'ընտրուի Փառներսէհ, Տարօնոյ Աշտիշատ գիւղէն, և չորեքամեայ կաթուղիկոսութենէն յետոյ կը վախճանի և Տարօնոյ մէջ կը թաղուի գեղեցիկ շիրմի մէջ։

## Դ.

*Ընտրութիւն և Հայրապետութիւն Մեծին Ներսիսի. —Մարդասիրական արարք նորա և բարեկարգութիւնք. —Ներսէս Հայրենեաց և. օտարութեան մէջ.—Ներսէս պատերազմի դաշտին մէջ: — Շահակ. — Ջաւէն. — Ասպուրակէս:*

ՓԱՌՆԵՐՍԵՀԻ մահէն յետոյ Հայոց նախարարները, կուսակալները և զօրականները, ժողովրդեան մեծ բազմութեամբ հանդերձ, կը ժողովուին Արշակ Թագաւորի մօտ և միաձայն հաւանութեամբ հայրապետ կ՚ընտրեն Մեծն և սքանչելին Ներսէս, Յուսիկի թոռն և Աթանագինէի ու Տիրան Թագաւորի Բամբիշ քրոջ որդին, որ ուսմամբ և բարեպաշտութեամբ զարգացած լինելով ՚ի Կեսարիա, մտած էր զինուորական կարգի մէջ և կը ծառայէր Հայոց արքունեաց մէջ որպէս սենեկապետ և զինակիր Թագաւորի, բարուք քաղցր, հասակաւ բարձր և գեղանձնեայ: Ներսէս այս անակնկալ ընտրութենէն շփոթուելով կ՚աշխատի հրաժարիլ, իւր անձը անարժան համարելով հայրապետական վսեմ կոչման, բայց մեծագումար ժողովին միաձայն աղաղակը զինքը կը պարտաւորէ: Ուստի նախարարք, կուսակալք և զօրականք կը պատրաստուին և Թագաւորի հր-

րովարտակաւ կը տանին զՆերսէս ՚ի Կեսարիա, ձեռնադրել կու տան հայրապետ և բերելով՝ կը կացուցանեն Հայաստանեայց հօտին վրայ :

Ներսէս լիովին կը զգայ իւր անձին մէջ ազգի տարտամ վիճակը, որ արտաքուստ յունական և պարսկական ազդեցութենէն կը տագնապէր, և ՚ի ներքուստ զեղծմանց և երկպառակութեանց մէջ կը տարուբերէր. ուստի իւր բարձր կոչման համեմատ՝ արտաքնոց առջեւ կը հանդիսանայ ազգային իրաւանց իրաւարար, իսկ Ազգին մէջ՝ պարտուց կատարող հայր և ուղղութեան առաջնորդ. այնպէս որ, երբ Ներսիսի կենաց և արարմանց համառօտագիծ պատկերն ներկայացնենք, կը տեսնենք ակներեւ, որ Ներսէս հայրապետութեան մի գեղեցիկ տիպար է, և կարեմք ըմբռնել՝ թէ ինչ է Կաթուղիկոսութիւն կամ Հայրապետութիւն :

Ներսէս ժողով կը գումարէ Տարօնոյ Աշտիշատին մէջ համօրէն եպիսկոպոսներէ և բազմաթիւ աշխարհականներէ և կանոնական սահմանադրութեամբ կը ջանայ մարդասիրութիւնը և ողորմածութիւնը արմատացնել Հայաստանի մէջ և անգթութեան արմատը խլել: Կը շինէ աղքատանոցներ և հիւանդանոցներ ամեն գաւառաց մէջ՝ բորոտներու, ուրուկներու և հաշմերու պատսպարութեան

համար, որոնք մինչեւ այն ժամանակ պիղծ համարուած էին, և անգթութեն երեսէն փախչելով՝ ամայի անապատներու, քարանց ծերպերու և մացառներու մէջ կը բնակէին. և այս աղքատանոցներու և հիւանդանոցներու համար հասոյթ կը նշանակէ աւաններէն, պտղաբեր ագարակներէն և արօտականաց կաթնէն և գեղմանէն, ընդհանուր վերատեսուչ կարգելով իւր Խադ անուն Կորնեցի սարկաւագը։ Կը շինէ ամեն գիւղերու մէջ վանքեր կամ իջեւաններ, որպէս օտարանց անծանօթ ճանապարհորդներու և հիւրերու համար, և որպէս տեղի ապաստանի որբոց, ծերոց և կարօտելոց։ Կը շինէ զանազան տեղերու մէջ մենաստաններ կամ միանձանց խրճիթներ, ժառանգաւորաց եղբայրանոցներ կամ դպրոցներ ամեն գաւառաց մէջ, յունարէն և ասորերէն դպրութեամբ գիտութիւն ծաւալելու համար. և տեսուչներ կը կարգէ Շաղիտա, Եպիփան, Եփրեմ, Գինդ և այլք, այնպէս որ Ներսէսի բարեգործական և ժառանգաւորական շինուածոց թիւը 2000 էն աւելի կը լինի։

Ներսէս ջեղծումները եւ հեթանոսական սովորութիւնները բառնալու համար՝ յորդորանօք և կանոնական սահմանադրութեամբ կ'արգելու մերձաւորաց խնամութիւնը, կամ ամուսնական տոհմակից խառ-

Digitized by Google

նակութիւնը, որով եղծեալ էին մանաւանդ նախարարները, իւրեանց սեպհական ազատութիւնը և ստացուածքը այլոց չանցընելու ապահովութեամբ. կ'արգելու նոյնպէս մեռելոց վրայ կատարուած յուսահատական կոծումները, սեւազգեստին և այլ սնոտիապաշտ ոճիրները, և այսպէս ազգականութիւնը կը սրբէ, ընտանեկան կեանքը կը մաքրէ և քրիստոնէական յուսով կ'ամրապնդէ:

Ներսէս կը շրջի գիւղէ գիւղ, քաղաքէ քաղաք, գաւառէ գաւառ, և իւր հայրապետական խնամքը հաւասարապէս կը տարածէ ամենուն վրայ, հանապազօր սեղանակից կ'ընդունի ոչ միայն նախարարներ և կուսակալներ, այլ մանաւանդ աղքատներ, օտարականներ, կաղեր, կոյրեր, մարմնահարներ և հաշմեալներ, որոց վէրքերը շատ անգամ իւր ձեռքովը կը լուանայ, կ'օծանէ և կը դարմանէ, գիւղական խրճիթները և տանիքները իւր համար հայրապետական դահոյք առնելով:

Ներսէս հայր է հայրենեաց մէջ, իսկ օտարաց առջեւ՝ պաշտպան հայրենեաց. երբ կը լսէ թէ Թէոդոս զօրավարն կը դիմէ Հայաստանը աւերելու, ընդ առաջ կ'ելանէ, կը զիջուցանէ նորա զայրոյթը. կ'երթայ Բիւզանդիոն՝ Հայոց պատանդները յետ կ'առնու Վաղենտիանոսէն, կայսերական

տոհմէն կին կ'առնէ Ողոմպիադա կոյսը Արշակ Թագաւորին, Գնէլը (Արշակայ եղբօրորդին) պատանդութենէ հիւպատոսութեան կ'արժանացնէ, և կը դառնայ 'ի Հայաստան։

Ներսէս Արշակունի բնաջինջ կոտորածէն մնացող մանուկները կ'ազատէ գոմի մէջ կրելով որթով (կողովով), դայեակներու կը յանձնէ, կը սնուցանէ և կը դարմանէ, յորոց և Արծրունեաց նախարարութիւնը կը յառաջանայ։

Ներսէս քաջ կը հասկնայ ազգային միութեան խորհուրդը և զօրութիւնը, և երբ Վաղէս Բիւզանդիոնէն, Շապուհ Պարսկաստանէն և Արշակայ ու Նախարարաց երկպառակութիւնը Հայաստանէն կործանումն կը սպառնան Ազգին և Եկեղեցւոյն, կը յորդորէ կը յանդիմանէ, նախարարները Թագաւորի հետ կը հաշտեցնէ և ուխտել կուտայ՝ Որ Թագաւորը վարուի ուղղութեամբ և նախարարները ծառայէն միամտութեամբ (1)։ Այս ինքն Խադ սարկաւագը Բագրեւանդայ և Արշարունեաց եպիսկոպոս ձեռնադրելով և Հայոց աշխարհի վերակացութիւնը իրեն յանձնելով երկրորդանգամ կ'երթայ Բիւզանդիոն Արշակայ Թղթով Վաղէսի սպառնալիքները զիջուցանելու։

(1) Խոր. Հատուած. Գ. Գլ. ԻԲ.

Ներսէս հալածանք կը կրէ Վաղեսէն, արիոսականաց առաջարկութիւնը կը մերժէ, (որոնք նորա ամեն խնդիրները կը խոստանային կատարել հոգեմարտն Մակեդոն եպիսկոպոսի ձեռքով և վտանգէ ազատել՝ եթէ յօժարէր իրենց դաւանակից լինիլ.) կ'աքսորուի մի ամայի և անմարդաբնակ կղզւոյ մէջ, խոստաքուռ լինելով և տաղնապելով 'ի սէր ազատութեան հայրենի աշխարհին:

Ներսէս Վաղէսի մահէն զկնի կ'ազատի աքսորանքէն, կ'արժանանայ Մեծին Թէոդոսի մեծարանացը, կընկերկայանայ Կոստանդնուպօլսոյ տիեզերական ժողովին, ուր, 381 Թըւականին, գումարուած էին 150 հայրապետք. ապա կը դառնայ 'ի Հայաստան, կը լսէ սպանութեանց և անգթութեանց դառժեր, (մանաւանդ Գնելի սպանումն Արշակայ ձեռքով և Ողոմպիադայի Թիւնաւորին փառանձեմի սադրանօք և Մրջիւնիկ քահանայի ոճրագործութեամբ,) սիրտը կը ճմլի. կը յանդիմանէ, կը նախատէ և կը յորդորէ 'ի սէր և 'ի միութիւն:

Ներսէս երբ կը տեսնէ թէ՝ Շապուհ Հայաստանը կ'աւերէ, բիւրաւոր քրիստոնեայք կը ջարդէ և կը գերէ. իսկ Հայոց կուսակալներն՝ փոխանակ աւերման առաջն առնելու՝ Արշակէն կը բողոքեն, ամենքը կը ժողովէ, կը համոզէ, որ հնազանդ լինին

հայրենի թագաւորին և միաբան պատերազմին մոգեկրօնիկ Շապուհին դէմ, այս նըշանաւոր խօսքերը աւանդելով. «Եթէ բիւր չար իցէ Արշակ, սակայն աստուածապաշտ է. և եթէ մեղաւոր եւս իցէ, սակայն թագաւոր ձեր է (1) »։

Ներսէս կը տեսնէ Հայաստանի աղէտները, Շապուհի անգթութիւնները, Մերուժանի ուրացութիւնն, եպիսկոպոսաց կոպանքներն, նախարարաց կանանց խեղդամահ կախուիլն բերդերու պարիսպներէն. սակայն չը յուսահատիր, Պապը կը թագաւորեցնէ Արշակայ տեղ՝ Թէոդոսի օգնականութեամբ, Հայոց բանակի հետ պատերազմի դաշտն կ'ելնէ ՚ի Ձիրաւ, ահուելի ճակատամարտին ժամանակ՝ Նպատ լեռը կը բարձրանայ Մովսիսի նման, իւր հետ կը տանի և Պապը. ինքը բազկատարած կ'աղօթէ Հայաստանի փրկութեան համար, և զՊապ նոր տեսարանով յուղղութիւն ածել կը ջանայ. Պարսիկը կը յաղթուի, և Մերուժան, փոխանակ թագի, եռացեալ շամփրով կը պսակուի Սմբատ սպետէն։

Ներսէս կը կատարէ այսպէս իւր հայրապետական պարտքը, աղքատները սփոփելով իւրեանց խրճիթներուն մէջ, կայսրները ա-

(1) Բուզ. Դպր. Դ. Գլ. ԺԱ.

մոքելով իւրեանց պալատներուն մէջ, զօրականները քաջալերելով պատերազմի դաշտին մէջ. Թագաւոր և Նախարար խրատելով և կշտամբելով ազգային ժողովներուն մէջ, և 'ի վերջոյ Պապայ ձեռքով կը Թունաւորուի և կը Թաղուի Թիլն աւանի մէջ։

Ներսիսի մահէն յետոյ հայրապետ կ'ընտրուի (384 ին) Շահակ Մանազկերտացի, Աղբիանոսի ազգականութենէն, Հայաստանի մէջ ձեռնադրուելով և ոչ 'ի Կեսարիա, վասն զի Ներսիսի ժամանակ համօրէն ազգի հաւանութեամբ արդէն դադրած էր Կեսարիոյ մէջ ձեռնադրուելու սովորութիւնը։

Շահակին կը յաջորդէ իւր ազգականն Զաւէն, Վարազդատայ Թագաւորութեան ժամանակ։

Զաւէնին կը յաջորդէ իւր ազգականն Ասպուրակէս, այն աղետալի միջոցին, երբ Հայոց Թագաւորութիւնը արդէն երկու էր բաժնուած, և կ'իշխէին Պապայ երկու որդիքն՝ Արշակ և Վաղարշակ, մէկը յունական բաժնի մէջ, իսկ միւսն պարսկական։

# Ե.

Քաղաքական և կրօնական վիճակ Հայաստանի. —Բռնաբարութիւն յունական և պարսկական. —Երկու մեծ ախոյեանք Եկեղեցւոյ եւ Հայրենեաց՝ Սահակ եւ Մեսրոպ:

ՄԻՆՉԴԵՌ, մի կողմէն Հայաստանի քաղաքային շէնքը կը տատանի և կը քայքայի յունական և պարսկական քինախնդիր հարստահարութիւններէն, միւս կողմէն Քրիստոնէութիւնը իւր փրկարար ազդեցութեամբ հոգեւոր շինութեան հիմունքները կ'ամրացնէ, Արշակունի մոլի թագաւորաց և խռովայոյզ նախարարաց դէմ հանելով աւետարանական այնպիսի ընտիր Մշակներ, որոնք առանց յուսահատելու աշխատներէ և տագնապներէ, մի կողմէն կ'արտասուէն հայրենեաց իշխանական զօրութեան բաժանման և անկման վրայ, և միւս կողմէն արտասուքները կը սրբեն և բարոյական ոյժը զօրացնել կը ջանան: Այս ընտիր Մշակներուն պարագլուխ կը դասուին Սահակ Պարթեւ և Մեսրոպ Մաշտոց, որոնք իբրեւ ամոլք Հայաստանի հոգեւոր մշակութեան, քրտամբք և արտասուօք կը ցանեն մտաւոր զարգացման սերմերը և իրենց յաջորդաց համար առատ և ուրախ հունձ կը պատրաստեն:

Digitized by Google

Սահակ, Մեծին Ներսիսի որդին էր, Բիւզանդիոնի մէջ հելլենական դպրութեամբ վարժուած, և համանման իւր հօրը՝ հայրենեաց ցաւը զգացող և լուսոյ ծաւալման համար խորհող ու աշխատող։ Իսկ Մեսրոպ էր Մեծին Ներսիսի աշակերտը, Տարօնոյ Հացեկաց գիւղէն, Վարդան անուն մի առաքինի մարդոյ զաւակ, որ Ներսիսի կենդանութեան ժամանակ նօտար էր հայրապետական գործքերու. իսկ նորա վախճանէն զկնի Հայոց արքունական դիւանին ատենադպիր կարգեցաւ, վասն զի գիտակ էր յոյն, ասորի և պարսիկ դպրութեանց, մանաւանդ զի հմուտ էր նա և աշխարհական կարգաց և իւր մեծանուն ուսուցչի նման զինուորական արուեստի մէջ վարժուած։

Սահակ Պարթեւ, Ասպուրակէս կաթողիկոսի մահէն զկնի, Խոսրով Գի և Ազգի հաւանութեամբ հայրապետ կ'ընտրուի. բայց որովհետեւ պարսկական մոգակրօնութիւնը իշխել կը ձգտէր ոչ միայն Հայաստանի քաղաքային վարչութեան, այլ և կրօնականին, ուստի նորընտիր հայրապետն ոմանց քսութեամբ կ'ամբաստանուի և Խոսրովի հետ միասին Պարսից Դուռն կը կոչուին. սակայն կ'ընդդիմանան և չեն երթար։ Արեաց թագաւորն Շապուհ Գ. (ըստ այլոց Արտաշիր Բ.) կը բարբոքի դառնագոյն ցասմամբ և իւր Ար

տաշիր որդին (ըստ այլոց Վռամ) մեծ զօր-քով Հայաստան կ'ուղարկէ. շատ նախարար-ներ իշխանութենէ կը հանէ, Ս. Սահակը հայրապետութենէ կը դադրեցնէ և Խոս-րովը կապելով կը տանի և Անյուշ բերդին մէջ կը կալանաւորէ, որոյ տեղը կը թագա-ւորէ Հայոց՝ իւր եղբայրը Վռամշապուհ կամ Ստահրաշապուհ:

Շապուհին կը յաջորդէ Արտաշիր, և Ս. Սահակ վերստին իւր հայրապետական պաշ-տօնը կը շարունակէ և կ'ուղեւորի առ Ար-տաշիր՝ Հայաստանի դառն աղէտներուն դարման գտնելու համար: Շատ մեծարանք կը գտնէ Արտաշիրէն, Կամսարական և Ամա-տունի նախարարութեանց պատիւն կը վե-րահաստատէ (Թէպէտ և նախնի կարգէն ստոր,) Մամիկոնեան ցեղը նախարարութեան 5դ կարգը կը բարձրացնէ, իւր Սահակա-նոյշ դստեր ամուսինն՝ Համազասպ Մա-միկոնեան սպարապետութեան կը հասցնէ և Արտաշրի հրովարտակաւ կը դառնայ 'ի Հա-յաստան: Սակայն հաշտարարական և խա-ղաղասիրական պայմանները երկարատեւ և հաստատուն չեն մնար, և չէին կարող մնալ այն տեղ, ուր իւրաքանչիւր նոր թագաւոր նորանոր կրից և փոփոխութեանց էր ենթա-կայ, առանց օրինաւորութեան հպատակե-լու. և ուր յունական և պարսկական աղ-

դեցութիւնները անդադար կը մաքառէին
իրարու ձեռքէ յափշտակել Հայաստանը և
կամ իսպառ կործանել ։ Պարսիկները կ'աւե-
րէին յայտնի յարձակումներով. իսկ Յոյնք
կը պատրէին օգնականութեան սուտ խոս-
տումներով, և Պարսից հետ աւելի կը թըշ-
նամացնէին ։

Հայոց գրերու գիւտը կը կատարուի և
Յունաց նենգ բարեկամութեան պատրուա-
կը կը բացուի ։ Մ'ինչդեռ Սահակ և Մեսրոպ
Պարսից բաժնի մէջ անարգել վարժարաններ
կը բանան հայրենի դպրութիւնը տարածե-
լու, Յունաց բաժնի մէջ կ'արգելուին նոյնն
առնելու ։ Պարսիկները կը կասկածին Հայոց
քրիստոնէական կրօնակցութենէն Յունաց
հետ, և Յոյնք կը կասկածին Հայոց քաղա-
քական միտումէն առ Պարսիկս . իսկ Հայք
այս երկու կասկածոտ ազգաց մէջ անդադար
կը տառապէին ։

Վռամշապուհ կը մեռնի և Ս. Սահակ
Պարսից Դուռը գնալով Խոսրովը կալանաւո-
րութենէ կ'ազատէ և կրկին կը թագաւորե-
ցընէ . բայց հազիւ թէ մի տարի կը տեւէ,
կը վախճանի և տեղը կ'անցնի Պարսիկ իշ-
խան, այն է Յազկերտի որդին Շապուհ,
որ քանի մի տարի մնալով իւր հօր հիւան-
դութեան պատճառաւ Պարսկաստան կը
դառնայ և այն տեղ կը սպաննուի ։

Digitized by Google

Յազկերտ Ա.ի տեղ կը Թագաւորէ Վըռամ Բ. կը բարեկամանայ Յունաց հետ և Հայաստանի մէջ կրօնի հալածանաց հըրդեհը. վասն զի, ինչպէս Յունաց և Պարսից իրարու դէմ ունեցած Թշնամութիւնը, նոյնպէս և իրարու հետ ունեցած ժամանակաւոր բարեկամութիւնը, երկուքն եւս վընասակար էին Հայաստանին. վասն զի Թշնամութեան ժամանակ կռուակցութիւններ և պառակտումներ կը յարուցանէին. իսկ բարեկամութեան ժամանակ՝ երկու տէրութիւնքը իրարմէ չըկասկածելով՝ առաւել կը խստանային Հայոց ազգի վրայ, ուրոյն ուրոյն վրէժխնդիր և քինախնդիր ըլլալով։

Ս. Սահակ Վռամի հալածանքէն խոյս տալով՝ կ'անցնի Յունաց բաժինը, իւր հայրապետական գործունէութեանը ապահով ասպարէզ գտնելու և հայերէն դպրութեան ծաւալման համար աշխատելու։ Սակայն յունական ոխերիմ ատելութիւնը արգելք կը լինի նորա հայրենասիրական սուրբ նպատակին։ Ս. Սահակ այս կոյր ատելութեան առաջն առնելու համար՝ կը ստիպուի զՄեսրոպ և իւր Թոռն Վարդան Մամիկոնեան Բիւզանդիոն ղրկել, Թղթեր գրելով Թէոդոս կայսեր, Ատտիկոս Պատրիարքին և Անատոլիս զօրավարին։ Մեսրոպ, որ իւր ճանապարհորդութեանց մէջ անգամ միշտ կ'ուսուցանէր

և աշակերտաց հետ կը շրջագայէր, ներկայ ուղեւորութեան ժամանակ, նոցա մէկ մասը կը թողու Մելիտինէի մէջ, օրինաւոր դաստիարակները յանձնելով, իսկ միւս մասով հանդերձ կը մտնէ Բիւզանդիոն և կը ներկայանայ Թէոդոս կայսեր, կանխապէս մեծարանք ու յանձնարարականներ ընդունելով Անատօլիսէն և Ատտիկոսէն ։ Թէոդոս զմայլելով Մեսրոպի հմտութեան և քաղցրաբարոյութեան վրայ կը կատարէ նորա խնդիրները, Սահակին և Մեսրոպին Վարդապետ (Ակումիտ կամ Ակոմիտ) անուանելով. իսկ զՎարդան՝ ստրատելատութեան աստիճանի կը հասցնէ ։ Մեսրոպ իւր հետ ունեցած աշակերտները կը թողու Բիւզանդիոնի մէջ յունարէն սովորելու համար և կը դառնայ Հայաստան, հետը բերելով Ս. Սահակայ թղթոց պատասխանները, որոց մէջ Թէոդոս և Ատտիկոս կը փութան եւ կը ցաւին, որ հայկական դրոց դիւտի համար Ասորեստան դիմած են և ոչ 'ի Բիւզանդիոն, ուր կը ծաղկէին ուսմունք ու գիտութիւնք և կ'աթոռակալէր Յովհան Ոսկեբերան ։

Մեսրոպ կը սկսի այնուհետեւ վարժարաններ բանալ Արեւմտեան Հայաստանի մէջ. իսկ Ս. Սահակ կ'անցնի Պարսից մասն, Սմբատ և Վարդան նախարարներու հետ, անցած աղէտներու անյիշութեան դաշնա-

գիր մի կնքել կը տայ Վռամ Ե.ին, և Վռամշապուհի 18 ամեայ որդին Արտաշէս կը թագաւորեցնէ, որպէս զի չը բարձուի Հայաստանի արքունական թագը։

Յետ ժամանակաց Մեսրոպն եւս, աշակերտներ թողլով Յունաց բաժնի մէջ, կը դառնայ Արարատեան գաւառը և անտի 'ի Գողթն, ուր առաջին անգամ վաստակած էր վարդապետութեամբ։

Շատ ժամանակ չանցնիր, սաստիկ խռովութիւն կը յուզի նախարարաց մէջ՝ մանուկ թագաւորի արարմանց դէմ, որոնք կը ջանան Ս. Հայրապետն եւս մասնակից առնել իւրեանց ազգասպանութեան խորհրդին և չարախօսել առ թագաւորն Պարսից։ Բայց հայրենի թագին պաշտպան՝ գթոտ հովիւը, թէ և կը խոստովանի Արտաշիսի մեղկ և մոլի վարքը, սակայն կը յիշեցնէ միանգամայն և Պարսից գազանութիւնը, կը մերժէ նախարարաց դաւադիր խորհուրդը, այս նշանաւոր խօսքերը արտասանելով. «Ինձ քաւ լիցի մատնել գայլոց զիմ մոլորեալ ոչխար և ոչ պատել զբեկեալն կամ զհիւանդացեալն, այլ գահավէժ առնել։ . . . Եւ զիա՞րդ լինիցի այդ՝ փոխանակել զիմ ախտացեալ ոչխար ընդ առողջ գազանի, որոյ առողջութիւնն է մեզ պատուհաս» (1)։

(1) Խոր. Գ. ԿԳ.

Նախարարները, փոխանակ յետս կասե-լու ազգամատնութենէ, կը միաբանին՝ Թագաւորութեան հետ հայրապետութիւնն ևս գահավէժ առնել։ Սուրմակ երէցի հետ Պարսից դուռն կ'երթան, կ'ամբաստանեն Թագաւորը և Հայրապետը, երկուքն ևս այն տեղ կը կոչեն, և գահընկէց կ'առնեն. առաջնոյն տեղ Վեհ Միհրշապուհ պարսիկ կը Մարզպան ընդունելով, իսկ երկրորդին տեղ՝ Սուրմակ երէցը, 'ի վարձ իւր չարախօսութեան։

Սուրմակ շուտով կը մերժուի և կը յաջորդէ Բրքիշոյ, յորմէ տաղտկանալով երկու կը բաժնուին նախարարները, ոմանք վերըստին Ս. Սահակն կը խնդրեն, և ոմանք ուրիշ մէկը։ Պարսից Թագաւորը այս երկպառակութեան մէջ իւր յայտնի օգուտը նշմարելով, երկու կուսակցութեան առաջարկութիւնն ևս կը կատարէ։ Ս. Սահակը վերըստին կը հաստատէ այն պայմանաւ, որ միայն վարդապետական և կրօնական գործքերու խառնուի, և Շմուէլ անուն մէկը կը կարգէ, որ Մարզպանաց հետ Հայոց աշխարհի հարկաց ժողովման և դատաստանական քննութեան մասնակցի։

Ս. Սահակ, Արշակունի Թագաւորութեան բարձման համար սիրտը դառնացած և հայրապետութեան աղէտներու վրայ կա-

թեւէր խոցուած, սքանչելի կերպիւ կ'առե-
նաքանէ այն ամենատխուր աւուր մէջ, ո-
րուն վրայ կըդմայլի Վռամ, մազերով հան-
դերձ, և կը հրամայէ արծաթ տալ Ա. Հայ-
րապետին. սակայն նա մերժելով կը մերժէ
և համարձակապէս Նախարարաց գահն ու
պարսիկ մարզպանութեան բարձումն կըպա-
հանջէ: Ա. Հայրապետն կը դառնայ 'ի Հա-
յաստան, և երբ իւր հակաթոռն Շմուէլ,
ծուլութեան ու ագահութեան մատնուելով
և տաղտկալի դառնալով ժողովրդին, կը փախ-
ճանի, կրկին կը խնդրուի ընդհանուր հայ-
րապետութեան պաշտօնը վարել, բայց նա
յանձն չառնուր և սակաւ ժամանակէն յե-
տոյ՝ հիւանդանալով՝ կը վախճանի Բլուր
գիւղի մէջ և կը թաղուի Տարօնոյ Աշտիշատ
աւանին մէջ: Ա. Սահակին կը տեղակալէ
Մեսրոպ. բայց վեց ամսէն զկնի կը փոխի
աշխարհէս, որոյ երկրաւոր նշխարքն ոմանք
կը փափաքին իւր բնագաւառն տանել 'ի Տա-
րօն և անդ թաղել, ոմանք իւր նախկին վար-
դապետութեան տեղին՝ 'ի Գողթն, և ոմանք
'ի Վաղարշապատ, բայց 'ի վերջոյ Վահան
Ամատունի կը տանի իւր Օշական գիւղն,
մերձ Վաղարշապատու, և անդ կը հանգու-
ցանէ:

Այսպէս կը կնքէն իւրեանց բազմար-
դիւն կեանքը Հայաստանի Լուսաւորու-

Digitized by Google

Թեան երկու ամոլքն Սահակ և Մեսրոպ,
որոնք ուսուցանէր Վռամշապուհի հետ
միասին հայրենի դպրութեան տաճարի
նուիրական Եռոտանին կը լինին : Այսպէս
կը ներկայացնէ Սահակայ եւ Մեսրոպայ
կենաց չքնաղ պատկերը համառօտաբան
Խորենացին, Սահակայ համար ասելով.
«Մանկանացու ծնեալ, անմահ զիւրն յիշա-
տակ եթող. պատուեաց զպատկերն (զաստ-
ուածանմանութիւնն), պատկառեաց 'ի կոչ-
նականէն, փոխանորդեաց զկեանսն, և այս-
քան կենցաղավարեաց՝ իբր զի ոչ պակասու-
թիւն իւիք մասն 'ի ծերութենէն եղանիլ և
ոչ յախտից առընդունել»: Իսկ Մեսրոպայ
համար կը յաւելու թէ, «Գերազանցեալ քան
զամենայն, որք զայնու ժամանակաւ էին առա-
քինիք: Քանզի ամբարտաւանութիւն և մար-
դահաճութիւն 'ի նորա վարս տեղի գտա-
նել երբէք ոչ կարացին, այլ հեզ և լաւա-
կամ և բարեխորհուրդ գոլով և երկնայնոցն
զարդարեալ սովորութեամբք՝ զինքն բոլորից
ցուցանէր: Այսն զի գոյր տեսլեամբ հրեշտա-
կական, մտօք ծննդական, բանիւք պայծառ,
գործովք ժուժկալ, մարմնով արտափայլեալ,
սպասիւք անճառ, խորհրդակցութեամբ
մեծ, հաւատով ուղիղ, յուսով համբերող,
սիրով անկեղծաւոր, ուսուցանելով անձանձ-
րոյթ»:

Իսկ մեք, այսքանը խօսելով Սահակայ և Մեսրոպայ այն գործոց վրայ, որոնք աւելի զուգակից էին Հայրենեաց քաղաքական վիճակին, անցնինք այժմ նոցա առաւել մեծ սխրագործութեան վրայ խօսելու, այն է հայերէնի գրոց գիւտի, վարժարանական հաստատութեանց և թարգմանական մեծարդիւն պարապմանց։

---

## Զ.

Բանասիրական հարեւանցի ակնարկ հին նշանագրաց վրայ.— Հայագիր մատենագրութիւն Հայոց՝ որպէս արգասիք կարեւորութեան քրիստոնէական ուսման.— Պատմութիւն գիւտի Հայկական գրոց.— Քրիստոնէական և ուսումնասիրական առաքելութիւնք Մեսրոպայ.— Նշանագիրք Վրաց և Աղուանից, որպէս պտուղ վաստակոց Մեսրոպայ.— Թարգմանութիւն Աստուածաշունչ Գրոց.— Գեղեցիկ տեսարան դաստիարակութեան և կրթութեան.— Աշակերտք Սահակայ և Մեսրոպայ։

ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ՈՒՍՄԱՆ կարեւորութիւնը ծնաւ Հայաստանի մէջ հայկական գրաւոր մատենագրութիւնը, որ Քրիստոնէութեան ամենամեծ պարգեւներէն մին է մեր ազգի համար։ Աւետարանական վարդապետութեանը հարկաւոր էր տեւականութիւն և խորարմատ հաստատութիւն, և տեւականութեան համար հարկաւոր էին

վարժարանք, զորս բացին Ս. Գրիգոր և Մե-ծըն Ներսէս։ Բայց այս հայկական վարժարաններու իրական յառաջդիմութեան համար բաւական չէին յունարէն և ասորերէն նշանագիրները, հարկաւոր էր անշուշտ բնիկ հայեցի գիր և դպրութիւն։ Ահա այս մեծ պիտոյքը լցուցին Սահակ և Մեսրոպ, ուսումնասէր Վռամշապուհի թագաւորութեան ժամանակ, հայկական գրերը գտնելով կամ կանոնաւորելով։ Սակայն պատմական բանասիրութիւնը, զանազան փաստերու վրայ յենլով, շատ հին դարերու մէջ անգամ կը խոստովանի հայերէն գրերու գոյութիւն, թէպէտ և այլատարազ և անկատար։ Պատմական բանասիրութիւնը կը հաւաստէ, որ Ասիոյ ընդարձակ գաւառները գրաւող հին ազգերը՝ գրեթէ Եգիպտացւոց նման խորհրդաւոր նշանագրեր կը բանեցնէին, որոց ներկայ ժամանակիս բանասէրները Սեպաձև կամ Բևեռաձև անունը կու տան։ Եւ որովհետև, Հայք ևս նոյն ազգերու նման քաղաքականութիւն ունէին, անշուշտ նոյն Բևեռաձև գրերը կը գործածէին։ Այս մասին կը վկայէ Փիլոստրատոս և աշակերտք Ս. Մեսրոպայ՝ Խորենացին, Փարպեցին և Կորիւն։ Այս տեսակ նշանագրաց կիրառութիւնը Հայաստանի մէջ հաւանաբար Վաղարշակէն առաջ կը՛ համարուի։

Digitized by Google

Սակայն այս բաբելական կամ փիւնիկեան նշանագիրքը, զորս շատ ազգեր գործ կըդնէին, ինչպէս և Հայք, բաւական չէին Հայոց լեզուի համար, վասն զի քանիերկու հատ միայն էին։ Ուստի և Հայք, մինչեւ Լուսաւորչի և Մեսրոպայ ժամանակները ստիպուած էին քաղաքական դիւանագրութեանց համար Պահլաւացի գրեր գործ դնել (և ոչ Զենտի, ինչպէս ոմանք կը կարծեն), իսկ եկեղեցական գրուածոց համար Յունաց և Ասորոց տառեր։ Եւ սակայն այս ևս բաւական չէր Հայոց լեզուի լրական հնչմանց համար. ուստի սոյն պակասութիւնն էր, որ Մեսրոպ կը խորհէր լրացուցանել։

Այս տեղէն պարզ կը նշմարուի ուրեմն, որ եթէ նախնի ժամանակաց մէջ Հայոց գրեր ևս եղած են, անկատարութեան պատճառաւ իսպառ անգործածագիր մնացած են։ Թէպէտ և մեր պատմաբաններէն ոմանք կ'աւանդեն, որ Մեսրոպ միայն ձայնաւոր գրերը գտած է. ոմանք կ'ասեն, որ նորա ջանքը գլխաւորապէս մեր այբուբենին կրկնակ գրերուն համար եղած է, որոնք օտար լեզուաց մէջ չեն գտնուիր և մեր լեզուի հնչման ճոխութիւնը կը կազմեն. և ոմանք կ'ասեն, տասն և չորս տառք միայն գտած է։ Սակայն այս անուրանալի է որ մեր գրերու անթերի գիւտը, կանոնաւորութիւնը և կատա-

Digitized by Google

րեալ կիրառութիւնը Սահակայ և Մեսրոպայ ջանից արդիւնք են, և այս արդիւնքը քրիստոնէական ուսման կարեւորութենէն ծնունդ առած լինելով՝ համարուած է որպէս աստուածային մտաց գործ, որպէս նուիրական միջոց սրտի և մտքի մշակութեան, որպէս հաստատուն անօթ՝ մարդու հոգւոյ և լեզուի ճոխութիւնները երկար դարեր կրելու և յաւերժացնելու։ Պատմենք ուրեմն, թէ ինչպէս կատարուած է այս շահաւէտ գիւտը։

Մեսրոպ, շուրջ եօթն տարի, Հայոց արքունեաց մէջ ատենադպրութեան պաշտօն վարելէն զկնի՝ կ'անցնի Գողթան և Սիւնեաց գաւառները և ջանադիր կը լինի տեղւոյն վայրենաբարոյ և խուժադուժ ժողովուրդը կրթել աստուածային ուսման մէջ, բազմաթիւ աշակերտներ կը ժողովէ և յաւէտ Աստուածաշունչ Գրոց ուսման մէջ վարժելու կը ճգնի։ Սակայն Հայկական գրեր չը լինելու պատճառաւ՝ շատ դժուարութիւններ կը կրէ և խորին թախծութեամբ կը տրտմի, երբ կը տեսնէ թէ Ասորի և Յոյն բարբառով կը կարդացուի Ս. Գիրքը Հայաստանեայց եկեղեցիներու և վանքերու մէջ։ Պօղոս առաքեալի հառաչանքները կը հանէ Մեսրոպ իւր սրտի խորքէն. "Ուխտիւք խնդրէի նզով լինել 'ի Քրիստոսէ վասն ազգա

կանանց իմոց և եղբարց », և կը փափաքի հայկական գրեր պատրաստել։ Այս սուրբ բաղձանքով լցուած՝ կը դառնայ 'ի Վաղարշապատ, ու Ս. Սահակին կը հաղորդէ իւր սրտի իղձը, և նորա սրտին մէջ ևս նոյն եռանդը վառուած կը տեսնէ։ Ս. Հայրապետը ժողով կը գումարէ, խորհրդակցութե 'ի կատար հանել այս նուիրական գործը, ուր ներկայ կը գտնուի և Վռամշապուհ ուսումնասէր թագաւորը։ Թագաւորը կը պատմէ թէ ինքն Հաբէլ անուն մի քահանայէ լսած է, որ Դանիէլ ասորի եպիսկոպոսի մօտ կը գտնուին Հայերէն նշանագիրք։ Ժողովը կը խնդրէ թագաւորէն, որ մի մարդ ղրկէ Դանիէլ եպիսկոպոսէն տողտեղեկութիւն ստանալու համար։ Այս նըպատակաւ թագաւորական տանէն իմաստուն և փութաջան իշխան մի կ'որոշուի Վահրիճ անուն, որ թագաւորէն և եպիսկոպոսներէն յանձնարարական թղթեր առնելով, կ'իջնէ Միջագետք և այն տեղէն Հաբէլ քահանայի հետ միասին կ'երթայ Դանիէլի մօտ։ Կը ստանան Դանիէլեան նըշանագիրքը, որ անշուշտ հին հայկական քսաներկու նշանագիրքն էին, բաբելականէն կամ փիւնիկականէն առնուած, և հընչմունքները սովորելով՝ կը դառնան 'ի Հայաստան և կը ներկայացնեն թագաւորին և Ս.

Digitized by Google

Սահակին ու Մեսրոպին։ Սահակ և Մես-րոպ Թագաւորի խորհրդով մանուկներ կը ժողովեն և երկու տարի անընդհատ կը ջանան նոյն գրերու կիրառութիւնը ընդհանրացնել. սակայն փորձով կը համոզուին, որ այն գրերը հայկական հնչման չեն յարմարիր, ուստի և կը խորհին, որ Մեսրոպ անձամբ երթայ Դանիէլի մօտ, աւելի տեղեկութիւն ստանալու համար։ Մեսրոպ իւր աշակերտներէն աւելի մտավարժները հետը առնլով կ'ուղեւորի դէպ 'ի Միջագետք։ Բաւական ժամանակ կը մնայ Դանիէլ եպիսկոպոսի մօտ և յուսացած օգուտը չը կարողանալով քաղել՝ կը տրտմի սաստիկ մտատանջութեամբ։ Բայց որպէս զի, իւր ուղեւորութիւնն անօգուտ անցած չը լինի, երկու կարգ կը բաժնէ իւր աշակերտները և կը թողու անդ, որ մի կարգը՝ Ասորի, իսկ միւսը՝ Յոյն դպրութեանց մէջ վարժին և ինքը հետն առնլով իւր աւագագոյն աշակերտները՝ Յովհան Եկեղեցացի, և Յովսէփ Պաղնացի, կը խորհի Հայաստան դառնալ։

Մեսրոպ կը լսէ որ Եդեսիա քաղաքին մէջ Պղատոն անուն մի հանճարեղ և ճարտարամիտ մարդ կայ, քաղաքական դիւանին վերակացու, որ կարող է իրեն ձեռնտու լինիլ Հայկական գրոց գիւտի համար։ Մեսրոպ ուրախանալով ուղղակի կ'երթայ Պղա-

տոսին մօտ և իւր մտաց խորհուրդը կը յայտնէ ։ Պղատոս Մեսրոպայ հետ երկար խորհրդակցելէն յետոյ՝ կը խոստովանի որ իւր կարողութենէն վեր է նորա բաղձանաց կատարումն , ուստի և կ'առաջարկէ իւր վարդապետ Եպիփանոսին երթալ , գուցէ օգուտ մի քաղելու ։ Մեսրոպ յանձնարարական թղթեր կ'առնու թէ Պղատոսէն և թէ տեղւոյն Սաբուլա կամ Բաբելաս եպիսկոպոսէն և կ'իջնէ Փիւնիկաստան , ուր լսելով որ Եպիփանոս արդէն վախճանած է , շատ կը տրտմի ։ Սակայն , առանց յուսահատելու , այն տեղէն կը դիմէ Սամոսացւոց քաղաքը , ուր մեծ համբաւ ստացած էր Հռուփանոս , Եպիփանոսին աշակերտը , և դարձեալ յոյսը ունայն կ'ելնէ ։

Մեսրոպ այնուհետև մարդկային հնարագիտութենէ յոյսը կտրելով՝ միմիայն աստուածային օժանդակութեան կը դիմէ. և այս երկիւղած ապաւինութեան ժամանակ , կ'աւանդեն պատմիչք , որ կը յափշտակուի տեսլեամբ և իւր առաջին քար մի կը տեսնէ , որուն վրայ աներևոյթ թաթ մի այլ և այլ տառեր կը գրէ , և որոց ձևերը Մեսրոպի սրտին մէջ կը պատկերանան ։ Մեսրոպ իսկոյն կը դիմէ Հռուփանոսին , իւր մտքի մէջ տպաւորուած կերպերը կը յայտնէ , և Հռուփանոս գրի առնլով՝ վայելուչ ձևեր կուտայ.

Digitized by Google

և այսպէս կը կատարուի Հայկական գրոց գիւտը։ Բայց թէ ինչ մեծութիւն ունի այս տեսլեան կերպաւորութիւնը երկիւղած սրտերուն համար, և ինչ նշանակութիւն բանասիրական հետազօտութեան առջև, այդ կը թողունք որ իւրաքանչիւր մարդ ինքն խելամտէ։

Մեսրոպ հայկական նոր գրերով կըսկսի թարգմանել Աստուածաշնչէն Առակաց գիրքը, իբրեւ նախապատուող իւր քրտնաթոր մշակութեան և ուրախանալով յաջողութեան վրայ՝ կը դառնայ ՚ի Հայաստան (1)։ Վռամշապուհ թագաւորն և Սահակ հայրապետն սոյն ուրախական լուրն առնելով կը դիմա-

(1) Մեսրոպեան նշանագիրք, (ինչպէս գրուած է Հ. Գ. Զ. Հայերէն գրք. Պատմութեան մէջ) ըստ ձեւոյն զանազան կերպարանափոխութիւններ կրած են զանազան դարուց մէջ, և պէսպէս անուններ ստացած, որոց գլխաւորներն երեք են, Երկաթագիր, Բոլորագիր և Նօտրգիր։ Երկաթագիրը որ Մեսրոպայ հնարածն է, տեւած է մինչեւ ԺԴ դարը, և երկաթի գրչով կամ երկաթի ոքսիտէ շինուած թանաքով գրուելուն համար երկաթագիր կոչուած է. սակայն ԺԴ դարէն՝ վերին և ստորին կողմերը կարճուելով կոչուած է նոյնպէս և Միջին Երկաթագիր. իսկ նախնականները գլխագրի տեղ գործածուած են. Ընթերցման դիւրութեան համար ԺԲ դարու մէջ փոփոխուած են նշանագիրք և ստացած Բոլորագիր անուն, որ կամաց կամաց կանոնաւորուելով այժմեան տպագրութեան սովորական գիրն դարձած են։ Բոլորագրոյն աւելի դիւրացած ձեւն է Նօտրայ կամ Նօտր գիրն, որ հասարակ գրութեանց մէջ կը գործածուէր և այժմ կը գործածուի։ Միջին Երկաթագիրը հնարուելէն յետոյ՝ Երկաթագրի գործածութիւնը մասամբ դադրած է, նոյնպէս և բոլորագրոյն գտնուելէն յետոյ՝ Միջին Երկաթագիրը խափան-

Digitized by Google

ւորէն Մեսրոպին Սահ գետի ափանց վրայ, բազմութեամբ նախարարաց և ռամկաց մարդկան, կ'ողջագուրէն զնա անպատում հոգեզմայլութեամբ, և ցնծութեան երգերով Թագաւորանիստ քաղաքն կը դառնան, ուր քանի մի օր կը տօնեն Տօն ցնծութեան հայկական նորագիւտ նշանագրաց և հայեցի դպրութեան դարագլխոյն համար։

Հրաման կը հանէ այնուհետեւ Թագաւորն, հաճութեամբ հայրապետին վարժարաններ հաստատել ամէն տեղ, մանուկներ ժողովել հայերէն դպրութեան և գրչութեան մէջ վարժելու և յունարէն ու ասորերէն գրուած մատեանները հայագիր գաղափարելու։ Իսկ Մեսրոպ հրաման ընդունելով կ'անցնի Մարաստան, տեղւոյն անկիրթ ժողովուրդը հրահանգելու, և թէ նոցա և թէ հանուր Հայաստանի օգտին համար ձեռնամուխ կը լինի Աստուածաշունչ Գրոց Թարգմանութեանը, օգնական ունենալով Տիրայր Խորձենացին, Մուշէ Տարօնացին և այլք, և անտի կ'իջնէ 'ի Գողթան, իւր նախկին վարդապետութեան տեղին, և Շաբիթ իշխանի ձեռնտուութեամբ

ուած է, բայց Նօտր գրի հնարուելէն յետոյ՝ Բոլորագիրը ամենեւին վերջացած չէ, այլ գործածուած է ընտիր ձեռագրաց մէջ։ Մեսրոպեան նշանագրաց այս կերպարանափոխութիւնը ակներեւ կը նշմարուի զանազան դարուց ձեռագրաց մէջ։

Digitized by Google

կըսկսի քարոզել և ուսուցանել։ Գողթանէն կ՚անցնի Սիւնեաց աշխարհը, օգնութիւն կը գտնէ Վասակ Սիսակեան և Վաղինակ իշխաններէն, կը խրատէ վայրենագոյն ժողովուրդը և Անանիա եպիսկոպոսը տեսուչ կը թողու այն տեղ կրթութեան խնամք տանելու համար։

Անկէ ժամանակէն զկնի՝ կ՚անցնի Վըրաց աշխարհը, նոցա համար նշանագրեր կը պատրաստէ, իւր աշակերտներէն հետն առնելով կը ներկայանայ Վրաց Բակուր Թագաւորին և Մովսէս եպիսկոպոսին, մեծ ընդունելութի̃ կը գտնէ բոլոր աշխարհէն. Ջաղայ անուն մէկը Վրաց լեզուի թարգման որոշելով աշակերտաց բազմութիւն կը ժողովէ և նորա տեսչութեանը կը յանձնէ. իսկ ինքն վերադարձ այցելութիւն առնելով իւր աշակերտած աշխարհներուն, կը դառնայ 'ի Հայաստան, Յունաց բաժնի Հայոց համար խորհելու, որոյ պատճառաւ և Բիւզանդիոն կ՚երթայ Սահակայ թղթերով, և անտի Հայաստան կը դառնայ, կատարումն ստանալով իւր խնդրուածոցն, որոց վրայ առաջ խօսեցանք արդէն։

Ինչդեռ անձանձրոյթ աշխատութեամբ կ՚ուսուցանէ, կը գրէ Ս. Մեսրոպ և եկեղեցական Հայոց մատեանները կը թարգմանէ, Աղուանից երկրէն Բենիամին անուն

մէկը նորա մօտ կը գայ, որուն նոր նշանագրեր կ'աւանդէ և իւր Գռնան և Ենովք աշակերտները հետը դնելով՝ կրկին Աղուանից երկիրը կ'ուղեւորէ, որ նոյն աշխարհին մէջ իւրեանց յատուկ գրերով դպրութիւն ծաւալէն: Յետ ժամանակաց Մեսրոպ Յունաց բաժնէն Վաղարշապատ կու գայ Ս. Սահակայ և Թագաւորին մօտ, և անտի կ'անցնի Աղուանք, կը վարդապետէ և կ'ուսուցանէ, յորդորելով տեղւոյն Երեմիա եպիսկոպոսը և Արսվաղէն Թագաւորը, որ խընամք տանին դպրութեան և կրթութեան, որոնք իսկոյն առքունի ծախքով դպրոցներ կը բանան; բազմաթիւ մանուկներ կը ժողովեն ուսանելու և ինքն Երեմիա եպիսկոպոսըն Աստուածաշունչ Գրոց Թարգմանութեան կը պարապի: Մեսրոպ իւր Յովհաթան աշակերտը այն տեղ վերատեսուչ թողլով, կ'անցնի Վրաց աշխարհը և ուղեւորութեան ժամանակ նախ Գարդմանից Խուրս և ապա Տաշրոց Աշուշա իշխաններէն ձեռնտուութիւն գտնելով՝ կրթարաններ կը հաստատէ դպրութեան և ճշմարտութեան տարածման համար, և Սամուէլ եպիսկոպոսի տեսչութեանը յանձնելով՝ վերստին կը դառնայ 'ի Հայաստան:

Այնուհետեւ կը միանան Հայաստանի դպրութեան և գրագիտութեան երկու ա-

Digitized by Google

մոլքն՝ Սահակ և Մեսրոպ, և կըսկսին միասին գրել և թարգմանել և իւրեանց աշակերտներէն երկուքը՝ Յովսէփ Պաղնացի և Եզնիկ Կողբացի Եդեսիա կ'ուղարկեն, որ ասորական Հարց գրուածները հայերէնի դարձնեն և եկեղեցական մատեններ ընտիր օրինակներ որոնեն: Բայց նոքա ուսումնասիրութեան եռանդով վառուած կ'անցնին Բիւզանդիոն, հելլենական դպրութեամբ և թարգմանութեամբ պարապելու, ուր յառաջագոյն ուղեւորուած էին նոյնպէս Յովհան և Արձան, և փոքր ժամանակէն յետոյ Հայաստանէն կ'ուղեւորին նոյնպէս Ղեւոնդ և Կորիւն, իրարու հետ կը միանան, կ'ուսանին մեծ եռանդով, և ապա Աստուածաշնչի յունական մի ընտիր օրինակ առնլով, ընդ նմին և Նիկիական և Եփեսոսական ժողովոց կանոնները, կը դառնան իրենց հայրենիքը և իւրեանց երանելի վարդապետաց կը մատուցանեն նոյն գեղեցիկ աւանդները:

Սահակ և Մեսրոպ Աստուածաշնչի նոր օրինակն ընդունելով կըսկսին Եզնիկի հետ վերստին “Թարգմանել զմիանգամ թարգմանեալն” ընդ նմին և շատ եկեղեցական գրուածքներ, և որպէս զի իւրեանց յաւերժական աշխատութեան մէջ ամենեւին թերութիւններ չգտնուին, խորհուրդ կը կազմեն և աշակերտներ կ'ուղեւորեն Աղեք-

Digitized by Google

սանդրիա, Ստուիկէ և Աթէնք, ուր կը ծաղկէին աղէքսանդրեան և աթենեան իմաստասիրութեան հռչակաւոր դպրոցները, որոց մէջ եօթն տարի կ'ուսանին Հայաստանի ուսումնախնդիր զաւակները և իմաստասիրական ճոխ գանձերով կը դառնան 'ի Հայաստան. ուր թէպէտ յաշխարհէս փոխուած կը գտնեն ուսումնասէր Վռամշապուհն և երանաշնորհ Սահակն ու Մեսրոպը, կ'ողբան և կ'արտասուեն, սակայն երբեք չեն յուսահատիր, այլ անխոնջ հետեւելով իւրեանց վարդապետաց շաւղին, կը թարգմանեն և կը գրեն, և մանաւանդ որ նոցա նուիրական իղձը լցուցանելով Աստուածաշնչի թարգմանութիւնը կըզտեն և կը կատարելագործեն, քաջ իմանալով որ յառաջադիմութեան խորհուրդը այն տեղ է, ուր աշակերտք իւրեանց վարդապետաց՝ և որդիք իւրեանց հարց՝ կիսակատար թողածը կը շարունակեն և պակասը կը ջանան։

Հայկական նշանագրաց գիւտէն զկնի՝ մի ուսումնասիրական եռացումն և մտաւորական շարժումն կը յուզէ ոչ միայն Հայաստանի, այլ և Վրաց և Աղուանից աշխարհներուն մէջ. կը բազմանան վարժարանք, կ'աճի զարգացումն դպրութեան, կ'աղբերանան թարգմանութիւնք հեղինակութիւնք, և կը ծաւալին բանաւոր և գրաւոր վարդապետու-



Digitized by Google

թիւն և ուսումն Քրիստոնէութեան, որուն համար զմայլելով կ'ասէ ականատես պատմագիրն Կորիւն. «Յայրարատեան գաւառին 'ի կայս Թագաւորացն և քահանայապետացն բղխեցին Հայոց շնորհք պատուիրանացն Աստուծոյ։ . . . . . Անդ կրթութիւն քաղցրուսոյց ընթերցուածոց՝ հոգեպատում գրոց։ Անդ քաջալերութիւն յորդորական վարդապետութեանն՝ առ 'ի յառաջադէմ ընտրութեան՝ պսակահաս քրիստոսադիր կիտին։ Անդ եռալ հոգւով աստուածապաշտ ծառայութեամբ»։

Այս ամեն բարեաց աղբերակն այն էր, որ Վռամշապուհ իւր արքունական գանձը, ոյժը և ազդեցութիւնը աշխարհի յառաջադիմութեան համար կը գործածէր, և Սահակ ու Մեսրոպ նորա ջանիցն և փութոյն արժանաւոր կը հանդիսանային։ Հայաստանի վարժարանները բաւական չը համարելով Հայոց տրամախոհ քաջուշեղ, փափկավանդ և երկարոգի պատանիները Եդեսիա, Կեսարիա, Աղէքսանդրիա, Աթէնք, Հռոմ և Բիւզանդիոն կ'ուղևորէին (ուր ուսմունք և գիտութիւնք կը ծաղկէին,) և ժամանակին ուսումնականներուն մէջ համբաւաւոր և շատերէն գերազանց կ'երևէին։ Անյաղթն Դաւիթ, իւր յունական իմաստասիրութեամբ, յաղթութեան պարծանքը կը յափշտակէր։

Խօսրով, յոյն եկեղեցականաց մէջ, Ս. Բարսղի օրհնութիւնները կը կարդար ։ Մամբրէ Ոսկեբերանի ճառերը կ'արտասանէր. իսկ Ղազար և այլք այնչափ խորամուխ էին յունական գիտութեան մէջ, որ Աթենացի կոչուելու պարծանաց կ'արժանանային ։

Պատմական յիշատակարանք, երբ Հայաստանի հոգեւոր և մտաւոր վերակենդանութեան պատկերը կը ներկայացնեն, ակներերեւ կը նշմարուի, որ Սահակեան և Մեսրոպեան վարժարաններէն շատ աշակերտներ ծնած են, բայց սակաւուց անուններն միայն մեզ հասած են, որոնք Թարգմանիչք կ'անուանին և երկու կարգ կը բաժնուին ։ Առաջին կարգէն նոքա են, որոնք նշանագրաց գտնուած ժամանակ բաւական հասակաւոր էին և իւրեանց վարդապետաց գործակիցք՝ Թարգմանութեանց մէջ ։ Իսկ երկրորդ կարգէն նոքա են, որոնք իւրեանց վարդապետաց մօտ վարժուելէն զկնի՝ ուղեւորեցան այլ և այլ քաղաքներ կատարելագործուելու համար, և շատերը իւրեանց վարդապետաց մահէն յետոյ դարձան Հայաստան ։ Առաջնակարգ աշակերտք կը համարուին՝ Յովսէփ 'ի Վայոց Ձորոյ, Յովհան, Ղեւոնդ երէց 'ի Վանանդայ, Եզնիկ Կողբացի, Կորիւն, Մուշէ Տարօնացի, Տիրայր Խորձենացի, Յովսէփ Պաղնացի, Յով-

հան Եկեղեցացի, Ենովք, Գանան, Երեմիա սարկաւագապետ Սահակայ, Թաթիկ, Արճան Արծրունի, Աղան Արծրունի, Ղազարիկ կամ Ղազրիկ: Իսկ կրտսերներն սոքա են՝ Մովսէս Խորենացի, Մամբրէ Վերծանող՝ եղբայր նորին, Դաւիթ Անյաղթ, Գիւտ, Յովհան Մանդակունի, Եղիշէ, Ղազար Փարպեցի, Եզրաս Անգեղացի, Սահակ, Յովհաննէս, Աբրահամ կամ Աբէլ, Անանիա, Յովսաթան, Խաչիկ կամ Խաչատուր, Անդրէաս, Թաթուլ, Վարոս: Երկու դասն եւս գլխաւորապէս աշխատած են Ս. Գրոց և եկեղեցական գրուածոց թարգմանութեան մէջ: Ոմանք իւրեանց վարդապետաց հետ՝ վարժարանաց և հաւատացելոց վերակացութեան պաշտօն վարած են: Ոմանք կաթողիկոսութեան անգամ արժանացած. ոմանք ազգային քաղաքական հարստահարեալ ժամանակին՝ հայրենեաց և եկեղեցւոյ պաշտպան ախոյեաններ դարձած են, և ոմանք ինքնագիր երկասիրութիւններ թողած են: Թարգմանութիւնք առանձինն և ոչ մէկուն անունը կը կրեն, ուրեմն և մենք ամենուն գործակցութեանը կը նուիրենք զայն. իսկ ինքնագիր հեղինակութեանց վըրայ ուրոյն ուրոյն պիտի խօսինք, որպէս եկեղեցական մատենագրոց վրայ:

# Է.

*Աւետարանի իմաստութիւնը մարդկային իմաստութեան հանդէպ.— Շարժառիթ եկեղեցական ժողովոց.— Երեք տիեզերական ժողովք.— Ազգային ժողովք Հայոց առաջին շրջանին մէջ։*

Մենք տեսանք արդէն, Եկեղեցական Պատմութեան առաջին շրջանին մէջ (ըստ մեր բաժանման) որ հալածանքները կ'արգիլէին քրիստոնէից հրապարակական գումարումներ ունենալ, ուստի և միութեան կամ ժողովման կեդրոն միայն Գոհութեան կամ Հաղորդութեան խորհուրդն էր, որ այն ևս շատ անգամ ծածուկ կը կատարուէր հեթանոսական հալածասիրութեան պատճառաւ։ Բայց երբ հալածիչ ինքնակալները, թագաւորները և իշխանները Քրիստոնէութեան հեզ լծոյն տակ խոնարհեցան, այնուհետեւ հաւատացեալք իրաւունք ստացան, ոչ միայն ազգային մասնաւոր, այլ և տիեզերական համագումար ժողովներ ունենալ զանազան եկեղեցական խնդիրներու պատճառաւ։

Քրիստոնէութիւնը, պատերազմելով աշխարհի նիւթական զօրութեան դէմ, այն է մարմնաւոր տիրապետութեան, բռնակալութեան և անիրաւութեան, կը դիմագրա-

ւէր մարտիրոսական բիւրաւոր զոհերով և նահատակութեան արեան հեղեղներով ։ Իսկ պատերազմելով մարդկային մտաւոր ուժին դէմ, հարկ էր, որ դիմադրաւէ քրիստոնէական իմաստութեամբ և աւետարանական վարդապետութեամբ ։ Առաջին պատերազմը արտաքին էր, Հեթանոսութենէ արծարծուած, որ փոխանակ տկարացնելու զՔրիստոնէութիւնն՝ առաւել կը զօրացնէր և կ՚ամրացնէր հաւատացելոց հոգեւոր կապը, սէր առ Աստուած և սէր առ մարդիկ ։ Իսկ վերջինը ներքին պատերազմ էր, թերակատար քրիստոնէութենէ կամ վայրապար հետազօտութենէ ծնունդ առած, որ կը քայքայէր հաւատացելոց միութիւնը և հակառակութեամբ կը տկարացնէր ։ Այս վերջին պատերազմը կը շարունակուէր մանաւանդ Յունաստանին մէջ, ուր հեթանոսական իմաստասիրութե և քրիստոնէական վարդապետութեան դիմահարութենէն մի նոր խառնորդ ձեւանալով, շատերու սիրտերը կը յուզէր և կը շփոթէր ։ Հեթանոսական իմաստասիրութեամբ վարժուածներէն ոմանք, քրիստոնէութիւնն ընդունելէն և նաև եկեղեցական բարձր աստիճաններու հասնելէն զկնի, դարձեալ վայրապար կը հետազօտէին այնպիսի քրիստոնէական խորհուրդներ, որոնք մարդկային մտաց սահմա-

նէն շատ բարձր էին։ Իսկ ողջամիտ Հայրապետներն և զգայուն Քրիստոնեայքն եւս, յանկալով այս աղէտներու առաջն առնուլ, ժողովներու և հետեւապէս միաբանութեանց կը դիմէին, որով աւելի կը զայրանար հակառակութիւնը և տեղի կը տար մեծամեծ խռովութեանց։ Արդարեւ՝ շատ գեղեցիկ յատկութիւն է ճշմարտութեան ծարաւը, ամեն բանի մէջ խոր թափանցելու եռանդը և ամեն բան ճշգրտելու քաղցը. բայց բան կայ, որ կարող ենք քննել ու դատել, և բան կայ, որ միայն կարող ենք ըզգալ և ոչ քննել։ Վասն զի, ինչպէս մարդուս զգայարանքներն (տեսանելիք, լսելիք և այլն) այլ և այլ պաշտօն ունին, նոյնպէս և մեր միտքն ու սիրտն, որոց միոյն պաշտօնը միւսին փոխանակելով՝ ամեն բան կը խանգարուի։ Ոչ թէ միայն Քրիստոնէութեան նկատմամբ է այս ճշմարտութիւնը, այլ և բնութեան մէջ անգամ՝ այնպիսի գեղեցկութիւններ կան, որ զգալ միայն կարող ենք և ոչ պատմել կամ բացատրել։ Յունաստանի մէջ յուզուած մոլորութեանց և հակառակութեանց բուն աղբիւրն այն էր, որ սրտի պաշտօնը մտքով կը ջանային կատարել այն է Աստուածային Երրորդութեան, Քըրիստոսի Մարդեղութեան և Հոգւոյն Սըրբոյ Շնորհաբաշխութեան անհաս խորհուրդ-

Digitized by Google

ները փոխանակ սրտով զգալու և սքանչանալու, մտքով կ'աշխատէին քննել, ուստի և այլանդակ մտածութեանց մէջ կը մոլորէին: Կան, կան արդարեւ Քրիստոնէութեան մէջ լուսաւորող ճշմարտութիւններ, գեղեցիկ պատուէրներ և երջանկաւէտ սկըզբունքներ, որոց քննութիւնը մարդուս միտքը կը լուսաւորէ, սիրտը կ'ազնուացնէ, հոգին կը պարարէ անսպառում վայելչութեամբ, և աստուածանմանութեան սքանչելի ճաշակ կը մատակարարէ: Բայց կան և գաղտնիքներ, որոնք Աստուծոյ գիտութեանը միայն պահուած են, և որոց քննութիւնը անհաս է մարդկային մտաց, և որչափ ջանայ քննել, այնչափ պիտի շփոթի և տատամսի: Իւրաքանչիւր քրիստոնէի պարտքն է խորհիլ. քննել ինչ որ յայտնած է Աստուած մարդկային մտաց լուսաւորութեան և կատարելագործութեան համար. և դարձեալ իւրաքանչիւրի պարտքն է զգալ և խոնարհիլ ամէն խորհուրդներու առջեւ, որոց բանալին Աստուծոյ ձեռքն է, և ոչ մարդկային մտաւոր հետազօտութեան: Վասն զի պարզապէս վճռուած է Ս. Գրքի մէջ. “Ծածուկքն Տեառն Աստուծոյ մերում՝ և յայտնիքն՝ մեզ և որդւոց մերոց” (1): Այս է ա-

(1) Բ. Օրին. ԻԹ. 29.

հմ Արարչի և արարածի մէջ եղած գեղեցիկ սահմանը—ծածուկները Աստուծոյն Թողուլ, իսկ յայտնուածները ուսանիլ, ճանաչել և իւր որդւոցն ուսուցանել: Վասն զի Աստուած այնքան ճշմարտութիւններ և պատուէրներ յայտնած է, որոնք բաւական են բովանդակ մարդկութիւնը երջանկացնել:

Եթէ այս սքանչելի սահմանը պահպանուէր, ամենևին պիտի չը լինէին այն ուրացութիւնները, հերետիկոսութիւնները, աղանդները և հերձուածները, այն հրէշական մտաց ծնունդները, որոնք Քրիստոնէութեան դէմ կը յաճախէին և Եկեղեցւոյ ողջամտութիւնը կը տագնապէին, որով և քրիստոնէական սէրը և ներողութիւնը կը նուազէր և ահագին գժտութիւնք, նզովք և բանադրանք տեղի կ'ունենային: Ոմանք կը գլորէին և ոմանք կը կանգնէին, ոմանք կը յիմարէին և կը գայթակղէին, և ոմանք կ'իմաստնանային և կը զօրանային: Վասն զի, այնպէս իսկ էր Քրիստոնէութեան խորհրդաւոր կընիքը — Հաւատացելոց համար իմաստութիւն, փրկութիւն և զօրութիւն. իսկ անհաւատից համար՝ յիմարութիւն և գայթակղութիւն: Վասն զի, վաղուց արդէն գուշակած էր Սիմէօն Ծերունին, գիրկն առնելով Քրիստոնէութեան հիմնադիր Մանուկը. “Սա կայ ՚ի գլորումն և ՚ի կանգնումն

բազմաց ։ . . . . Սա կայ 'ի նշան հակառակութեան ” (1)։

Այս հակառակութիւններ, որ կը յուզուէր Քրիստոսի Աստուածութեան վրայ և երկար տարիներ կը տեւէր, և գուցէ պիտի տեւէ մինչեւ 'ի կատարած աշխարհի։ Այս հակառակութիւններ, որով յունական և հռոմէական եկեղեցիները կը տագնապէին։ Մի կողմէն հերետիկոսները կը բազմանային, և միւս կողմէն ժողովները մի զկնի միւսոյ կը յաջորդէին։ Բայց մեք անդէպ համարելով, քանի մի եկեղեցական պատմագրաց նման, հերետիկոսական մոլորութիւնները մի առ մի թուել, որոնք տաղտկալի են լսելեաց, և նոյն իսկ հերետիկոսները, որպէս տկարամիտ մարդիկ, առաւել կարեկցութեան՝ քան թէ թշնամանաց և դատապարտութեան արժանի, (վասն զի իւրեանց անճաշակ միալըն Քրիստոնէութենէ՝ արդէն մեծ դատապարտութիւն է իւրեանց անձին,) համառօտիւ կ'ամփոփենք մեր խօսքը միայն երեք Տիեզերական Ժողովոց վրայ, որոց գումարմամբ մերժուած են երեք ամենամեծ մոլորութիւնք՝ Քրիստոսի Աստուածութեան դէմ, Անձնաւորութեան դէմ և Հոգւոյն Սրբոյ Աստուածութեան դէմ։

(1) Ղուկ. Բ. 34.

Առաջին տիեզերական Ժողովն գումարեցաւ Բիւթանացւոց Նիկիա քաղաքին մէջ, 325 Թուականին Քրիստոսի, 318 Հայրապետաց ժողովմամբ, ուր մերժեցաւ Արիոսական ուրացութիւնն ընդդէմ աստուածութեան Քրիստոսի, խմբագրուեցաւ Հաւատոյ Հանգանակն եւ սահմանեցան ինչ ինչ եկեղեցական կանոններ ։

Երկրորդ տիեզերական Ժողովն գումարեցաւ Կ. Պոլիս մայրաքաղաքին մէջ, 381ին, 150 Հայրապետաց ժողովմամբ, ուր հերքուեցաւ Մակեդոնեան հոգեմարտութիւնը կամ մոլորութիւնն ընդդէմ Հոգւոյն Սրբոյ։

Երրորդ տիեզերական Ժողովն գումարեցաւ Ասիացւոց Եփեսոս քաղաքին մէջ, 431 Թուականին Քրիստոսի, 200 եպիսկոպոսաց ժողովմամբ, ուր մերժուեցաւ Նեստորեան մոլորութիւնն ընդդէմ անձնաւորութեան եւ որդիութեան Յիսուսի Քրիստոսի ։

Հայաստանեայց եկեղեցին ընդունեց այս ժողովներէն Հաւատոյ Հանգանակն եւ ինչ ինչ կանոններ Ս. Արիստակէսի, Մեծին Ներսէսի եւ Թարգմանչաց աշակերտաց ձեռքով, որոց վրայ արդէն խօսած ենք ։ Բայց որովհետեւ մեր Եկեղեցին իւր առաքելական ուղղութեան վրայ կը յարատեւէր, բոլորովին անմասն այն մոլորութիւններէն որոնք կը յուզուէին այլ եւ այլ տեղեր եւ աշ-

Digitized by Google

խարհ ամենայն կը խռովէին, ուստի Նիկիական Հանգանակն ընդունելէն զկնի՝ իւր առաքելասարաս Լուսաւորչի ձեռքով յաւելցուց իւր համառօտ և պարզ հանգանակը. — “Իսկ մեք (Հայքս) փառաւորեսցուք որ յառաջ քան զյաւիտեանս, երկիրպագանելով Սրբոյ Երրորդութեանն և միոյ Աստուածութեանն, Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն »: Վասն զի առաքելական Հանգանակն ևս այսչափ էր. “Յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ ». և Նիկիական Հանգանակի մասունքն զանազան մոլորութեանց դէմ յաւելցած էին, որոնք Յունաստանին մէջ կը յուզուէին և ոչ Հայաստանի: Ժողովական կանոններն ևս յապաւեցան և մեր Եկեղեցւոյ վիճակին յարմարեցան, վասն զի շատ կանոններ այնպիսի խռովութեանց կը վերաբերէին, որք Հայաստանեայց Եկեղեցւոյն նկատմամբ նշանակութիւն չունէին (1):

Նիկիական Ժողովի մէջ, երկար վիճաբանութիւններէն յետոյ, Զատկական տօնախմբութեան ժամանակն ևս փոխած էին. բայց մեր Եկեղեցին դարձեալ նոյն նախնական աւանդութեան վրայ ընթացաւ, որով

(1) Խոր. Բ. Գիրք. Գլ. ՁԹ. Ղ.

մինչեւ ցայն վայր ընթացած էր քրիստոնէական բովանդակ Եկեղեցին ըստ առաքելական սովորութեան։

Բաց 'ի երեք տիեզերական ժողովներէն, զանազան ժամանակաց մէջ գումարեցան այլ ժողովներ եւս, թէ Արեւելս և թէ Արևմուտս, որոց շատերը, թէ և Տիեզերական անուն կը կրեն, բայց և ոչ կէս — տիեզերական են, ըստ որում ուղղակի յունական և հռովմէական եկեղեցիներուն կը պատկանին։ Այս տեսակ ժողովներուն մէջ նշանաւոր է մանաւանդ Քաղկեդոնի ժողովն, իւր խռովայոյզ անցքերով, որ գումարեցաւ Եփեսոսի Ժողովէն յետոյ, 451ին։ Այս ժողովի մանրապատում դէպքերը կարդացողը սոսկմամբ կը պաշարուի. վասն զի քրիստոնէական երկիւղածութիւնն չէ, որ կը պայքարի հաւատոյ պաշտպանութեան համար, այլ իշխանասիրութիւնն և գահասիրութիւնը։ Նախնի հայրապետաց անփառասէր և ներող ոգին չէ որ կը գործէ, յորմէ մոլորամիտք կը պատկառէին եւ կայսերք անգամ կ'ակնածէին, այլ ոգին գահերէցութեան և ձգտումն հալածասիրութեան, որով ժողովուրդը կը խռովի և 'ի սիրոյ կը ցամաքի։ Այն ժողովի գումարմանց խռովութիւնները տարիներ կը տեւեն, յորոց մէջ զանազան կուսակցութիւններ, այն է Դիոսկո-

Digitized by Google

րոսեանք, Լեւոնեանք, Փլաբիանոսեանք, և այլք, մի զմիւսն կը զնովեն, կը մերժեն և մինչև անգամ կ'աքսորեն։ Քանի մի Թագաւորներ, այն է Թէոդոս Փոքր, Մարկիանոս, Լեւոն և Զենոն կը ստիպուին շարունակ, երբեմն այս և երբեմն այն կուսակցութեանը պաշտպան հանդիսանալ։ Ժողովի գումարումները շատ անգամ զօրախումբով կը պաշտպանուին՝ ՚ի շնորհս այս ինչ և այն ինչ կուսակցութեան, վասն զի, բաց ՚ի աքսորներէն, սպանութիւնք ևս կը լինին այս ժողովին պատճառաւ։ Երբեմն կ'ընդունուի այս ժողովը յիշեալ կուսակցութիւններէն, և շատ անգամ ևս կը մերժուի և կը նզովուի որպէս չեղեալ քրիստոնէական ճշմարիտ հագիէն և ուղղադաւանութենէն (1)։ Եւ ահա այս առթիւ, Հայք ջանացած են միշտ հեռի մնալ Քաղկեդոնի ժողովի մասնակցութենէն։

Եւ եթէ հազիւ ուրեմն մեր վարդապետներէն ոմանք, կամ ՚ի շնորհուկս Յունաց, կամ քաղաքական օգնութեան ակնկալութեան յուսով, և կամ ձանձրալի Թախանձանքէ և ստիպմունքէ բռնադատեալ, հա-

(1) Այս ժողովի խռովայոյզ անցքերուն վրայ երկարօրէն կը խօսին Բարոնիոս, Ֆլէօրի և այլ եկեղեցական պատմիչներ, նմանապէս և Մխիթարեան ուխտէն Հ. Պօղոս Յովնանեան, Ի Պատմութեան տիեզերական ժողովոց։

մակրութիւն ցուցած են Քաղկեդոնի ժողովի մասին, այն եւս միշտ անընդունելի եղած է մեր ընդհանուր Ազգի և Եկեղեցւոյ կողմէն, վասն զի բովանդակ Ազգի կամ Եկեղեցւոյ համաձայնութենէն չէ բղխած։ Արդէ հետեւ ակներեւ կը տեսնենք մեր ազգային պատմագրութեան մէջ, որ ոչ թէ միայն բազմաթիւ պատմաբանք (1) զայրութիւ կը խօսին Քաղկեդոնի ժողովին վրայ, այլ և Եկեղեցին զանազան դարուց մէջ յայտնի ժողովներով մերժած է, որոց վրայ առանձինն պիտի խօսինք՝ ըստ տեղւոյն և ըստ ժամանակին։

Պատմութեան անաչառ դատաստանը կը համոզէ զմեզ խոստովանիլ, որ Հայաստանեայց Եկեղեցւոյն բռնած գիրքը Քաղկեդոնի ժողովի նկատմամբ խիստ օրինաւոր է։ Նախ՝ որովհետեւ Հայաստանեայց Եկեղեցին իսպառ անմասն լինելով այն մոլորութիւններէն, որոնք Յունաստանի մէջ կը յուզուէին, և իւր առաքելական ուղղութեամբ ընթանալով, հետեւապէս կարօտութիւն չունէր բնաւ Քաղկեդոնեան ժողովի հակառակութեանց մասնակցիլ և այս ինչ կամ այն ինչ որոշման հպատակիլ։ Երկ-

(1) Մովսէս Կաղանկատուացի, Ստեփանոս Սիւնեցի, Ղեւոնդ, Յովհաննէս կաթողիկոս, Թովմայ Արծրունի, Ասողիկ, Մատթէոս Ուռհայեցի, Ուխտանէս և այլք։

Digitized by Google

թոսեանք, Լեւոնեանք, Փլաբիանոսեանք, և այլք, մի զմիւսն կը զնովեն, կը մերժեն և մինչեւ անգամ կ՚աքսորեն ։ Քանի մի Թագաւորներ, այն է Թէոդոս Փոքր, Մարկիանոս, Լեւոն և Զենոն կը ստիպուէին շարունակ, երբեմն այս և երբեմն այն կուսակցութեանը պաշտպան հանդիսանալ ։ Ժողովք գումարումները շատ անգամ զօրախումբով կը պաշարուէին՝ ՚ի շնորհս այս ինչ և այն ինչ կուսակցութեան, վասն զի, բաց ՚ի աքսորներէն, սպանութիւնք եւս կը լինէին այս ժողովին պատճառաւ ։ Երբեմն կ՚ընդունուէր այս ժողովը յիշեալ կուսակցութիւններէն, և շատ անգամ եւս կը մերժուէր և կը նզովուէր որպէս շեղեալ քրիստոնէական ճշմարիտ հոգիէն և ուղղադաւանութենէն [1] ։ Ու ահա այս առթիւ, Հայք ջանացած են միշտ հեռի մնալ Քաղկեդոնի ժողովի մասնակցութենէն ։

Ու եթէ հազիւ ուրեմն մեր վարդապետներէն ոմանք, կամ ՚ի շնորհուկս Յունաց, կամ քաղաքական օգնութեան ակնկալութեան յուսով, և կամ ձանձրալի Թախանձանքէ և ստիպմունքէ բռնադատեալ, հա-

(1) Այս ժողովի խռովայոյզ անցքերուն վրայ երկարօրէն կը խօսին Բարոնիոս, Ֆլէօրի և այլ եկեղեցական պատմիչներ, նմանապէս և Մխիթարեան ուխտէն Հ. Պօղոս Յովհաննեան, Ի Պատմութեան տիեզերական ժողովոց ։

Digitized by Google

մակրութիւն ցուցած են Քաղկեդոնի ժողովի մասին, այն եւս միշտ անընդունելի եղած է մեր ընդհանուր Ազգի և Եկեղեցւոյ կողմէն, վասն զի բովանդակ Ազգի կամ Եկեղեցւոյ համակամութենէն չէ բղխած։ Որովհետեւ ակներեւ կը տեսնենք մեր ազգային պատմագրութեան մէջ, որ ոչ թէ միայն բազմաթիւ պատմաբանք (1) զայրութիւ կը խօսին Քաղկեդոնի ժողովին վրայ, այլ և Եկեղեցին զանազան դարուց մէջ յայտնի ժողովներով մերժած է, որոց վրայ առանձինն պիտի խօսինք՝ ըստ տեղւոյն և ըստ ժամանակին։

Պատմութեան անաչառ դատաստանը կը համոզէ զմեզ խոստովանիլ, որ Հայաստանեայց Եկեղեցւոյն բռնած գիրքը Քաղկեդոնի ժողովի նկատմամբ խիստ օրինաւոր է։ Նախ՝ որովհետեւ Հայաստանեայց Եկեղեցին իսպառ անմասն լինելով այն մոլորութիւններէն, որոնք Յունաստանի մէջ կը յուզուէին, և իւր առաքելական ուղղութեամբ ընթանալով, հետեւապէս կարօտութիւն չունէր բնաւ Քաղկեդոնեան ժողովի հակառակութեանց մասնակցիլ և այս ինչ կամ այն ինչ որոշման հպատակիլ։ Երկ-

(1) Մովսէս կաղանկատուացի, Ստեփանոս Սիւնեցի, Ղեւոնդ, Յովհաննէս կաթողիկոս, Թովմայ Արծրունի, Ասողիկ, Մատթէոս Ուռհայեցի, Ուխտանէս և այլք։

րորդ՝ որովհետեւ Բաղկեդոնեան ժողովի չարժառիթն քրիստոնէական հաւատոյ եւ վարդապետութեան պաշտպանութիւնն չէր, այլ յունական եւ հռովմէական եկեղեցականաց գահերէցութեան փառասիրութիւնը, որոնք, նախագահելու համար, աշխարհ կը յուզէին եւ քրիստոնէական եղբայրսիրութիւնը բառական տարապարտ վիճաբանութեանց կը զոհէին ։ Եւ երրորդ՝ որովհետեւ արտաքոյ քրիստոնէական ազատասիրութեն, Բաղկեդոնեան ժողովն ստացած էր տեսակ մի մոլեկրօնական յատկանիշ, ձգտելով նուաճել այս ինչ կամ այն ինչ եկեղեցւոյ ինքնուրոյն գոյութիւնը եւ հպատակեցնել ոչ թէ Քրիստոսին, այլ Հռովմայ Պապին կամ Յունաց Պատրիարքին ։ Բուն պատճառն այս էր, որ Հայք չը կամեցան երբէք մասնակցիլ Բաղկեդոնեան ժողովին ։ Թէպէտ ոմանք յառաջ կը բերեն, իբր թէ Հայք Վարդանանց պատերազմին պատճառաւ էր որ չը կարացին իրենց կողմէն վարդապետ կամ եպիսկոպոս մի ուղարկել նոյն ժողովն, սակայն այս կարծիքը պատմական քննութեան առջեւ ամենեւին արժէք չունի ։ Վասն զի, մի վարդապետի կամ եպիսկոպոսի բացակայութիւնը Վարդանանց պատերազմին արգելք չէր կարող լինիլ, եւ եթէ Հայք համամիտ լինէին նոյն ժողովին, դէթ

պայազգայ դասերուն մէջ իւրեանց հաւանութիւնը կը յայտնէին, (մանաւանդ որ շարունակ կը ստիպէին Յունաց և Հռովմայեցւոց կողմէն,) և ոչ թէ մերժելով կը մերժէին, ինչպէս որ մինչև ցայսօր ևս կը մերժեն.

Բաց 'ի Նիկիոյ, Կ. Պոլսոյ և Եփեսոսի երեք տիեզերական ժողովներէն, զորս կընդունի և կը տօնէ Հայաստանեայց Եկեղեցին, առաջին շրջանին մէջ կատարուած են Հայոց ազգային առանձին ժողովներ ևս, այն է կամ կաթողիկոսաց ընտրութեան, կամ Եկեղեցւոյ պայծառութեան և կամ որ և իցէ ազգային կարևոր գործոյ համար. և այս ժողովներն ևս գումարուած են եկեղեցականներէ և աշխարհականներէ, առանց խտրութեան։ Որովհետև երբէք մեր Ազգի և Եկեղեցւոյ օգուտը իրարմէ չեն բաժնուած, Եկեղեցին Ազգ համարուած է, և Ազգը՝ Եկեղեցի։ Թողլով կաթողիկոսական ընտրութեան ժողովները, որոնք իւրաքանչիւր կաթողիկոսի ընտրութեան համար կատարուած են, առաջին շրջանին մէջ եղած ազգային ժողովներն հետևեալներն են։

1. Վաղարշապատու ժողով Ա. որ գումարեցաւ 325ին, Լուսաւորչի և Տրդատայ ժամանակ, Նիկիական ժողովոյ Հանգանակի և կանոնաց ընդունելութեան և նկատողութեան մասին, ուր Ս. Հայրապետն՝ Հա-



Digitized by Google

յառաջանեայց Եկեղեցւոյ հոգւոյն կնքեց Հանգանակը Ալոկ մեր փառաւորեսցուքն, յաւելցնելով և կանոններն ևս յարմարեցուց մեր Եկեղեցւոյ վիճակին։

2. Աշտիշատու ժողով Ա. որ գումարեցաւ 365ին, Մեծին Ներսիսի և Արշակայ ժամանակ, անկելանոցներ, հիւրանոցներ, վանքեր և մենանոցներ շինելու համար, և մերձաւորաց խնամութիւնն ու մեռելոց վրայ եղած հեթանոսական կոծումները վերջացնելու համար, որոց մասին արդէն ընդարձակ խօսած ենք։

3. Վաղարշապատու ժողով Բ. որ գումարեցաւ դարձեալ Մեծին Ներսիսի հայրապետութեան ժամանակ, որով և սահմանուեցաւ որ Հայոց կաթողիկոսն Ազգի եպիսկոպոսներէն ձեռնադրուի և ոչ Կեսարիոյ եպիսկոպոսէն։ Այս ժողովի մասին կը խօսին Բուզանդ և աւելի ընդարձակօրէն Յովհաննէս կաթողիկոս և Վարդան պատմիչ, կաթողիկոսական դիւաններէն և գաւառականագրերէն առնլով։

4. Վաղարշապատու ժողով Գ. որ գումարեցաւ 383ին, նոյնպէս Մեծին Ներսիսի հայրապետութեան ժամանակ, ուր թագաւորն, նախարարք և իշխանք ուխտեցին սիրով և աստուածպաշտութեամբ վարիլ և Ազգի ու Եկեղեցւոյ բարօրութիւնը չը զոհել

անձնական կրից, այլ խրատու հետ ունեցած փոխադարձ պարտքերը անթերի կատարելով՝ միութեան և զօրութեան ամրապատ կանգնել արտաքին թշնամեաց դէմ:

5. Վաղարշապատու ժողով Դ. որ գումարեցաւ Ս. Սահակայ հայրապետութեան և Վռամշապուհի թագաւորութեան ժամանակ, 402ին, հայկական նշանագրաց պատրաստութեան համար, որպէս զի ազգային դպրութիւնը զարգանայ և ծաղկի Հայաստանի մէջ, և Հայաստանեայց եկեղեցին հայկական ընթերցուածներով պայծառանայ:

6. Վաղարշապատու ժողով Ե. որ գումարեցաւ 426ին, դարձեալ Ս. Սահակայ հայրապետութեան ժամանակ, ուր ընդհանրական թղթեր գրուեցան եպիսկոպոսաց, քորեպիսկոպոսաց և քահանայից, և կանոններ խմբագրուեցան եկեղեցական բարեկարգութեան համար, թէպէտ և այս կանոններէն մի քանիսը Լուսաւորչի ժամանակին կ'ընծայուին:

7. Աշտիշատու ժողով Զ. որ գումարեցաւ 432ին, երբ Ս. Սահակ դարձաւ Պարսկաստանէն և ցանկացաւ իւր հօտը ապահովել բարեկարգութեամբ: Այս ժողովի մէջ կարդացուեցան Նիկեայ ժողովին կանոններն (զորս բերած էին թարգմանիչ

աշակերտները) և մերժուեցաւ Նեստորեան մոլորութիւնը ։

8. Եփեսոսու ժողով Գ. որ գումարեցաւ 435ին, դարձեալ Ս. Սահակայ ժամանակ, ժողովուրդը Նեստորեան մոլորութենէ զգուշացնելու համար. վասն զի Նեստորի վարդապետ Թէոդոր Մոպսուեստացւոյ և Դիոդոր Տարսոնացւոյ գրքերը պարսկերէն ասորերէն և հայերէն թարգմանուելով զանազան տեղեր սփռած էին Նեստորականք ։ Նոյն Եփեսոսու ժողովին գումարմանքն առաջին առթին, « Զի մի ՚ի լուսաւոր վարդապետութիւն ծուխ ինչ սատանայական յարիցէ », ինչպէս կ՚ասէ Կիւրեղ ։ Այս ժողովին մէջ մի թուղթ ևս գրուեցաւ Կ. Պօլսոյ նորընտիր Պրոկղ Պատրիարքին և աշակերտաց ձեռքով ուղարկուեցաւ ՚ի Կ. Պօլիս, որոյ մասին գոհանալով յիշեալ պատրիարքն ուրախական պատասխան գրեց ։

---

## Ը.

### Վարդապետութիւն Ս. Գրոց յաղագս Աստուածային բնութեան և Ս. Երրորդութեան ։

ՏԻԵԶԵՐԱԿԱՆ և ազգային ժողովներու վրայ այսչափ խօսելէն զկնի՝ համառօտենք այժմ Ս. Գրոց վարդապետութիւնը Աստուա-

ծայրին բնութեան վրայ. քանզի եթէ ծանր է և դառն մարդկային ակարութենէ ծագած մոլորութեանց վրայ խօսիլը, ընդհանրապէս՝ շատ քաղցր է և մխիթարական Ս. Գրոց յայտնած ճշմարտութեանց վրայ ճառելը, որ միակ աղբերակն է անսպառ վարդապետութեան, և որուն միշտ ապաստանած են եկեղեցական Ս. Հարք հաւատոյ պաշտպանութեան համար:

Սուրբ Գիրքը կ'ուսուցանէ Աստուածային բնութեան վրայ երկու բան. նախ՝ որ Աստուած մի է և չը կայ այլ Աստուած բաց 'ի նմանէ (1), և երկրորդ՝ որ աստուածային բնութիւնը հասարակ է Հօր, Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. և այս երեք անձինք ունին մի Աստուածութիւն: Այս է քրիստոնէից հաւատը, համաձայն բացայայտ բանից Ս. Գրոց (2): Այս Երրորդութիւնն է հիմն քրիստոնէական հաւատոյ, և երեք անձինք ունին մի ներգործութիւն մեր փրկութեան համար, բայց զանազան կերպով. այն է — ՀԱՅՐՆ կը կոչէ զմեզ և կը մօտեցնէ իւր Որդւոյն (3), զոր 'ի յաւիտենից ծնաւ և որոյ գալուստը պատրաստեց: ՈՐԴԻՆ եկաւ երկնքէն, միացաւ մարդկային բնութեան հետ, որ մեզ

(1) Բ. Օրին. Զ. 4.—Եփես. Դ. 6:

(2) Բ. Կորն. ԺԳ. 13.—Ա. Պետ. Ա. 2:—Ա. Յովհ. Ե. 7: —Մատ. ԻԸ. 19:

(3) Յովհ. Զ. 44:

ի մեղաց փրկէ և մեր հոգւոյն տայ կեանք յաւիտենական (1)։ Իսկ ՀՈԳԻՆ ՍՈՒՐԲ մեր Նորոգիչն է, որ վերստին հաստատեց մեր մէջ Աստուծոյ նմանութիւնը, ընդունակ անելով Աստուծոյ տուած փրկութեանը (2)։

Սուրբ Գիրքը կ'ուսուցանէ, որ ինչպէս աստուածային բնութիւնը հասարակ է երեք անձանց, նոյնպէս և աստուածային կատարելութիւնները, այսինքն՝ Հօր ունեցած կատարելութիւններն ունին հաւասարապէս և Որդին և Սուրբ Հոգին, օրինակի համար՝ Յաւիտենականութիւն և Անմահութիւն (3), Ամենակարողութիւն (4). Ամենագիտութիւն (5). Ամենուրեքութիւն (6). Արարչագործութիւն (7). Նախախնամութիւն (8). Անփոփոխութիւն (9). Աստուածային պաշտօն (10) և այլն։

Սուրբ Գիրքը կ'ուսուցանէ, որ Քրիստոս

(1) Յով. ԺԴ. 6։
(2) Յով. ԺԶ. 13։—Կորն. ԺԲ. 3։
(3) Յով. Ը. 58։—Յայտ. Ա. 8։
(4) Ծնն. ԺԷ. 1։—Մատ. ԺԹ. 26։—Երեմ. ԼԲ. 17։—Յով. Ե. 12։
(5) Եբր. Դ. 13։—Եսայի. ԽԴ. 7։—Յով. Բ. 25։ ԻԱ. 17։—Յայտ. Բ. 23։ Ա. Կորն. Բ. 10, 11։
(6) Երեմ. ԻԳ. 24։—Սաղ. ՃԼԸ. 7—8։—Մատ. ԺԸ. 20։—ԻԸ. 20։
(7) Ծնն. Ա. 1։—Սաղ. ԼԲ. 9։—Եբր. ԺԱ. 3։—Յով. Ա. 3։—Կող. Ա. 16։—Ծնն. Ա. 2։
(8) Կող. Ա. 17։—Յով. Ե. 17։—Եբր. Ա. 3։
(9) Սաղ. ՃԱ. 26, 27։—Եբր. ԺԳ. 8։
(10) Մատ. ԻԸ. 19։—Բ. Կորն. ԺԳ. 13։

իւր յաւիտենական ծննդեան համար ՚ի Հարէ՝ կոչուած է Որդի Աստուծոյ, իսկ ՚ի ժամանակի մարդեղութեան համար՝ Որդի Մարդոյ, եղբայր մարդկան, որով իրաւունք ստացած ենք մենք Հայր կոչել զԱստուած, և այս պատճառաւ եկեղեցին կը խոստովանի Քրիստոսի անձնաւորութեան մէջ երկու բնութիւն — Աստուածային և Մարդկային (1) անշփոթ և անբաժանելի միաւորութեամբ։ Այս Մարդեղութեան խորհուրդը՝ ո՜րչափ մեծ խորհուրդ է աշխարհի համար (2). և որչափ անիմանալի է և անհաս մարդկային միտաց, այնքան բնական է աստուածային սիրոյն և ամենակարող բնութեան (3)։ Այս մեծ խորհրդեան մէջ էր մարդկային ազգի փրկութիւնը, սմա կըսպասէր բովանդակ մարդկութիւնը, ուստի և սովաւ լցան օրէնք և մարգարէք։ Վասն զի Քրիստոս, որպէս ճշմարիտ խոստացեալ Մեսիա, կատարեց Մարգարէական, Քահանայական և Թագաւորական երեք պաշտօն, (որոց վրայ խօսած էին մարգարէքն,) և եղեւ մեզ համար ճշմարիտ ՄԱՐԳԱՐԷ (4), ճշմարիտ ՔԱՀԱՆԱՅ (5), և ճշմարիտ

(1) Յով. ԺԲ. 27։–ԺԴ. 10։
(2) Տիմ. Ա. Թղ. Գ. 16 — Հռով. Ա. 3 — Հռով. Թ. 5։
(3) Յով. Ա. 14 — Կորն. Ա. Թղ. Ա. 30։
(4) Ղուկ. ԻԴ. 19 — Կող. Բ. 3։
(5) Եփես. Ե. 2 — Յով. Բ. 1 — Եբր. Թ. 24. Եբր. Է. 28 — Եբր. Ե. 10։

Digitized by Google

ԹԱԳԱՒՈՐ (1), ուսուցանելով՝ փրկարար վարդապետութիւններ, և պարզելով մարդկութեան անցեալն, ներկայն և ապառնին, քաւելով զմեղ և փրկելով իւր անձին պատարագաւը, և թագաւորելով մեր վրայ երկնաւոր և հոգեւոր թագաւորութեամբ։

Սուրբ Գիրքը կ'ուսուցանէ, որ Հոգին Սուրբ կ'ելանէ և կը բղխի 'ի Հօրէ, ոչ իբրեւ հասարակ զօրութիւն Աստուծոյ, այլ որպէս անձն Ս. Երրորդութեան, նոյնպէս անսահման, յաւիտենական և ճշմարիտ Աստուած (2)։ Իսկ վերաբերելով առ մեզ՝ Հոգին սուրբն է Աղբիւր Միութեան Աստուծոյ ընդ մարդկան (3). և Նշան, որով քրիստոնեայ կը ճանաչուինք (4). վասն զի մենք առանց Հոգւոյն մեր մէջ բնակութեան (5), օգնութեան և առաջնորդութեան (6), լոկ շնչաւոր մարդիկ ենք միայն (7), վասն զի Հոգին Սուրբ գործակից է Հօրն և Որդւոյն մեր փրկութեան համար (8). և ինչպէս Աստուծոյ յայտնութիւնն աշխարհին Քրիստոսով կը կոչուի ՓՐԿՈՒԹԻՒՆ

(1) Եսայ. Թ. 7։—Ղուկ. Ա. 32։—Յով. ԺԸ. 36։
(2) Գործ. Ե. 3—4։—Յով. Ա։ Թղ. Ե. 7—8։—Կորն. Բ. Թղ. ԺԳ. 13։— Ա. Կորն. ԺԲ. 4։
(3) Ա. Կորն. Ե. 11։
(4) Եփես. Դ. 30։
(5) Ա. Կորն. Գ. 18։
(6) Հռով. Ը. 9։
(7) Ա. Կորն. Բ. 14։
(8) Ա. Կորն. ԺԲ. 11։—Ա. Կորն. Բ. 12։—Հռով. Ը. 16։

նշանակէս և Աստուծոյ յայտնութիւնը զանա-
տեսակը Հոգւոյն՝ կ'անուանի ՆՈՐՈԳՈՒԹԻՒՆ, և ՍՐԲՈՒԹԻՒՆ։ Այս է համառօտիւ Ս. Գըրոց յայտնած վարդապետութիւնը աստուածային բնութեան և երրորդութեան վըրայ։ Նոր ձևով փոխուած է աստուածային միտքը, նորա համար պարզ է և լուսաւոր Ս. Գրոց վարդապետութիւնը. իսկ երբ ցամաքած է 'ի սիրտ, այն ժամանակ ամեն բան մթին է և աղօտ, լոկ օրէնք մարդուս սրտարը և ուղիղ մտքերը միայն կարեն զգալ և տեսնել զԱստուած և ոչ թէ կասկածամտութը և թերահաւատները։

---

## Թ.

Ս. Գիրք. — Համառօտ պարունակութիւն Հին և Նոր Կտակարանաց. — Յատկանիշք Ս. Գրոց. — Կարևորութիւն ուսման Ս. Գրոց 'ի դաստիարակութեան.

ՈՐՈՎՀԵՏԵՒ եկեղեցական Հարց ընտիր գրուածները բոլորը քաղած են Ս. Գըրքէն, ինչպէս ամենաշքեղ ապարանքներ, և ամեն տարակուսանք ևս Ս. Գրքով լուծուած են եկեղեցական ժողովոց մէջ. ուստի և մենք հարկ կը համարինք համառօտիւ խօսիլ Ս. Գրոց վրայ, եկեղեցական պատմու-

թեան ներկայ շրջանին մէջ, յորում և կատարուած է Ս. Գրոց հայկական Թարգմանութիւնը։ Մեր նպատակը չէ գովաբանել Ս. Գիրքը, վասն զի իւր Աստուածաշունչ անունը արդէն ամեն մարդկային գովեստներէ 'ի վեր է. այլ միայն կամիմք նորա բովանդակութեան համառօտ գծերը պատկերացնել, որոնք ամենակարեւոր են եկեղեցական մատենագրաց հոգին հասկանալու համար, որոց վրայ պիտի խօսինք յետագայ գըլուխներուն մէջ։

Սուրբ Գիրքը կը տայ մեզ լիուլի ծանօթութիւն Աստուածային կատարելութեանց վրայ, նորա գործոց և խորհրդոց վրայ, և այնպիսի ջերմ և անթերի ծանօթութիւն, որուն վրայ մարդուս միտքը կը յափշտակուի ու կըսքանչանայ և սիրտը կը խանդաղատի ու կ'ըզմայլի, բաւականութիւն գտնելով իւր ամեն կարօտութեանց։ Վասն զի, եթէ արարչագործութեամբ յայտնած է Աստուած իւր յաւիտենականութիւնը, ամենակարողութիւնը և աստուածութիւնը. Ս. Գրքով, աւելի պարզ կերպիւ, յայտնած է իւր ամեն կատարելութիւնները և մանաւանդ ամենագերագոյնը — Աստուած սէր է։

Արդարև զանազան ազգեր, 'ի հնուցանտի ունին զանազան սուրբ անուանեալ գրքեր. ինչպէս՝ Չինացիք՝ Կինկս անունով, Հնդկա-

ցնէ՝ — Վեդաս, Գաթաթիկք — Զենդ — Աւեստա, Արբագրքե՝ Ղուրան, Սկանտինաւեանք՝ Ադդա բայց միայն Աստուածաշունչն է միակ Աստուածոյ խօսք, որ կը պարունակէ ճշմարիտ աստուածպաշտութիւն. իսկ յիշեալ սուրբ կոչուած գրեանց մէջ մարդկային գաղափարաց հասարակ շղթան կը նշմարուի, և եթէ քանի մի ճշմարտութիւններ կը պարունակեն իւրեանց մէջ, այն ևս Աստուածաշնչէն առնուած կը համարուի, որով և պարզ կ'երևւի, որ աստուածային Գիրքը մարդկային հանճարի գործ չէ։ Ուստի և երկու կարենք բաժանել աշխարհիս բոլոր գրքերը — Աստուածային և մարդկային։ Առաջինն է յայտնութիւն աստուածային կամաց, որուն վրայ տպաւորուած է Աստուծոյ զօրութիւնը. իսկ երկրորդն է յայտնութիւն մարդկային մտաց, որուն վրայ տպաւորուած է մարդոյ տկարութիւնը (1)։

Սուրբ Գիրքն ունի երեք գլխաւոր յատկանիշ — Ճշմարտական, Պատմական և Մարգարէական։ Ա. Գիրքը Ճշմարտական է, այսինքն պայծառացնող և կանգնեցնող երկրի, վասն զի ակներեւ կը տեսնենք, որ ինչ տեղ Աւետարանը տարածուած է, այն երկիրները լուսաւոր-

(1) Պ. Հ. Համառօտութիւն Քրիստ. Ուսման Հայաս. Առաք. Ս. Եկեղեցւոյ։

ուած են. իսկ ընդհակառակն՝ անքրիստո-
նէից կամ հեթանոս աշխարհները զրկուած
են լուսաւորութենէ և յառաջադիմութեան
տարրէ։ Սուրբ Գիրքը Պատմական է, վասն
զի Ծննդոց Եղիցի լոյս խօսքէն մինչեւ Յով-
հաննու Յայտնութեան Տեսի երկին նոր և երկիր
նոր խօսքը՝ մի մեծ և սքանչելի շղթայ է, ո-
րով աշխարհիս սկիզբը կը կապուի միւս աշ-
խարհի սկզբան հետ, կամ այսպէս ասել,
աշխարհի ստեղծագործութեամբ կամ ծը-
նընդեամբ կը սկսի և կատարածով կը վերջա-
նայ։ Աստուծոյ ընտրած ազգը իրենքն կը
պահպանէր աշխարհիս պատմութիւնը, այն
է Ճանաչողութիւն Աստուծոյ, Արարչագործութիւ-
նորա; Անկումն մարդոյ ընդ մեղօք և յոյս փրկութեան։
Ահա քեզ ամենավսեմ նիւթ աւանդութե
կամ պատմութեան, որ մայր է կրօնի։ Սուրբ
Գիրքը Մարգարէական է, որ կատարուած է
և այսօր իսկ կը կատարուի մեր աչքեր։ Աս-
տուածային Գրոց մարգարէութեան կենդա-
նի նշան է արդէն Եբրայեցի ազգը. որ մարդ-
կային փրկութեան յուսով լցուած Աստուա-
ծաշունչը ձեռքը բռնած՝ տակաւին կսպա-
սէ փրկութեան։ Այս Եբրայեցի ազգը Քը-
րիստոնէութեան համար մարգարէական նը-
շան է անցեալ ժամանակի. իսկ Քրիստո-
նեայք նշան են ներկայ և ապառնի ժամա-
նակաց մարգարէութեան, որոյ կատարումն

Digitized by Google

խոստացած էր 'ի սկզբանէ և յայտնած Ներբոյեցւոց ազգին ։ Նոյն փրկութեան ակընկալութիւնը և մանկութեան յոյսը, այս երանաւէտ բանն Աստուծոյ՝ էր նախ թէ հաւատոյ, մխիթարութիւն մարգարէից և յոյս ճշմարիտ աստուածապաշտից[1] ։ Իսկ Նոր Կ-տակարանը կը խօսի և կը հաստատէ ամեն բան, ինչ որ Աստուած Հին Կտակարանին մէջ խօսած է իւր գործոց և կամաց համար, որ կատարուեցաւ մարդեղութեամբ խոստացեալ Փրկչին, այսինքն փրկութիւն մեր 'ի ձեռն Քրիստոսի, և այս պատճառաւ կը կոչուի Աւետարան, այսինքն՝ աւետիք բարութեան ։

Թէպէտ Հին և Նոր Կտակարանքը քաղըուած են զանազան ժամանակ և զանազան մարդիկներով, բայց նոցա վարդապետութեան հոգին մի է. վասն զի աստուածային է, և ամեն հաւատով ընդունողներ և կարդացողներ զգացած են նորա մէջ զօրութիւն Աստուծոյ, գտած են կեանք, կերակուր հոգւոյ, խաղաղութիւն խղճի, կենդանի յոյս, ճաշակ յաւիտենական կենաց և կարողութիւն համբերելոյ նեղութեանց, այնպիսի զգացումներ և հոգեկան վայելչութիւն, որ անհնարին է մարդկային գրքէ

(1) Ղուկ. Բ. 28 ։

Digitized by Google

բութեան և յառաջադիմութեան համար, ինչպէս Աստուածաշունչը։ Գիրք մի չը կայ և չէ կարող լինիլ, որ այնքան լեզունե-րով թարգմանուած և տարածուած լինի, ինչպէս Աստուածաշունչը։ Այս մեծ կարե-ւորութիւնն էր զոր զգացին և մեր անման Թարգմանիչքը, և ազգի լուսաւորութեան և զարգացման առաջին քայլափոխը Ս. Գը-րոց թարգմանութեամբ և ուսմամբ սկսան, որոց թարգմանութիւնն եւս այնքան ընտիր է, որ ներկայ դարուս Եւրոպացի հայագէտ բանասիրաց այլ և այլ գովեստից հետ միա-սին, կը կոչուի նաև Թագուհի Թարգմանութեանց։ Այսպէս այս գովեստէն աւելի մեծ գովեստ տուած կը լինինք մենք մեր Նախնեացը, ե-թէ Ս. Գրոց ուսմունքը մեր ժողովրդեան մէջ ընդհանրացնենք և գաւառականութեան չխառնածը նոյն հաստատուն հիման վրայ կա-ռուցանենք։



# ԵԿԵՂԵՑԱԿԱՆ
# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

---

## Ա.

*Յատկական նկարագիր ընդհանուր եկեղեցական մատենագրութեան Առաջին, Երկրորդ, Երրորդ և Չորրորդ դարուց. —Ներքին որոշիչ նկարագիր արեւելեան և արեւմտեան եկեղեցական մատենագրութեանց. —Տեսութիւն Հայոց եկեղեցական մատենագրութեան վրայ։*

ԴՊՐՈՑՆԵՐՈՒ յառաջ բերած գլխաւոր արգասեաց մին է Մատենագրութիւնը։ Որովհետեւ Սահակեան և Մեսրոպեան դըպրոցաց վրայ արդէն խօսեցանք, կը մնայ մեզ արդ՝ խօսիլ նոյն դպրոցներէն ծնած եկեղեցական մատենագրութեան վրայ։ Բայց այս ազգային եկեղեցական մատենագրութիւնն ևս ճշդիւ գնահատելու և իւր որոշ տիպարով պատկերացնելու համար՝ կարեւոր է նախ և առաջ, եթէ ոչ մանրազննին (որ մեր մասնաւորած ընթացքէն արտաքոյ է,) գէթ հարեւանցի ակնարկ մի ձգել եկեղեցական ընդհանուր մատենագրութեան ընթացքին վրայ, որով ընթացած է մինչեւ հինգերորդ դարը։



Digitized by Google

Եկեղեցական ընդհանուր մատենագրութիւնն այս յատկական նկարագիրը կը պատկերացնէ մեզ դարական կարգաւ։

Առաջին դարուն մէջ կ'երեւին միայն հատակոտոր թղթեր, գրուած 'ի յորդոր և 'ի խրատ զանազան դիպաց պատճառաւ, որոց մէջ ոչ թէ գիտութեան նշմարանք, այլ քրիստոնէական քաղցր օծութիւն և եթ կ'երեւի։

Երկրորդ դարուն մէջ մատենագրութիւնն առաջնոյն պէս միակերպ չէ։ Ժամանակի հանգամանքները յառաջ կը բերեն նիւթոց պէսպիսութիւն մատենագրութեան մէջ։ Վասն զի Քրիստոնէութիւնը կըսկսի արդէն սոյն դարուն մէջ հալածանքներ կրել ոչ միայն արտաքուստ Հեթանոսներէն և Հրէաներէն, այլ և 'ի ներքուստ ազգի ազգի աղանդաւորներէ, որոնք կը զրպարտեն Քրիստոնէից վարքը և վարդապետութիւնը, և Հռովմէական տէրութիւնն ևս, ինչպէս արտաքուստ, նոյնպէս և 'ի ներքուստ օգնական կը լինի Քրիստոնէութեան դէմ պայքարող հալածասէր ոգւոյն։ Ուստի Եկեղեցւոյ պաշտպան վարդապետք կը ստիպուին հասարակ թղթերով չը շատանալ, այլ և պատմական, պատասխանատուութեան, մեկնական և վիճական գրուածներով և ճառերով ասպարէզ ելնել։

Երրորդ դարուն մէջ եկեղեցական մատենագրութիւնն առաւել բազմակողմանի ընթացք կը ստանայ, որովհետեւ կարեւորութիւնը կը ստիպէ Քրիստոնէական ուսմանց հետ հետամուտ լինիլ միանգամայն և արտաքին գիտութեանց։ Վաղուց արդէն հեթանոսական փիլիսոփայութիւնը կը յառաջէր, բայց Քրիստոնէութեան տարածմանէն առաւել զարոյթ ստանալով և շփոթուելով, կը ջանէր սոյն դարուն մէջ դիմագրաւել ահագին յոխորտանօք, երբեմն Հեթանոսութեան և Քրիստոնէութեան մէջ համանմանութիւններ երազելով, երբեմն Քրիստոնէութիւնը յանդգնաբար պախարակելով, և երբեմն ձգտելով Քրիստոնէութենէն բարձր և եղած հեթանոսականներէն առաւել նորատեսակ կրօնք մի ստեղծաբանել։ Եւ այս պատճառաւ որչափ հակառակութիւնները կը բորբոքէին և նորանոր աղանդոց կամ վարդապետութեանց տեղի կը տան, այնչափ Քրիստոնեայք կը սոսկան արտաքին ուսմունքներէ, մանաւանդ փիլիսոփայականէն, և կը դըժկամակին իւրեանց մանուկները կայսերական կամ հասարակաց դպրոցները ուղարկել, թիւնաւոր համարելով յունական և հռովմէական դասական մատենագրութիւնը։ Բայց ժամանակը կը ստիպէ, որ Եկեղեցւոյ վարդապետք միայն քրիստոնէական վարդա-

պետութեամբ չըր մաքառին հեթանոսական մտաւոր ուժին դէմ, այլ և մտաւոր ուժով. ուստի և օգտաւէտ քան թէ վնասակար կը համարին դպրոցներ բանալ և այն դպրոցներուն մէջ Սուրբ Գրոց ուսման հետ աւանդել միանգամայն և փիլիսոփայութիւն, երկրաչափութիւն, քերականութիւն, ճարտարախօսութիւն, և այլն։

Այս տեսակ դպրոցներու առաջինն կը լինի Աղեքսանդրիոյ [illegible] դպրոցը, որուն կը հետեւին և ուրիշ շատ տեղեր. և եթէ չենք սխալիր, սոյն օրինակ դպրոցներու մէջ կը վարժին և մեր Թարգմանիչ Աշակերտներն յԱղեքսանդրիա, ՚ի Նիկոմեդիա, յԱթէնս և այլն։ Աղեքսանդրիոյ մէջ վաղուց առաջէն հաշուառուած էր գեղեցիկ ուսմանց Մուսայարանը, ուր կը գրէր ուսումնաւոր մանկտին հռովմէական պետութեան ամէն կողմերէն, և այս կերպով Աղեքսանդրիա հաստատուած էր երբեմն [illegible] Ասոր կողմերին մէջ ահա կը հաստատուի և [illegible] դպրոցը, յորմէ ականաւոր [illegible] կը յառաջանան, և ՚ի տեղիս տեղիս [illegible]ւոր աշակերտներ կ՚ունենան, ինչպէս [illegible] Կղեմէս, Որոգինէս, Գրիգոր Սքանչելագործ, Դիոնէսիոս Աղեքսանդրացի և այլք, որոնք իւրեանց գրուածներով կը մաքառին նոյն ժամանակի զանազան փիլիսոփայական

և աւելի աղանդական կարծեաց դէմ։

Բայց եկեղեցական առաւել ընտիր մատենագիրները Չորրորդ դարուն մէջ կ'երեւին, որոց գրուածքները քրիստոնէական ոգիւ համեմուած են, և որոնք եկեղեցական մատենագրութեան գլխաւոր և օրինակելի գործքեր կըհամարուին։ Այս արժանաւորութիւնն ունին Աթանասի, Բարսղի, Գրիգորի Նիւսացւոյ, Գրիգորի Նազիանզացւոյ, Կիւրղի, Եփրեմի, Ամբրոսիոսի, Հերոնիմոսի, Ոսկեբերանի և Օգոստինոսի գրուածքները։ Այս ականաւոր անձինքներէն ոմանց (ինչպէս՝ Բարսղի, Ոսկեբերանի, Օգոստինոսի) քրիստոնէական զգայուն և բարեհամբոյր ճաշակի զարգացմանը օժանդակող եղած է, ոչ այնքան դպրոցական, որչափ մայրական արգասաւոր կրթութիւնք։ Եթէ մեր բըռնած մասնաւոր ընթացքը չըներեր մեզ ընդարձակօրէն խօսիլ այս ընտիր անձանց մատենագրական աշխատութեան վրայ, գէթ այս չափը կ'ասենք, որ մեր Թարգմանիչները սոցա ժամանակակիցներն կըհամարուին, և նոցա մատենագրական ճաշակը սիրողներ, ինչպէս և նոցա երկասիրութեանց շատերը հայկական Թարգմանութեամբ մեզ աւանդած են։ Եւ որովհետև առանց ժամանակակից անցքերուն տեղեակ լինելու, անհնարին է հիմնովին ըմբռնել յունական և հռովմէա-

Digitized by Google

կան երրորդ, չորրորդ և հինգերորդ դարուց եկեղեցական մատենագրութեան հոգին, ուստի կը պարտաւորինք գէթ այսչափ ասել, որ մեծ մասամբ գրուած են նոյնժամանակեայ յուզուած խնդիրներուն նկատմամբ, այն է մոլորութեանց, աղանդաւորութեանց և փիլիսոփայական վիճմանց և կարծեաց. վասն որոյ և առաւել այն մասները շինողական են և տեւական, որոնք արտաքոյ են վիճաբանական նպատակէ։ Մ՛եր նախնեաց թարգմանածները առաւել երկրորդ կարգին կը վերաբերին։

Իսկ ներքին ընդհանրական նկարագիրը, որով կ՚որոշուին իրարմէ արեւելեան — յունական և արեւմտեան — հռովմէական եկեղեցական մատենագրութիւնքը, այս համեմատութեան մէջ կը կայանայ, որ յունականին մէջ քրիստոնէութիւնը բացատրուած է առաւել տեսական գիտութեամբ, իսկ հռովմէականին մէջ՝ գործնական գիտութեամբ։ Այս նկարագրով կ՚որոշուի նոյն իսկ յունական և հռովմէական փիլիսոփայութիւնը։ Բայց ընդհանրապէս յունական եկեղեցական մատենագրութիւնը առաւել ճոխ է քան հռովմէականն։

Իսկ Հայոց եկեղեցական երկրորդ շրջանի մատենագրութիւնը (բաց ՚ի յունական Հարց ոմանց ինչ ինչ թարգմանութիւննե-

րէն,) առ հասարակ պարզ յորդորական է և մեծ մասամբ պատմական, հեռի վիճաբանական ընթացքէ, որով յայտնի կ'երևի թէ հայկական մատենագրութիւնը առիթ չէ ունեցած մոլորամտութեանց դէմ պայքարել, բայց որում և ոչ իմաստասիրական դըպրոցներու յուզած խնդիրները կային Հայաստանին մէջ և ոչ նոցա դէմ մաքառելու կարևորութիւնն։

Այսպէս ուրեմն, եթէ առհասարակ մատենագրութիւնը որ և իցէ ազգի մտաւոր և բարոյական զարգացման արդար կշիռն է, եկեղեցական մատենագրութիւնն ևս Եկեղեցւոյ վիճակի և գործունէութեան ճշգրիտ պատկերն է։ Այն վերանորոգութիւնը, որ կը կրէ Հայաստան երկրորդ շրջանին մէջ, թէ՛ քրիստոնէական լուսաւորութեամբ և թէ՛ մատենագրական զարգացմամբ, այն ազգային պատմական կենաց նշանաւոր դարագլխոց երևոյթը դրած է բոլոր մատենագրաց մտադրութիւնը, և մանաւանդ Ս. Գըրոց թարգմանութեան գեղեցիկ և միաբանական աշխատասիրութիւնն ևս խիստ մեծ ազդեցութիւն գործած է ամենուն երկասիրութեանց մէջ։ Քանի մի մատենագիրներ նոյն շրջանին մէջ խօսած են մի և նոյն նիւթոյն վրայ հաւասար եռանդով և զգացմամբ։ Մատենագրութեան պատմական մա-

Digitized by Google

սըն անգամ առաւել քրիստոնէական նահատակութեան պատկերներ կը ներկայացնէ, քան թէ քաղաքական իրողութիւններ։ Եւ պատճառն ոչ թէ հեղինակաց եկեղեցական լինելն է, այլ ժամանակը և հայրենեաց վիճակը այնպէս ազդած են։ Ա՛յսպէս ուրեմն, որչափ որ ազգային գրագիտական պատմութիւնը կը վերաբերի մեր մատենագրաց վրայ խօսիլ, նոցա գրաւորական արժանաւորութիւնը գնահատել, ժամանակագրական և պատմական ճշդութիւնները հետազօտել և լեզուի յատկութիւնը կշռել, սակայն միւս կողմէն եւս Եկեղեցական Պատմութիւնը չէ կարող զանց առնել նոցա յորդորական և վարդապետական կողմերը նկատողութեան առնուլ և պատմականին մէջէն գէթ եկեղեցականին վրայ խօսիլ։

Սկսինք ուրեմն յառաջ բերել թէ՛ մատենագիրները և թէ՛ իւրեանց երկասիրութեանց համառօտ բովանդակութիւնը, առաւել ընդարձակ հետազօտութիւնը գրագիտութեան կամ դպրութեան պատմութեանը թողլով։

Digitized by Google

## Բ.

**Մատենագրական երկասիրութիւնք Ս. Գրիգորի Լուսաւորչին, Ագաթանգեղոսի և Զենոբայ. — Ներքին նըկարագիր պարունակութեան իւրաքանչիւրոց։**

ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ — Այս շնաշխարհիկ անձն, ինչպէս քրիստոնէական հաւատոյ հաստատութեան, նոյնպէս և ազգային եկեղեցական մատենագրութեան հայրն է, որոյ քրիստոնէական ուսմունք տարածելու ջանից և առաքելական վաստակոց վրայ արդէն խօսած ենք, և կը մնայ մեզ այժմ խօսիլ նորա գրաւոր երկասիրութեանց վրայ։

Գրիգոր Լուսաւորչի երկասիրութեան ծնունդ են Յաճախապատում գիրքն և Ագաթանգեղոսի պատմութեան մէջ գտնուած Վարդապետութիւնը։ Նորա կ՚ընծայուին նմանապէս ինչ ինչ կանոններ, թուով երեսուն, (գուցէ այն, զոր յաւելյուց Նիկիական կանոնաց վրայ (1) ինչպէս և [illegible], Հանգանակի վրայ)։ Ժամագրքի մէջ Առաւօտեան [illegible] մաղթանքը, որ կ՚աւանդուի թէ Հռիփսիմեանց և Գայիանեանց մարմինները ամփոփելու ժամանակ ասած է. նմանապէս և երկու աղօթք, — Օրհնեալ է մարդասիրութիւն քո, Տէ՛ր իմ. և Աղաչեմ զքեզ։

(1) Խոր. Բ. Գիրք. Գ.

Յաճախապատում, որ ոմանք յունարէն և ոմանք աւելի հաւանական, հայերէն լեզուով և յունարէն տառերով գրուած կը համարեն (ըստ որում հայկական գրոց գիւտէն առաջ է), կը պարունակէ իւր մէջ քսան երեք ճառեր Երրորդութեան խորհրդոյն և աստուածածանօթութեան վրայ, արարչական սիրոյն և անպատում գթութեան վրայ, մարդոյ առաքինական հանդիսից և բարեպաշտութեան վրայ, հովուաց պարտուց և արթուն տեսչութեան վրայ, և այլն և այլն։ Իսկ Ագաթանգեղոսի մէջ աւանդուած քարոզութիւնը պարզ և ընտիր վարդապետութիւն է, Ս. Գրոց պատմական ընթացից հետեւողութեամբ, ուր կը խօսուի մարդոյ ստեղծագործութեան և պատուիրանազանցութեան վրայ, աստուածային ուխտի հաստատութեան և դար առ դար կրկնութեան կամ նորոգութեան վրայ, Աստուածային անպայման սիրոյն կամ Քրիստոսի մարդեղութեան վրայ, ամէն փրկագործ տնօրէնութեանց վրայ, աշխարհի կատարածի և յարութեան ու դատաստանի վրայ, Հոգւոյն Սրբոյ գալստեան և աշխարհի նորոգութեան վրայ, Առաքելոց գործոց և քարոզութեանց վրայ, և Քրիստոնէական Եկեղեցւոյ տեւականութեան և խաւարի հետ ունեցած պատերազմին վրայ։

Digitized by Google

Գրիգոր Լուսաւորչի քարոզութեան համ վարդապետութեան բովանդակութիւնը, թէ Ագաթանգեղոսի և թէ Յաճախապատում մէջ, սքանչելի պարզութիւն և գեղեցկութիւն ունի: Ասացուածները հատու և վճռական, դարձուածները առանց սեթևեթի և պաճուճանաց, նմանութիւնները բնական և ընտանի, իմաստները սրտաշարժ և զգայուն: Ակներեւ կը տեսնուի, որ աստուածային և մարդկային սիրով վառուած սրտէ կը բղխին և ոչ իմաստասիրական կարծիքներու մէջ տատանող մտքէ: Վարդապետական եղանակը դասախօսական է, և ըստ ամենայնի գործնական: Ցամաք իմաստասէր չէ, որ կը տրամաբանէ. և ոչ արուեստակեալ պերճախօս, որ կը ճարտարախօսէ, այլ գթոտ հայր, որ իւր սրտին մէջ յուզուած բոլոր աստուածային զգացմունքները կը ջանայ իւր որդւոցը հաղորդել և տկար ու սխալական արարածները յորդորելով ՚ի հաւատ, ՚ի յոյս և ՚ի սէր՝ կապել Արարչի հետ, որ ամենակարող է և անփոփոխ բարի: Վասն զի մի կողմէն Աստուծոյ ամենակարողութիւնը կը պատկերացնէ և գթութիւնը, միւս կողմէն մարդոյ տկարութիւնը և կորստութիւնը. մի կողմէն Աստուծոյ բարութենէն բղխած անթիւ բարիքները, միւս կողմէն մարդկային անձնիշխանական ապստամբութեան չարաչար գոր-

պետութեամբ չըմաքառին հեթանոսական մտաւոր ուժին դէմ, այլ և մտաւոր ուժով. ուստի և օգտաւէտ քան թէ վնասակար կը համարին դպրոցներ բանալ և այն դպրոցներուն մէջ Սուրբ Գրոց ուսման հետ աւանդել միանգամայն և փիլիսոփայութիւն, երկրաչափութիւն, քերականութիւն, ճարտարախօսութիւն, և այլն։

Այս տեսակ դպրոցներու առաջինն կը լինի Աղէքսանդրիոյ Նրախօսական դպրոցը, որուն կը հետեւին և ուրիշ շատ տեղեր. և եթէ չենք սխալիր, նոյն օրինակ դպրոցներու մէջ կը վարժին և մեր Թարգմանիչ Աշակերտներն յԱղէքսանդրիա, 'ի Բիւզանդիոն, յԱթէնս և այլն։ Աղէքսանդրիոյ մէջ վաղուց արդէն հռչակաւոր էր գեղեցիկ ուսմանց Մուսայարանը, ուր կը դիմէր ուսումնասէր մանկտին Հռովմէական պետութեան ամեն կողմերէն, և այս կերպով Աղէքսանդրիա համարուած էր իբրեւ Նոյան Գիտ—Բնակ։ Սոյն կայանին մէջ ահա կը հաստատուի և Նրախօսական դպրոցը, յորմէ ականաւոր մարդիկ կը յառաջանան, և 'ի տեղիս տեղիս ականաւոր աշակերտներ կ'ունենան, ինչպէս են՝ Կղեմէս, Որոգինէս, Գրիգոր Սքանչելագործ, Դիոնէսիոս Աղէքսանդրացի և այլք, որոնք իւրեանց գրուածներով կը մաքառին նոյն ժամանակի զանազան փիլիսոփայական

և աւելի աղանդական կարծեաց դէմ։

Բայց եկեղեցական առաւել ընտիր մատենագիրները Զոլոտոյ դարուն մէջ կ'երեւին, որոց գրուածքները քրիստոնէական աղիւ համեմուած են, և որոնք եկեղեցական մատենագրութեան գլխաւոր և օրինակելի գործքեր կը համարուին։ Այս արժանաւորութիւնն ունին Աթանասի, Բարսղի, Գրիգորի Նիւսացւոյ, Գրիգորի Նազիանզացւոյ, Կիւրղի, Եփրեմի, Ամբրոսիոսի, Հերոնիմոսի, Ոսկեբերանի և Օգոստինոսի գրուածքները։ Այս ականաւոր անձինքներէն ոմանց (ինչպէս՝ Բարսղի, Ոսկեբերանի, Օգոստինոսի) քրիստոնէական զգայուն և բարեհամբոյր ճաշակի զարգացմանը օժանդակող եղած է, ոչ այնքան դպրոցական, որչափ մայրական արգասաւոր կրթութիւնը։ Եթէ մեր բռնած մասնաւոր ընթացքը չը ներեր մեզ ընդարձակօրէն խօսիլ այս ընտիր անձանց մատենագրական աշխատութեան վրայ, գէթ այս չափը կ'ասենք, որ մեր Թարգմանիչները սոցա ժամանակակիցներն կը համարուին, և նոցա մատենագրական ճաշակը սիրողներ, ինչպէս և նոցա երկասիրութեանց շատերը հայկական Թարգմանութեամբ մեզ աւանդած են։ Իսկ որովհետև առանց ժամանակակից անցքերուն տեղեակ լինելու, անհնարին է հիմնովին ըմբռնել յունական և հռովմէա-

Digitized by Google

կան երրորդ, չորրորդ և հինգերորդ դարուց եկեղեցական մատենագրութեան հոգին, ուստի կը պարտաւորինք գէթ այսչափ ասել, որ մեծ մասամբ գրուած են նոյնժամանակեայ յուզուած խնդիրներուն նկատմամբ, այն է մոլորութեանց, աղանդաւորութեանց և փիլիսոփայական վիճմանց և կարծեաց. վասն որոյ և առաւել այն մասերը շինողական են և տեւական, որոնք արտաքոյ են վիճաբանական նպատակէ։ Մեր նախնեաց թարգմանածները առաւել երկրորդ կարգին կը վերաբերին։

Իսկ ներքին ընդհանրական նկարագիրը, որով կ'որոշուին իրարմէ արեւելեան — յունական և արեւմտեան — հռովմէական եկեղեցական մատենագրութիւնքը, այս համեմատութեան մէջ կը կայանայ, որ յունականին մէջ քրիստոնէութիւնը բացատրուած է առաւել տեսական գիտութեամբ, իսկ հռովմէականին մէջ՝ գործնական գիտութեամբ։ Այս նկարագրով կ'որոշուի նոյն իսկ յունական և հռովմէական փիլիսոփայութիւնը։ Բայց ընդհանրապէս յունական եկեղեցական մատենագրութիւնը առաւել ճոխ է քան հռովմէականն։

Իսկ Հայոց եկեղեցական երկրորդ շրջանի մատենագրութիւնը (բաց 'ի յունական Հարց ոմանց ինչ ինչ թարգմանութիւննե-

րէն, ) առ հասարակ պարզ յորդորական է և մեծ մասամբ պատմական, հեռի վիճաբանական ընթացքէ, որով յայտնի կ՚երևի թէ հայկական մատենագրութիւնը առիթ չէ ունեցած մոլորութեանց դէմ պայքարել, ըստ որում և ոչ իմաստասիրական դըպրոցներու յուզած խնդիրները կային Հայաստանին մէջ և ոչ նոցա դէմ մաքառելու կարեւորութիւնն։

Այսպէս ուրեմն, եթէ առ հասարակ մատենագրութիւնը որ և իցէ ազգի մտաւոր և բարոյական զարգացման արդար կշիռն է, եկեղեցական մատենագրութիւնն ևս Եկեղեցւոյ վիճակի և գործունէութեան ճշգրիտ պատկերն է։ Այն վերանորոգութիւնը, որ կը կրէ Հայաստան երկրորդ շրջանին մէջ, թէ՛ քրիստոնէական լուսաւորութեամբ և թէ՛ մատենագրական զարգացմամբ, այն ազգային պատմական կենաց նշանաւոր դարագլխոյ երեւոյթը գրաւած է բոլոր մատենագրաց մտադրութիւնը, և մանաւանդ Ս. Գըրոց Թարգմանութեան գեղեցիկ և միաբանական աշխատասիրութիւնն ևս խիստ մեծ ազդեցութիւն գործած է ամենուն երկասիրութեանց մէջ։ Բանի մի մատենագիրներ նոյն շրջանին մէջ խօսած են մի և նոյն նիւթոյն վրայ հաւասար եռանդով և զգացմամբ։ Մատենագրութեան պատմական մա-

սըն անգամ առաւել քրիստոնէական նահատակութեան պատկերներ կը ներկայացնէ, քան թէ քաղաքական իրողութիւններ։ Եւ պատճառն ոչ թէ հեղինակաց եկեղեցական լինելն է, այլ ժամանակը և հայրենեաց վիճակը այնպէս ազդած են։ Այսպէս ուրեմն, որչափ որ ազգային գրագիտական պատմութե̃ը կը վերաբերի մեր մատենագրաց վրայ խօսիլ, նոցա գրաւորական արժանաւորութիւնը գնահատել, ժամանակագրական և պատմական ճշդութիւնները հետազօտել և լեզուի յատկութիւնը կշռել, սակայն միւս կողմէն եւս Եկեղեցական Պատմութիւնը չէ կարող զանց առնել նոցա յորդորական և վարդապետական կողմերը նկատողութեան առնուլ և պատմականին մէջէն գէթ եկեղեցականին վրայ խօսիլ։

Ակսինք ուրեմն յառաջ բերել թէ մատենագիրները և թէ իւրեանց երկասիրութեանց համառօտ բովանդակութիւնը, առաւել ընդարձակ հետազօտութիւնը դրագիտութեան կամ դպրութեան պատմութեանը թողլով։

Digitized by Google

# Բ.

**Մատենագրական երկասիրութիւնք Ս. Գրիգորի Լուսաւորչին, Ագաթանգեղոսի և Զենոբայ. — Ներքին նըկարագիր պարունակութեան իւրաքանչիւրոց։**

ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ.— Այս չնաշխարհիկ անձն, ինչպէս քրիստոնէական հաւատոյ հաստատութեան, նոյնպէս և ազգային եկեղեցական մատենագրութեան հայրն է, որոյ քրիստոնէական ուսմունք տարածելու ջանից և առաքելական վաստակոց վրայ արդէն խօսած ենք, և կը մնայ մեզ այժմ խօսիլ նորա գրաւոր երկասիրութեանց վրայ։

Գրիգոր Լուսաւորչի երկասիրութեան ծնունդ են Յաճախապատում գիրքն և Ագաթանգեղոսի պատմութեան մէջ գտնուած Վարդապետութիւնը։ Նորա կ'ընծայուին նմանապէս ինչ ինչ կանոններ, թուով երեսուն, (գուցէ այն, զոր յաւելցուց Նիկիական կանոնաց վրայ (1) ինչպէս և Իսկ Քեզ փառաւորեցուցան, Հանգանակի վրայ). Ժամագրքի մէջ՝ Աստուած Մեծ և Հզօր մաղթանքը, որ կ՚աւանդուի թէ՝ Հռիփսիմեանց և Գայիանեանց մարմինները ամփոփելու ժամանակ ասած է. նմանապէս և երկու աղօթք, — Օրհնեալ է մարդասիրութիւն քո, Տէ՛ր իմ. և Աղաչեմ զՔեզ։

(1) Խոր. Բ. Գիրք. Ղ.։

Յաճախապատում, որ ոմանք յունարէն և ոմանք աւելի հաւանական, հայերէն լեզուով և յունարէն տառերով գրուած կը համարեն (ըստ որում հայկական գրոց գիւտէն առաջ է), կը պարունակէ իւր մէջ քսան երեք ճառեր Երրորդութեան խորհրդոյն և աստուածածանօթութեան վրայ, արարչական սիրոյն և անպատում գթութեան վրայ, մարդոյ առաքինական հանդիսից և բարեպաշտութեան վրայ, հովուաց պարտուց և արթուն տեսչութեան վրայ, և այլն և այլն։ Իսկ Ագաթանգեղոսի մէջ աւանդուած քարոզութիւնը պարզ և ընտիր վարդապետութիւն է, Ս. Գրոց պատմական ընթացից հետեւողութեամբ, ուր կը խօսուի մարդոյ ստեղծագործութեան և պատուիրանազանցութեան վրայ, աստուածային ուխտի հաստատութեան և դար առ դար կրկնութեան կամ նորոգութեան վրայ, Աստուածային անպայման սիրոյն կամ Քրիստոսի մարդեղութեան վրայ, ամեն փրկագործ տնօրէնութեանց վրայ, աշխարհի կատարածի և յարութեան ու դատաստանի վրայ, Հոգւոյն Սրբոյ գալստեան և աշխարհի նորոգութեան վրայ, Առաքելոց գործոց և քարոզութեանց վրայ, և Քրիստոնէական Եկեղեցւոյ տեւականութեան և խաւարի հետ ունեցած պատերազմին վրայ։

Digitized by Google

Գրիգոր Լուսաւորչի քարոզութեան կամ վարդապետութեան բովանդակութիւնը, թէ Ագաթանգեղոսի և թէ Յաճախապատումի մէջ, սքանչելի պարզութիւն և գեղեցկութիւն ունի։ Ասացուածները հատու և վճռական, դարձուածները առանց սեթեւեթի և պաճուճանաց, նմանութիւնները բնական և ընտանի, իմաստները սրտաշարժ և զգայուն։ Ակներեւ կը տեսնուի, որ աստուածային և մարդկային սիրով վառուած սրտէ կը բղխին և ոչ իմաստասիրական կարծիքներու մէջ տատանող մտքէ։ Վարդապետական եղանակը դասախօսական է, և ըստ ամենայնի գործնական։ Ցամաք իմաստասէր չէ, որ կը տրամաբանէ, և ոչ արուեստակեալ պերճախօս, որ կը ճարտարախօսէ, այլ գթոտ հայր, որ իւր սրտին մէջ յուզուած բոլոր աստուածային զգացմունքները կը ջանայ իւր որդւոցը հաղորդել և տկար ու սխալական արարածները յորդորելով ՚ի հաւատ, ՚ի յոյս և ՚ի սէր՝ կապել Արարչի հետ, որ ամենակարող է և անփոփոխ բարի։ Վասն զի մի կողմէն Աստուծոյ ամենակարողութիւնը կը պատկերացնէ և գթութիւնը, միւս կողմէն մարդոյ տկարութիւնը և կարօտութիւնը. մի կողմէն Աստուծոյ բարութենէն բղխած անթիւ բարիքները, միւս կողմէն մարդկային անձնիշխանական ազատութեան չարաչար գոր-

ծաղրութենէն բղխած չարիքները։ Եւ այս-պէս, աստուածային ամենաբարի կամքը մէ-այն անսայթաք ուղեցոյց կ'ընծայէ մարդկա-յին բոլոր գործողութեանց։ Առաքինու-թիւնը և առաքինիները գոված ժամանակ՝ մարդոյ աստուածանմանութիւնը կը տեսնես, կըզգաս և կ'ուրախանաս. իսկ մոլութիւնը և մոլիները պարսաւած ժամանակ՝ մարդոյ անասնական վիճակը կը տեսնես, կը հառա-չես ու կ'արտասուես։

Գրիգոր Լուսաւորչի վարդապետութեան հաստատուն խարիսխը Ս. Գիրքն է, համո-զական և շարժիչ մասն՝ Աստուծոյ խնամոց և մարդասիրութեան կենդանի պատկերա-ցուցումն, իսկ յորդորողն ու քաջալերողն՝ իւր հայրագորով սրտի ձայնն։ Միով բանիւ, ժողովուրդ մի քրիստոնէական ուսման մէջ կրթելու համար ինչ որ կարեւոր է, ամէնը լիովին կը տեսնուի առաքելանման Հայրա-պետի քարոզութեան մէջ, որոյ բովանդա-կութիւնը այսպէս կարող ենք համառօտել. —Սէր և խնամք Արարչին և պարտաւորութիւնք արա-րածոյն։

ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ.—Տրդատ թագաւորի ար-քունի քարտուղարն, ազգաւ հռովմայեցի, հռոմարէն և յունարէն դպրութեան հը-

մուս (1), հրամանաւ Տրդատայ կը դրէ Հայոց քրիստոնէական դարձի պատմութիւնը, այնպիսի ընտիր կարգաւորութեամբ, որ յետագայ դարուց պատմիչք, ոչ միայն կը գովեն, այլ և շատ տեղ Խորենացին իւր համառօտախօսութեան պակասորդը կը յորդորէ, որ ընթերցողք լրացնեն Ագաթանգեղոսէն, մանրապատում տեղեկութիւններ քաղելով։ Ագաթանգեղոս գլխաւորապէս Ս. Գրիգորի և Տրդատայ կենաց, գործոց և բարեկարգութեանց վրայ կը խօսի, թէպէտ և իւր պատմութիւնն նոյն ժամանակ պատահած անցքերէն առաջ կ'սկսի։ Կը խօսի Հռիփսիմեանց և Գայիանեանց նահատակութեան վրայ, Տրդատայ հալածաւորութեան և քրիստոնէական հրաշալի դարձին վրայ։ Կը նկարագրէ Հայաստանի քրիստոնէական լուսաւորութեան կամ վերականգդանութեան սրտառուչ պատկերը, այն է

(1) Ագաթանգեղոսի թէ՛ հայերէնը կայ և թէ յունարէնը, և այս պատճառաւ ոմանք կը պնդեն թէ՝ սկզբնագիրը յունարէն գրուած է և ապա թարգմանչաց ձեռքով հայերէն թարգմանուած. իսկ այլք կը պնդեն թէ՝ Ագաթանգեղոս Հայոց արքունեաց մէջ հայերէն սովորելով հայերէն գրած է։ Այս վերջին կարծիքը բաւականին հաւանական ցուցած և պաշտպանած է Հ. Գար. Զար. իւր յօրինած Հայերէն դպրութեան պատմութեան մէջ, հայերէն և յունարէն օրինակները իրարու հետ համեմատելով և սկզբնականութիւնը հայերէնին տալով։

Digitized by Google

ժողովրդի հոգեւոր յուզմունքը, գունդագունդ խռնումն 'ի լուր քարոզութեան Աւետարանի, վկայարանաց շինութեան համագործ. հրճուանքը, Հայրապետի ընտրութեան և ձեռնադրութեան համար եղած գումարումները, և մանաւանդ բիւրաւոր ժողովրդոց մկրտութեան սքանչելի տեսարանը Եփրատ գետին մէջ, Ս. Գրիգորի հագեւպարար քարոզութիւնը և Էջմիածնի տաճարին շինութիւնը, և այլն, որոց վրայ արդէն իր տեղը խօսած ենք։

Հայաստանի քրիստոնէական վերադարձի գեղեցիկ պատմութիւնը կարդացողը, Ագաթանգեղեան մատեանին մէջ, կըսքանչանայ աստուածային սքանչելեաց վրայ, կը խանդաղատի ժողովրդի քրիստոնէական եռանդագին յուզման և միահաղոյն վերածնելութեան վրայ, և կը յափշտակուի այն երախտագէտ խորհրդածութեամբ, որով Ոսկեբերան (1) յափշտակեցաւ մարգարէի գեղեցիկ խօսքը կրկնելով Հայոց հոգեւոր ծընընդեան համար. "Ո՞ ետես, ո՞ լուաւ, եթէ երկնեաց երկիր օր մի, և ծնաւ զազգ մի ողջոյն"։

ԶԵՆՈԲ ԳԼԱԿ—Ազգաւ ասորի, առաջնորդ

(1) Ոսկեբ. Ներբողեան առ Գրիգոր Լուսաւորիչ

և վանահայր Տարօնոյ Իննակնեան կամ Սուրբ Կարապետի վանուց, ուր կարգուած էր Գրիգոր Լուսաւորչէն՝ Կեսարիայէն դառնալէն յետոյ։

Զենոբայ երկասիրութիւնը, որ Պատմութիւն Տարօնոյ կը կոչուի, կը պարունակէ իւր մէջ նախ քանի մի թղթեր և ապա Տարօնոյ գաւառին մէջ կատարուած քրմական պատերազմին և քրիստոնէական վերանորոգութեան պատմութիւնը, նամակի ձեւով։

Առաջին թուղթն է Գրիգոր Լուսաւորչի գրածն առ Ղեւոնդիոս հայրապետ Կեսարիոյ, որով շնորհակալ կը լինի Անտոն և Կրօնիդէս կրօնաւորաց համար, և կը խնդրէ նոցա նման ուրիշներն եւս ուղարկել, մանաւանդ զՏիմոթէոս և Եղիազար, որք նշանաւոր էին սրբութեամբ վարուց։

Երկրորդն է Ղեւոնդիոսի պատասխանը, որով ուրախակից կը լինի Լուսաւորչին, Հայաստանի քրիստոնէական դարձի աստուածահրաշ հանդիսին համար և կը յայտնէ որ խնդրած կրօնաւորները ներկայ չեն, որ ուղարկէ, այլ գնացած են մին 'ի Հռոմ և միւսն յԵրուսաղէմ և անտի 'ի Բիւզանդիոն։

Երրորդն է Գրիգոր Լուսաւորչի թուղթն առ Տիմոթէոս և Եղիազար, որով կը յիշէ Հայաստանի հարիւր քսան գաւառաց կարօտութիւնը քահանայից և հովուաց, և կը

խոստանայ նոցա տեսչութեանը յանձնել Մամիկոնեան երկիրը — Տարօն — եթէ հաճին գալ։

Իսկ չորրորդն է խնդրագիր քանի մի տարի կրօնաւորաց (Բեկտորի, Նաստասայ և այլոց) որոնք Բիւզանդիոնի մէջ լսելով Տարօնեցի անձներէ, որ Հայաստան՝ քրիստոնէական գեղեցիկ կերպարանափոխութեան հանդիսարան դարձած է, կը դրեն առ Լուսաւորիչ և կը թախանձեն, որ բոլոր անցքերու պատմութիւնը գրով իրենց հաղորդէ։ Այս առթիւ Ս. Գրիգոր կը հրամայէ Զենոբին կատարել յիշեալ կրօնաւորաց խնդիրը և Տարօնոյ պատմութիւնը գրով իրենց հաղորդել։

Այս Նամակաձեւ Պատմութեան առաջին պատճէնին մէջ կը յիշատակուի համառօտիւ, Գրիգորի և Տրդատայ ծննդեան դէպքերը, միոյն չարչարանքը և միւսոյն դարձը. Արձան և Դեմետրէ քրմապետ իշխանաց յարուցած պատերազմը և պարտութիւնն ՚ի Քրիստոնէութենէ։ Իսկ երկրորդ պատճէնին մէջ պատմութիւնը կը շարունակուի և ուսարտմամբ լրումն կ'առնու գիրքը։ Երրորդ պատմութեան խիստ հարցաւիրական տեղեկութիւններ. կ'աւանդուին գրքի մէջ, մանաւանդ Տարօնոյ գաւառի գեղեցիկ, Ջրաւէտ, օդաղուարձ, խո-

տաքուղխ և մեղրաքուղխ դրից վրայ։ Ենոքայ գրած պատմութեան մէջ կը յիշատակուին քանի մի անծանօթ պատմագիրներ (Բարդա կամ Բարդեծան և Պիափիդոն Թարգմանիչ), և տեղ տեղ կը յորդորէ Ենոք իւր համառօտ անցածին պակասորդը լրացնել նոցա պատմութիւնները կարդալով։ Որպէս շարայարութիւն Ենոքայ պատմութեան, Յովհան Մամիկոնեան վեցերորդ դարուն մէջ շարունակած է Տարօնոյ պատմութիւնը, որուն վրայ իր ժամանակին պիտի խօսինք։ Բայց որովհետեւ երկուսի գրաւոր ոճոյն մէջ համանմանութիւն կը նշմարուի, հաւանական կը կարծուի որ Ենոք իւր պատմութիւնը ասորերէն գրած լինի (ըստ որում Ասորիք էին խնդրողները) և յետոյ շարայարիչն թարգմանած լինի։ Ենոքայ և Ագաթանգեղոսի պատմութեան մէջ տեղ տեղ տարբերութիւն կը նշմարուի ինչ ինչ անցից նկատմամբ, և սորա պատճառն այն է որ իւրարու գրուածք կարդացած չեն, և Ենոք ինքն կ'ասէ, որ Ագաթանգեղոսէն առաջ գրած է։

# Գ.

**Երկասիրութիւնք Մեծին Ներսիսի · Փաւստոսի Բիւզանդայ · Սահակայ Պարթեւի և Մեսրոպայ Մաշտոցի · Ներքին նկարագիր պարունակութեան իւրաքանչիւրոց ·**

ՆԵՐՍԷՍ ՊԱՐԹԵՒ. — Արդէն տեսանք որ Մեծն Ներսէս շարունակ զբաղած էր Հայաստանի բարեկարգութեամբ, և ազգային քաղաքական իշխանութեան տկարութեան պատճառաւ՝ ստիպուած էր երբեմն յունական և երբեմն պարսկական արքունեաց մէջ գեգերիլ. այս պատճառաւ դժուար երկասիրութեան կողմանէ իրեն ընծայուածները միայն քանի մի խրատներ են Կանոնագրաց մէջ և քանի մի աղօթքներ և այն ևս աւանդութեամբ։ Իսկ պատմագրութիւնք կը հաւաստեն, որ Ներսիսի ամենամեծ և քաղցր երկասիրութիւնք եղած են ուսուցանել բանիւ և իւր կենաց օրինակով. վասն զի այսպէս կ'ասէ Բիւզանդ. «Վասն ճշմարտութեան մինչեւ 'ի մահ մարտնչէր և զաջողակ արդարութեան քաջալերեալ խնդացուցանէր և իւրով վարդապետութեան անձրեւովն պարարէր . . . . ։ Ընդ ամենայն տեղիս սահմանացն Հայոց մեծաց, ընդ որ էր յառաջագոյն նորուն հարցն սերմանեալ զքարոզու-

Թիւն Բանին կենաց, զնոյն և սա ուսուցեալ անձրեւուքն . . . . : Օ՜ Թադէական Աթոռ միւսանգամ ելից . . . . զբոյսն անձեցուց, մշակ հնձող եղեալ գործակից սերմանողացն, և բազմացոյց զպտղաբերսն արդիւնսն 'ի շտեմարանս արքայութեան . . . : Նախ ինքն առնելով առ իւր անձն բարի և ապա այլոց օրինակ բարեաց դնելով. առ հասարակ վարդապետական բանիւն զամենեցուն զփակեալ դրունս մտաց 'ի բարին յորդորելով՝ բանայր զամենայն բարի : Ուսուցանէր ըզսէր, զյոյս, զհաւատ, զսրբութիւն, ըզքաղցրութիւն, զհեզութիւն, զանոխակալութիւն, զխնամ ունել զարմանոց աղքատաց, և այլն և այլն »(1).

ՓԱՒՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴ. — Բիւզանդայ գիրքը բաժնուած է չորս դպրութեան և կը կոչուի Բիւզանդարան : Պարունակած նիւթն է 29 տարուան Պատմութիւն, Խոսրով երկրորդի (որդւոյ Տրդատայ) ժամանակէն սկսեալ մինչեւ Խոսրով երրորդի թագաւորութեան և Ասպուրակէսի կաթողիկոսութեան վերջը. Բիւզանդ գլխաւորապէս եկեղեցական՝ քան թէ քաղաքական իրողութեանց վրայ կը խօսի, և ուղղակի երրորդ դպրութենէն կը

(1) Բիւզանդ. Դպրութիւն Դ. Գլ. Ժ.

սկսի, գուցէ առաջին և երկրորդ դպրութիւնք համարելով իրմէն յառաջ եղած պատմաբանից գրածները, և կամ գուցէ ինքնին գրած է առաջին և երկրորդ դպրութիւնքը, բայց կորուսուած են։

Երրորդ Դպրութիւնը (որով կը սկսի Գիրքը) կը պարունակէ Գրիգոր Լուսաւորչի և իւր Որդւոց և Թոռանց Հայրապետութեան ժամանակի պատմութիւնը, մանրապատում և օրինաւոր կարգաւորութեամբ։ Չորրորդը (որ առաւել նշանաւոր մասն է) կը պարունակէ գլխաւորապէս Մեծին Ներսիսի պատմութիւնը, կենսագրական յատկութեամբ, Հայրենեաց և Եկեղեցւոյ շինութեան համար կատարած սխրագործ արարքները, մարդասիրական և աստուածսիրական յորդորները և նորա ժողովրդասէր և խնամոտ կենաց մանրանկար պատկերը, որոյ զննութիւնը ընթերցողի սիրտը կը գրաւէ։ Հինգերորդ Դպրութիւնը առաւել քաղաքական իրողութիւններ կը պարունակէ և ընդ նմին Մեծին Ներսիսի մահուան աղէտաբեր դէպքը։ Իսկ վեցերորդը կը պարունակէ Հայոց Թագաւորութեան երկու բաժանումին (յունական բաժին և պարսկական) և քանի մի ժամանակակից եպիսկոպոսաց վարքագրութիւններ։

Բիւզանդայ երկասիրութիւնը շատ հե-

տաքնական դէպքեր կը պատահէին իւր մէջ նախարարութեանց վրայ, ազգային սովորութեանց վարուց և աւանդութեան վերայ. որոց մանրազննին հետազօտութիւնք բաւականին լոյս կարող է տալ նոյն ժամանակեաց ժողովրդային կենաց վրայ։ Սակայն Բիւզանդայ անձին և գրաւոր վաստակոց վրայ զանազան կարծիքներ կան. ոմանք զինքը Յոյն կը համարին և պատմութեան սկզբնագիրը յունարէն, և ապա հայերէն թարգմանուած. ոմանք Հայ կը համարին և իւր երկասիրութիւնը հայերէն յօրինուած. ոմանք Յոյն կը համարին իւր անձը, բայց միանգամայն և հայագէտ և հայերէն աշխատասիրած. և այլն։ Այսօրինակ կարծեաց լուծումն բանասիրութեան և ազգային պատմական գրագիտութեան առարկայ համարելով՝ անդէպ կը համարինք հետազօտել այս տեղ։

ՍԱՀԱԿ ՊԱՐԹԵՒ.— Այս մեծանուն և մեծագործ անձի վրայ արդէն խօսած ենք, որպէս հայրենասէր և ուսումնասէր հայրապետի վրայ, խօսինք այժմ որպէս եկեղեցական հոգեպատում մատենագրի վրայ։ Ս. Սահակ, իւր գրաւորական աշխատութիւնքը ձօնած է գլխաւորապէս այլ և այլ թարգմանութեանց և մանաւանդ թարգմանութեան Աստուա-

ճաշունչ Գրոց, որ՚ի մէր է. քան զամենայն մատենագրական երկասիրութիւն։ Սակայն ունիմք նմանապէս Սահակայ քանի մի ինք-նագիր գրուածքներ, այն է Կանոնք, մէջ գը-լուխ բաժնուած, որ ՚ի Վաղարշապատու ժո-ղովէն զկնի ղրկուած է Հայաստանի զանա-զան առաջնորդական գաւառները։ Այս կանոնաց մէջ ամենալուսաւոր կերպով բա-ցատրուած է եպիսկոպոսաց, քորեպիսկոպո-սաց, քահանայից և վանականաց պարտքը առ ժողովուրդն և ժողովրդոյ պարտքն առ Աստ-ուած, առ եկեղեցին և առ իւրեարս, ա-ւանդուած են ուսումնասիրութեան և ո-ղորմածութեան անհրաժեշտ պատուէրներ, և ընդ հակառակն սաստիկ յանդիմանուած է ուսու մեաւեցութիւնը, կաշառակերութիւնը և անգթութիւնը. բացատրուած է ժողո-վրդոյ եկեղեցական նուիրապետութեան և եր՝ խայրեաց հաստատութիւնն ՚ի Լուսա-ւորչէն, և ընդ նմին տաճարոց, վանաց և ինչ ինչ ածնից սրբազնութիւնը և նշա-նակութիւնը, և այլն և այլն։

Հնգ Թուղթ, ուղղած Կ. Պօլսոյ Պրոկղ և Ատտիկոս պատրիարքաց, Փոքր Թէոդոս կայսեր, Ակակիոս եպիսկոպոսին և Նստո-լիս կոմսին։ Սոյն այս եկեղեցական գը-րոց կարգաւորութեան համար նոյն շատ աշխատած է Ս. Սահակ, և Օրհնո-Ըի-նաբէդ

ցուցակին մէջ մասնաւորապէս այս խօսքերը կը յիշուին. «Իսկ գտանեմք յօրհնէան Ս. Սահակայ գծեալ՝ յետ քսան և մի ամի արքեպիսկոպոսութեան իւրոյ ՚ի Նաւասարդ ամսոյ, որ օր մի էր. և ՚ի քահանայաբնողն այլ յաւել եօթն աւետարան, նոյնպէս և աշխարհաբնողն, ՚ի քաղաքու դաշտի (այն է ՚ի Վաղարշապատ) ՚ի վկայարանս Ս. Հռիփսիմեանց, յետ հարիւր և քսան և մի ամին Ս. Գրիգորի, զի մինչեւ ցայն վայր հնումն վարէին»(1). Ս. Սահակայ կ'ընծայուի նմանապէս Նուագ Շաբաթու մէջ երգուած շարականը, որ իւր հոգեբուղխ իմաստներով և աստուածային բանաստեղծութեան վսեմախոհ և եռանդուն դարձուածներով բովանդակ Շարակնոցի ընտիր մին կը կազմէ։ Վասն զի աստուածային անհուն մեծութեան և մարդասիրական անհուն խոնարհութեան սքանչելեօք կըզգածի մարդ, երբ խորհրդազգած հայրապետի հետ կը դիտէ, որ Պարգեւատուն՝ պարգեւ կը խնդրուի, Կենսատուն՝ գերեզմանի մէջ կ'ամփոփուի, Անմահութեանց Տըւողն՝ կը խոնարհի ՚ի հող մահու, Անթիւնն բնութեամբ՝ մահացելոց մէջ կը ննջէ, բո-

(1) Յովհան Իմաստասէր կը խօսի այս մասին և նմանապէս Ս. Սահակայ կ'ընծայէ գիշերային ժամու կարգութեան շարս աղօթքներ. բայց իւր մէջ բերած աղօթքները այժմեաններէն կը տարբերին։

վանդակ աշխարհի Ցնծութիւնը՝ կ'արտասուէ տկար արարածներէն, և այս սքանչելիքը կը կատարուի 'ի սէր մարդկային ազգի, որ ամեն կերպով մեղանչած է իւր Արարչի և Փրկչի դէմ։

ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑ. — Ինչպէս Ս. Սահակայ նոյնպէս և Մեսրոպայ վրայ արդէն խօսած ենք որպէս Հայաստանեայց դպրութեան և լուսաւորութեան Հարց վրայ, որպէս Աստուածային Գրոց նախկին Թարգմանչաց վրայ, խօսինք այժմ Մեսրոպայ մասնաւոր ինքնագիր երկասիրութեանց վրայ։

Հաւանականօրէն Մեսրոպայ կ'ընծայուի մեր ազգային եկեղեցական Օխտարանին սկզբնաւորական կազմաւորութիւնը, այլ և այլ ինքնագիր և կամ թարգմանական յօրինուածով, որ և Մաշտոց անուն կը կրէ. Թէպէտ և վերջին դարերուն մէջ փոփոխութիւն կրած է և մանաւանդ 8դ դարուն մէջ Մաշտոց կաթողիկոսին օրով, որուն վրայ 'ի ժամանակին պիտի խօսինք։ Մեսրոպայ կ'ընծայուին նմանապէս քանի մի աղօթքներ և Մեծի Պահոց Ապաշխարութեան կարգի շարականները։ Այս շարականները, չընայելով իմաստից միակերպութեանը, քրիստոնէական բարեպաշտութեան ամենագեղեցիկ և բնական աղերսանք են։ Քրիստոնեայ մի, որ

ջոկին կըզգայ մարդկային յանցանքներին ու աստուածային գթութիւնը, աշխարհային փորձանաց վտանգներին ու երկնային խնամակալ օգնութիւնը, մարդկային հոգեւոր և մարմնաւոր ախտերին ու աստուածային խնամոտ և բժշկարար զօրութիւնը, մարդկային քարասրտութիւնն ու աստուածային անհուն սէրը, մարդկային մոլորութիւնն ու աստուածային ամենագիտութիւնը և ճըշմարտութիւնը, երբ կըզգայ իր հեռաւորութիւնը և կը փափաքի մօտենալ և միանալ Աստուծոյ հետ, ի՛նչ կարող է խընդրել, եթէ ոչ գթութիւն, թողութիւն, օգնութիւն, բժշկութիւն, արտասուք, գիտութիւն և միութիւն Աստուծոյ հետ: Այս սրտաշարժ զգացմունքներով լեցուն են Աղօթարար—Ներսէսին շարականները, որոնք աստուածային սրտի խորքէն կենդանի և շարժուն պատկերը կըներկայացնեն, որ երբեմն կուց աչքներէն կը յուզի, կը սասանի և կը հառաչէ առ Աստուած — Էր անձին խօսք աղաչէն. երբեմն կը սոսկայ, կը մոլորի և դառնալու բաղձանքով կը գոչէ — Դարձո՛ զիս. երբեմն իւր զառանցանքները ատենելով և Աստուծոյ բարութենէն պատկառելով՝ կը խոնարհի և կ'աղաղակէ. — Մ՛եղայ, Տէ՛ր, մեղայ. երբեմն զգալով, որ առանց Աստուծոյ՝ միշտ կը սայթաքի, կ'ինկնայ և կը դալկանայ, եռանդա-

Digitized by Google

գին կ'աղերսէ և կը պաղատէ — Ա՛հ՝ Խղճա-ցէ՛ք, Աստուած իմ, փ՛րկեր. Եւ երբեմն աշխար-հի չարիքներն ու աղէտները տեսնելով՝ բա-նը մարդկութեան համար կը հայցէ և կը թախանձէ — Ողորմեա՜, ողորմեա՛, Աստուա՛ծ։

---

## Դ.

*Երկասիրութիւնք Եզնկի Կողբացւոյ. Կորիւնի և Դաւ-թի Անյաղթի. — Նոցին նկարագիր պատուականութեան իւրաքանչիւրոց.*

ԵԶՆԻԿ ԿՈՂԲԱՑԻ. — Եզնիկի վրայ արդէն խօսած ենք որպէս Սահակայ և Մեսրոպայ երիցագոյն աշակերտի վրայ, որ Յովսէփ Պաղնացւոյն հետ Եդեսիա ուղեւորեցաւ ասորական գրքեր թարգմանելու և կամ հայագիր օրինակելու նպատակաւ, և անտի անցաւ Բիւզանդիոն, ուր իր ուսմունքը կատարելագործելէն զկնի՝ դարձաւ ի Հա-յաստան և գործակից եղաւ Ս. Սահակին, Ս. Գրոց և այլ թարգմանական աշխատու-թեանց մէջ. խօսինք այժմ նորա ինքնագիր երկասիրութեան վրայ։ Եզնիկ, որ եպիսկո-պոսական աթոռին եւս հասաւ և Բագ-րեւանդայ վիճակին հօտին կարգեցաւ և որ Ս. Յովսէփայ կաթողիկոսութեան ժա-

մանակ գումարուած Աշտիշատի ժողովին եւս ներկայ գտնուեցաւ և ինքն հմուտ էր հայ, յոյն, ասորի և պարսի լեզուաց, թողած է ամենագեղեցիկ ինքնագիր երկասիրութիւն մի, Եղծ Աղանդոց անունով, որ իւր բազմակողմանի պարունակութեամբ արժանի է խորին մտադրութեան։

Եզնիկի երկասիրութիւնը չորս Գիրք կը բաժանուի — Եղծ աղանդոց հեթանոսաց, Եղծ դէնին Պարսից, Եղծ կրօնից Յունաց իմաստնոցն և Եղծ աղանդոյն Մարկիոնի։ Եթէ պատերազմական յաղթութիւնը դիմամարտ թշնամւոյ զօրութենէն կը կշռուի, քննադատի յաջողութիւն և հմտութիւնն եւս իւր քննութեան առած առարկայէն կը չափուի։ Եթէ այս համեմատութեամբ նկատենք Եզնիկի եղծմնական հերքման նիւթերը, կը տեսնենք որ խիստ բազմաթիւ են և դժուարամատոյց—հեթանոսութիւնը իւր բազմաստուածեան ձիւղերով, պարսկական քէշը կամ կրօնքը իւր հնադաւան ատրեքքով, յունական իմաստասիրութեան կրօնքը իւր հետաքննին և բազմակնճիռ վարդապետութեամբ և Մարկիոնեան աղանդը իւր հրապուրիչ և գայթակղեցուցիչ երեւութով։ Սակայն Եզնիկ ամենայն վստահութեամբ և յաջողութեամբ քննութեան և եղծման ելած է այս տարրացած կրօնական դրութեանց դէմ և իւր վստահութիւնը

իւր բազմակողմանի հմտութեանց մէջ է, որոնք ակներեւ կը տեսնուին իւր երկասիրութենէն ։

Եզնիկի երկասիրութեան մէջ կը տեսնուի Աստուածաբանական խորին և մեկին հմտութիւն, որով ողջամտօրէն կը խօսի Աստուծոյ գոյութեան վրայ, Նորա կատարելութեանց կամ ստորոգելեաց վրայ, կը բացատրէ մանաւանդ Աստուծոյ կանխագիտութիւնը խիստ լուսաւոր տեսութեամբ և երկիւղած զգացմունքով և կը ջրէ այն հեթանոսամիտ և մոլար կարծիքները, որով ոմանք տգիտաբար Աստուծոյ ամենաբարութիւնը կը թշնամանեն և մարդկային անձնիշխանութեան չարաչար գործածութենէն հետեւած չարիքները, աղէտները և պատահարները՝ Աստուծմէ նախասահմանուած կը կարծեն ։

Եզնիկի երկասիրութեան մէջ կը նշմարուի Բնագիտական և Բնապատմական հմտութիւն, որով կը ճառէ տարերաց և օդերեւութից վրայ, եղանակաց վրայ, բուսոց և կենդանեաց յատկութեանց վրայ և սքանչելի կերպով կը բացատրէ՝ թէ ի՛նչպէս հակառակատարր բնութեան մէջ կը թագաւորէ միանգամայն և զարմանալի կարգաւորութիւն ու անխառն դաշնակաւորութիւն, որ ամենաբարի Արարչապետի ամենակարողութեան

և նախախնամութեան գործն է։

Եզնիկի երկասիրութեան մէջ կը նշմարուի Աստղային հմտութիւն, թէպէտ և քանի մի սխալներով, որ առաւել իւր ժամանակի սըխալանքը կը համարուին, քան թէ իւր սեպհականը։ Ժամանակակից դրութեան նայելով՝ Եզնիկ շարժումն արեգական տուած է և ոչ երկրին, և այս զարմանալի չէ, վասն զի մենք գիտենք, որ Եզնիկէն յետոյ շատ դարեր հոլոված էին, երբ ուսողական գիտութիւնը պարզեց ինչպէս երկրի շրջանառութիւնը, նոյնպէս և այլ տիեզերախօսական ճշմարտութիւններ։

Եզնիկի երկասիրութեան մէջ կը տեսնուի Իմաստասիրական հմտութիւն, որով Յունաց իմաստնոց — Պիւթագորեանց, Պղատոնեանց, Ստոյիկեանց և Եպիկուրեանց — վարդապետութիւնները համառօտիւ մէջ բերելով՝ նոցա ուղիղ կամ թիւր տեսութիւնքը կը զանազանէ, կը գովէ նոցա ջանքը՝ բնական լուսով զԱստուած որոնելու համար և կը պարսաւէ բազմաստուածեան մոլորութիւնը։ «Ի խնդրելն փիլիսոփայից (կ՚ասէ) զԱստուած ՚ի բնական օրինաց, որ ՚ի միտսն տնկեալ է, գովութեան արժանի է, բայց ՚ի բազում աստուածսն անկանել և զաշխարհս նմա մըշտընջենաւորակից դնել, անհնարին ամբարըշտութիւն է»։ և թէ՝ «Զկամն Պղատոնի

տիրեմ վասն զԱստուածն խնդրելոյ և զամ-բարտաւանութիւնն ոչ գովեմ (1)։

Եզնիկի երկասիրութեան մէջ կը տեսնուի Կրօնագիտական հմտութիւն, ոչ միայն քրիստոնէական, այլ և հեթանոսական բազմատեսակ կրօնից նկատմամբ, մանաւանդ պարսկական Պէշլին, որուն վրայ տուած լիակատար և մանրապատում ծանօթութիւնքն այժմեան Եւրոպական հետաքննին աշխատորհին անգամ (2) Նոր լոյս կուտան պարսկական հին կրօնի վրայ։

Եզնիկի երկասիրութեան մէջ կը տեսնուի Հնախօսական հմտութիւն, որով կը խօսի ազգային աւանդելոց վրայ (յարալէզի, վիշապազունից, ծովային նհանգաց, ծովացուլի, պայի և բնական ազդեցութեան նկատմամբ եղած գուշակութեանց), այլ և պարսկական կրօնի արարողութեանց և աւանդե-լոյ վրայ. Զրուանի և Մոգական կրօնից վրայ, նախնի Յունաց, Հերակլեան արձանաց և գրուածոց վրայ, Հեսիոդի, Հոմերոսի և Պղատոնի վրայ, և այլն։

Եզնիկի երկասիրութեան մէջ կը տեսնուի Բժշկական հմտութիւն անգամ (որ խիստ կարեւոր է ժողովրդական հովուի համար,)

(1) Եզնիկ. Գիրք Դ. յօդ. Զ. ԺԵ.

(2) Եզնիկ թարգմանուած է գաղղիարէն և մասամբ Անգղիարէն և Ռուսերէն։

որով կը բացատրէ քանի մի կենդանեաց և բուսոց յատկութիւնները, այսահարութեան կամ ըլլալոյ և այլ հիւանդութեանց բնական պատճառները և կը զգուշացնէ զանազան մոլորութիւններէ։

Նոյնպէս Եզնիկ իւր բովանդակ քննաբանութեան մէջ՝ մոլորութիւնները և նախապաշարումները եղծելու համար՝ ձեռք առած է երկու ամենամեծ զէնք — Ա. Գիրք և արտաքին հմտութիւնք. — վասն զի ինքն Եկեղեցւոյ կողմէն զինուած է և նոյնօրինակ զինուորութիւնն ճշմարտութեան համար՝ Եկեղեցւոյ գործ և պաշտօն կը խոստովանի. «Այս արդ՝ Եկեղեցւոյ Աստուծոյ գործ այն է, զարտաքինսն իրօք ճշմարտութեան աւանց գրոց յանդիմանել և զկարծեցեալն ներքինս և ոչ ճշմարտեալս Գրովք Սրբովք յանդիմանել» (1).

Ինչպէս ամէն շահաւէտ և ժամանակին պատշաճ հեղինակութիւնք, նոյնպէս և Եզնիկի երկասիրութիւնը ազդուած և գրուած է ժամանակի ոգիէն և ժողովրդի ներքին վէրքերէն. վասն զի Եզնիկ որպէս զգուշացուցիչ և արթուն հովիւ գրած է իւր երկասիրութիւնը (քանի՛ պատիկ ընդարձակութեամբ արդեօք նոյնը և քանիս քարոզած չէ)

(1) Եզնիկ. Ա. Գիրք. յօդ. ԻԲ.

Digitized by Google

այն ժամանակ, երբ մի կողմէն սկսած էր մեր Ազգը ծանօթանալ յունական մատենագրութեան հետ, և երկիւղ կար, որ մի՛ գուցէ քրիստոնէական վարդապետութեան տեղ՝ յունական մատենագրութեան հին դասական ոգին ըմբռնէ և լուսոյ փոխարէն ծուխ գրկախառնէ. ինչպէս կը պատահի երբեմն նոր արթնցած ժողովրդներուն, որ յառաջադէմ պէտք մի նմանելու եռանդով, շատ անգամ, առանց ընտրութեան, խարխափելով առաքինութիւնները կը թողուն և մոլութիւնները կը գրկեն. միւս կողմէն Պարսկաստան սկսած էր ազդել Հայաստանի վըրայ, և արքայից արքաները հետամուտ էին իրենց դէնին դարձնել հպատակ ազգերը, ընդ որս և մեր Ազգը. և երրորդ կողմէն Ասորիքի աղանդը օր աւուր կը յուզէր միտքերը և կը տարածուէր քրիստոնէից շատերուն մէջ։ Ինչ յայտնի է, արդարեւ, աւետարանական փրկարար լոյսը տարածուած էր Հայաստանի մէջ, բայց հեթանոսական կրօնի ներքին նախապաշարումները, հմայութեանց և կախարդութեանց հաւատընծայութիւնները և մանաւանդ ճակատագրի և բախտի խորարմատ տպաւորութիւնները տեղ տեղ տակաւին կը ճարակէին։

Եղիշէ իւր կորովի աչքերովը տեսնելով այս արտաքին և ներքին վտանգները, և զգալով՝

թէ հեթանոսական նախապաշարումները որ-չափ անարգանք են աստուածային բարու-թեան և նախախնամութեան և միանգամայն նուաստացուցիչ քրիստոնէական ոգւոյ, ու-տի և գրած է իր անմահ երկասիրութիւնը։

Սակայն որչափ պիտի զարմանար և ար-տասուէր Եզնիկ, եթէ յառնէր և տեսնէր, որ իր ժողովուրդը, 18 դարեան քրիստո-նէութենէն զկնի, այսօր շատ տեղ բաղդի և ճակատագրի կը հաւատայ, շատ տեղ ան-մխիթար կը յուսահատի, որպէս թէ ինքն չար աստղի տակ ծնուած է և իր ճակտին աղէտք և տառապանք գրուած են, շատ տեղ հմայական պատրանքներով իր յաջո-ղութիւնը և ձախորդութիւնը կը կշռէ, և կ'ամաչենք ասել, շատ տեղ անմիաբանու-թիւնը և հետեւապէս ստրկութիւնը Հայու-դատապարտութիւն կը խոստովանի, իսկ հա-տակոտոր քարոզիչներէն շատերն եւս, փո-խանակ սոյն օրինակ նախապաշարմանց դէմ զինելու և աստուածային բարութեամբ ըն-փոփելու, լոկ դժոխային սպառնալիքներով կը սարսափեցնեն։

Բաց 'ի Եղծ աղանդոց գրքէն, Եզնիկին կ'ըն-ծայուին նմանապէս և ընտիր Խրատք զանա-զան կարգի անձանց և մանաւանդ կրօնաւո-րաց և առաջնորդաց համար գրուած։ Բայց ոմանք նոյն Խրատները Ս. Ներսէսին կ'ընծայեն

այն ժամանակ. երբ մի կողմէն սկսած էր մեր Ազգը ծանօթանալ յունական մատենագրութեան հետ, և երկիւղ կար, որ մի՛ գուցէ քրիստոնէական վարդապետութեան տեղ՝ յունական մատենագրութեան հին դասական ոգին ընթանէ և լուսոյ փոխարքով ծուխ գրկախառնէ. ինչպէս կը պատահի երբեմն նոր արթնցած ժողովրդներուն, որ յառաջադէմ ապրի մի նմանելու եռանդով, շատ անգամ, առանց ընտրութեան, խարխափելով առաքինութիւնները կը թողուն և մոլութիւնները կը գրկեն. միւս կողմէն Պարսկաստան սկսած էր ազդել Հայաստանի վըրայ, և արքայից արքաները հետամուտ էին իրենց դէնին դարձնել հպատակ ազգերը, ընդ որս և մեր Ազգը. և երրորդ կողմէն Ասորիքին աղանդը օր աւուր կը յուզէր միտքերը և կը տարածուէր քրիստոնէից շատերուն մէջ: Ինչ յայտնի է, արդարև, աւետարանական փրկարար լոյսը տարածուած էր Հայաստանի մէջ, բայց հեթանոսական կրօնի ներքին նախապաշարումները, հմայութեանց և կախարդութեանց հաւատընծայութիւնները և մանաւանդ ճակատագրի և բախտի խորարմատ տպաւորութիւնները տեղ տեղ տակաւին կը ճարակէին:

Եղիշէ իւր կորովի աչքերով տեսնելով այս արտաքին և ներքին վտանգները, և զգալով՝

թէ հեթանոսական նախապաշարումները որչափ անարգանք են աստուածային բարութեան և նախախնամութեան և միանգամայն նուաստացուցիչ քրիստոնէական ոգւոյ, ուստի և գրած է իւր անմահ երկասիրութիւնը։

Սակայն որչափ պիտի զարմանար և ապտասուէր Եզնիկ, եթէ յառնէր և տեսնէր, որ իւր ժողովուրդը, 18 դարեան քրիստոնէութենէն զկնի, այսօր շատ տեղ բաղդի և ճակատագրի կը հաւատայ, շատ տեղ անմխիթար կը յուսահատի, որպէս թէ ինքն չար աստղի տակ ծնուած է և իւր ճակտին աղէտք և տառապանք գրուած են, շատ տեղ հմայական պատրանքներով իւր յաջողութիւնը և ձախորդութիւնը կը կշռէ, և կ'ամաչենք ասել, շատ տեղ անմիաբանութիւնը և հետեւապէս ստրկութիւնը Հայու դատապարտութիւն կը խոստովանի, իսկ հատակոտոր քարոզիչներէն շատերն ևս, փոխանակ սոյն օրինակ նախապաշարմանց դէմ զինելու և աստուածային բարութեամբ ըսփոփելու, լոկ դժոխային սպառնալիքներով կը սարսափեցնեն։

Բաց 'ի Եղծ աղանդոց գրքէն, Եզնիկին կ'ընծայուին նմանապէս և ընտիր Խրատք զանազան կարգի անձանց և մանաւանդ կրօնաւորաց և առաջնորդաց համար գրուած։ Բայց ոմանք նոյն Խրատները Ս. Նեղոսին կ'ընծայեն

այն ժամանակ. երբ մի կողմէն սկսած էր մեր Ազգը ծանօթանալ յունական մատենագրութեան հետ, և երկիւղ կար, որ մի՛ գուցէ քրիստոնէական վարդապետութեան տեղ՝ յունական մատենագրութեան հին դասական ոգին ընդունէ և լուսոյ փափաքով ծուխ գրկախառնէ. ինչպէս կը պատահի երբեմն նոր արթնցած ժողովրդներուն, որ յառաջադէմ ազգի մի նմանելու եռանդով, շատ անգամ, առանց ընտրութեան, խառնափնթելով առաքինութիւնները կը թողուն և մոլորութիւնները կը գրկեն. միւս կողմէն Պարսկաստան սկսած էր ազդել Հայաստանի վըրայ, և արքայից արքաները հետամուտ էին իրենց դէնին դարձնել հպատակ ազգերը, ընդ որս և մեր Ազգը. և երրորդ կողմէն Ասորիքի աղանդը օր աւուր կը յուզէր միտքերը և կը տարածուէր քրիստոնէից շատերուն մէջ։ Թող յայսմանէ, արդարև, աւետարանական փրկարար լոյսը տարածուած էր Հայաստանի մէջ, բայց հեթանոսական կրօնի ներքին նախապաշարումները, հմայութեանց և կախարդութեանց հաւատընծայութիւնները և մանաւանդ Ճակատագրի և բախտի խորարմատ տպաւորութիւնները տեղ տեղ տակաւին կը ճարակէին։

Եզնիկ իւր կորովի աչքերով տեսնելով այս արտաքին և ներքին վտանգները, և զգալով՝

թէ հեթանոսական նախապաշարումները որչափ անարգանք են աստուածային բարութեան և նախախնամութեան և միանգամայն նուաստացուցիչ քրիստոնէական ոգւոյ, ուստի և գրած է իւր անմահ երկասիրութիւնը։

Սակայն որչափ պիտի զարմանար և արտասուէր Կղնիկ, եթէ յառնէր և տեսնէր, որ իւր ժողովուրդը, 18 դարեան քրիստոնէութենէն զկնի, այսօր շատ տեղ բաղդի և ճակատագրի կը հաւատայ, շատ տեղ անմխիթար կը յուսահատի, որպէս թէ ինքն չար աստղի տակ ծնուած է և իւր ճակտին աղէտք և տառապանք գրուած են, շատ տեղ հմայական պատրանքներով իւր յաջողութիւնը և ձախորդութիւնը կը կշռէ, և կ'ամաչենք ասել, շատ տեղ անմիաբանութիւնը և հետեւապէս տկարութիւնը Հայու դատապարտութիւն կը խոստովանի, իսկ հատակոտոր քարոզիչներէն շատերն եւս, փոխանակ սոյն օրինակ նախապաշարմանց դէմ զինելու և աստուածային բարութեամբ ըսփոփելու, լոկ դժոխային սպառնալիքներով կը սարսափեցնեն։

Բայց ՚ի Կղծ աղանդրոյ գրքէն, Կղնիկին կ'ընծայուին նմանապէս և ընտիր Խրատք զանազան կարգի անձանց և մանաւանդ կրօնաւորաց և առաջնորդաց համար գրուած։ Բայց ոմանք նոյն Խրատները Ս. Նեղոսին կ'ընծայեն

և Եզնիկ միայն Թարգմանիչ կը համարէն ինչ ինչ յաւելմամբ ։

ԿՈՐԻՒՆ . — Առաջին Թարգմանչաց դասէն է, որ Բիւզանդիոնի մէջ ուսումն լրացնելէն յետոյ՝ Բնձակայ հետ Երուսաղէմ գնաց և այն տեղէն Կիւրղի Երուսաղէմացւոյ Աղաւխարող. արձանները — կորգը Հայաստան բերաւ ։ Կորիւն ուղեկից գտնուեցաւ Մեսրոպայ ուսումնասիրական և վարդապետական ճանապարհորդութեանց և Սահակ հայրապետէն ձեռնադրուեցաւ եպիսկոպոս Վրաց ։ Թարգմանական վաստակէն 'ի զատ Կորիւն գրած է Մեսրոպայ Պատմութիւնը, Յովսէփ Կաթողիկոսի և իւր միւս ընկերաց խնդրանօք, վասն զի ինքն միշտ ականատես էր իւր վարդապետի առաքելական վաստակներուն, որոյ համար և կ'ասէ . "Ոչ եթէ 'ի հին համբաւոց տեղեկացեալք, այլ որոց մեր իսկ ականատես եղեալ կերպարանացն և առ ընթերակաց հոգեւոր գործոցն և լսող շնորհապատում վարդապետութեանն և նոցին (Սահակայ և Մեսրոպայ) արբանեակք ըստ աւետարանական հրամանացն" ։ Կորիւնի երկասիրութեան մէջ Թէպէտ և կը պակսի Մեսրոպայ կենսագրութեան այն մասը, որ անցուցած է Հայաստանի արքունեաց մէջ, սակայն վարդապետական ընթացից վրայ այն-

Digitized by Google

պխսի ստուգապատում տեղեկութիւններ կ՚աւանդուին, որ վարդապետական կոչման և պարտաւորութեան վրայ գաղափար ունենալու համար՝ բաւական է միայն Կորիւնի երկասիրութեան մէջ Մեսրոպայ կեանքը կարդալ, որ այս նշանաբանը կը պատկերացնէ մեզ. — Սիրել ժողովուրդը, ըլլել ժողովրդի մէջ, դաստիարակել ու լուսաւորել ժողովուրդը և տգիտութիւնը ու խաւարը հալածել, որոնք ժողովրդի ամենավտանգաւոր թշնամիներն են.

ԴԱՒԻԹ ԱՆՅԱՂԹ.— Տարօնոյ Հարք գաւառի Հերեթ կամ Հերեան գիւղէն, կամ ըստ այլոց Ներգին աւանէն, և ըստ այնմ Ներգինացի, Մովսէս Խորենացւոյ քեռորդին, կրտսեր Թարգմանչաց դասէն, որ իւր իմաստասիրական և աստուածաբանական հըմտութեան և բնաւորութեան համար կը կոչուի Իմաստասէր, Անյաղթ, Փիլիսոփայ, Աստուած Փիլիսոփայ, Աստուածաբան, որ Յունաստանի մէջ իւր հայկական տաղանդը ճանաչցնելէն և փայլեցնելէն զկնի դարձաւ Հայաստան, հայրենեաց դառն վիճակը տեսաւ և աղօթքը արտասուաց հետ խառնելով և հանճարը գրոց՝ մեռաւ և թաղուեցաւ Տարօնոյ Ղազարու վանքին մէջ, որոյ գերեզմանը կը դիմեն տակաւին իմաստասիրութեան և ճարտարախօսութ̅ե ձիրք խնդրողները մեծ փափաքով

Դաւիթ երկասիրած է ինքնագիր եւ թարգմանեալ գրուածքներ։ Ինքնագիր երկասիրութեան մէջ նշանաւոր է Խաչէ ներբողը, որ գրած է Գիւտ կաթողիկոսի խնդրանօք, ինչպէս նոյն կաթողիկոսի նամակը և Ճառէ յառաջաբանը կը ցուցնեն, թէպէտ և ոմանք կ'ասեն թէ՝ Աթէնքի մէջ Խաչի նշանին առջեւ խօսած է սեան կամ աշտարակի վերեւէն, որպէս աւարտական ցոյց իւր եօթնամեայ ուսումնառութեան. ոմանք կ'ասեն թէ՝ Աթենքէն Բիւզանդիոն դարձած ժամանակ Խաչի Վերացման տօնին խօսած է իւր ընկերոց խնդրանօք, և ոմանք թէ՝ Երուսաղէմ Ս. Խաչին առջեւ խօսած է։

Յիշեալ Ներբողին մէջ գեղեցիկ պերճախօսութեամբ կը գրուատուի Խաչը որպէս լրումն հին Կտակարանին մէջ գտնուած բոլոր օրինակաց, այն է որպէս տունկ, որոյ պտղովն ամենայն տիեզերք լցան, որպէս կենսաբեր ծառ Եդենայ. 'ի կենդանութիւն մահացելոց, որպէս ցուպ և գաւազան մխիթարութեան, որպէս տապան և լաստ ապրեցուցիչ 'ի ծփական ալեաց աշխարհի, որպէս ծառ Սաբեկայ, յորմէ կախեալ զոհիւն փրկեցան ծնունդք Ադամայ՝ որպէս սանդուխք վերելութեան յերկինս, որպէս գաւազան, որով վիմացեալ սիրտք հասանուտ գործին և պատառին ծովք մեղաց, որպէս

տիւն՝ կրող տնտամնեքի լուսոյն և հրոյն , և այլքն և այլն ։ Բայց յայսմանէ կը բացատրուի նոյն ներբողին մէջ թէ ի՛նչ զգացմունքներ պարտին ունենալ քրիստոնեայք Խաչի նշանին առջեւ . — « Հոգւոյ՝ ակամբ իբր աչօք մարմնոյ յայտնապէս նկատելով՝ հաւատացի իբր թէ այժմիկ իսկ Միածինն Հօր բազկատարած 'ի սմա բեւեռեալ տեսանէի . և տակաւին իբր թէ ցնցուղ փրկական աղբեր սուրբ արեանն 'ի կենարար տնօրինեցելոյն կողէ այժմիկ իսկ առաջի աչաց մերոց կայլակացեալ հրաշիւք յամենեւոյթս զգանաւոր երկիրս առոգելով փրկագործէ . . . Բանզի ուր Խաչ՝ անդ և Խաչեցեալն , և ուր Խաչեցեալն՝ անդ և Խաչելութիւնն . . . ասելով Խաչ՝ աստ իմացի Գողգոթա և աստէն խաչելութիւնն , աստ զենումն և 'ի սմին փրկագործութիւն . . . որ և երկնայնոցն աստանօր յայտնապէս ցուցեալ Թարգմանեացի աստուածութիւն յերկրի և մարդիկ յերկինս ։ »

Խաչի ներբողէն զատ՝ Դաւթի միւս երկասիրութիւնքն առաւել գիտական են և իմաստասիրական , ուստի և եկեղեցական պատմութեան հետազօտութենէն արտաքոյ , ինչպէս են — Պատճառ յաղագս Քերականութեան. Սահմանաց Գիրք կամ՝ սահմանք Իմաստասիրութեան , որ գրուած է Պիւհռոն յոյն փիլիսոփայի վարդապետութեան դէմ , որ ամէն բանի

վրայ տարակուսիլը կամ վարանիլը իմաստութիւն համարած էր և ստացած էր շատ հետեւողներ։ Սահմանաց գրքի յունարէն գրուելու պատճառաւ՝ ոմանք կը կարծեն թէ Դաւիթ նախ յունարէն գրած է և ապա հայերէն թարգմանած, ոմանք զԴաւիթ միայն թարգմանիչ կը համարեն և ոչ հեղինակ․ որովհետեւ նոյն գրքին վերջին գլուխը Պիւգոր Նիւսացու գործոց մէջ կը տեսնեն և ոմանք սկզբնագիրը Դաւթայ կըտան և թարգմանութիւնը 6րդ դարու գործ կը համարեն։ Ներածութիւն Պորփիւրի, Ստորոգութիւնք Արիստոտէլի, Արիստոտէլի յաղագս մեկնութեան (Պերիարմենիաս), Մեկնութիւն Դաւթի ի Վերլուծականն Արիստոտէլի, Արիստոտէլի թուղթ առ Աղեքսանդրոս թագաւոր յաղագս աշխարհի և յաղագս առաքինութեանց։ Այս ամենը թարգմանութիւնք են ինչ ինչ մեկնութեամբ, որոց մէջ կ'երեւի Դաւթի յունական իմաստասիրութեան հմտութիւնը, բայց դժբաղդաբար շատ տեղ խոպառ անհասկանալի են, վասն զի աւելի հեղինաբանութեամ՝ քան թէ հայաբանութեան տիպ կը կրեն, նորաստեղծ բառերով և դարձուածներով։



# Ե.

Երկասիրութիւնք Գիւտայ, Յովհաննու Մանդակունւոյ, Մովսիսի Խորենացւոյ և Մամբրէի Վերծանողի. — Ներքին յատկական նկարագիր պարունակութեան իւրաքանչիւրոց։

ԳԻՒՏ. — կրտսեր Թարգմանչաց դասէն, Տայոց գաւառի, Արահեզայ գիւղէն, որ կաթողիկոսութեան աստիճանի ևս հասաւ, սակայն կաթողիկոսութեան վրայ երրորդ Շրջանին մէջ կը խօսինք, իսկ այժմ միայն իւր գրաւոր մնացորդքը նկատենք։

Գիւտ մասնակցութիւն ունեցած է քամագրոց և հասարակաց աղօթից կարգադրութեան մէջ. վասն զի նոյն գրոց խորագրին մէջ իւր անունը դրոշմուած է։ Ունի Թուղթ մի առ Դաւիթ անյաղթ Խաչ նշխարը խնդրելու համար (ինչպէս վերը յայտնեցինք) որոյ ստորագրութիւնը այսպէս կը վերջանայ. —"Գիւտ գագաչեալ և գերեզման 'ի գարշապար և մահու մերձաւոր., դրուատ հայցեմ, Հայոց հօտի հովուապետ և վերադիտող տանն Արշակունեաց»։ Ունի դարձեալ Թուղթ մի քրիստոնէական զգացմամբ և պերճախօսութեամբ զեղուն, որ գրած է Աղուանից Վաչէ Թագաւորին, երբ նա առաւել լաւ համարած էր իւր Թագը և մա-

գութեան կրօնքը զոհել, քան թէ ուրացութեամբ թագաւորել։

ՅՈՎՀԱՆ ՄԱՆԴԱԿՈՒՆԻ. — Արշարունեաց Ծախնոտ գաւառէն, Սահակայ և Մեսրոպայ աշակերտներէն, որ եօթանասուն հինգտարուան հասակին մէջ Վահան Մամիկոնեանի և ազգի թախանձանքով կաթողիկոսական աթոռը նստաւ, որոյ հայրապետական գործոց վրայ խօսիլն երրորդ Շրջանին թողլով՝ այժմ միայն կը խօսինք իւր գրաւոր երկասիրութեան վրայ։

Մաշտոցի կարգաւորութեան մէջ Յովհան Մանդակունիին կ'ընծայուին — Մկրտութեան կանոնը, խաչ օրհնելու, պսակի, եկեղեցւոյ հիմնարկէից օրհնութիւնը, տաճարի սրբութիւնն և աւազանի օրհնութիւնը. պատարագամատուցին մէջ — զանազան քարոզներ և աղօթքներ և Ս. Աթանասի կոչուած պատարագամատոյցը. Ժամագրոց մէջ — գիշերային ժամու Զարթուցեալ և Զքեն գոհանամք հոգեբուղխ աղօթքները և ճաշու ժամու երեք քարոզներն և աղօթքները։

Ղազար Փարպեցին իւր պատմութեան մէջ աւանդած է Յովհան Մանդակունիի մի Ատենաբանութիւնը, զոր խօսած է Դուինայ եկեղեցւոյն մէջ մեծագումար բազմութեան առջեւ Վահան Մամիկոնեանի մարզպա-

նական իշխանութիւն սահմանը ուրախա-
կան հանդիսին առթիւ։ Ներունի հայրա-
պետը այս ատենաբանութեան մէջ երբեմն
կըզմայլի և կըհրճուի Աստուծոյ և իւր եկե-
ղեցւոյ պանծալեաց վրայ՝ հրաւիրելով ըղ-
բազմութիւնն յօրհնութիւն. «Յեկեղեցիս
օրհնեցէք զԱստուած և զՏէր յաղբերաց
Իսրայէլի։ Նա՛ սիրեցէք զեկեղեցիս և սի-
րեցայք յեկեղեցւոյ, զԹագաւորս քաղցրա-
ցոյց եկեղեցի, զգազանս ընտելացոյց, ըզ-
գայլս գառինս արար, զձեզ պայծառացոյց,
զԹշնամիս Ճշմարտութեան ամնչեցոյց». և
երբեմն բազկատարած կ'աղաղակէ, որ հայ-
րենեաց երկարատեւ անտէրութենէն և
պարսկական հալածանքէն յետոյ՝ Հայ մարզ-
պան կը տեսնէ Հայաստանի վրայ, կ'աղա-
ղակէ գոհութեամբ. «Օրհնեալ տէր Աստ-
ուած Իսրայէլի, որ ետ ինձ տեսանել զոր-
դիս եկեղեցւոյս, որ ինձ հաւատացաւ, պա-
տուով չքեղութեամբ պայծառացեալ 'ի
Քրիստոսէ». և այս աղաղակը արձագանգ
կըտայ ունկնդրաց սրտին մէջ, որոնք ատե-
նախօսութենէն զկնի՝ խնդութիւն և արտա-
սուք իրար խառնելով կ'ողջագուրեն զՎա-
հան և կ'ուխտեն 'ի սէր և 'ի միաբանական
աշխատութիւն։

Բաց 'ի վերոգրեալ գրաւոր մնացորդնե-
րէն, Յովհան Մանդակունին երկասիրած է

Digitized by Google

Նոյնպէս աղօթք, կանոնք, խրատք և քանա-թի չափ խրատական և վարդապետական ճառք կամ քարոզք զանազան նիւթոց վրայ, այն է խոստովանութեան, աղքատաց մխիթարութեան, սիրոյ, քահանայի տեսչութեան, լկտի տեսարանաց կամ խաղուց, դիւթական հմայից, ոխակալութեան, արբեցութեան և այլ ահաւելի մոլութեանց, և այլն և այլն: Թէպէտ և ինչ ինչ ձեռագրաց մէջ այս ճառերէն մի քանիսն Եփրեմի և Ոսկեբերանի անունը կը կրեն, բայց որովհետեւ նոցա գրաւոր գործոց մէջ չեն գտնուիր. ուստի և Յովհաննու կ՚ընծայուին:

Այս ճառերու պարունակութենէն պարզապէս կը տեսնուի որ միայն գրով գրուած չեն, այլ և կենդանի բարբառով խօսուած են ՚ի լուր ժողովրդեան: Վասն զի մի կողմէն կը տեսնուի սաստիկ յուզմունք, սոսկումն, դողումն և զայրոյթ ժողովրդի մէջ գտնըւած մոլութեանց դէմ, իսկ միւս կողմէն հայրական յորդոր և հրաւէր ՚ի դարձ և յառաքինութիւն: Մէկ կողմէն հօտի անօրէնութիւնքը և միւս կողմէն հովուական պարտաւորութեան և պատասխանատուութեան լիովին զգացումն ծանրացած կ՚երևին առաքինի հովուին վրայ, որ կը հեծէ, կը զարհուրի, արտասուք կը խնդրէ իր գլուխը լալու և բազմիցս կը պատկառի և կը կարկամի

ժողութեանց զաղութիւնները թուել։ Ո՛չ յա-պէս խօսած են ամե՛ն ընտիր հովիւներ, ո-րո՛նք կորովի աչքերո՛վ թափանցած են ժողո-վրդի շարժմանց և գործոց խորքը, և պարզ համարած են սրբել և մաքրել Աստուծոյ սեպհական հօտը ամե՛ն աղտեղութենէ և մարդը իր աստուածային պատկերով տեսնել

ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ. — Տարօնոյ Խորնի կամ Խորօնք գիւղէն, կրտսեր թարգման-չաց դասէն, Սահակայ եւ Մեսրոպայ հրամանաւ ճանապարհորդեց 'ի Սիւնիս, յԵդեսիա, 'ի Բիւզանդիոն, յԱնտիոք, յԱթէնս, 'ի Հռովմ, 'ի Պաղեստին, յԱ-ղէքսանդրիա, և իւր հայկական հանճարը ճոխացոյց պատմագրական և բանասիրական հմտութեամբ, որով և իրաւամբ Հայր հայ պատմագրաց անուանեցաւ իւր ժամանա-կակիցներէն և յետագաներէն։ Երբոր վերա-դարձաւ Մովսէս իւր ուսումնասիրական ճանապարհորդութենէն, վախճանած գտաւ իւր երանելի վարդապետները Սահակ և Մեսրոպ և Թագաւորն Վռամշապուհ և Հայ հայրենիքը քաղաքական աղէտներու մատնուած, ուստի և ընկալաւչ խնամակա-լութիւն մի չըտեսնելով իշխանաց և մեծա-մեծաց կողմէն՝ իւր անձը տխուր և վշտակիր առանձնութեան տուաւ, արտասուելով

հայրենեաց և եկեղեցւոյ բազմաղէտ վիճակը Թէպէտ և կ'աւանդուի, որ երկար տարինե-րէն յետոյ Մովսէս անակնկալ կերպով յայտ-նուեցաւ, որպէս աղքատիկ մուրացկան, իւր աշակերտակից Գիւտ կաթողիկոսէն սիրալիր ընդունելութիւն գտաւ և Եզնիկի մահ-ուանէն յետոյ Բագրեւանդայ և Արշարու-նեաց գաւառներուն վրայ եպիսկոպոս կար-գուեցաւ. բայց Ղազար Փարպեցւոյ առ Վահան Մամիկոնեան գրած Թղթէն յայտ-նապէս կ'երեւի, որ Մովսէս ոչ միայն 'ի կենդանութեան շարունակ տառապանաց մէջ անցուցած է իւր կեանքն, այլ և յետ մահուան՝ ուսումնատեաց և տարամոլ ե-կեղեցականք ոսկերքը գերեզմանէն հանելով ջուրը թափած են. այսպէս անարգաբար հալածելով այն անզուգական անձը, որ Հա-յոց ազգի անունը անմահացուցած է աշ-խարհի վրայ։

Մովսէս նուիրած է իւր գրիչը Թարգմա-նական աշխատութեանց, վասն զի զինքն կ'անուանէ, “Այր ծեր և անպարապ 'ի թարգմանութեանց”. բայց յականէ յանուա-նէ որոշուած չեն իւր թարգմանական աշ-խատութիւնքը ինչպէս և այլոցը։ Ուստի և մենք համառօտիւ կը խօսինք միայն Մով-սիսի ինքնագիր երկասիրութեան վրայ։

Մովսիսի ինքնագիր երկասիրութեանց

Digitized by Google

մէջ գլխաւորն և միանգամայն Եւրոպական գիտնոց գովեստից արժանացածն է նորա Պատմութիւնն (1), որ գրած է Սահակ Բագրատունի իշխանի խնդրանօք ։ Այս պատմութիւնը արդէն մանրագնին քննադատութեամբ գնահատուած է արժանապէս քանի մի հայ և օտարազգի բանասէրներէ, մանաւանդ Վիկտօր Լանգլուա արեւելագէտ և հայասէր գաղղիացիէն, ուստի և մենք այս քննադատութեան ամփոփումն դրագիտութեան պատմութեանը թողլով համառօտ գծերը միայն յառաջ կը բերենք ։

Մովսիսի երկասիրած պատմութիւնը կը սկսի Հայկազանց նահապետական հարըստութեան սկզբնաւորութենէն և կ՚աւարտի Արշակունեաց թագաւորական հարստութեանկումովը, այն է կը պարունակէ մեր ազգի 2780 տարուան պատմութիւնը ։ Սակայն որչափ որ պատմական ժամանակամիջոցը երկար է, այնչափ և պատմութիւնը համառօտ . և այս համառօտախօսութեան պատճառ գըլխաւորապէս պատմագրի ծերութիւնն եղած է (զոր տեղ տեղ ինքնին յառաջ կը բերէ,) և ոչ իւր հմտութեան պակասութիւնը, վասըն զի պատմութեան իւրաքանչիւր գլխէն

(1) Խորենացւոյ պատմութիւնը թարգմանուած է Լատիներէն, Գաղղիարէն, Իտալերէն և Ռուսերէն, հետաքննին ծանօթութեամբք հանդերձ ։

Digitized by Google

կը նշմարուի Մովսիսի բազմակողմանի հըմտութիւնը։ Արդարեւ՝ Խորենացին իբրեւ ազգային պատմութեան նախահայր՝ բաց 'ի աւանդութիւններէ չէ ունեցած ուրիշ ազգային պատմագրական աղբիւր, բայց հետազօտած է բազմաթիւ օտարազգի պատմիչներ (որոց անունները կը յիշուին իւր պատմութեան մէջ) և զանազան աղբիւրներ, այն է Յունական, Քաղդէական, Ասորական, Աստուածաշունչ Գրոց և Հրէական։

Խորենացւոյ Պատմութիւնը երեք գիրք բաժանուած է, որոց առաջինն կը կոչուի Ծննդաբանութիւն Հայոց Մեծաց, որ կը պարունակէ պատմագրի Ընծայականն առ Սահակ Բագրատունի, Ս. Գրոց ծննդաբանութիւնն և ապա (Մարիբասայ հետեւողութեամբ) Հայկազանց տանուտիրական կամ նահապետական պատմութիւնը, Հայկէն մինչեւ Վահէի վախճանն, ամփոփելով մի փոքր յաւելուած եւս Բիւրասպի Աժդահակայ նըկատմամբ եղած պարսկական առասպելախառն դէպքին վրայ։ Երկրորդ Գիրքը կը կոչուի Բան միջակ պատմութեան Նախնեացն մերոց, և կը պարունակէ մեր ազգային պատմութե ամենէն ճոխագոյն մասը մեծին Աղեքսանդրի աշխարհակալութեան ինչ ինչ դէպքերէն և Արշակունեաց հարստութեան սկըզբնաւորութենէն մինչեւ Տրդատայ թագա

ւորութիւնը ։ Իսկ երրորդ Գիրքը կը կոչուի Աւարտաբանութիւն մերոյ հայրենեաց, որ կը պարունակէ Տրդատայ Թագաւորութենէն մինչեւ Արշակունեաց հարստութեան անկման պատմութիւնը ։ Այս վերջին գլխոյն մէջ քաղաքականին հետ խառն է և ազգային եկեղեցական պատմութիւնը, այն է Տրդատայ Գրիգորի և իւր յաջորդ հայրապետաց ժամանակ կատարուած քրիստոնէական և եկեղեցական եղելութիւնները, որոց վրայ արդէն խօսած լինելով՝ աւելորդ կը համարինք կրկնել ։

Խորենացւոյ պատմութիւնը կ'աւարտի մի սրտաշարժ Ողբով հայրենեաց և եկեղեցւոյ վիճակի վրայ, որուն մէջ արտասուաթոր և անմխիթար կը ներկայանայ այն հայրենասէր ծերունին, որ Հայկայ, Արամայ, Տիգրաններու և այլ ընտիր անձանց պատմութիւնը աւանդած ժամանակ՝ կարծես մանկանալով կը խայտայ ։ Երբոր կը յիշէ Հայրենեաց մեծութիւնը, եկեղեցւոյ պայծառութիւնը և ներկայ աղէտները, Թագաւորութեան բարձումն, արտաքին արհաւիրքները և ներքին զեղծումներն՝ սիրտն կը մորմոքի և միանգամայն ընթերցողը յարտասուս կը շարժէ ։

Թովմա Արծրունին չորրորդ Գիրք մի ևս կը յիշատակէ Խորենացւոյ պատմութեան, բայց այս Գիրքը մեզ չէ հասած, ինչպէս և

«Տաղքն չափու յինքն և 'ի Սահակ Բագրատունի»։

Պատմութենէն յետոյ Խորենացւոյ անուամբ եղած երկասիրութիւններն են — 1. Աշխարհագրութիւն, որ աւելի թարգմանութիւն քան թէ ինքնագիր երկասիրութիւն դատուած է բանասէրներէն. 2. Պիտոյից Գիրք. տասն ճառէ բաղկացած, Թէոդորոս անուն աշակերտին համար իբրեւ ճարտասանական ուսման օրինակներ ուանդուած, որ առաւել գրողի պատանեկան հասակի խաղալիք կը համարուին քան թէ հիմնաւոր աշխատասիրութիւն։ 3. Պատմութիւն Սրբուհւոյ Աստուածածնի, և պատկերի նորա, որ գրած է, նոյնպէս Սահակ Բագրատունւոյ խնդրանօք, այն աւանդութեան հիման վրայ, որով կը պատմուի թէ Ս. Կուսի պատկերը Յովհաննէս աւետարանիչն փորագրած էր կիպարիս փայտի վրայ և Բարթուղիմէոս առաքեալն առնելով միւս առաքեալներէն բերած էր 'ի Հայաստան և դրած Հոգեաց վանքի մէջ։ 4. Ներբող 'ի Ս. Հռիփսիմէ, վառվռուն իմաստներով և զգացմունքներով լեցուն, և 5. Ճառ Վարդավառի։

Բաց յայսմանէ Մովսէսի անուամբ կը գտնուին այլ և այլ մեկնական և քերականական երկասիրութիւններ, բայց Խորենացւոյ սեպհական լինելուն համար տարակուսա-

Digitized by Google

թիւն կայ, որովհետեւ Մովսէս անունով շատ հեղինակներ եղած են ։

Նմանութեամբ Մովսէս Խորենացւոյ կ'ընծայուին նմանապէս քանի մի Շարականներ, ինչպէս են՝ Ճրագալուցի ուրախացերն, Տեառնընդառաջի կանոնն, Հոգեգալստեան առաջին պատկերն, և այլն ։

ՍԱՄԲՐԷ ՎԵՐԾԱՆՈՂ.—Խորենացւոյ կրտսեր եղբայրն, որ իւր եղբօր նման ճանապարհորդած է զանազան քաղաքներ ուսումնասիրութեան փափաքով ։ Սամբրէի անուամբ գտնուած երկասիրութիւնք միայն երկու Ճառ են — 'ի Յարութիւնն Ղազարու և 'ի Գալուստն Քրիստոսի յԵրուսաղէմ ։ Կ'աւանդէ Թովմա Արծրունին, որպէս թէ Վահան Արծրունեաց հրամանաւ պատմութիւն եւս երկասիրած է Սամբրէ, բայց այսպիսի փափաքելի աշխատութիւնը գուցէ 'ի կորուստ մատնուած է ։ Սամբրէի յիշեալ ճառերէն 'ի Յարութիւնն Ղազարու գրածն պերճախօս է և միանգամայն քրիստոնէական իմաստութեամբ զեղուն ։ Աւետարանական վսեմ ըսքանչելիքը արձագանգ գտած է Սամբրէի սրտին մէջ, որով և նուագած է աստուածային սիրոյ մեծութիւնը և մահու թագաւորութեան կործանումն, հնչակելով յարութիւն և անմահութիւն. «Ողբացէք մահ



Digitized by Google

«Տաղքն չափու յինքն և ՚ի Սահակ Բագրատունի»։

Պատմութենէն յետոյ Խորենացւոյ անուամբ եղած երկասիրութիւններն են — 1. Աշխարհագրութիւն, որ աւելի Թարգմանութիւն քան թէ ինքնագիր երկասիրութիւն դատուած է քննասէրներէն. 2. Պիտոյից Գիրք. տաս ճառէ բաղկացած, Թէոդորոս անուն աշակերտին համար իբրեւ ճարտասանական ուսման օրինակներ աւանդուած, որ առաւել գրողի պատանեկան հասակի խաղալիք կը համարուին քան թէ հմտաւոր աշխատասիրութիւն։ 3. Պատմութիւն Սրբուհւոյ Աստուածածնի, և պատկերի նորա, որ գրած է, նոյնպէս Սահակ Բագրատունւոյ խնդրանօք, այն աւանդութեան հիման վրայ, որով կը պատմուի թէ Ս. Կուսի պատկերը Յովհաննէս աւետարանիչն փորագրած էր կիպարիս փայտի վրայ և Բարթուղիմէոս առաքեալն առնելով միւս առաքեալներէն բերած էր ՚ի Հայաստան և դրած Հոգեաց վանքի մէջ։ 4. Ներբող ՚ի Ս. Հռիփսիմէ, վառվռուն իմաստներով և զգացմունքներով ղեղուն, և 5. Ճառ Վարդավառի։

Բաց յայսմանէ Մովսէսի անուամբ կը գտնուին այլ և այլ մեկնական և քերականական երկասիրութիւններ, բայց Խորենացւոյ սեպհական լինելուն համար տարակուսու-

Digitized by Google

Թիւն կայ, որովհետեւ Մովսէս անունով շատ հեղինակներ եղած են։

Աւանդութեամբ Մովսէս Խորենացւոյ կ՚ընծայուին նմանապէս քանի մի Շարականներ, ինչպէս են՝ Առագաստի ուրախայերն, Տեառնընդառաջի կանոնն, Հոգեգալստեան առաջին պաշտներն, և այլն։

ՄԱՄԲՐԷ ՎԵՐԾԱՆՈՂ.—Խորենացւոյ կրտսեր եղբայրն, որ իւր եղբօր նման ճանապարհորդած է զանազան քաղաքներ ուսումնասիրութեան փափաքով։ Մամբրէի անուամբ գտնուած երկասիրութիւնք միայն երկու Ճառ են — ՚ի Յարութիւնն Ղազարու և ՚ի Գալուստն Քրիստոսի յԵրուսաղէմ։ Կ՚աւանդէ Թովմա Արծրունին, որպէս թէ Վահան Արծրունեաց հրամանաւ պատմութիւն եւս երկասիրած է Մամբրէ, բայց այսպիսի փափաքելի աշխատութիւնը գուցէ ՚ի կորուստ մատնուած է։ Մամբրէի յիշեալ ճառերէն ՚ի Յարութիւնն Ղազարու գրածն պերճախօս է և միանգամայն քրիստոնէական իմաստութեամբ զեղուն։ Աւետարանական վսեմ ըսքանչելիքը արձագանգ գտած է Մամբրէի սրտին մէջ, որով և նուագած է աստուածային սիրոյ մեծութիւնը և մահու Թագաւորութեան կործանումն, հռչակելով յարութիւն և անմահութիւն. «Ողբացէ մահ

զկործանումն իւրոյ Թագաւորութեան (կ'աղաղակէ Մամբրէ), կոծեսցեն և դժոխք ըզքակտումն իւրոյ զօրութեանն ... Մ՛ափս հարցեն հաւատացեալք 'ի նորոգմանն Ղազարու. սուգ առցեն դեւք զինքեանց տեսանելով զկործանումն: Աւետարանեսցին՝ որոց 'ի գերեզմանս բնակին յոյս յարութեանըն — մի՛ այսուհետեւ զարհուրեցուսցէ ըզմեզ մահ»:

---

## Զ.

Երկասիրութիւնք Եղիշէ վարդապետի և Ղազարայ Փարպեցւոյ. — Ներքին յատկական նկարագիր պարունակութեան իւրաքանչիւրոց:

ԵՂԻՇԷ ՎԱՐԴԱՊԵՏ. — Կրտսեր Թարգմանչաց կամ երկրորդ աշակերտաց դասէն, Վարդան Մամիկոնեանի ատենադպիրն, որ թէպէտ իւր գրուածոց խորագիրներուն մէջ սովորաբար Վարդապետ կը կոչուի, բայց Մամիկոնեան նախարարական տան եպիսկոպոսն էր, որ և Արտաշատու ժողովին եպիսկոպոսաց կարգին մէջ կ'անուանի Եղիշէ եպիսկոպոս Ամատունեաց: Հայաստանի հարստահարութեան և հալածանաց օրերուն ականատես եղաւ Եղիշէ, տեսաւ Ս. Վարդանայ և նորա քաջ ընկերաց նահատակութիւնը, տեսաւ ընտիր ընտիր նախարարաց բանտար-

կութիւնն և գերութիւնը, հայ տոհմանց քրիստոնէական արիութիւնն և գեղեցիկ աստուածասիրութիւնը. տեսաւ հայրենեաց աւերումը պարսկական բռնութենէն, և սրտին ցաւէն առանձնացաւ Մոկաց լեռները և այն տեղէն Մշտունեաց գաւառը, ուր և կնքեց իւր կեանքը։

Եղիշէ Թողած է ինքնագիր ընտիր երկասիրութիւններ, որոց մէջ կը փայլին իւր ազնիւ զգացմունքներն և քրիստոնէական իմաստութիւնը։ Այս երկասիրութեանց մէջ ամենէն նշանաւորն է Պատմութիւնն վասն Վարդանայ և Հայոց պատերազմին, զոր գրած է Սամիկոնեան Դաւիթ երիցու հայցմամբ։ Այս պատմութիւնը կը բաղկանայ մէկ Ընծայականէ առ Դաւիթ երէցն և ութն յեղանակներէ կամ գլուխներէ, պատմական անցից յաջորդութեան կարգաւ, որոց վերջինը առաւել սուրբ քահանայից չարչարանքները և հայ կանանց քրիստոնէական բարեպաշտութիւնները կը պարունակէ, ուստի և կը կոչուի Արքայից եօթնն յեղանակին։ Եղիշէի պատմութեան մէջ նոյնպէս կը գտնուին 1. Յազկերտի շրջաբերական Հրովարտակը, որով իւր տէրութեան հպատակ ազգերը կը հրաւիրէ 'ի պատերազմ ընդդէմ Բուշանաց։ 2. Միհրներսեհ հրամանատարի Նամակը, զոր մոգերու խորհրդով կը գրէ Հայոց ազգին նախ-

պարսկական դէնը բացատրելով և Քրիստո-նէութիւնը պախարակելով և ապա ստիպե-լով Հայոց ազգը 'ի մոգութիւն և յարեւա-պաշտութիւն։ 3. Հայոց մերժողական Պա-տասխանը, զոր կը գրեն Արտաշատու ժողովին մէջ գումարուած եպիսկոպոսները Նախարա-րաց և բոլոր բազմութեան հաւանութեամբ և քրիստոնէական անվեհեր ազատութեամբ։ 4. Հրովարտակ կամ Գիր պաղատանաց Հայոց աշ-խարհին, զոր կը գրեն Յունաց Թէոդոս կայսեր և օգնութիւն կը խնդրեն. բայց Թէ-ոդոս կը մեռանի և Մարկիանոս Թագաւո-րելով փոխանակ Հայոց օգնելոյ, ընդ հա-կառակն կը բարեկամանայ Պարսից Թագա-ւորի հետ և դաշնակցութեան ուխտ կը հաստատէ։ 5. Վարդան Մամիկոնեանի և Ղեւոնդ երիցու քաջալերական վսեմ Աւե-[illegible]ները, որով Հայ ազգը կը խրա-խուսէն 'ի պատերազմ վասն պաշտպանու-թեան հայրենի օրինաց և ազատութեան Ե-կեղեցւոյ։

Եղիշէի երկասիրութիւնը չը նմանիր ա-մենեւին այն պատմագրութեանց, որոնք լոկ Թագաւորաց կամ իշխանաց յաջորդու-թիւններ և գործքեր կը Թուարկեն, այլ կը պատկերացնէ ամբողջ ազգի կամ ժողովրդի պատմութիւնը, մանուկէն մինչեւ զառա-մեալ ծերունին, փափկասուն տիկնոջէն մին-

չեւ զբռնադատ զօրականը և անարգէն մին-չեւ պատուականը, միով բանիւ, Եղիշէի երկասիրութիւնը Հայոց բոլոր ազգի նահատակութեան կամ քրիստոնէական զինւորութեան պատմութիւնն է ընդդէմ զրադաշտական մոլեռանդն մոգակրօնութեան, և մէկ ծայրէն մինչեւ միւս ծայրն կը տեսնենք այս խօսքերու կատարումը. «Ոչ երեւէր այնուհետեւ առաւել տէր քան զծառայ, և ոչ ազատ փափկացեալ քան զգեղջուկ վշտացեալ, և ոչ ոք քան զոք նուաղեալ 'ի յարութենէ։ Մի սիրտ յօժարութեան էր ամենեցուն՝ արանց և կանանց, ծերոց և տղայոց և ամենայն միաբանելոց 'ի Քրիստոս։ Քանզի առ հասարակ զմի զինուորութիւն զինուորեցան և զմի ագան զզրահս հաւատոց պատուիրանին Քրիստոսի. միով գօտեաւ ճշմարտութեան պնդեցին զմէջս արք և կանայք։ . . . Տեսանէին զանձինս իւրեանց իբրեւ զմեռեալ դիականս և զիւրաքանչիւր գերեզմանս ինքեանց փորէին. և կեանք իւրեանց 'ի մահ համարեալ էին և մահ իւրեանց անշուշտ կեանք»[1]։

Եղիշէի երկասիրութիւնը այն ընտիր պատմագրութիւններէն է, որոնք պատմելէն աւելի կ'ուսուցանեն — գործքէն շարժառիթը բացատրելով և հետեւանքէն պատ-

(1) Եղիշէ, Գ. Եղանակ։

ձառը, և կամ անդրադարձօրէն ։ Վասն զի Եղիշէն Եկեղեցւոյ ուխտի նահատակութեան պատմութեանը հետ՝ կ՚ուսուցանէ միանգամայն և Քրիստոնէական Եկեղեցւոյ նշանակութիւնը և էական պաշտօնը աշխարհիս վրայ, աստուածատէր առաքինեաց անձնազոհութեանը հետ՝ աստուածային սիրոյ մեծութիւնը, ուրացողաց և անմիաբանից արարմանց հետ՝ թերահաւատութեան և անզուգութեան դժնդակութիւնը, և նա և մոգական պաշտօնէից չարագործութեան հետ՝ մոգական դենի կամ կրօնի խաւարամիտ վարդապետութիւնը ։ Եւ այս պատմական ընտիր յատկութիւնը զգալի է մանաւանդ այն ներհական պատկերներուն մէջ, որոց մանրանկար յատկանիշները կը պատկերացնէ Եղիշէ ։ Անքնակալ թագաւոր մի (Յազկերտ) իւր արքայական աթոռէն կ՚որոտայ և միանգամայն կը դողդողայ, վասն զի մոգապաշտ է և անհաստատ խորհրդներով կը շարժի ․ իսկ ընդհակառակն՝ հպատակ ազգի զօրավար մի, նախարար մի (Վարդան և այլք) կը խրախուսի և կը խրախուսէ ․ վասն զի ըզՔրիստոս զօրավար և զօրագլուխ կը տեսնէ ճշմարտութեան պատերազմին, և երկիւղը՝ թերահաւատութիւն կը ճանաչէ ։ Թագաւորաց խորհրդական և պատգամաւոր մոգերը կը յուզին և կը տագնապին, վասն զի

Թանձրամած խաւարի մէջ են և ոգիները մարմնոյ մէջ արգիլուած, ինչպէս կենդանի գերեզմանի մէջ։ Իսկ ընդհակառակն՝ Յովսէփ, Գեւոնդ և այլք, Խաչն 'ի ձեռին անվեհեր՝ պատերազմի դաշտը կ'իջնեն, վասն զի ճշմարիտ Աստուծոյ քահանայ են և ճըշմարտութեան համար մեռնիլը՝ կեանք կը խոստովանին և կը քարոզեն։ Ընդարձակ նահանգի իշխան մի (Վասակ՝ տէր Սիւնեաց) բարձրանալու ձգտման հետ՝ կը քծնի և կը շոյէ, վասն զի ուրացող է և հաւատը մարմնաւորին մէջ է. իսկ ընդհակառակն՝ մատաղ մանուկ մի, տկար կին մի՝ վայելքը և փափկութիւնը կ'արհամարհեն, վասն զի ճշմարիտ վայելչութիւնը և մեծութիւնը աստուածային սիրոյ մէջ կը գտանեն։

Առհասարակ, եթէ մի կողմէն նկարագրուած է մոգակրօնութիւնը իւր աղխտաբեր չարիքներով, միւս կողմէն եւս կենդանի պատկերացած է Քրիստոնէութեան ճըշմարիտ ոգին մի ամբողջ ժողովրդի ուրախական զինուորութեամբ, որով և ակներեւ կը տեսնուի Եղիշէի երկասիրութեան մէջ, որ Հայ ազգը սիրած է իւր երկրաւոր հայրենիքէն բարձր հայրենիք, այն է իւր ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻՆ, պաշտած է իւր մարմնաւոր ազատութենէն բարձրագոյն ազատութիւն, այն է ԱԶԱՏՈՒԹԻՒՆ ԽՂՃԻ. և

Digitized by Google

հպատակած է մարդկային օրէնքներէն բարձրագոյն օրինաց, այն է ՕՐԻՆԱՑ ԱՍՏՈՒԾՈՅ։ Վասն զի այս է եղած նորա նահատակութեան նշանաբանը. «Հայր մեր զԱւետարանն գիտեմք և մայր առաքելական Եկեղեցի կաթողիկէ։ . . . Օրէնք Աստուածային կացցեն թագաւոր 'ի վերայ ամենայնի»(1)։

Եղիշէ ոչ միայն ականատես եղած է իւր նկարագրած պատմական անցքերուն, այլ և լիովին զգացած է իւր սրտին մէջ, ինչպէս քաջութեան ուրախական հանդէսները, նոյնպէս և հայրենեաց աւերման տխուր տեսարանները, ուստի և ճառագրած է իւր պատմութիւնը սրտի լեզուով — արտասուաքով։ Վասն զի ինքնին կ'ասէ. «Ահա ոչ ըստ կամաց արտասուալից ողբովք ճառագրեմք զբազում հարուածս, յորում պատահեցաք և մեք իսկ ականատես լինելով». որով կ'ազդէ ոչ միայն Հայու՝ այլ և օտարականի սրտին, ինչպէս և ճշմարիտ խոստովանած է օտարազգի բանասէրներէն մին, ասելով. «Երբ Եղիշէ կը կարդամ, կը հայանամ» (2)։

Պատմութենէն զատ՝ Եղիշէ երկասիրած է այլ և այլ Ճառեր և Մեկնութիւններ, որք

(1) Եղիշէ. Գ. յեղանակ։

(2) Եղիշէն թարգմանուած է Անգղիարէն, Իտալերէն, Գաղղիարէն և Ռուսերէն։

են, 1. Բան խրատու միանձանց, որ պատմութենէն յետոյ ամենէն ընտիր, սրտաշարժ և միանգամայն վսեմ գրուածքն է, որով Նախմենաւորական կենաց գեղեցիկ նկարագիրը կը պատկերացնէ, ապա զեղծումները, և ապա կը յորդորէ յուղղութիւն և 'ի զգաստութիւն։ Միանձանց ճառը այն գեղեցիկ յատկութիւնն եւս ունի, որ հեղինակը միշտ խօսած է առաջին դէմքով և ուրիշները յանդիմանած ժամանակ՝ երբեք բացառութիւն արած չէ իւր անձին, թէպէտ և իւր գործքերէն կ'երևի որ անբասիր է իւր կեանքը։ Այս ձեւ բանախօսութիւնը այն փափկասիրտ հեղինակներու յատկութիւնն է, որոնք իւրեանց եղբարց թերութիւնը իւրեանց սեպհականը կը համարեն։ 2. Մեկնութիւն Յեսուայ և Դատաւորաց. 3. Մեկնութիւն Տէրունական աղօթից. 4. Կանոնք. և 5. Ճառք 'ի Այլակերպութիւնն Քրիստոսի, 'ի Մատնութիւնն, 'ի Չարչարանսն, 'ի Խաչելութիւնն եւ այլն, որոնք մեկնական և յորդորական պարզ գրուածքներ են հաւատացելոց հոգևոր շինութեան համար և պատմութենէն ժամանակաւ կանխագոյն կ'երևին։

ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ. — Արագածոտն գաւառի Փարպի գիւղէն, իւր մանկութեան հասակին մէջ նախնական կրթութիւն կ'առ-

նու Վրաց Աշուշայ բդեշխի տանը. (որ ամուսնացած էր Վահան Մամիկոնեանի Անոյշ — Վռամ հօրաքրոջ հետ,) որով եւ զինքն Վահանայ մնդակից և խաղակից կը կոչէ։ Յետոյ կ՚աշակերտի Վասակ Արծրունւոյ Աղան որդւոյն, որ տեսնելով իւր հօր բարեկամութիւնը Մեհրուժանայ հետ և ուրացութեան կասկածը, զինուորութեան պաշտօնը թողած՝ Գողթն գաւառի մէջ մենաւորական կեանք կը վարէր։ Ղազար այս նուիրական կրթութենէն յետոյ, Սահակայ և Մեսրոպայ հրամանաւ Յունաստան կ՚երթայ և աւելի հռետորական արուեստի հետամուտ կը լինի, և այս պատճառաւ է որ Ճարտասան կը կոչուի։ Յունաստանէն դառնալով Մամիկոնեանց ազգական Կամսարականաց մօտ կը մնայ և հայրենեաց հարուածներուն չը կարենալով հանդուրժել, վշտակիր սրտիւ կ՚անցնի Սիւնեաց աշխարհը։ Երբոր Վահան Մամիկոնեան մարզպանութեան իշխանութիւն կ՚ընդունի Վաղարշ թագաւորէն և կը ջանայ հայրենիքը բարեկարգել և վանքերը նորոգել, կը կոչէ իւր մնդակից բարեկամն՝ Ղազար և հաւանութեամբ Յովհան Մանդակունւոյ (որ այն ժամանակ կաթողիկոս էր), Էջմիածնի կաթուղիկէի շինութիւնը նորա տեսչութեանը կը յանձնէ մի քանի անձանց հետ։ Ղազար վանքի նիւ-

Digitized by Google

թանկան շինութիւնը լրացնելէն զկնի, բարո-յական բարեկարգութեամբ մը զբաղի, և Հայաստանի զանազան կողմերէն պատանի-ներ կը ժողովէին այնտեղ, ուսմամբ զարգա-նալու, որուն օժանդակ կը լինէին Վահանայ եղբարքն, Ներսէհ և Հրատ Կամսարական-ները, Մամիկոնեան Համազասպն և Աբե-ղենից Ղազրիկ իշխանը։

Այս ուսումնասիրական բարեկարգու-թեան վրայ վանքի միաբանից ոմանց նախան-ձը կը շարժի, կըսկսին պախարակել ոչ միայն Ղազարու գիտութիւնը, այլ և հաւատոյ վարդապետութիւնը, և ամբաստանութիւնը մինչև Վահանայ ականջը կը հասցնեն, որ կըսպառնայ թէ՛ Ղազարը և թէ՛ բոլոր մի-աբանները արտաքսել։ Ղազար չըկարենա-լով ուսումնատեաց գլախօսաց բերանը կարկել՝ օգնութիւն կը խնդրէ Մանդակու-նի կաթողիկոսէն և իւր խնդրանաց կատա-րումն չըստանալով, ինքնին կը դիմէ առ կա-թողիկոսն որ արդէն վրդովուած լինելով չարախօսներէ՝ տեսութեան անգամ չարժա-նացներ զՂազար։ Թշնամիները կաթողիկա-սի սառնութիւնը պատեհ առիթ համարե-լով Ղազարը վանքէն կ'արտաքսեն և իւր ունեցած յունարէն և այլ գրքերն անգամ ձեռքէն կը յափշտակեն, որուն համար Ղա-զար ցաւելով կ'ասէ. «Երանի թէ գոնէ ի

Digitized by Google

րենք կարդան և լուսաւորին և ուրիշները լուսաւորեն, և ոչ թէ ընկեցեալ մնան 'ի կերակուր ցեցոյ »։ Ղազար աքսորանքէն սիրտը խռոված, Ամիթ քաղաքը կ'երթայ և այն տեղէն Համազասպ Մամիկոնեանի ձեռքով կ'ուղարկէ առ Վահան իւր նշանաւոր Թուղթը, որով թշնամեաց ամբաստանութիւնները կը մերժէ, նոցա անկարգ վարքը և տգիտութիւնը կը նշաւակէ և իւր անմեղութիւնը կը պաշտպանէ հաստատ ապացոյցներով։ Աստի և Վահան համոզուելով իւր մօտ կը կոչէ զՂազար և կ'առաջարկէ իւր ժամանակակից անցից պատմութիւնը գրել, որուն պարունակութեան վրայ այժմ պիտի խօսինք, իբրև Ղազարու ինքնագիր երկասիրութեան վրայ։

Թէպէտ և Ղազարու բուն նպատակն եղած է գլխաւորապէս Վահան Մամիկոնեանի Մարզպանութեան ժամանակ պատահած անցքերը արձանագրել, բայց իւր պատմական երկասիրութիւնը կը սկսի Հայոց թագաւորութեան երկու բաժնուելէն, 'ի ներքոյ յունական և պարսկական գերիշխանութեան։ Ղազար Փարպեցին իրմէն առաջ եղած պատմագիրները յիշելով, ինչպէս են Ագաթանգեղոս և Բիւզանդ, (վերջնոյն գրուածքը այլոց ձեռքով խարդախած կը կարծէ), և իւր երկասիրութիւնն համարելով

որպէս շարայարութիւն Նոցա պատմածնե-
րուն, կը պատմէ Հայաստանի բաժանեալ
իշխանութեան աղէտները, կը նկարագրէ
Արարատեան գաւառի բարեբերութիւնը,
և Սահակայ ու Մեսրոպայ ուսումնասիրա-
կան և հայրենասիրական արարքները և մահը։
Կը պատմէ Արշակունեաց թագաւորութեան
բարձումն և Վարդանանց ու Ղեւոնդեանց
ժամանակի քրիստոնէական զինուորութեան
հանդէսը, զոր իրմէն յառաջ Եղիշէ գրած
էր առաւել ընդարձակ, բայց աւարտած էր
Յազկերտի մահուամբ և նախարարաց դարձովն
՚ի Պարսկաստանէ։ Ղազար յառաջ կը տա-
նի իւր պատմութիւնը և կ'աւանդէ Գիւտ
կաթողիկոսի ամբաստանութիւն Պարսից դրան
առջեւ, արդարանալն և երկար ժամանակ
Պարսկաստանի մէջ մնալն հրամանաւ թա-
գաւորին։ Կը պատմէ թէ՝ ինչպէս անուանի
եղաւ Վահան Մամիկոնեան և Գադիշոյ
Մախազի և այլ ուրացեալ նախարարաց
ձեռքով մատնուեցաւ Պարսից թագաւորին,
և ինչպէս առ երեսս ուրացաւ իւր հաւատ-
քը, մեծարանօք դարձաւ ՚ի Հայաստան,
կրկին զղջաց իւր ուրացութեան վրայ, միա-
բանեց իւր հետ հաւատացեալ նախարար-
ները և արիական պատերազմներ մղելով՝
խորտակեց պարսկական զէնքն ու զօրութիւ-
նը, թագաւորի հետ հաշտութեան դաշինք

# ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

**Քրիստոնէութեան դիմամարտութենէն մոգակրօնութեան դէմ մինչեւ Մահմետականութեան եւ յունական անհերքուածութեան հալածանքները ։**

# 450–640

## Ա.

*Ընդհանուր գծագիր այս շրջանին. — Խորհուրդ Պարսից Քրիստոնէութիւնը բառնալու համար. — Վասակ Սիւնի և համամիտք իւր. — Քրիստոնէութիւն և ախոյեանք իւր. — Պարսից պատերազմը Հոնաց հետ և քրիստոնէից օգնութիւնը. — Տառապանք քրիստոնեայ զօրականաց. — Նահատակութիւն Ատովմեանց. — Դենշապուհի հարստահարիչ պալաքները. — Պարսից Հազարապետի հրովարտակը. — Արտաշատու ժողովը և պարսկական հրովարտակի պատասխանը. — Պարսից Թագաւորի զայրոյթն Հայոց պատասխանւոյն վրայ. — Նախարարաց կոչուիլն և երթալն 'ի դուռն Պարսից. — Թագաւորի ուրախութիւնն Նախարարաց առ երեսս ուրացութեան վրայ. — Նախարարաց և պարսկական մոգախումբ բանակի ուղեւորութիւնն 'ի Հայաստան. — Պարսից Թագաւորի պատուէրները ։*

ՆԱԽԸՆԹԱՑ շրջանին մէջ տեսանք, որ Արշակունեաց Թագաւորական հարստութեան երկու բաժնուելովն՝ Հայաստանի քաղաքային ոյժը տկարացաւ, և սակաւ ժամանակէն զկնի, բոլորովին բարձաւ արքայական



Digitized by Google

անունն ու իշխանութիւնը, նախ յունական և ապա պարսկական բաժնին մէջ։ Այս բարձման պատճառը այնքան ներքին երկպառակութիւնները չէին, որքան յունական եւ պարսկական տէրութիւնները, որոնք առիթ տալով ներքին խռովութեանց՝ Հայաստանը իրարու ձեռքէ յափշտակել կը ջանային։ Բայց որովհետեւ Յունաստան արդէն տկարանալու վրայ էր, հետեւապէս Հայաստան առաւել հզօրագունին պիտի մնար, որպէս և եղեւ իսկ։ Յունաստան տկարանալու վրայ էր, ասացինք, վասն զի Արշակունի թագաւորութեան բարձման միջոցին Ալանք և Հոնք Եւրոպա արշաւելով և ուրիշ բարբարոս ազգաց հետ միանալով՝ սկսած էին սասանեցնել Արեւմտեան և Արեւելեան (Հռովմէական և յունական) կայսրութիւնները, որոնք արդէն, կրօնական վէճերով, հերետիկոսական յուզմունքներով, և մանաւանդ բարուց ապականութեամբ ու ներքին զեղծմամբ, կործանման անդունդը հասած էին։ Այս աշխարհասասան վրդովմանց եւ աւերմանց ժամանակին էր, որ Պարսիկները Յազկերտ Բի օրով պատերազմի ելան Յունաց դէմ (Թէոդոս Բի թագաւորութեան ժամանակ) և յաղթող գտան, այնպէս որ, Յոյնք ստիպուեցան իրենց երկիրը փախած քրիստոնեայքը (զորս կը պահպանէր Ստա-

Digitized by Google

կոս Պատրիարքը, Յետ դարձնել և Անատոլիս որեւելեան սպարապետի ձեռամբ մեծ գանձ տալ Պարսից. և խաղաղութիւն հաստատել ։

Պարսիկները, այս յաղթութեան պարծանքով, Արեւմուտքէն Արեւելք դառնալով՝ Քրիստոնէութիւնը բառնալու խորհուրդներ կը յղանան, և աներկիւղ գործադրել կը ջանան, վասն զի յունական ազդեցութենէն եւս ապահովցած էին, յորմէ առաջ կը կասկածէին ։ Մոգերը և Քրիստոնէութեան ոխերիմ թշնամի Միհրներսեհ հազարապետը խորհուրդ կուտան թագաւորին պարսկական տէրութեան բոլոր քրիստոնեայ ազգերը մոգութեան դենին դարձնել։ Կը համոզեն մանաւանդ՝ թէ Հայաստան մեծ և պիտանի աշխարհ է և յունական կայսերութեան սահմանակից և ըստ քրիստոնէութեան կրօնակից, ուստի եթէ Հայք մոգական կրօնին ընտանենան, այնուհետեւ կը սիրեն Արեաց աշխարհը և թագաւորները, և իսպառ կը հեռանան Յունաց ազգէն, և երբ այս ընթացքը յաջողի, անշուշտ Վրացիք, Աղուանք և այլք նոցա օրինակին կը հետեւին ։

Պարսկական այս խորհրդին մասամբ կը նպաստէր Հայաստանի մէջէն Սիւնեաց նախարարական հռչակաւոր Տունը, վասն զի այս

միջոցին Հայոց աշխարհի Մարզպան (Պաւա-ռակալ) էր Վասակ Սիւնին (Վեհ-Միհրշապուհ պարսկի մարզպանութենէն յետոյ,) որ թէպէտ 'ի սկզբան Մեսրոպի առաքելութեը օժանդակած էր Սիւնական աշխարհին մէջ, դպրոցներ հաստատելով մանկանց համար և Մատենադարան Գեղարքունւոյ մէջ, և ականաւոր էր իւր իմաստութեամբ և վարչական խոհեմութեամբ, բայց մարզպանութեան միջոցին պատրուած էր իշխանական փառասիրութեան տենչանքով, յուսալով յինքն գրաւել ուրացութեամբ Հայոց աշխարհի թագաւորութիւնը. որ թէ և բարձուած էր, բայց յիշատակը տակաւին կենդանի էր շատերու սրտին մէջ: Վասակայ տենչանքին և ուրացութեանը գրգիռ տըւած էր մանաւանդ նորա փեսան, Վարազվաղան Սիւնին, որ, աներոջ ձեռամբ իւր աշխարհէն մերժուելով (կնոջ հետ գժտութեամբ վարուելուն պատճառաւ) ընդունած էր Մազդեզանց կրօնքը և Միհրներսեհին խորհրդակից դառնալով՝ կը ջանար մարզպանութենէ ձգել զՎասակ, և սա իշխանութեան մէջ հաստատ մնալուն նպատակաւ ուրացութիւնը միայն գտած էր դիւրին միջոց: Վասակայ կողմը շահուած էին, 'ի միջի այլոց, Բագրատունեաց տոհմէն Տիրոց ասպետ՝ իշխան պարսկային Բագրատունեաց

Տարօնոյ, և Վասակ Մամիկոնեան՝ կուսակալ Ստորին Հայոց ՚ի Յունաց բաժնի: Այս նըպաստաւոր երեւոյթները բաւականին ոյժ կը տային մոգական մոլեռանդութեան եւ Պարսիկները Հայաստան արդէն մոգակրօն դարձած կ՚երազէին: Բայց Գրիգորի, Ներսէսի, Սահակայ և Մեսրոպայ առաքելական քրտունքը ՚ի զուր հոսած չէին: Այժմ Հայաստանի մէջ, ոչ միայն Վարդան, Համայեակ և Համազասպեան, որոնք իրենց հաւուն՝ Ս. Սահակայ մօտ քրիստոնէական ուսմամբ դաստիարակուած էին և տոհմային տանուտէրական իշխանութիւն կը վարէին: Այժմ ոչ միայն ընտիր ընտիր նախարարներ և իշխաններ — Վահան Ամատունի հազարապետ, որ հայր համարուած էր բոլոր աշխարհին, Արշաւիր Կամսարական, Ներշապուհ Արծրունի և այլք, — որոնք վառուած էին ՚ի սէր քրիստոնէական կրօնի: Այժմ ոչ միայն արթուն և անձնադիր հովիւներ — Յովսէփ, որ ՚ի քահանայութենէ ՚ի կաթողիկոսութիւն կոչուած էր, Սահակ եպիսկոպոս Ռշտունեաց, Ղեւոնդ երէց և այլ բազումք — որոնք քրիստոնէական աղ և լոյս էին Հայոց աշխարհի համար: Այժմ ոչ միայն իշխանութեամբ և աստիճանաւ ականաւոր մարդիկ, այլ և միլիոնաւոր զաւակունք Եկեղեցւոյ, արք և կանայք, ազատք և շինականք, ծերք և մանկունք, որոց

հոգիներուն մէջ եռացող քրիստոնէական հուրը, հալածանքները սաստկանալուն պէս պիտի դուրս բռնկէր և սքանչելի երեւութով մոգութիւնը շուարեցնէր։

Այսպէս առա, թէպէտ մի կողմէն մոգակրօն Պարսկաստանը սպառազինած էր տէրապետական ուժով և աշխարհային խոստումներով սակաւաթիւ տկարամիտներ իւր կողմը որսացած էր. սակայն միւս կողմէն եւս քրիստոնեայ Հայաստանը կ'եռար հաւատոյ աննկուն ոգեւորութեամբ։ Պարսկաստան սպառազինած էր բանտով, տանջանքով, գերութեամբ, մահուամբ և աքսորեամբ՝ Քրիստոնէութիւնը բառնալ. իսկ Հայաստան պատրաստուած էր նոյն արհաւիրքներուն դիմադրել և իւր երկնային կրօնքը պաշտպանել։ Վաղուց արդէն Պարսից խորհուրդները յայտնի էին Հայոց, բայց Պարսիկները 'ի սկզբան կը ջանային ծածկել, ուստի և հալածանքն այլ կերպարանքով ըսկսաւ։

• Յազկերտ Բ. Միհրներսեհ հազարապետի և մոգերու խորհրդով պատերազմի պատրաստուեցաւ Բուշանաց կամ Հոնաց դէմ, և քրիստոնէից զօրութիւնը տկարացնելու և դիւրաւ 'ի մոգութիւն փոխելու համար՝ հրովարտակներ ուղարկեց Արեաց և Անարեաց (Իրան և Տաներան) տէրութեան հր-

պատակ բոլոր քրիստոնեայ ազգերուն և մանաւանդ Հայոց, որպէս զի իւրաքանչիւրն իւր այրուձիով, նախարարներով և իշխաններով Ապար աշխարհը դիմեն: Հայք Վիրք, Աղուանք և այլք հպատակեցան Թագաւորի հրամանին և իւրաքանչիւրն իւր այրուձիով ժամադիր եղած տեղին հասան և միանալով պարսկական զօրաց հետ՝ արշաւեցին Բուշանաց վրայ: Երկու տարի պատերազմեցան, բայց չը կարացին յաղթել, ուստի և Յազկերտ մարդիկ զօրքերը արձակելով և ուրիշները նոցա տեղ փոխանակելով, եօթըն տարի պատերազմեցաւ և յաղթութեան յուսով իւր համար արդէն բնակութեան քաղաք շինած էր այն տեղ: Ի վերջոյ Հոնք յաղթուեցան, Պարսից ասպատակները տակնուվրայ արին Հոնաց գաւառները, գերելով և աւերելով, ուրախութեան աւետիքներ ուղարկուեցան ամէն ատրուշաններուն, սպիտակ ցուլեր և գիսաւոր նոխազներ զոհուեցան կրակին և մոգերն ու մոգպետները պատուեցան: Մինչդեռ պատերազմները կը շարունակուէին Հոնաց դէմ՝ Թագաւորն՚ի մոգութիւն կը հրապուրէր քրիստոնեայքը զանազան միջոցներով. մերթ պատիւներ տալով նախարարաց, մերթ քրիստոնէութիւնը պախարակելով և մոգութիւնն ու քաղդէութիւնը ջատագովելով, և մերթ

կրտսերները և անարգները նախամեծարելով, քան աւագները և պատուականները։ Սակայն Քրիստոնէութիւնը տակաւին ազատ էր և քրիստոնեայ զօրաց հետ պատերազմի մէջ գտնուած եկեղեցականները հրապարակաւ պաշտօն կը կատարէին բանակին մէջ և 'ի Պարսկաստան ևս Քրիստոնէութիւնը տակաւին կը տարածուէր առանց դիմահարութեան։ Իսկ Քուշանաց նուաճմանէն ըզկընի մոգերը և քաւդեաները հրապուրեցին Թագաւորն ասելով՝ այն աստուածները, որոնք յաղթուի՞ տուին քեզ, միայն մի հատուցումն կը պահանջէն քեզմէն, այն է Քրիստոնէութիւնը բառնալ և բոլոր ազգերը 'ի մոգութիւն դարձնել։ Ուստի և վաղվաղակի պատգամաւորներ ուղարկուեցան պարսկային տէրութեան բոլոր ազգերուն, որ մի միայն արեգակը պաշտեն, կրակին սպաս տանեն և մոգութիւնը ընդունեն։ Հայոց, Վրաց և Աղուանից այրուձին արգիլուեցաւ 'ի ներքըս պահ դրան (դուռն Ճորայ, ուստի արշաւած էին դէպ 'ի Քուշանք,) և սաստիկ հրաման տրուեցաւ դռնապանաց, որ նոյն դռնէն Արևելք դիմողները թողնեն, իսկ Արևմուտք դիմողները արգիլեն։ Երբ այսպէս փակուեցաւ Քրիստոնէից այրուձին տար աշխարհի մէջ, այնուհետև ձեռն արկին տագնապել, տանջել, անարգելով, թոշակը սակ-

սեցնելով , ձմերոցաց դժնեայ վայրերուն մէջ խոշտանգելով. երբեմն ստիպելով որ յաղեալ միս ուտեն և երբեմն գունդագունդ պատերազմի տանելով դէպ 'ի հիւսիսային անապատները և սրոյ ճարակ տալով։ Միայն Ատոմ Գնունի և Մանաճիհր Ռըշտունի իւրեանց զօրքով 'աճապարեցին Հայաստան փախչիլ, սակայն Պարսից զօրքերը հասնելով ամենքը նահատակեցին, և այս նահատակաց յիշատակն է, զոր Եկեղեցին կը տօնէ Ատոմեանց զօրավարաց անունով։

Մինչդեռ հալածանքները այսպէս կը շարունակուէին, Յազկերտ իւր Դենշապուհ (Վեհ դենշապուհ) պաշտօնատարը Հայաստան ուղարկեց, որ առաջ կեղծաւորեցաւ, իբր թէ ողջոյն բերած է թագաւորէն և եկած է աշխարհագիր առնելու, հարկը թեթեւցնելու և այրուձին նուազեցնելու համար, բայց յետոյ ընդհակառակն այս աղետները հասոյց Հայոց աշխարհին։

1. Եկեղեցին, որ ազատ էր, ծառայութեան տակ դրաւ։

2. Մենակեաց քրիստոնեայք, որ ազահարկ էին, վանօրէիւք հանդերձ, աշխարհագրի և հարկաց ենթարկեց։

3. Աշխարհի հարկը ծանրացոյց կրկնապատկելով, և մուտք, սակք, բաժք և հարք նշանակեց ոչ միայն շինից, լերանց, դաշտաց

և մայրեաց, այլ և աւերակաց:

4. Բանսարկութեամբ նախարարները իրարու դէմ յարոյց և ամեն տան մէջ խռովութիւն ձգեց:

5. Ամբաստանութիւն յարոյց Վահան Ամատունի հայրաբարոյ հազարապետին դէմ, պաշտօնէ ձգեց և նորա փոխանակ պարսիկ դրաւ (Միշկան անուն):

6. Դատաւորութեան համար մոգպետ կարգեց, որպէս զի եպիսկոպոսաց ատենի մէջ եղած դատաստանները խափանուին.

Երբ այս ամեն հնարքները 'ի գործ դրըւեցան աշխարհի միաբանութիւնը քայքայելու, վանաբնակները փախցնելու, Եկեղեցւոյ ուխտը քակտելու և շինականները ցրուելու համար, որպէս զի ազատութեան վտանգէն ստիպեալ մոգութիւնն ընդունին, այնուհետեւ Արեաց և Անարեաց հազարապետը հրովարտակ գրեց Հայոց, որ մէջ կ'աւանդէր զրադաշտական ուսումն և դենիմազդեզն, — այն է միութիւն (Զրուան կամ Ժամանակ,) այս միութենէն արմատական երկուորականութիւն կամ ծընունդ երկու արարիչներու (Որմզդի և Արհմենի) և այս արարիչներէն ծնունդ և ստեղծագործութիւն բարի և չար արարածոց — և կը յանդիմանէր Քրիստոնէութիւնը իբրեւ մարդկային մտաց և զգացմանց հակառակ

Digitized by Google

վարդապետութիւն:

Միհրներսեհի նամակը Հայաստան հասնելով՝ գրաւեց համայն ազգի մտադրութիւնը, վասն զի բացարձակ վճռուած էր —կամ պատասխանել նամակին բան առ բան, և կամ Պարսից դուռն գնալ և յանդիման լինել մեծ հրապարակին (Թագաւորական ատենին): Ուստի և ժողովատեղի որոշելով Արտաշատ Թագաւորանիստ քաղաքը, գումարեցան այնտեղ ամեն գաւառներէն մեծամեծ Եպիսկոպոսունք, (Յովսէփ եպիսկոպոս Արարատոյ կամ կաթողիկոսն, Մելէտ Մանազկերտոյ, Սահակ Ռշտունեաց, Եզնիկ Բագրեւանդայ, Մուշէ Արծրունեաց, Եղիշէ Ամատունեաց և այլն). բազմաթիւ Քորեպիսկոպոսունք, նշանաւոր Երիցունք (Ղեւոնդ, Դաւիթ, Խորէն 'ի Սրենայ և այլք), աւագ Վանականք (Աղան Արծրունի և այլք). մեծատոհմ Նախարարք և Տանուտեարք (Տէրն Սիւնեաց Վասակ Մարզպան, Տէրն Արծրունեաց Ներշապուհ, Մալխազն Վրէ, Սպարապետն Հայոց Վարդան Մամիկոնեան, և երբեմն Հազարապետ աշխարհին Վահան Ամատունի և այլք). աւագ Սեպուհք իւրաքանչիւր Տոհմի և մեծագումար բազմութիւն մարդկան:

Այս աշխարհաժողովի բոլոր բազմութիւնը, մեծամեծք և փոքունք, միաբան հա-

ւանութեամբ աշխարհին՝ ուխտեցին հաստատուն մնալ Քրիստոնէութեան մէջ կենօք և մահուամբ, և միաբանական վկայութեամբ պատասխանեցին Միհրներսեհի նամակին, բան առ բան ջրելով զրադաշտական վարդապետութիւնը — երկուորականութեն դէմ հաստատելով Աստուածութեան միութիւնը, արարչութիւնն յոչընչէ, անձնիշխանութիւն մարդոյ, սկիզբն չարեաց, անկումն մարդկութեան և փրկութիւնն ՚ի ձեռն Յիսուսի Քրիստոսի — և այս կնքեցին իւրեանց քրիստոնէական ճշմարտութեանց խոստովանութիւնք այս նշանաւոր խօսքերով. «Յայսըմ հաւատոց զմեզ ոչ ոք կարէ խախտել, ո՛չ հրեշտակք և ո՛չ մարդիկ, ո՛չ սուր և ո՛չ հուր, ո՛չ ջուր ո՛չ ամենայն զինչ և են դառն հարուածք։ . . . Ապա եթէ յետ այսր մեծի վկայութեան այլ ինչ հարցանես, աւասիկ կամք, զբոլոր մարմին տուեալ ՚ի ձեռս քո, վաղվաղակի արա զինչ և կամիս։ Ի քէն տանջանք և ՚ի մէնջ յանձնառութիւնք, սուր քո և պարանոցք մեր։ . . . Զի եթէ անմահք իսկ էաք և մարթ էր մեզ մեռանել վասն սիրոյն Քրիստոսի, արժան էր, քանզի և նա անմահ էր և այնչափ սիրեաց զմեզ, մինչեւ մահ ՚ի յանձն էառ, զի և մեք նորա մահուամբն յաւիտենական մահուանէն ապրեսցուք։ Եւ եթէ նա իւր անմահութիւնն ոչ

խնայեաց, մեք զի կամօք եղաք մանկանացուք, կամօք մեռցուք վասն սիրոյ նորա . . . . : Ոչ ի ոչ եթէ ընդ մարդոյ է ուխտ հաւատոց մերոց, եթէ պատրիցիմք իբրեւ ըզտղայս, այլ անլուծութեամբ ընդ Աստուծոյ, որում՝ չիք հնար քակտել և ՚ի բաց ելանել, ոչ այժմ, և ոչ յապա, և ոչ յաւիտեանս, և ոչ յաւիտենից յաւիտեանս »:

Այսպէս սկսաւ ահա՛ Քրիստոնէութեան աներկիւղ դիմադարձութիւնը զրադաշտական ուսման և պարսկական բռնութեան դէմ Այսպէս յայտնեց ամբողջ ազգ մի իւր ազատ համոզումը, Քրիստոնէական կրօնի մէջ խոստովանելով իւր երկնաւոր և երկրաւոր երջանկութիւնը, իւր միութիւնը և ազատութիւնը, և այսպէս, 450ին գումարուած, Արտաշատու ժողովին սկիզբն եղել փառաւոր նահատակութեան վասն քրիստոնէական ճըշմարիտ հաւատոյ:

Հայոց համարձակ պատասխանույն վրայ սաստիկ սրտմտեցաւ Թագաւորն և մանաւանդ աւելի զայրացաւ հազարապետի և մոգերու դրդմամբ. ուստի և նոցա խրատով սպառնալից հրովարտակ գրեց Հայոց, Աղուանից և Վրաց, որով Պարսից դուռը կը կոչէր Մարզպանն, Սպարապետն, երբեմն Հազարապետն և այլ երեւելի նախարարներ յականէ յանուանէ: Թէպէտ և

Digitized by Google

այս կոչուածներու երթալուն՝ սակաւաթիւ Տանուտէրներ միայն պիտի մնային Հայաստանի մէջ, ըստ որում Նախարարաց կէսն արդէն Թագաւորի մօտ արքունի ձմերոցին մէջ էին և կէսն հիւսիսային կողմը Հոնաց պահակին մէջ, այնու ամենայնիւ վտանգաւոր խորհեցան և որոշեցին երթալ 'ի Դուռն: Ուստի և երեք ազգերը (Հայք, Վրացիք և Աղուանք) պատգամաւորութեամբ իրարու հետ ուխտ դրին հաստատուն դաշնաւորութեան մէջ մնալ: Ս. Յովսէփ ինքնին ուղեւորեց գնացականները, օրհնելով եւ քաջալերելով:

Նախարարները Պարսկաստան հասան, բայց Դուռը նոյն պատուով և մեծարանքով չընդունեց, ինչպէս առաջ սովորաբար կ'ընդունէր. զօրագլուխ և այրուձի ընդառաջ ուղարկելով, զօրական հանդէսներ կատարելով և իւրաքանչիւրոց նախնեաց վաստակները յիշելով և քաջութիւնները գովելով: Նախարարները 'ի զուր յիշեցուցին Թագաւորին նորա հաւուն Շապուհ Բ-ի և յաջորդաց շնորհած ազատութիւնները. 'ի զուր յիշեցուցին նախնեաց և իւրեանց ցուցած հաւատարմութիւնը և զինուորական վաստակները 'ի փառս պարսկական տէրութեան. 'ի զուր յիշեցուցին այս ամենը. վասն զի Թագաւորն ամենեւին չը զիջաւ իւր կատա-

զըւթենէն, այլ անարգանօք մերժեց Նախարարները իւր երեսէն, սպառնացաւ Սագաստան աքսորել, անթիւ զօրք ուղարկել յիւրաքանչիւր աշխարհ, Նոցա կանայքը և որդիքը Խուժաստան տարագրել, եկեղեցիները և վկայարանները քակել, քանդել և աւեր դարձնել։ Այս կատաղութեան աշխարհաւեր սպառնալիքը շատերու հաստատամտութիւնը քայքայեց, վասն որոյ և ժամանակ խնդրեցին պատասխան տալու համար. և 'ի վերջոյ, ոչ թէ անձանց ազատութեան այլ մանաւանդ աշխարհի աւերանաց առաջն առնելու և առաւել ուժգին դիմադրելու խորհրդով, աղօթեցին, իւրեանց սիրտն ծածկագէտ Աստուծոյն յանձնեցին և արտասուօք խոնարհեցան գէթ առ երեսս և առ ժամն պաշտօն մատուցանել ստութեան, ուստի և ազդ արարին Թագաւորին զիւրեանց այս հաճութիւնը։

Զուարճացաւ Թագաւորն, բերկրեցաւ արքունիքն, պատուեցան Նախարարք, տօնեցաւ օրն, և աւետիք ցնծութեան առաքեցաւ մօգաց և մօգպետաց, ատրուշանաց և ամէն մեծամեծաց, որպէս թէ դիք օգնութիւն հասան և որոշուեցաւ Նախարարները իւրեանց հայրենիքը դարձնել։ Բայց որովհետեւ տակաւին իսպառ անկասկած չէր Թագաւորն, ուստի և պատանդ պահեց

իւր մօտ Վրաց Վազգէն և Աղուանից Վաչէ Թագաւորները, Գուգարաց Աշուշայ բդեշխն և Վասակայ երկու որդիքը՝ Բաբիկ և Ամիրներսեհ. իսկ միւսներու հետ գնելով բազմաթիւ այրուձի և 700 մոգեր ուղեւորեց, ինքնին բաւական տեղ ուղեկից լենելով և պատուիրելով, որպէս զի փաղփաղակի հաւանին և աշակերտեն մոգութեան Հայք, Վիրք, Աղուանք և այլ Քրիստոնեայ ազգերը։ Մոգերը խնդութեամբ կը փաղփաղէին, վիճակ կը ձգէին ճանապարհին և փայտ կ'ընկենուին, թէ ո՛ր լեզու կամ ո՛ր ազգ որու վարդապետութեանը պիտի աշակերտէ։ Ունէին իւրեանց հետ արքունի հրովարտակ եւս, որով հրամայուած էր, մինչեւ Նաւասարդ ամիսը, ամեն բան 'ի կատար հանել, այն է եկեղեցեաց դռները փակել և կնքել, սպասները գրով և համարով յարքունիս գրաւել, եկեղեցական պաշտամունքները և Ս. Գրոց ընթերցմունքները դադարեցնել, քահանայից արգելուլ, որ ժողովուրդը չուսուցանեն. հաւատաւոր մենակեցաց արանց և կանանց հանդերձները փոխել ըստ աշխարհական կարգի. Նախարարաց կանանցը և ազատաց ու շինականաց դստերացը ուսուցանել ուսումն մոգութեան, (վասն զի կանանց քրիստոնէական բարեպաշտութիւնը առաւել արգելք էր

Digitized by Google

մոգապաշտութեան)․ ըստ քրիստոնէական օրինաց ամուսնութիւնն կարծել և բազմակնութիւն հաստատել ազգապղծութեամբ հանդերձ, (որպէս թէ Հայոց ազգի բազմանալու համար)․ պատրուճակներն անյագ չը զենուլ, հայք առանց փանդամի չը զանգել, ծիւղք և քակորք 'ի կրակ չընկենուլ, և ձեռքերը չը լուանալ առանց կոմիզոյ, որուն զրադաշտական մատեանը սրբիչ զօրութիւն կ'ընծայէ։

Այսպէս էր ահա Յազկերտի հրամանը, որով կը ձգտէր Քրիստոնէութիւնը բառնալ և պարսկական սովորութիւնները Քրիստոնէից մէջ մուծանել։ Այսպէս է գոզցես և ամէն տիրապետ բռնակալաց ընթացքն, որոնք իւրեանց իշխանութեան հետ կը ջանան իւրեանց սովորութիւնները, ծէսերն և մոլութիւններն ևս մուծանել որ և իցէ հպատակ երկրի կամ ազգի մէջ։



Digitized by Google

# Բ.

Մուտ մոգախուժի բանակին հանդերձ Նախարարօք 'ի Հայաստան, և դիմադիր յուզումն ժողովրդեան. — Շուարումն մոգպետին. — Նենգութիւն Վասակայ. — Ուխտ սուրբ քահանայից և Նախարարաց 'ի Շահապիվան. — Ուրացութիւն և գործ Վասակայ. — Յաղթանակ քրիստոնէութեան. — Գոյժ հալածանաց յերկրէն Աղուանից. — Մերժումն Յունաց զխնդիր օգնութեան Հայոց. — Բաժանումն հայկական զօրուն յերիս մեծ զօրաբանակս. — Յաղթութիւն Աղուանից աշխարհին մէջ. — Փախուստ Վասակայ յերեսաց Վարդանայ. — Պատգամաւորութիւն Վարդանանց և Վասակեանց 'ի Տիզբոն. — Նենգ թողութիւն պարսկական արքունեաց և ահեղ պատրաստութիւն պատերազմի։

ՆԱԽԱՐԱՐԱՑ յանձնառութեան վրայ ոչ միայն դառնացած էին բանակի մէջ գտնուած ուխտապահ երէցները, այլ և Պարսիկներէն շատերն ևս 'ի ծածուկ կը ցաւակցէին։ Այն ուխտապահ երէցները դառնապէս լալէն և նախարարները սաստիկ կշտամբելէն զկնի (ըստ որում անտեղեակ էին նոցա ծածուկ խորհրդին), արդէն նոցա չար յանձնառութեան և պարսկական պատրաստութեան գոյժը պատգամաւորի ձեռքով վաղագոյն հասուցած էին հայրենի աշխարհը։ Տակաւին մոգական բանակն և նախարարք Հայաստան հասած չէին, որ բովանդակ աշխարհն սկսաւ խռովիլ և յուզիլ։

Digitized by Google

Եպիսկոպոսները շուտով ժողուեցան իւրաքանչիւր գաւառաց մէջ, քորեպիսկոպոսները տարածուեցան գիւղերու և ագարակներու մէջ, քարոզեցին և դրդեցին բոլոր ժողովուրդը — այր և կանայք, ազատք և շինականք, քահանայք և մենակեացք — և քաջալերեցին, որ ամենքը ընդդիմանան և չըթողուն ամենեւին, որ Պարսկաստանէն դիմող խումբը Հայաստան մտնէ ։ Այս պատճառաւ երդուեցան և ուխտեցին ամենքը, որ մի միայն աստուածային օրինաց հպատակին և չըխնայեն բնաւ, ո՛չ ազգականք՝ ազգականին, ո՛չ ծառայն՝ տիրոջը, ո՛չ կինը՝ առն, ո՛չ որդին՝ հօրը, և ո՛չ եղբայրը՝ եղբօրը, եթէ ուրացած են քրիստոնէական կրօնքը. և այս ուխտով ամենքը զէնք առին, այր և կանայք, զրահ հագան և պատրաստուեցան ։

Մինչդեռ այսպէս կազմ և պատրաստ էր բոլոր Հայաստան աշխարհն իւր հաւատոյ և հայրենի օրինաց պաշտպանութեան համար, նախարարները պարսկական զօրաց և մոգուց հետ Հայաստան հասան և բանակեցան Ծաղկոտն գաւառի Անգղ գիւղաքաղաքի մէջ ։ Դադար առին այն տեղ 25 օր, և այս Մոգպետը մոգերով հանդերձ փորձ փորձեց Միաշաբաթի օրը եկեղեցին մտնել և գրաւել ։ Ս. Ղեւոնդ, որ ուրիշ երիցանց հետ միասին, պաշտօն կը մատուցանէր նոյն

եկեղեցւոյն մէջ , ընդդիմացաւ մոգական խումբին և իսկոյն ժողովուրդը յուզեցաւ և մեծ բազմութեամբ յարձակեցաւ մոգերուն վրայ ։ Քարածեծ և գլխապատառ վանեց ամենքը և սարսափ ձգեց մոգակրօններուն սիրտը ։ Մոգպետը զարմացաւ Հայոց հաւատոյ հաստատութեան վրայ և միանգամայն յուսահատեցաւ ասելով մարզպանին (Վասակայ) և այլոց . « Թո՛ղ գրեմ և ցուցանեմ մեծ թագաւորին, զի 'ի բաց թողացուցանէ զայսպիսի լրաց առաջարկութիւն . զի եթէ ինքեանք աստուածքն եկեսցեն յօգնութիւն, չէ հնար օրինացս մոգութեան 'ի Հայս առնուլ զհաստատութիւն , որպէս զփորձ առի միաբանութեան ուխտին Եկեղեցւոյ ։ Զի եթէ էին զորք աշխարհիս մոգք , ոչինչ խընայէին սոքա 'ի նոսա սատակմամբ՝ ո՛չ միայն զարտաքինսն , այլ և յեղբարս և յորդիս և յամենայն մերձաւորս իւրեանց , նա և ոչ յանձինս իւրեանց ։ Մարդք՝ որք ոչ 'ի կապանաց զանգիտեն և ոչ 'ի տանջանաց երկընչին , և ոչ 'ի ստացուածոց պատկառին . և որ յետոյն չար է քան զամենայն չարիս , մահ քան զկեանս ընտրեն . ո՞վ է որ կարէ նոցա դիմակաց լինել » (1) ։ Յիշեց նմանապէս մոգպետը Շապուհ թագաւորի ժամանակ

(1) Եղիշէ , Գ . յեղանակ ։

Հայոց ցուցած քրիստոնէական անձնհերութիւնը և արիութիւնը (զոր լսած էր իւր նախնիքներէն) և յանդիմանեց մարզպանը, որ 'ի մանկութենէ տեղեակ էր իւր ազգի հաստատամտութեանը և յառաջագոյն իմացուած չէր, որ նոյն օրինակ առաջարկութիւն չառնեն Հայոց։

Յակոյն նենգամիտն Վասակ քաջալերեց մոգպետն երկայնամիտ լինելու և սպասիւր հնարագիտութիւնները գործ դնել։ Մի կողմէն զօրք հանեց Սիւնեաց աշխարհէն և իւր գունդը ստուարացոյց. միւս կողմէն սկսաւ նենգել և պատրել, ոմանց սիրտը շահել պատիւներով և յարքունուստ բերուած կարասիներով, ոմանց միտքը ողոքել պարգեւներով և ռոճիկներով, չքնականները վախցնել սպառնալիքով, իսկ աղքատաց համար խնճոյքներ կազմել և բոլոր գիշերը պարուց, զուարճութեան և արբեցութեան մէջ մաշել և քրիստոնէական եռանդը զեղխութեամբ թուլացնել։ Մոգեր բաժնեց նախարարաց տներու մէջ, ռոճիկները առատացոյց, պատուճանկներ զոհել տուաւ, յազածոյ միս կերցնելով և յերկրպագութիւն արեգական հրապուրելով։ Հալածանքը կարող չէ քրիստոնէութիւնը թուլացնել, բայց հեշտութիւնը և աշխարհասիրութիւնը կարող են քրիստոնէական հուրը մարել, և այսպէս

իսկ եղաւ․ որովհետեւ Վասակայ հնարքներով շատերը մոլորեցան և շուտով քանի մը ատրուշաններ շինուեցան, և նոյն իսկ քրիստոնէից մէջէն քրմապետ կարգուեցան Շաւասպ Արծրունի և Շերոյ, որդի Վնասյի: Այս ամէն չարագործութեանց մէջ Վասակ տակաւին կը կեղծաւորէր և զինքն կը ծածկէր և անհամամիտ կը ցուցնէր: Բայց եպիսկոպոսները շուտով յաջողեցան ուխտապահ և ուրացող նախարարները իրարմէ բաժանել և մանաւանդ Վարդանայ մտաց հաւատութեանը հասու ըլլալով՝ մեծ վստահութիւն ստացան: Վարդան տեսնելով Վասակայ և նորա գործակցաց պատրուակեալ ագամանութիւնը և չըժուժալով՝ ծածկաբար ուղեւորեցաւ իւր տունով Յունաց բաժինը անցնելու. սակայն շուտով պատգամաւորներ ուղարկուեցան Վասակայ թղթով և Բասենոյ սահմանէն յետ կոչուեցաւ: Նախարարները խորհրդի ժողովեցան Շահապիվանի զօրանիստին մէջ, Սպարապետին (Վարդանայ) մօտ, և եպիսկոպոսներն ևս իւրեանց սրտի նեղութենէն յանդգէտս նոյն տեղը դիմեցին աղաղակելով. «Աղաչեմք ըզձեզ զամենեսեան սուրբ Աւետարանաւս, եթէ ձերով խորհրդով գործեն զայն անօրէնութեան չարիս մարզպանն և մօգպետն. Նախ՝ զմեր պարանոցս հատէք, և ապա յեկեղեցին

ձեռնարկեցէք ։ Ապա թէ առանց ձեր կամաց նոքա զայն չարն գործեն , այսօր խընդրեսցի վրէժդ այդ ՚ի նոցանէ ,, (1) ։ Նախարարները միաբերան յայտնեցին , որ անքակ են հաւատոյ սուրբ ուխտին վրայ և Նախաձայնդիր են փառաց Եկեղեցւոյն ։ Աւստի ամենքը գլուխը գետին հարկանելով և Աւետարանն ու եպիսկոպոսները ողջունելով՝ ուխտեցին տանուտէարք և սեպուհք , և որոշեցին Յունիս ամսոյն մէջ պարզել խաչանիշ դրօշը ՚ի պաշտպանութիւն քրիստոնէական կրօնի ։ Այս խորհրդին անհաւան գըտաւ Օշականդան անուն սեպուհ մի , կամակից Մարզպանին , և առժամայն քարկոծեցաւ , որով և տարաժամ տիրեց ամեն տեսողաց ։

Այնուհետև բոլոր բազմութիւնը սուրբ նախանձով բորբոքուած՝ վառեցան ՚ի զէն և ՚ի զրահ , և գունդը երեք բաժնելով շրջապատեցին Վասակայ զօրքը , կամակորները կոտորեցին և զնոյն ինքն Վասակն ձերբակալ արարին . սակայն նա եպիսկոպոսաց սուքը ընկնելով թողութիւն խնդրեց , երդումն կնքեց և կապեց Աւետարանէն , և որոնք տակաւին Աւետարանք մատանեաւ չէին կընքած , կնքեցին և եպիսկոպոսաց տուին ։

(1) Եղիշէ , Գ . յեղանակ ։

Digitized by Google

Մոգպետը արդէն իւր զօրութիւնը կեդրոնացուցած էր Բագրեւանդի մէջ, Հայք յարձակեցան Զարեհաւանի (Արեգաւանի) կրակատան վրայ, ուր էր մոգերու բազմութիւնը, տաճարը քանդեցին, կրակը խափուցին, մոգերը բռնեցին և միւս օրը շատեր սպանին, Աշկան հազարապետն, Շաւասպ և Շերոյ ձերբակալ արարին Դըւնայ մէջ և ահ ու սարսափ տարածեցին։ Վաղվաղակի դիմեցին Պարսից գրաւած բերդերուն և աւաններուն վրայ, առին Արտաշատ, Դուռնի, Անի, Արտագերք, Խորանիստ, Ծախանիստ, Վասակաշատ և այլք, ագարակներով և ամրոցներով հանդերձ։ Երեւելի Պարսիկները բերդերու մէջ կալանաւորեցին իւրեանց պատանդներու փոխարէն, զորս թողած էին Պարսկաստանի մէջ։ Բոլոր տաճարները կործանեցին, Քրիստոսի խաչը վերստին ամէն տեղ կանգնեցին, սեղան ուղղեցին, կենարար խորհուրդը մատուցին և երկնաւոր ուրախութեամբ զմայլելով՝ ցընծացաւ ամենայն երկիրն առհասարակ։ Նոքա, որ եկած էին Հայաստանը աւերելու և եկեղեցիները կողոպտելու՝ իւրեանց գանձերը և աւարները թողլով փախան, և ոմանք եւս մոգութեան կրօնքն ուրանալով Աւետարանը խոստովանեցան։ Այսպէս սըրբեցին հայրենիքը կռապաշտութեան պըղ-

ծուխթենէն, և ոմանք մինչև Ատրպատական արշաւեցին և մոգութեան զօրութիւնը խորտակեցին. «Վասն զի ամենայն տղայք աշխարհին իբրև զարս պատերազմողս խիզախէին. վասն զի, այս քաջքս ստէպ ստէպ ընթանայր — քաջութեամբ միայն մեռցուք, զանուն և զոգիս և եթ ժառանգեսցուք. զի կենդանի կեցէ 'ի մեզ Քրիստոս» (1)։

Մինչդեռ այս յաղթութեամբ կը ցնծար Հայաստան աշխարհ, Աղուանից հազարապետը մի եպիսկոպոսի հետ գոյժ բերաւ, որ Հոնաց աշխարհի պարսիկ գունդը Սեբուխտ զօրավարի առաջնորդութեամբ և երեք հարիւր մոգերով դարձած և մտած են Աղուանք. աշխարհը կը պառակտեն, կը ստիպեն մոգութիւնն ընդունիլ և ընդունելու համար կը խոստանան հարկը թեթևցընել, իսկ եթէ չընդունին, կըսպառնան բռնի ամեն գեղերու և աւաններու մէջ ատրուշաններ շինել, Վռամական կրակն 'ի ներքս մուծանել, մոգպետներէն օրէնսդիրներ կարգել, և ստահակները՝ որդւով և կանամբ տարաշխարհիկ առնել։

Հայք ամենևին չըլքան այս հարստահարութեան գուժէն, այլ քաջալերեցին Աղուանից հազարապետն ու եպիսկոպոսը և

(1) Եղիշէ, Գ. յեղանակ։

յետս դարձուցին, որ առժամանակ մի ան-
բանից առաջն առնուն և մանաւանդ եկե-
ղեցիները պահպանեն։ Իսկ իրենք Սամ
Գնունին և Վարդանայ եղբայր Համայեակն
շտապաւ Արեւմուտք առաքեցին, իւրեանց
կատարած քաջութիւնը իմացնելու Թէո-
դոս կայսեր և օգնութիւն խնդրելու, որոյ
մասին Յովսէփ կաթողիկոսը Մարզպանի,
Սպարապետի և մեծամեծ նախարարաց հա-
ւանութեամբ նամակ ևս գրեց։ Սակայն
Թէոդոս յանկարծամահ լինելով և տեղը
Մարկիանոս թագաւորելով, չար խրատտու-
աց թելադրութեամբ, ոչ միայն անտես
արար Հայոց խնդիրը, այլ և դաշն հաստա-
տեց Պարսից հետ։ Բայց Յունաց և Պար-
սից այս դաշնաւորութիւնն անգամ՝ չը կա-
րաց խախտել Հայոց քրիստոնէական ուխ-
տը և արիական ոգին։ Իւրաքանչիւր նախա-
րարական և ստորին (արքունի) տանէ ժո-
ղովեցաւ բազմաթիւ այրուձի և հասարա-
կաց հաւանութեամբ զօրքը երեք մեծ գունդ
բաժանուեցաւ։ Առաջին գունդը յանձնուե-
ցաւ Ներշապուհ Ռմբոսեան Արծրունի իշ-
խանին և ուղարկուեցաւ ի Հեր և ի Զա-
րեւանդ, որ Ատրպատականի սահմանին
վրայ Հայոց աշխարհը պարսկային արշաւան-
քէ պաշտպանէ։ Երկրորդ գունդը յանձն-
ուեցաւ Վարդան սպարապետին և առա-

-քեցաւ Գրոց սահմանը, Ճորայի մարզպա-
նին (Աերուխա) դէմ, որ Հոնաց երկրէն
արշաւած էր Եղուանից վրայ։ Իսկ երրորդը
յանձնուեցաւ Վասակին, որ մեր աշխար-
հի մէջ ժողովրդի անդորրութեանը հսկե-
լու։ Վասակ գումարած էր իւր շուրջ իւր
գաղտնի համակամները, ուստի և պատրա-
ստակաւ Միւնեաց աշխարհը քաշուեցաւ,
որպէս թէ գարնանամուտ լինելու և բուն
հարկին յանկարծուստ պարսկային գնդի վե-
րայ յարձակելու և Վարդանին օգնելու։
Այսպէս, ընդհակառակն սկսաւ ծածկաբար
տեղեկութիւն տալ Աերուխանին Հայոց աշ-
խարհի վիճակին և Վարդանայ զօրաց սա-
կաւութեան վրայ։ Աերուխա, քանի մի թա-
գաւորազանց հետ, Ճորայի կողմէն անցաւ
Կուր գետի այս կողմը և Ուտէացւոց Խաղ-
խաղ քաղաքի հանդէպ ճակատեցաւ Վար-
դանայ հետ։ Պարսից գնդի աջ թեւն խոր-
տակեցաւ և փախստականներէն ոմանք գե-
տամէջ եղան և ոմանք Լափինաս գետի դա-
րափոսերուն մէջ կոտորուեցան և գոյժը խա-
կոյն Նիւշապուհի պարսկային բանակին հա-
սաւ։ Իսկ Հայոց կողմէն Արուշ սեպուհն
միայն ճախճախուտ մօրերուն մէջ կորաւ։

Հայոց զօրքերը մտան Եղուանից երկիրը,
Պարսից գրաւած ամրոցները պատերազմաւ
առին, կրակարանները կործանեցին և մո-

Digitized by Google

գերը կոտորեցին ։ Աղուանից ազատները և շինականները, որոնք Պարսից երկիւղէն ամրացած էին լերանց և անտառաց մէջ, դարձան միացան Հայոց զօրաց հետ և յարձակեցան Հոնաց կամ Ճորայ պահակին վըրայ, (զոր շինած էր Պարսից թագաւորը Հոնաց արշաւանքը արգիլելու համար) պահակապանները կոտորեցին, և դուռը յանձնեցին Վահանայ, որ Աղուանից թագաւորաց ազգէն էր, և որ պատգամաւոր գնաց Հոնաց աշխարհը, և դաշինք հաստատեց նոցա հետ Պարսից դիմադրաւելու համար ։

Մինչդեռ Վարդան կը շարունակէր իւր յաղթութիւնները Աղուանից երկրին մէջ, յանկարծ դոյժ հասաւ, որ Վասակ քրիստոնէութեան ուխտէն յետս կալով, հրձիգ կ'առնէ գիւղերը, կը կործանէ բերդերը, կը գրաւէ զօրաց կայանքները և ձմերոցները, ուխտապահ նախարարաց կանայքը և ընտանիքը կը կալանաւորէ ամրոցներու մէջ, եկեղեցիները կը կողոպտէ, քահանայքը կը կապէ, և Ներշապուհ Ամատունի գունդը հեռու լինելով տակաւին չը կարաց օգնութիւն հասնել աշխարհի նեղութեանը ։

Սպարապետն Վարդան այս գոյժն առնելով՝ ժողովեց իսկոյն իւր զօրքերը և երկու օրուան մէջ (ըստ այլոց մի ամսուան), շտապաւ Հայաստանի սահմանը հասաւ,

Digitized by Google

որոյ յաղթութեան հուչակէն և ահէն սարսափելով Վասակ, թողաւ գերին և աւարը և աճապարանօք Արտաշատեան գաւառէն փախաւ և ապաստանեցաւ իւր երկրին՝ Սիւնեաց աշխարհին մէջ։ Սպարապետն և իւր նիզակակիցները առին միւսանգամ Թագաւորանիստ տեղերը և ամրոցները և երկիրը անդորրացուցին։ Բայց որովհետեւ ձմեռը հասած էր, զօրքը սփռեցին աշխարհի մէջ, և սակաւաթիւ գունդ միայն առաքեցին Սիւնեաց աշխարհն՝ ուրացեալները հարուածելու։ Եպիսկոպոսապետն Յովսէփ պատուիրեց որ բոլոր Քաղոց ամիսը պահք պահեն և Աստուծոյ օգնութիւնը խնդրեն երկրի խաղաղութեան և քրիստոնէական յաղթանակի համար, և այս ՚ի նշան գոհութեան և ՚ի յիշատակ մեծ յաղթութեանն սահմանեց տօնել տօն տարեկան Քրիստոսի Յայտնութեան տօնին հետ։

Բոլոր ձմեռը բովանդակ Հայաստան աշխարհն երկու բաժնուած էր. — Արարատեան կողմն ունէր Սպարապետն Վարդան իւր ուխտապահ նիզակակիցներով, որք էին Ներշապուհ Արծրունի, Խորէն Խորխոռունի, Արտակ Պալունի և այլ նախարարք և արքունի գործակալք իւրաքանչիւր զօրքով, ուրացելոց տեղը ընտրելով նոցա եղբարքն ու եղբօրորդիքը. Միացած էին սոցա հետ բո-

ըք եկեղեցականք 'ի մի շունչ և 'ի մի հոգի. Գրաւած ունէին աշխարհի ամուր տեղերը և ունէին շատ զէնք, զոր մանաւանդ ձեռք բերած էին Ասորւանից պատերազմէն զկնի։ — Իսկ Արեւելեան կողմը գրաւած ունէր Մարզպանն Վասակ, որոյ հետ միացած էին պատրուած նախարարները — Արտակ Ռըշտունի, Գադիշոյ Խորխոռունի, Գիւտ Վահեւունի և այլք, որոց կամակից էր նա և Վասակ Մամիկոնեան՝ կուսակալ յունական բաժնի Հայոց։

Երկու կողմէն եւս պատգամաւոր առաքեցին Տիզբոն Պարսկաստանի արքայանիստ քաղաքն, նախ Վասակեանք և ապա Վարդանանք։ Վասակեանք ուղարկած էին սեպուհ մի, իսկ Վարդանանք նշանաւոր Պարսիկ մի, զոր կալանաւորութենէ արձակեցին, յայտնեցին որ Թագաւորը 'ի զուր և յանիրաւի կը նեղէ քրիստոնէական կրօնքը ուրանալ, ցուցին որ այս բանի հրամանն է պատճառ երկրի աւերանացն ու արքունի զօրաց կոտորածին, պատմեցին նմանապէս Վասակայ սուտակապատութիւնքը, յայտնեցին որ Հայք նորա հետ ամենեւին միաբան չեն, և խնդրեցին որ այս ամենը մի առ մի պատմէ Թագաւորին։ Երբ Վարդանանց պատգամաւորը Տիզբոն հասաւ, (ուր կանխած էր արդէն Վասակեանցն), և պատմեց

ամեն աղէտից պատճառները, Թագաւորն տակաւ ինչ մեղմացաւ և իսկոյն արքունեաց խորհրդով Թողութեան հրովարտակ հանեց, չարչարանաց մատնուած քրիստոնեայքն ազատեց, կալանաւոր Նախարարազուններն արձակեց և ռոճիկներով ու ստացուածներով մեծարեց և քահանաներուն հըրաման տուաւ, որ ազատաբար պաշտօն կատարեն: Բայց այս արքունի Թողութիւնը կամ ազատութիւնն առ ժամանակեայ էր. Հայերը հանդարտեցնելու համար, (որուն և Հայք չը հաւատացին). վասն զի շուտով իր խորհուրդը փոխեց Թագաւորը և հաստատ որոշեց, որ հնարագիտութեամբ չըյաջողածները, զէնքի զօրութեամբ կատարէ. ուստի և մեծ բանակ կազմելով Միհրներսեհի հրամանատարութեամբ Հայաստան ուղարկեց: Պարսկական այս ահագին զօրախումբը փղերու երամակով հանդերձ եկաւ և բանակեցաւ Փայտակարան քաղաքի մէջ, ՚ի մօտուստ դիտելու Հայաստանի վիճակը և Վասակայ ձեռամբ ստոյգ տեղեկութիւն ստանալու Հայոց զօրութեան և զինուորական հմտութեան վրայ: Միհրներսեհ մերձակայ տեղերաց, Լփնաց, Ճղբաց, Վատաց և այլոց վարձկաններով իր բանակը ստուարացոյց, յանձնեց Մուշկան Նիւսալաւուրտին, որուն օգնական կարգեց Դոմէճն

և Ատրորմիզդ, (որ առաջ գործակալ էր Հա-յոց մէջ) և պատուիրեց որ միշտ Վասակայ խորհրդով շարժին, (վասն զի իւր անձէն ա-ւելի նորա վրայ էր վստահացած, Հայոց աշխարհին Թագաւորեցնելու յուսով մխ Թարելէն զկնի) և հրաման տալով որ 'ի գար-նան անշուշտ պատերազմն սկսին, ինքն փու-թով դարձաւ Տիզբոն Թագաւորին մօտ։ Այսպէս էին ահա՛ հանգամանքները, և ձմե-ռը վերջանալու վրայ էր։

---

## Գ.

Ահեղ դիմամարտութիւն Քրիստոնէութեան ընդդէմ Մոգակրօնութեան։ — Նահատակութիւն Վարդանանց. — Վշտակրութիւն և արիութիւն Քրիստոնէից յետ մեծի նահատակութեան. — Զքնաղ տեսարան քրիստոնէական կենաց — Լեռինք և անտառք՝ իբրև ապաստանարան քրիստոնէից. — Մարզպանութիւն Ատրորմիզդի. — Կապանք սուրբ քահանայից. — Ձաղով 'ի Դուին. — Կամթողիկոսութիւն Մելիտէ Մանազկերտացւոյ. — Կա-պեալ քահանայք և նախարարք 'ի ձմերոցն արքունի. — Ատեան վասն դատապարտութեան Վասակայ. — Նա-խարարք և քահանայք 'ի բանտն Նիւշապուհ քաղաքի. — Տանջանք կապելոց և դարձ մոգպետին. — Նահա-տակութիւն Ս. Ղեւոնդեանց։

ԱՅՆ ԻՆՉ Հայք ուրախութեամբ կը-տօնէին զատկական օրերը՝ յանկարծ լուր

Digitized by Google

հասաւ որ պարսկային գունդը Հեր և Զա-
րեւանդ հասնելով բանակ բոլորած են սահ-
մանին վրայ, փոս հատանելով, պատնէշ
կանգնելով, չերտաւոր փակելով, և սպա-
տակներ սփռելով աշխարհի մէջ։ Հայա-
տան խռովեցաւ. Նախարարաց սիրտը Թըն-
դաց և ահա՜ վաղվաղակի իւրաքանչիւրն իւ-
րեանց զօրքով Արտաշատ գումարեցան, ո-
րոց Թիւը 66,000 հազարի կը հասնէր։ Սպա-
րապետն յարդարեց այս զօրախումբը, զէ-
նուց, երիվարաց և հանդերձից պակասու-
Թիւնը լրուցանելով և զօրական հանդէսա-
ներ կատարելով։ Նռանձար սեպուհն առա-
քեցաւ, որ Թշնամեաց զօրուԹիւնը և դիրքը
դիտէ յառաջագոյն, որ յանկարծ 300 (ըստ
Փարպ.) 2000 (ըստ Եղիշ.) հեծելովք յար-
ձակեցաւ Թշնամեաց վերջապահ Թեւոյն
վրայ և կէսը կոտորելով՝ շուտով Հայոց բա-
նակը դարձաւ։ Ուրախացան Հայք այս յա-
ջող դէպքին վրայ, և երբ իմացան Թէ Թըշ-
նամին պատրաստուած է աշխարհի միջոցը
մտնել, որոշեցին ընդառաջ ելանել սահմա-
նին վրայ և ասպատակուԹեան ու աւերա-
նաց տեղի չըտալ։ Բայց Թշնամի բանակը
արդէն աշխարհի միջոցը գրաւելով՝ բանա-
կած էր Արտազ գաւառի Աւարայր դաշտի
մէջ, Տղմուտ գետի ափանց վրայ։ Հայոց զօ-
րախումբը հասաւ և բանակեցաւ դէմ յան-



Digitized by Google

դիմաց։ Այն տեղ եկած էին նոյնպէս Ս. Յովսէփ և Ղևոնդ երէց, ուրիշ եպիսկոպոսներով հանդերձ պատերազմին գործակից լինելու։ Վասակը պատգամաւորներ կ'ուղարկէր և զօրաց միտքը լքուցանելու համար Թողութիւն կը հրատարակէր Թագաւորէն, բայց Հայք չը հաւատացին ուրացեալ ստախօսին։ Վարդան զօրքը կարգին դրաւ, սրտառուչ ատենաբանութեամբ ոգեւորեց ամենքն և Մակաբայեցւոց Գիրքը կարդալով բանակին առջեւ՝ խրախուսեց 'ի պաշտպանութիւն հայրենի օրինաց և 'ի զոհ վասն սիրոյն Աստուծոյ։ Ղևոնդ երէցն ևս քաջալերական ճառ խօսեցաւ Ս. Յովսէփայ և այլ ընկերակցաց հրամանաւ պատերազմի նախընթաց երեկոյին։ Նոյն գիշերը չը մկրտուածները մկրտուեցան և զինուորեցան հաւատոյ զինով։ Սեղան ուղղեցաւ, ամենասուրբ Խորհուրդն կատարեցաւ, և Հոգեգալստեան եօթներորդ աւուր խորհրդաւոր առաւօտուն հաղորդեցան ամենքը, զօրք և զօրականք, վառեցան հոգւով և երկնաւոր նահատակութեան սիրով և ամենայն բազմութիւնն աղաղակեց միաբարբառ. « Հաւասարեսցի մահ մեր ընդ մահ արդարոցն, և հեղումն արեան մերոյ ընդ արիւն սուրբ մարտիրոսացն, և հաճեսցի Աստուած 'ի կամաւոր պատարագս, մի՛ տացէ զեկեղեցի

քեր 'ի ձեռս հեթանոսաց »(1)։

Իսկ Պարսից զօրավարը կը յիշեցնէր իւր զօրականին Թագաւորի հրամանը, իւղը, պսակը, ուռն և առատաձեռն պարգեւները, որ արքունուստ պիտի տրուէին։ Կը յիշեցնէր իւրաքանչիւրի կինը և որդին, անդն ու ագարակն և փախստէից պատուհասները։ Կը կարգէր, կը կազմէր Մուշկան Նիւսալաւուրտ իւր ճակատն և փղերով հանդերձ կը կացուցանէր ընդ երկայնութիւն դաշտին, իսկ ինքն կ'ամրանար Մատենիկ գնդին մէջ։

Վարդան եւս արդէն իւր զօրքը երեք գունդ բաժնած, կարգած և սպառազինած էր ոչ միայն 'ի զէն նիւթական, այլ մանաւանդ 'ի զինուորութիւն հոգեւոր։ Պայծառ առաւօտը ծագեցաւ, փողարափողները հընչեցան 'ի նշան պատերազմին, որոց աղաղակները բարձրացան երկու կողմէն եւ կռիւն սկսաւ նետաձգութեամբ գետի երկու եզերքէն։ Հայոց գունդը յառաջեց գետըն անցաւ։ Մէկ կողմէն Պարսից զօրքը կը ցրուէր և միւս կողմէն Մատենիկ գունդը կը քայքայուէր։ Ահագին էր պատերազմն, նիզակները կը ճօճային, հրաձգութիւնք կ'եռային, աղեղունք կը ճայթէին, վահանք կը կափէին և ահաւոր ձայնէն և աղաղակներէն

(1) Եղիշէ, Ե. յեղանակ։

Digitized by Google

գոգցես լերինք և անձաւք կը շարժէին։ Թնդանձրամխոյքն կը յիմարէին և վառասիրոյքն կը լքանէին, քաջքն կը խիզախէին և նահատակքն կը գոչէին, և երկու կողմէն շատ վիրաւորներ դիաթաւալ կը խաղային։ Ու մինչդեռ յաղթութիւնն Հայոց կ'երեւէր, Պարսիկները սաստիկ յարձակմամբ վերջին ճիգն կը թափէին և զՎարդանանք աղմկելով շուրջանակի կը փակէին։ Աստանօր մեծ նախճիր կը գործէր կորովին Վարդան իւր քաջ նիզակակիցներով և կ'առնուր ՊՍԱԿ ՆԱՀԱՏԱԿՈՒԹԵԱՆ։ Պատերազմը կը շարունակուէր, գարնանային ծաղկալից դաշտը արեան հոսանքով կը ներկուէր, որը կը տարածամէր և զօրքը կը վատնուէր կը ցրուէր լեռնադաշտերուն և ամուր ձորերուն մէջ։ Այսպէս կը կատարուէր այն ահագին պատերազմը (2 Յունիսի 451), յորում Պարսիկներէն և Վասակեան գնդէն կ'ընկանէին 3544 անձինք, իսկ Հայոց գնդէն 1036 (ըստ Փարպ. 1035) ոգիք միահամուռ նահատակեալք վասն քրիստոնէութեան, որոց երեւելիքն էին քաջն Վարդան, կորովին Խորէն, արին Արտակ, զարմանալին Տաճատ, իմաստունն Հմայեակ, հրաշակերտըն Ներսեհ, մանուկն Վահան, արդարն Արսէն, և յառաջադէմն Գարեգին։ Այսպէս զոհեցին իւրեանց անձը աստուածային սիրոյ և հայրենի օրինաց համար այն ընտիր

Digitized by Google

նահատակները, որոց անման յիշատակը կը տօնէ Եկեղեցին անուամբ Վարդանանց զօրավարաց, յանուանէ քաջին Վարդանայ։

Այս նշանաւոր պատերազմէն և նահատակութենէն զկնի՝ Հայք ամրացան զանազան ամուր տեղերաց մէջ և Մուշկան Նիւսալաւուրտ խաղաղ յուսահատեցաւ, տեսնելով որ անհնարին է մոգութեան օրէնքը Հայաստան մտցնել։ Սակայն Վասակայ խորհրդով փորձ փորձեց Քրիստոնէութեան ազատութիւն խոստանալ պատրանօք և ամբոխները պատերազմաւ գրաւել։ Պաշարեց բերդ մի, ուր ամրացած էր Հայոց մի գունդը սուրբ երէցներով հանդերձ, և երդմամբ խոստացաւ անվնաս թողուլ, եթէ կամովին անձնատուր լինին։ Բակ անուն սեպուհը ստապատիր երդմանը չը հաւատալով 700 զօրականով գիշերը փախաւ և նոյն բերդէն ազատեցաւ, իսկ մնացեալները անձնատուր եղան, յորոց 213 անձինք նահատակեցան. և Ս. Յովսէփ և Ղեւոնդ կալանաւորեցան ուրիշ ընկերներով, զորս գանել տուաւ Մուշկան Նիւսալաւուրտ և հրամայեց զգուշութեամբ պահել, վասն զի բողոքեցին ի դուռն թագաւորին այս նենգութեանց համար և զՎասակ ամբաստանեցին։ Թէպէտ և Մուշկան Նիւսալաւուրտ ազատեց շատ քահանայք, որ աշխարհի շինութեանը և

Digitized by Google

խաղաղութեանը հոգ տանին և արքունուստ թողութիւն հրատարակեց, բայց Հայք այնուհետև ամենևին չըհաւատացին. յիշեցին իւրեանց քրիստոնէական ուխտը և ընտիր ընտիր նահատակաց կոտորումն, և մորմոքեալ սրտով սկսան մէկզմէկ քաջալերել. «Ո՛չ պիտոյ է մեզ բնաւ կեանք անցաւոր աշխարհիս. և կամ ընդէ՞ր տեսանեմք զարեւ յետ մերոց սիրելեացն։ Ո՛չ ի եթէ քաջ նահատակքն մեր անկան ՚ի մեծ պատերազմին և բազում վիրաւորք տապալեցան յարիւն ապաժոյժ ՚ի մէջ դաշտին, և ամենեցուն մարմինք եղեն գէշ թռչնոց և կերակուր գազանաց, և պատուական նախարարք մեր հասին յանարգութիւն թշուառութեան. լքին զիւրաքանչիւր իշխանութիւն և են ՚ի հալածանս նեղութեան, և ամենայն փափկութիւն Հայոց եհաս ՚ի վիշտս վտանգի և յանհնարին ապականութիւն, ոչ անսամք խաբեբայ հրամանաց թագաւորին և անկանիմք ՚ի ձեռս անօրէն իշխանաց [1]»։ Նոյնին այնուհետեւ իւրեանց գիւղերը, աւանները և ագարակները։ Հարսները ելան առագաստներէն և փեսաները սենեակներէն. ծերերը անկան աթոռներէն և տղայքը մայրական գրկերէն։ Երիտասարդներն ու կու-

(1) Եղիշէ, Է. յեղանակ.

տանները և աշխարհի բոլոր բազմութիւնը ապաստանեցան լեռները և անապատները ։ Եւ համարեցին աստուածպաշտութեամբ խոտաբուտ լինիլ և գետնախշտի, քանթէ ուրացութեամբ փափկանալ ։ Իւրեանց միակ մխիթարութիւնն էր Ս. Գրոց ընթերցուածները և Սաղմոսաց մրմունջները ։ Այնպէս որ, «Ամենայն մարդ յանձն իւր եկեղեցի էր, նոյն ինքն քահանայ, մարմինք իւրաքանչիւր սուրբ սեղան և ոգիք նոցունց պատարագ ընդունելի (1)» ։ Ոմանք ամրացած էին Տմորեաց անմատոյց սարաւանդակներուն մէջ. ոմանք Արցախոյ թանձրախիտ անտառներուն մէջ. ոմանք Սաղտեաց և Պարխարու լեռներուն մէջ, և ոմանք աշխարհի միջավայր ամրոցներուն մէջ, որոց ամենեցուն խնդրուածքն այս էր միայն. «Այն տեսանել զաւեր սուրբ եկեղեցեաց (2)» ։

Պարսիկ զօրավարն աւելցնելով իւր այրուձին կը յարձակէր այս ամրոցներուն վրայ, և թէպէտ ճակատ առ ճակատ չէին մարտընչէր, բայց կոտորածները կը շարունակէին ։ Կապուտ լերան մէջ Հայք խորտակեցին Պարսից հրոսակը և միայն Արշէն երէցը կալանաւորեցաւ, որ իջած էր Վասակայ սիրտը մեղմացնելու ։ Նմանապէս Տմորա-

(1) Եղիշէ, Է. յեղանակ։ (2) Եղիշէ, Է. յեղանակ։

կան ամրոցէն յարձակեցան և պարսկային գունդը ջարդեցին ։ Տայոց ձորագաւառին մէջ եւս յաղթութիւն գործեցին Հայք 'ի վրէժխնդրութիւն երկու այրած եկեղեցիներու , ուր նահատակեցաւ Վարդանայ Հմայեակ եղբայրն ։ Նոյնպէս Արցախայ անտառներուն մէջ ապաստանածները ըստ դաշնադրութեան օգնութիւն առնելով Հոնաց կողմէն՝ պարսկային գնդի վրայ կը յարձակէին և կը խորտակէին ։

Այս մանր պատերազմաց մէջ եղած կոտորածներն եւս առաւել վհատեցուցին Մուշկան Նիւսալաւուրտի սիրտը , ուստի յարձակումները դադարեցոյց և Թագաւորին տեղեկութիւն տուաւ անօգուտ կոտորածներուն և Հայոց դիմադարձութեան մասին ։ Թագաւորն շատ տրտմեցաւ , ուստի և Միհրներսեհի խորհրդովք հրաման առաքեց , որ Մուշկան Նիւսալաւուրտ բոլոր բանակով Հայաստանէն ելնէ և Հոնաց վըրայ երթայ , Վասակ պարսկաստան դառնայ և մարզպանութիւնը Ատրորմիզդին յանձնուի , որուն և պատուիրեցաւ ջանալ առաւել սիրով քան թէ պատերազմաւ երկիրը նուաճել ։ Ատրորմիզդ արքունի թողութիւն հրատարակեց Հայաստանին մէջ և իւր մօտ կոչելով եպիսկոպոսներն և երէցները , (Սահակ եպիսկոպոս Ռշտունեաց ,

Մուշէ երէց Արծրունեաց, Սամուէլ և Աբ-
րահամ քահանայք, Յովսէփ կաթողիկոս,
Ղեւոնդ երէց, Քաջաջ սարկաւագ և Ար-
շէն երէց), որոց ոմանք ատրուշաններ աւե-
րած էին և ոմանք երկրի աւերանաց համար
առ Թագաւորն բողոքած, և շղթայակապ
առնելով արքունիքն առաքեց իւրեանց ա-
շակերտներով հանդերձ, որոց մէջ երեւելի
էին Խորէն երէց Արարատոյ և Աբրահամ
երէց Տայոց: Այս անձնադիր հովիւներն
և ուրացեալն Վասակ ճանապարհին իրարու
հանդիպեցան և ողջունեցան, բայց տըքա-
աւշացան ճանապարհորդութեան մէջ, որով-
հետեւ կապուած կ'երթային. իսկ Վասակ
մեծ ակնկալութեամբ պատիւ յուսով խաբուած,
շուտ հասաւ Պարսկաստան, և զինքն արդա-
րացնելու համար՝ ամեն հնարք 'ի գործ դրաւ,
մեղադրելով մանաւանդ Սպարապետն Վար-
դան: Սակայն Թագաւորն յետաձգեց ամ-
բաստանութեան դատը մինչեւ կոչուածնե-
րուն գալուստը:

Ատրորմիզդն կապեալները արքունիքը
ուղեւորելէն զկնի՝ Հայոց աշխարհի միւս
եպիսկոպոսները ազատ Թողուց, որ իւրա-
քանչիւրն հրապարակաւ վարէ իւր տեսչա-
կան պաշտօնը, երկրի հարկը առ վայր մի
Թեթեւացոյց, մենակեացներուն և փախըս-
տականներուն հրաման տուաւ, որ իւրեանց

տեղերը դառնան և նաև արքունի հրամանաւ թողութիւն հրատարակեց, որ բռնի մոգութեան կրօնքը ընդունողները՝ վերըստին իւրեանց քրիստոնէութիւնը համարձակ պաշտեն։ Նախարարները տեսնելով այս արքունի շնորհումներն և երկրի շինութեան և խաղաղութեան փափաքը, դարձան ամրոցներէն և հեռաւոր օտարութենէն իւրեանց կալուածները։ Շատ չանցաւ, նախարարք արքունի դուռն կոչուեցան, իբր թէ ամէն աղետից պատճառներն քննելու և խաղաղութեան դաշն հաստատելու համար։ Նախարարք հաւանութիւն ցուցին, մանաւանդ որ ինքեանք եւս կը ցանկային Ս. Եպիսկոպոսաց և Երիցանց հետ Վասակայ դատին ներկայ լինիլ։ Ուստի և ամենեքեան ժողովեցան Դուին քաղաքը, ժողով կազմեցին եպիսկոպոսաց և տանուտերանց հետ և միաբան հաւանութեամբ Մելիտէ Մանազկերտացին ընտրեցին կաթողիկոս Յովսեփայ տեղ. (յորմէ հաւանութիւն ունէին,) կաթողիկոսական աթոռը Դուին փոխեցին և ապա 'ի շնորհս մարզպանին թողին բոլոր աշխարհը, իւրեանց կանայքը, որդիքը և ստացուածքը և ուղեւորեցան 'ի ձմերոցն արքունի, առաւել չարչարակից լինելու սուրբ կապելոցն, քանթէ բարիք քաղելու մոգպաշտ արքունիքէն։

Նախարարներն հասան արքունի ձմերոցըն, ուր կային ոչ միայն սուրբ եպիսկոպոսներն ու երէցները, այլ և ուրիշ նախարարազուններ յառաջագոյն արգելուած նոյն տեղը, որոց մէջ էին Նոա և Վարդանայ Հմայեակ եղբօր երեք մատաղահաս որդիքը Վասակայ հրապուրանօք կալանաւորուած: Բայց Վրաց և Աղուանից Վազգէն և Վաչէ թագաւորները մոգութեան կրօնքը ընդունելով դարձած էին արդէն իւրեանց աշխարհը: Վաչէ առ երեսս միայն ուրացած էր, որ և յետոյ պատերազմներ մղեց Պարսից դէմ և թագաւորութենէ հրաժարելով կրօնաւորեցաւ. իսկ Վազգէն 'ի բոլոր սրտէ, որ և իւր բարեպաշտ ամուսինը (Մեծին Վարդանայ Շուշանիկ դուստրը) վեց տարի նեղութիւններ տալով հրապուրեց 'ի մոգութիւն եւ երբոր չըկարաց տանջանօք նորա հաստատուն հաւատքը խախտել, նահատակել տուաւ, որոյ գերեզմանը կայ մինչեւ ցայսօր Տփխիսի Մետեխ ամրոցի եկեղեցւոյն մէջ:

Նախարարները փոխանակ ընդունելութիւն գտնելու թագաւորէն և Միհրներսեհ հազարապետէն, կապանօք մահապարտաց բանտն դրուեցան, ուր էին ուխտապահ երիցունք և այլք: Քանի մի օրէն զկնի հարցափորձի ատեան բացուեցաւ, նախ Միհրներսեհի և ապա թագաւորին առջեւ հրապա-

Digitized by Google

…սեան խոչտեցան Բիւզդէս Վասակ … պարագլուխները, նոյնպէս և ուխտա- … րագլուխները, նախարարք և երիցունք։ Վասակ ապստամբուեցաւ ոչ միայն նախա- րարներէն և երէցներէն, այլ իր ազգական- ներէն, այլ և մօգերէն և Միհրներսեհէն, որոնց և Թագաւորի առջև կողոպտուեցաւ իր ամեն պատուանշաններէն և պատուա- ւորութենէն, կապուեցաւ որպէս պարտապան, և 'ի նշան անարգութեան մատակ ձիու վրայ հեծած տարուեցաւ մահապարտաց բանտը, և նորա փոխանակ Միհներսեհ իշխան կարգուե- ցաւ Վարազվաղան. Բայց նախարարներն և երէցները ևս շղթայեցան, այլ կապանք վերստին բանտը դրուեցան։ Ուխտապահ- ները ուրախ էին և զուարթ իւրեանց կալա- նաւորութեան մէջ անգամ, վասն զի երկնա- ւոր սիրով վառուած էին. իսկ Վասակ կը հաշէր և կը մաշէր, վասն զի երկնաւոր սէրն ուրացած էր և երկրաւոր փառքէն ևս զրր- կուած, ուստի և դառն ցաւերով մահացաւ. «Նա այն, որ կամէրն Թագաւոր լինիլ մերոյ Հայոց աշխարհին, ոչ երեւեցաւ տեղի գե- րեզմանի նորա։ Ոչ յիշեցաւ անուն նորա 'ի մէջ որբոց և ո՛չ մատեան յիշատակ նորա ա- ռաջի սուրբ սեղանոյն յեկեղեցւոջ»(1)։

(1) Եղիշէ, Է. յեղանակ.

Յազկերտ պատրաստուեցաւ խաղալ պատերազմաւ Քուշանաց դէմ, հրամայեց կապանօք տանել սուրբ քահանայքն ու նախարարները և կոլանաւորել Ապար աշխարհի Նիւշապուհ քաղաքի ամուր դղեկին մէջ և նոյն երկրի մեծ դենպետին կամ մոգպետին պատուիրել, որ ողոքանօք կամ տանջանօք մոգութեան դարձնէ: Քահանայից հետ կապուած և բանտի մատնուած նախարարաց գլխաւորներն սոքա էին — Սիւնեաց տոհմէն Բաբկէն և Բակուր եղբարք, Արծրունեաց տոհմէն Շաւասպ, Արսամ, Մեհրուժան, Պարգեւ և Տաճատ. Մամիկոնեան տոհմէն Համազասպեան (եղբայր Վարդանայ) Համազասպ, Արտաւազդ և Մուշէ. Կամսարականաց տոհմէն՝ Արշաւիր, Թաթ, Վարձ, Ներսեհ և Աշոտ. Ամատունեաց տոհմէն՝ Վահան, Առանձար և Առնակ. Գնունեաց տոհմէն՝ Ատոմ. Գիմաքսեան տոհմէն՝ Թաթուլ և Սատոյ. Անձեւացեաց տոհմէն՝ Շմաւոն, Զուարէն և Առաւան. Առաւեղեան տոհմէն՝ Փափակ, Վարազդէն և Գազ. Մանդակունեաց տոհմէն՝ Սահակ և Փարսման. Տաշրացեաց տանէն Վրէն. Ափսենից տանէն՝ Բաբիկ և Յոհան:

Մոգպետը ամեն տանջանք և տառապանք 'ի գործ դրաւ ուխտապահ կապելոց հաւատքը խախտելու և մինչեւ անգամ քա-

հանայքը բաժանելով նախարարներէն՝ առա-
ւել գինին. և տարտարոսական բանտի մատ-
նեց, բայց անհնարին եղաւ իւր նպատակին
հասնելու, և 'ի վերջոյ բանտարկելոց քրիս-
տոնէական զուարթուն նորանշան կեանքէն
ինքն ստիպուեցաւ քրիստոնեայ դառնալ
աստուածային ազդմամբ և թեթևցնել
քահանայից տառապանքը։ Մինչդեռ Նիւ-
շապուհի բանտին մէջ այս իրողութիւնը կը
կատարուէր, Թագաւորն յաղթուելով Հոնաց
պատերազմին մէջ, մոգերու խրատով գաղտ
սպանել տալով Սամուէլ Երէցը և Աբրա-
համ սարկաւագը իւր կարաւանին մէջ,
և Թաթիկ եպիսկոպոսը Նորեստանի մէջ,
ուր աքսորուած էր որպէս վնասակար տէ-
րութեան, ուղեւորած էր Գենշապուհ ամ-
բարակապետոն, որ Նիւշապուհի կալանա-
ւորները կամ մոգացնէ և կամ ծածկաբար
չարչարել և նահատակել տայ, որ քրիստո-
նեայք չիմանան։ Գենշապուհ իմանալով
մոգպետի քրիստոնէական դարձն, գաղտնի
առաքեց հեռաւոր երկիր և խոր վհի մէջ
ձգել տուաւ. իսկ կապեալ քահանայքն ծա-
ծուկ հանել տուաւ բանտէն, տարաւ հե-
ռաւոր անապատ տեղի, երկար հարցափոր-
ձեց Մովան հանդերձապետի, Գ. Նիկան
մարզպետի և մոգպետի առջեւ, և երբ
փոխանակ համոզելու, առաւել սաստիկ պա-

տասխաններ ստացաւ, հրամայեց ամենա-դառն տանջանքներով և ապառաժներուն վը-րայ քարշելով կենազրաւ տանել, որոց նըշ-խարքը յետոյ ծածկաբար ամփոփուեցան վեց տապանի մէջ քրիստոնէից ձեռամբ ։ Այս են այն երանելեաց անուանքը, որոնք ի-րեանց անձը դրին իւրեանց հօտի և խոստո-վանած ճշմարտութեանց վրայ — Յովսէփ, Սահակ, Ղեւոնդ, Մուշէ, Արշէն, Քա-ջաջ, Սամուէլ, Աբրահամ, Թաթիկ, (վեր-ջին երեքն առանձին նահատակուած) որոց անմահ յիշատակը կը տօնէ Եկեղեցին՝ Ղե-ւոնդեանց անուամբ ։

---

# Դ.

Խորէն և Աբրահամ՝ աշակերտք Ղեւոնդեանց. — Նախարարք պարսկական բանտերուն մէջ և կանայք նոցա Հայաստանի մէջ. — Չքնաղ պատկեր քրիստոնէական կենաց երկոցունց կողմանց. — Ազատութիւն և դարձ Նախարարաց 'ի Հայաստան. — Կաթողիկոսութիւն Մովսիսի Մանազկերտացւոյ և Գիւտայ. — Գիւտ մատնութեամբ կ'ամբաստանուի Պարսից դուռն և կաթողիկոսութենէ կը հրաժարի. — Կաթողիկոսութիւն Քրիստափորի Արծրունւոյ. — Բարձումն պարսիկ. — Վահան Մամիկոնեան և Մանդակունի Յովհան կաթողիկոս. — Վեցերքին դիմամարտութիւնք քրիստոնէից և մոգակրօնից և յաղթանակ Քրիստոնէութեան. — Թագաւորութիւն Վաղարշայ և մարզպանութիւն Նեխորի. — Նշանաւոր դաշն Վահանայ. — Սպարապետութիւն և Մարզպանութիւնն Վահանայ. — Հանդէս քրիստոնէական ուրախութեան յեկեղեցին Դունոյ. — Աւեր կռատանց և նորոգութիւն եկեղեցեաց. — Կաթողիկոսութիւն Բաբկէնի և Շուփհաղիշէի Աղուանից կաթողիկոսի. — Գիւտ Նշխարաց Գրիգորիսի:

ՂԵՒՈՆԴԵԱՆՑ նահատակութենէն զկնի, նոցա աշակերտներէն երկուքն, Խորէն և Աբրահամ բանտէ հանուեցան, գանուեցան, ականջները կտրուեցան և Բաբելաստանի Շահուռ գաւառը աքսորեցան աքքունի մշակութեան համար: Նախարարները մնացին բանտի մէջ տառապանաց և կապանաց մատնուած. իսկ Հայաստան մնաց քրիստոնէական սուրբ նախանձով վառուած, թէ-

Digitized by Google

պէտ և իւր ընտրելագոյն հովիւներէն և ա-րիագոյն նախարարներէն զրկուած ։

Խորէն և Աբրահամ Բագրատունի հա-նելով և կապանքէ ազատ լինելով կը շրջէին Ասորեստանի և Խուժաստանի մէջ, տեղւոյն քրիստոնեաներէն տուրք կը ժողովէին եւ Նիւշապուհի կապելոց (նախարարաց) կը տանէին կամ կ'ուղարկէին ։ Այս տեսակ շրջագայութեանց ժամանակ Խորէն տկարա-ցաւ Խուժաստանի խորշակէն և վախճանե-ցաւ. իսկ Աբրահամ երկու տարիէն զկնի նախարարաց խնդրանօք և Ասորեստանի քրիստոնէից երաշխաւորութեամբ Հայաս-տան դարձաւ, երկիրը մխիթարեց իւր քա-ջալերական վարդապետութեամբ, և ապա կարգուեցաւ եպիսկոպոս Ռշտունեաց գա-ւառին ։

Նախարարներն և նախարարազանց որ-դիքն երկար ժամանակ մնացին բանտի մէջ, բայց ամէն դառն տառապանք քաղցրացու-ցին աստուածային սիրով ։ Հայաստանի ծաղ-կաբեր լերանց փափուկ և ընդարձակատուն բնակիչները ընտելացան արևելից բոցակէզ խորշակներուն և խաւարադէլ, անվերար-կու և գետնախշտի ապրեցան ։ Մանկագոյն-ներն ուսան հայրենի դպրութիւն և Ս. Գր-րոց ընթերցանութեամբ, իբրև հոգևոր կերակրով, զօրացան ։ Իսկ ծերունիքը փափ-

## Դ.

Խորէն և Աբրահամ աշակերտք Ղեւոնդեանց. — Նախարարք պարսկական բանտերուն մէջ և կանայք նոցա Հայաստանի մէջ. — Չքնաղ պատկեր քրիստոնէական կենաց երկոցունց կողմանց. — Ազատութիւն և դարձ նախարարաց 'ի Հայաստան. — Կաթողիկոսութիւն Մովսիսի Մանազկերտացւոյ և Գիւտայ. — Գիւտ մատնութեամբ կ'ամբաստանուի Պարսից դուռն և կաթողիկոսութենէ կը հրաժարի. — Կաթողիկոսութիւն Քրիստափորի Արծրունւոյ. — Բարծումա պարսիկ. — Վահան Մամիկոնեան և Մանդակունի Յովհան կաթողիկոս. — Վերջին դիմամարտութիւնք քրիստոնէից և մոգակրօնից և յաղթանակ Քրիստոնէութեան. — Թագաւորութիւն Վաղարշայ և մարզպանութիւն Նիխորի. — Նշանաւոր դաշն Վահանայ. — Սպարապետութիւն և Մարզպանութիւնն Վահանայ. — Հանդէս քրիստոնէական ուրախութեան յեկեղեցին Դուինայ. — Աւեր կռատանց և նորոգութիւն եկեղեցեաց. — Կաթողիկոսութիւն Բաբկէնի և Շուփհաղիշէի Աղուանից կաթողիկոսի. — Գիւտ նշխարաց Գրիգորիսի։

ՂԵՒՈՆԴԵԱՆՑ նահատակութենէն զկնի, նոցա աշակերտներէն երկուքն, Խորէն և Աբրահամ բանտէ հանուեցան, դանուեցան, ականջները կտրուեցան և Բաբելաստանի Ճահուղ գաւառը աքսորեցան արքունի մշակութեան համար։ Նախարարները մնացին բանտի մէջ տառապանաց և կապանաց մատնուած. իսկ Հայաստան մնաց քրիստոնէական սուրբ նախանձով վառուած, թէ-

Digitized by Google

պէտ և իւր ընտրելագոյն հոմխուններէն և ա-ռիագոյն նախարարներէն զրկուած։

Խորէն և Աբրահամ Ռաբելաստան հա-նելով և կապանքէ ազատ լինելով կը շրջէին Ասորեստանի և Խուժաստանի մէջ, տեղւոյն քրիստոնեաներէն տուրք կը ժողովէին եւ Նիւշապուհի կապելոց (Նախարարաց) կը տանէին կամ կ'ուղարկէին։ Այս տեսակ շրջագայութեանց ժամանակ Խորէն տկարա-ցաւ Խուժաստանի խորշակէն և վախճանե-ցաւ. իսկ Աբրահամ երկու տարիէն զկնի նախարարաց խնդրանօք և Ասորեստանի քը-րիստոնէից երաշխաւորութեամբ Հայաս-տան դարձաւ, երկիրը մխիթարեց իւր քա-ջալերական վարդապետութեամբ, և այս կարգուեցաւ եպիսկոպոս Ռշտունեաց գա-ւառին։

Նախարարներն և Նախարարազանց որ-դիքն երկար ժամանակ մնացին բանտի մէջ, բայց ամեն դառն տառապանք քաղցրացու-ցին աստուածային սիրով։ Հայաստանի ծաղ-կաբեր լերանց փափուկ և ընդարձակատուն բնակիչները ընտելացան արևելից բոցակէզ խորշակներուն և խաւարարգել, անվերար-կու և գետնախշտի ապրեցան։ Մանկագոյն-ներն ուսան հայրենի դպրութիւն և Ս. Գր-ոց ընթերցանութեամբ, իբրեւ հոգեւոր կերակրով, զօրացան։ Իսկ ծերունիքը փափ-

# Դ.

Խորէն և Աբրահամ աշակերտք Ղևոնդեանց. — Նախարարք պարսկական բանտերուն մէջ և կանայք նոցա Հայաստանի մէջ. — Զքնաղ պատկեր քրիստոնէական կենաց երկոցունց կողմանց. — Ազատութիւն և դարձ Նախարարաց 'ի Հայաստան. — Կաթողիկոսութիւն Մովսէսի Մանազկերտացւոյ և Գիւտայ. — Գիւտ մատնութեամբ կ'ամբաստանուի Պարսից դուռն և կաթողիկոսութենէ կը հրաժարի. — Կաթողիկոսութիւն Քրիստափորի Արծրունւոյ. — Բարձումա պարսիկ. — Վահան Մամիկոնեան և Մանդակունի Յովհան կաթողիկոս. — Վեցերքին դիմամարտութիւնք քրիստոնէից և մոգակրօնից և յաղթանակ Քրիստոնէութեան. — Թագաւորութիւն Վաղարշայ և մարզպանութիւն Նեխորի. — Նշանաւոր դաշն Վահանայ. — Սպարապետութիւն և Մարզպանութիւնն Վահանայ. — Հանդէս քրիստոնէական ուրախութեան յեկեղեցին Դուինայ. — Աւեր կռատանց և նորոգութիւն եկեղեցեաց. — Կաթողիկոսութիւն Բաբկէնի և Շուփհաղիշէի Աղուանից կաթողիկոսի. — Գիւտ նշխարաց Գրիգորիսի:

ՂԵՒՈՆԴԵԱՆՑ նահատակութենէն զկնի, նոցա աշակերտներէն երկուքն, Խորէն և Աբրահամ բանտէ հանուեցան, գանուեցան, ականջները կտրուեցան և Բաբելաստանի Շահուղ գաւառը աքսորեցան արքունի մշակութեան համար: Նախարարները մնացին բանտի մէջ տառապանաց և կապանաց մատնուած. իսկ Հայաստան մնաց քրիստոնէական սուրբ նախանձով վառուած, թէ-

Digitized by Google

պէտ և իւր ընտրելագոյն հովիւներէն և արիագոյն նախարարներէն զրկուած ։

Խորէն և Աբրահամ Բագրատունի հասնելով և կապանքէ ազատ լինելով կը շրջէին Ասորեստանի և Խուժաստանի մէջ, տեղւոյն քրիստոնեաներէն տուրք կը ժողովէին եւ Նիւշապուհի կապելոց (նախարարաց) կը տանէին կամ կ'ուղարկէին ։ Այս տեսակ շրջագայութեանց ժամանակ Խորէն տկարացաւ Խուժաստանի խորշակէն և վախճանեցաւ. իսկ Աբրահամ երկու տարիէն զկնի նախարարաց խնդրանօք և Ասորեստանի քրիստոնէից երաշխաւորութեամբ Հայաստան դարձաւ, երկիրը մխիթարեց իւր քաջալերական վարդապետութեամբ, և այս կարգուեցաւ եպիսկոպոս Ռշտունեաց գաւառին ։

Նախարարներն և նախարարազանց որդիքն երկար ժամանակ մնացին բանտի մէջ, բայց ամէն դառն տառապանք քաղցրացուցին աստուածային սիրով ։ Հայաստանի ծաղկաբեր լերանց փափուկ և ընդարձակատուն բնակիչները ընտելացան արևելից բոցակէզ խորշակներուն և խաւարատեղել, անվերարկու և գետնախշտի ապրեցան ։ Մանկագոյններն ուսան հայրենի դպրութիւն և Ս. Գրրոց ընթերցանութեամբ, իբրև հոգևոր կերակրով, զօրացան ։ Իսկ ծերունիքը փափ-

թակաւ։ Ատեան կոչուեցան ինչպէս Վասակ և այլ ուրացեալները, նոյնպէս և ուխտապահ կապեալները, նախարարք և երիցունք։ Վասակ ամբաստանուեցաւ ոչ միայն նախարարներէն և երէցներէն, այլ իւր ազգականներէն, այլ և մոգերէն և Դենշապուհէն, ուստի և թագաւորի առջեւ կողոպտուեցաւ իւր ամեն պատուանշաններէն և պատուազգեստէն, կապուեցաւ որպէս պատժապարտ, և ՚ի նշան անարգութեան մատակ ձիու վերայ հեծած տարուեցաւ մահապարտաց բանտն, և նորա փոխանակ Սիւնեաց իշխան կարգուեցաւ Վարազվաղան։ Բայց նախարարները և երէցները ևս չազատեցան, այլ կապանօք վերստին բանտը դրուեցան։ Ուխտապահները ուրախ էին և զուարթ իւրեանց կապանաւորութեան մէջ անգամ, վասն զի երկնաւոր սիրով վառուած էին. իսկ Վասակ կը հաչէր և կը մաշէր, վասն զի երկնաւոր սէրն ուրացած էր և երկրաւոր փառքէն ևս զըրկուած, ուստի և դառն ցաւերով մահացաւ. «Եւ այն, որ կամէրն թագաւոր լինիլ մեղօք՝ Հայոց աշխարհին, ոչ երեւեցաւ տեղի գերեզմանի նորա։ Ոչ յիշեցաւ անուն նորա ՚ի մէջ սրբոց և ո՛չ մատեաւ յիշատակ նորա առաջի սուրբ սեղանոյն յեկեղեցւոջ»(1)։

(1) Եղիշէ, Է. յեղանակ.

Յազկերտ պատրաստուեցաւ խաղալ պատերազմաւ Քուշանաց դէմ, հրամայեց կապանօք տանել սուրբ քահանայքն ու նախարարները և կալանաւորել Ապար աշխարհի Նիւշապուհ քաղաքի ամուր դղեկին մէջ և նոյն երկրի մեծ դենպետին կամ մոգպետին պատուիրել, որ ողոքանօք կամ տանջանօք մոգութեան դարձնէ: Քահանայից հետ կապուած և բանտի մատնուած նախարարաց գլխաւորներն սոքա էին — Սիւնեաց տոհմէն Բաբկէն և Բակուր եղբարք, Արծրունեաց տոհմէն Շաւասպ, Արսամ, Մեհրուժան, Գարգեւ և Տաճատ. Մամիկոնեան տոհմէն Համազասպեան (եղբայր Վարդանայ) Համազասպ, Արտաւազդ և Մուշէ. Կամսարականաց տոհմէն՝ Արշաւիր, Թաթ, Վարձ, Ներսեհ և Աշոտ. Ամատունեաց տոհմէն՝ Վահան, Առանձար և Առնակ. Գնունեաց տոհմէն՝ Ատոմ. Դիմաքսեան տոհմէն՝ Թաթուլ և Սատոյ. Անձեւացեաց տոհմէն՝ Շմաւոն, Զուարէն և Առաւան. Առաւեղեան տոհմէն՝ Փափակ, Վարազդէն և Դաղ. Մանդակունեաց տոհմէն՝ Սահակ և Փարսման. Տաշրացեաց տանէն Վրէն. Ախսենից տանէն՝ Բաբիկ և Յոհան:

Մոգպետը ամեն տանջանք և տառապանք 'ի գործ դրաւ ուխտապահ կապելոց հաւատքը խախտելու և մինչեւ անգամ քա-

թակա ։ Ատեան կոչուեցան ինչպէս Վասակ և այլ ուրացեալները, նոյնպէս և ուխտապահ կապեալները, նախարարք և երիցունք։ Վասակ ամբաստանուեցաւ ոչ միայն նախարարներէն և երէցներէն, այլ իւր ազգականներէն, այլ և մոգերէն և Նիւսալաւուրթէն, ուստի և Թագաւորի առջեւ կողոպտուեցաւ իւր ամեն պատուանշաններէն և պատուազգեստէն, կապուեցաւ որպէս պատժապարտ, և 'ի նշան անարգութեան մատակ ձիու վրայ հեծած տարուեցաւ մահապարտաց բանտն, և նորա փոխանակ Սիւնեաց իշխան կարգուեցաւ Վարազվաղան. Բայց նախարարներն և երէցները ևս չազատեցան, այլ կապանօք վերստին բանտը դրուեցան ։ Ուխտապահները ուրախ էին և զուարթ իւրեանց կալանաւորութեան մէջ անգամ, վասն զի երկնաւոր սիրով վառուած էին. իսկ Վասակ կը հաշէր և կը մաշէր, վասն զի երկնաւոր սէրն ուրացած էր և երկրաւոր փառքէն ևս զրկուած, ուստի և դառն ցաւերով մահացաւ. «Նա այն, որ կամէրն Թագաւոր լինիլ մեղօք Հայոց աշխարհին, ոչ երեւեցաւ տեղի գերեզմանի նորա ։ Ոչ յիշեցաւ անուն նորա 'ի մէջ սրբոց և ոչ մատեաւ յիշատակ նորա առաջի սուրբ սեղանոյն յեկեղեցւոյն»[1]։

(1) Եղիշէ, Է. յեղանակ.

Յազկերտ պատրաստուեցաւ խաղալ պատերազմաւ Քուշանաց դէմ, հրամայեց կապանօք տանել սուրբ քահանայքն ու նախարարները և կոլանաւորել Ապար աշխարհի Նիւշապուհ քաղաքի ամուր դղեկին մէջ և նոյն երկրի մեծ դենպետին կամ մոգպետին պատուիրել, որ ողոքանօք կամ տանջանօք մոգութեան դարձնէ: Քահանայից հետ կապուած և բանտի մատնուած նախարարաց գլխաւորներն սոքա էին — Սիւնեաց տոհմէն Բաբկէն և Բակուր եղբարք, Արծրունեաց տոհմէն Շաւասպ, Ապրսամ, Մեհրուժան, Պարգեւ և Տաճատ. Մամիկոնեան տոհմէն Համազասպեան (եղբայր Վարդանայ) Համազասպ, Արտաւազդ և Մուշէ. Կամսարականաց տոհմէն Արշաւիր, Թաթ, Վարձ, Ներսեհ և Աշոտ. Ամատունեաց տոհմէն Վահան, Առանձար և Առնակ. Գնունեաց տոհմէն Ատոմ. Դիմաքսեան տոհմէն Թաթուլ և Սատոյ. Անձեւացեաց տոհմէն Շմաւոն, Զուարէն և Առաւան. Առաւեղեան տոհմէն Փափակ, Վարազդէն և Գազ. Մանդակունեաց տոհմէն Սահակ և Փարսման. Տաշրացեաց տանէն Վրէն. Ախսենից տանէն Բաբիկ և Յոհան :

Մոգպետը ամեն տանջանք և տառապանք 'ի գործ դրաւ ուխտապահ կապելոց հաւատքը խախտելու և մինչեւ անգամ քա-

Digitized by Google

համայքը բաժանելով նախարարներէն՝ առաւ-ւել գիճին։ և տարտարոսական բանտի մատ-նեց, բայց անհնարին եղաւ իւր նպատակին հասնելու, և ՚ի վերջոյ բանտարկելոց քրիս-տոնէական զուարթուն նորանշան կեանքէն ինքն ստիպուեցաւ քրիստոնեայ դառնալ տեսուածոյին ազդմամբ և Թեթեւցնել քահանայից տառապանքը։ Մինչդեռ Նիւ-շապուհի բանտին մէջ այս իրողութիւնը կը կատարուէր, Թագաւորն յաղթուելով Հոնաց պատերազմին մէջ, մոգերու խրատով գաղտ սպանել տալով Սամուէլ երէցը և Աբրա-համ սարկաւագը իւր կարաւանին մէջ, և Թ՚աթիկ եպիսկոպոսը Նարեստանի մէջ, ուր աքսորուած էր որպէս վնասակար տէ-րութեան, ուղեւորած էր Դենշապուհ ամ-բարակապետն, որ Նիւշապուհի կալանա-ւորները կամ մոգացնէ և կամ ծածկաբար չարչարել և նահատակել տայ, որ քրիստո-նեայք չիմանան։ Դենշապուհ իմանալով մոգպետի քրիստոնէական դարձն, գաղտնի առաքեց հեռաւոր երկիր և խոր վհի մէջ ձգել տուաւ. իսկ կապեալ քահանայքն ծա-ծուկ հանել տուաւ բանտէն, տարաւ հե-ռաւոր անապատ տեղի, երկար հարցափոր-ձեց Մովան հանդերձապետի, Գ. Նիկան մարզպետի և մոգպետի առջեւ, և երբ փոխանակ համոզելու, առաւել սաստիկ պա-

տասխաններ ստացաւ, հրամայեց ամենադառն տանջանքներով և ապառաժներուն վըրայ քարշելով կենազրաւ առնել, որոց նըշխարքը յետոյ ծածկաբար ամփոփուեցան վեց տապանի մէջ քրիստոնէից ձեռամբ: Այս են այն երանելեաց անուանքը, որոնք իրեանց անձը դրին իւրեանց հօտի և խոստովանած ճշմարտութեանց վրայ — Յովսէփ, Սահակ, Ղեւոնդ, Մուշէ, Արշէն, Քաջաջ, Սամուէլ, Աբրահամ, Թաթիկ, (վերջին երեքն առանձին նահատակուած) որոց անմահ յիշատակը կը տօնէ Եկեղեցին՝ Ղեւոնդեանց անուամբ:

# Դ.

Խորէն և Աբրահամ աշակերտք Ղեւոնդեանց. — Նախարարք պարսկական բանտերուն մէջ և կանայք նոցա Հայաստանի մէջ. — Չքնաղ պատկեր քրիստոնէական կենաց երկոցունց կողմանց. — Ազատութիւն և դարձ նախարարաց 'ի Հայաստան. — Կաթողիկոսութիւն Մովսէսի Մանազկերտացւոյ և Գիւտայ. — Գիւտ մատնութեամբ կ'ամբաստանուի Պարսից դուռն և կաթողիկոսութենէ կը հրաժարի. — Կաթողիկոսութիւն Քրիստափորի Արծրունւոյ. — Բարծումա պարսիկ. — Վահան Մամիկոնեան և Մանդակունի Յովհան կաթողիկոս. — Վեցեքին դիմամարտութիւնք քրիստոնէից և մոգպետներից և յաղթանակ Քրիստոնէութեան. — Թագաւորութիւն Վաղարշայ և մարզպանութիւն Նեխորի. — Նշանաւոր դաշն Վահանայ. — Սպարապետութիւն և Մարզպանութիւնն Վահանայ. — Հանդէս քրիստոնէական ուրախութեան յեկեղեցին Դունայ. — Աւեր կռատանց և նորոգութիւն եկեղեցեաց. — Կաթողիկոսութիւն Բաբկէնի և Շուփհաղիշէի Աղուանից կաթողիկոսի. — Գիւտ նշխարաց Գրիգորիսի:

ՂԵՒՈՆԴԵԱՆՑ նահատակութենէն զկնի, նոցա աշակերտներէն երկուքն, Խորէն և Աբրահամ բանտէ հանուեցան, գանուեցան, ականջները կտրուեցան և Բաբելաստանի Շահուղ գաւառը աքսորեցան արքունի մշակութեան համար: Նախարարները մնացին բանտի մէջ տառապանաց և կապանաց մատնուած. իսկ Հայաստան մնաց քրիստոնէական սուրբ նախանձով վառուած, թէ-

Digitized by Google

պէտ և իւր ընտրելագոյն հովիւներէն և ա-
րժագոյն նախարարներէն զրկուած :

Խորէն և Աբրահամ Բաբելաստան հաս-
նելով և կապանքէ ազատ լինելով կը շրջէին
Ասորեստանի և Խուժաստանի մէջ, տեղւոյն
քրիստոնեաներէն տուրք կը ժողովէին եւ
Նիւշապուհի կապելոց (նախարարաց) կը
տանէին կամ կ՚ուղարկէին : Այս տեսակ
շրջագայութեանց ժամանակ Խորէն տկարա-
ցաւ Խուժաստանի խորշակէն և վախճանե-
ցաւ . իսկ Աբրահամ երկու տարիէն զկնի
նախարարաց խնդրանօք և Ասորեստանի քը-
րիստոնէից երաշխաւորութեամբ Հայաս-
տան դարձաւ, երկիրը մխիթարեց իւր քա-
ջալերական վարդապետութեամբ, և այս
կարգուեցաւ եպիսկոպոս Բզնունեաց գա-
ւառին :

Նախարարներն և նախարարազանց որ-
դիքն երկար ժամանակ մնացին բանտի մէջ,
բայց ամեն գառն տառապանք քաղցրացու-
ցին աստուածային սիրով : Հայաստանի ծաղ-
կաբեր լերանց փափուկ և ընդարձակատուն
բնակիչները ընտելացան արևելից բոցակէզ
խորշակներուն և խաւարադէլ, անվերար-
կու և գետնախշտի ապրեցան : Մանկագոյն-
ներն ուսան հայրենի դպրութիւն և Ս. Գը-
րոց ընթերցանութեամբ, իբրև հոգեւոր
կերակրով, զօրացան : Իսկ ծերունիքը փափ-



Digitized by Google

կացան, մատաղացան, մանկացան, երգակցելով մատաղերամ նախարարազուններուն և Աստուծոյ մարդասիրութիւնը փառաւորելով։ Որչափ սքանչելի էր այս կապելոց քրիստոնէական կեանքը պարսկական բանտերուն մէջ, նոյնչափ սրտաշարժ էր նոցա ընտանեաց և կանանց կեանքը Հայաստանին մէջ։ Հայոց փափկասուն տիկնայքն՝ դիւցազնուհիք և առաքինութեան հարսներ դարձած էին։ Միանգամայն մահակից էին նահատակելոց մահուան, և ազատութեան մէջ՝ բանտակից և շղթայակից էին բանտարկեալներուն։ Վասն զի մոռացած էին իւրեանց կանացի փափկութիւնը, իւրեանց վայելքները և բարեկենդանութիւնը, մեռուցած էին մարմնասիրութիւնը և անձնասիրութիւնը։ Իւրեանց ձեռներով կ'աշխատէին և կը կերակրուէին, և արքունուստ նշանակուած ռոճիկը բանտարկելոց կ'ուղարկէին և կը մխիթարէին։ Թէպէտ և աւերուած էր Հայոց աշխարհը մոգական հարստահարութենէն, թէպէտ և վրդովուած էր պարսկական հալածանքէն, բայց երջանիկ էր միանգամայն. վասն զի քրիստոնէական սէրը կը վառուէր իւր կատարեալ և ազատ որդւոց սրտին մէջ և որբութիւնն ու ողջախոհութիւնն կը թագաւորէին ընտանեկան ծածկոյթին տակ և ամուսնական առագաստին մէջ։ Անհնար էր

որ Քրիստոնէութիւնը նուաճուէր, ինչտեղ որք բանտերէն և կանայք ընտանեկան յար-կերէն իրարու քաշուէր կը կարդային և այս միայն կը հայցէին. «Օ՜ի որպէս սկսանն քա-ջութեամբ՝ ՚ի նմին կատարեսցին երկնաւոր սիրով» (1)։

Յազկերտ շատ ջանաց ողոքելով և ազա-տութեան խոստումներով կապելոց հաստա-տուն հաւատքը քայքայել, բայց չը յաջո-ղեցաւ։ Ի վերջոյ նախարարաց երկարատեւ բանտարկութենէն և քրիստոնէական վառ-եռանդէն զօզցես պատկառեցաւ մոգպաշ-տութիւնը։ Աշուշայ բդեշխը կարաց ազա-տել Հմայեկի երեք մանկահասակ որդիքն Վահան, Վասակ և Արտաշէս (որոց Վարդ եղբայրը Տայոց գաւառին մէջ դայեկաց մօտ էր արդէն) և տանել իւր տունը, ուր իւր-եանց Ձուիկ մօր և Անուշ Վռամ (բդեշխի կինը) մօրաքրոջ մայրական դաստիարակու-թեամբ և խնամքով դաստիարակուեցան և հաւատոյ ու հայրենեաց ախոյաններ դար-ձան։ Նմանապէս Հրեւայ Շղմշապուհ Պարսիկ իշխանը կարաց Յազկերտի սիրտը ամոքել, Նախարարները բանտէ հանել տալ, ռոճիկ սահմանել և նաև իւրեանց հայրե-նիքը դարձնելու խոստում առնուլ։ Բայց

(1) Եղիշէ վասն կանանց։

Յազկերտ մեռաւ և խոստումն անկատար մնաց։ Վասն զի մի կողմէն ապստամբեցաւ Աղուանից Վաչէ թագաւորն Պարսից դէմ, միւս կողմէն գահակալութեան համար խըռովութիւն ծագեցաւ Յազկերտի երկու որդւոց մէջ և Պարսկաստան յուզեցաւ, ուստի և Նախարարաց դարձը յետաձգեցաւ։ Յուսկ յետոյ Պերոզի թագաւորութեան ժամանակ Հայաստան դարձան Նախարարք 12 ամեայ վտարանդութենէն զկնի, որոց դարձը անպատում ուրախութեամբ լցուց բոլոր երկիրը։

Մելիտէ կաթողիկոս արդէն վախճանած էր և նորա տեղ կ'աթոռակալէր Մովսէս Մանազկերտացին։ Նախարարք քաջալերեցին Հայերը և ջանացին նորոգել, ինչ որ խախտեալ էր և աւերեալ. բայց իւրեանց դարձէն յետոյ, հազիւ մի տարի անցած էր, Մովսէս կաթողիկոսն վախճանեցաւ և նորա տեղն ընտրուեցաւ Գիւտ։

ԳԻՒՏԻ կաթողիկոսութեան սկզբէն մինչեւ Յովհան Մանդակունւոյ կաթողիկոսութեան վերջը (465—487) քրիստոնէական դիմադրութիւնը զրադաշտական ուսման դէմ միօրինակ կը շարունակուի, այն է. հալածանքներ և պատրանքներ մոգակրօնութե և ուրացելոց կողմէն, իսկ անվեհեր դիմա-

դարձութիւն քրիստոնէութեան կամ ուխտապահ հաւատացելոց կողմէն ։ Նախարարաց ջանիւք և Գիւտ կաթողիկոսի հայրապետական սրթուն հովուութեամբ շատերը կը մխիթարին և կ'արիանան, իսկ ոմանք կը նախանձին, ուրացութեամբ կը տիրանան Պարսից և մասնութիւններ կ'առնեն ։ Որչափ ուխտապահներու քրիստոնէական եռանդը կը զօրանայ, նոյնչափ և վատասիրտները կը դրդուին . և այս խռովայոյզ միջոցին ցաւակից հայրենասէրներէն ոմանք, ինչպէս Մովսէս Խորենացի և Եղիշէ, կ'առանձնանան մենաւորութեան մէջ արտասուօք և գրաւոր վաստակներով մխիթարութիւն և սփոփանք գտնելու ։ Հոնաց դաշնաւորութիւնը կը խախտի նոր թագաւորի անթոռակալութեամբ, և Վրաց ու Աղուանից մէջ նահատակութիւններ կը լինին ։ Հայք աշխարհը ապահովելու համար կը խորհին Գիւտ կաթողիկոսի հետ և Յունաց Լևոն կայսերէն օգնութիւն կը խնդրեն, բայց նպաստ չեն ընդունիր, այլ միայն քանի մի նախարարք Յունաց բաժինը կը գաղթեն ։ Գիւտ ուրացողները յանդիմանելու պատճառաւ Գադիշոյ Խոռխոռունի Մալխազէն կ'ամբաստանուի և Պարսից դուռը կը կոչուի ։ Առաքինի ծերունին անվեհեր կ'աճապարէ Տիզբոն, մեծ յարգանք կը գտնէ Խուժաստանի եւ

Հրեւի քրիստոնեաներէն, կը մտնուի հար-ցափորձի ատենին Պերոզի հրամանաւ, ատե-նականները կը սարսափեցնէ իւր համարձակ պատասխաններով և 'ի վերջոյ կ'առաջար-կուի իրեն կամ կաթողիկոսութենէ հրաժա-րիլ և կամ մոգակրօնութիւնն ընդունիլ: Գիւտ կաթողիկոսութենէ կը հրաժարի, տե-ղւոյն հաւատացելոց համար ծածուկ եպիս-կոպոսներ և քահանաներ կը ձեռնադրէ, կը դառնայ Հայաստան և անձանձրոյթ կը շա-րունակէ ժողովրդեան հոգեւոր պիտոյքը հոգալ: Գիւտի հրաժարած ըլլալուն պատ-ճառաւ կաթողիկոս կ'ընտրուի Քրիստափոր Արծրունին, որոյ կաթողիկոսութեան երկ-րորդ տարին Գիւտ կը վախճանի և կը թա-ղուի Վանանդայ գաւառի Ոթմսու գիւղին մէջ:

Այս միջոցին Բարծումա անուն պարսի-կըն, Եդեսիոյ մէջ Նեստորականաց մոլորու-թեան աշակերտելէն զկնի, Հայաստան կը գայ պատրանօք իւր թիւր ուսմունքը տա-րածելու, զանազան ձեռագիր մատեան-ներ' կը ժողովէ, Եղիշէի հետ եւս կը տես-նուի, և երբ կը յանդիմանուի նախարարնե-րէն, մանաւանդ ծերունի Ներշապուհ Ար-ծրունիէն, Պարսկաստան կը դառնայ և կ'ամ-բաստանէ Պերոզի առջեւ Արծրունեաց Տոհ-մը, և սրտի մախանքէն (ըստ ասելոյ Թովմայ

Արծրունի պատմագրին), կը զեղչէ Եղիշէի պատմութենէն Արծրունի տոհմի պատմական բաժինը։

Մոգութեան հալածանքներն ու հրապուրանքներն որ աւուր կը նորոգին, Յունաց բաժնի մէջ եւս Հայք կը տառապին և տանուտերական կամ նախարարական ազատ իշխանութիւնը կը բռնաբարուի Զենոն կայսերէն, և այսպէս երկու կողմէն եւս Հայաստանի վիճակը կը ծանրանայ։ Սակայն այս միջամած ժամանակին, աստղ մի կը ցոլանայ Մամիկոնեան տանէն — եղբօրորդին Վարդանայ Վահան։ Վահան երկու անգամ կը մատնուի Պարսից դուռն, առաջին անգամին կը տկարանայ հաւատքին մէջ և իւր Վարդ եղբայրը պատանդ թողլով կը դառնայ Հայաստան. իսկ երկրորդ անգամին մեծամեծ պատիւներու կ'արժանանայ. բայց միշտ կը խղճահարի և կը մտատանջի իւր ուրացութեան համար, և գոգցես սպատեհ ժամու կը սպասէ այս վատ անունն սրբել իւր վրայէն։ Այս պատեհ ժամն ինքնին կը հասնի. Պարսիկները կը յաղթուին Հոն Հեփթաղներէն. Վախթանգ, ուրացեալ Վազգէնը սպանելով, կը թագաւորէ Վրաց և կ'ապստամբի Պարսից դէմ. Քրիստափոր կը վախճանի և կը յաջորդէ Յովհան Մանդակունին, նախանձաւորն փառաց և ազա-

Digitized by Google

տուԹեան Եկեղեցւոյն, մեծ խնամակալն կրԹուԹեան ժողովրդեան և առաքինի դաստիարակն նախարարազուն մանկանց՝ մանաւանդ Մամիկոնեից և Կամսարականաց։ Այդ դեպքերէն կը յղանայ Հայոց մէջ դիմադարձուԹեան համակամ խորհուրդ Պարսկական մոլեկրօնուԹեան դէմ։ Վահան կը զղջայ և կը միանայ ուխտապահ նախարարաց հետ, ամենքը կ'երդուին յանուն ազատուԹեան և կ'ողջունեն ազատուԹեան պատգամախօս մատեանը — Աւետարանն, զոր մէջ կը բերէ ԱԹիկ քահանան և կը պատրաստին Վահանայ իմաստուն խորհրդով և յաջող առաջնորդուԹեամբ դիմադրաւել Պարսկական խորոխտ ուժին դէմ։ Քանի մի պատերազմներ կը մղեն Հայք շարունակ, քանի մի պարսիկ մարզպանաց և հազարապետաց դէմ, և մեծ մասամբ յաղԹող կը հանդիսանան, Թէպէտ և իրենք սակաւաԹիւ, Թշնամին զօրաւոր և ուրացելոց նենգուԹիւնն անպակաս։

Նախ հալածական կ'առնեն Հայաստանէն Ատրվշնասպ պարսիկ մարզպանն և Վեհնամ հազարապետն իւրեանց բանակով (ուր էին և բազմաԹիւ ուրացեալներ), Դուին մարզպանական քաղաքը կը գրաւեն. Վահան Սպարապետ կը կացուցանեն և Սահակ Բագրատունին Մարզպան, որ Խորենացւոյն

Մ՚եկենեան էր, խնդրողն Հայոց Պատմութեան ։

Երկրորդ՝ կը պատրաստուին նոյն Ատրվըշնասպին դէմ, որ դարձած էր Ատրպատականէն մեծ բազմութեամբ և Երասխ գետին մօտ բանակ կազմած կ'ողջունեն Աւետարանը և ծերունի Կաթողիկոսն, աւագին կոտորած կը տան պարսկական բանակին, Ատրվշնասպ կըսպաննեն ուրիշ գլխաւորաց հետ, և Դունայ եկեղեցւոյն մէջ յաղթութեան գոհութիւն կը մատուցանեն Աստուծոյ ։ Այս պատերազմին մէջ կ'առաջնորդեն Հայոց բանակին Սիւնին Բաբկէն, Վասակ եղբայր Վահանայ, Ներսէհ և Հրահատ Կամսարականք, Ատոմ և Մստամ Գնունիք և Գարջոյլ Խորխոռունի, ըստ որում Վահան և Սահակ 'ի Դուին մնացած էին ։

Երրորդ՝ կը դիմեն Հայք պարսկական բանակին վրայ, որ Հեր և Զարեւանդ հասած էր, իւրեանց հետ կ'առնուն նաև ծերունի հայրապետն Մանդակունի, կը բանակին Արտազ գաւառի Ներսեհապատ գիւղի մօտ, կ'օրհնին Կաթողիկոսէն, կը յարձակին թըշնամեաց վրայ, կըսպաննեն, կը վիրաւորեն, կը ցրուեն և յաղթանակ կը կանգնեն, որուն վրայ կըպուարթանայ ծերունի հովուապետն. « Ոչ այնչափ ընդ յաղթութիւնն ուրախ լինելով, որչափ ընդ այն, զի հաշտ զԱստ-

տուած ընդ նոսա տեսանէր »: Այս յաղթա-կան ուրախութիւնը կը պսակի մանաւանդ Վահանայ Վարդ եղբօր գովասանքն, որ պատանդութեան կալանաւորութենէն ա-զատելով և Պարսկաստանէն անցնելով անա-կընկալ կերպով կ'երեւի Ձաղկոտն գաւա-ռի մէջ և կը խառնուի Հայոց բանակին հետ, ծառաներով հանդերձ:

Չորրորդ՝ յօգնութիւն դիմելով Վրաց Վախթանգ Թագաւորին, կը պատերազմին Միհրան պարսիկ զօրավարին դէմ Կուր գե-տի դաշտավայրին մէջ, արիական մարտէն զկնի՝ կը նահատակին Սահակ ասպետն և մարզպանն, Վահանայ Վասակ եղբայրն. Բաբգէն Սիւնի կը վիրաւորի կարեվէր և Հը-րահատ կը կալանաւորի և յետոյ կ'արձակի:

Հինգերորդ՝ կը պատերազմին Հայք Դու-նայ մօտ Զարմիհր Հազարաւուխտ պարսիկ զօրավարին հետ, որ դիմած էր Հայաստան մեծ բանակաւ, կը սասանեցնեն պարսկային զօրախումբը, մեծ հարուած կը տան գոչե-լով. « Հարցուք զԹշնամիսն հաւատոյ եւ մեռցուք աստ 'ի պարծանս Եկեղեցւոյ »: Հայրապետն Յովհան կը վիրաւորի, դի-ականց մէջ կը մնայ և ապա կը զերծանի. Հազարաւուխտ կը դառնանայ կոտորածին վրայ և հետամուտ կը լինի Վահանը կալա-նաւորել, (որ իւր ընկերաց հետ կ'ամրա-

նայ Խաղտեաց սահմաններուն մէջ և ասպա-
այլուր ), նորա պատճառաւ զանազան տե-
ղեր աւար կը հարկանէ , բայց միանգամայն
և կը յուսահատի Վահանէն ամօթահար լի-
նելուն համար . և այսպէս Շապուհ մարզ-
պանը կը թողու Հայաստանի մէջ զօրա-
խումբով և ինքն Պերոզի հրամանաւ կը գի-
մէ 'ի Վրաստան :

Եւ վեցերորդ՝ արիաբար կը պատերազ-
մին Հայք Շապուհ մարզպանին դէմ , ո-
րուն օգնական էր ուրացեալն Գդիհոն Սիւ-
նի , քանի մի ճակատներու մէջ կը հարուա-
ծեն մոգակրօնիկներու և ուխտանենգներու
զօրութիւնը , թէպէտ և իւրեանց կողմէն
եւս նահատակներ կը թողուն պատերազմի
դաշտին մէջ , Շապուհ Պերոզի սպանու-
թեան դոյժն առնելով Պարսկաստան կը
դառնայ և Հայք գոհութեան ուխտ և պա-
տարագ կը մատուցանեն Էջմիածնի եկեղեց-
ւոյն մէջ , զոր և կը սկսանին նորոգել խնա-
մակալութեամբ Վահանայ և Մանդակունի
կաթողիկոսին :

Այս պատերազմներէն և Պերոզի մահ-
ուանէն յետոյ իրերը կերպարանափոխ կը
լինին , Վաղարշ կը թագաւորէ Պարսից , և
Նիխոր կ'ուղարկուի Մարզպան Հայաստանի:
Նիխոր պատգամաւորներ կ'առաքէ առ Վա-
հան , և Վահան հաւանութեամբ Ազգին այս

դաշինքը կ՚առաջարկէ Նեխորին, (զոր ա-ռաջ համառօտիւ յիշեցինք), Թագաւորէն հաստատելու պայմանաւ ։

1. Քրիստոնէութեան հայրենի օրէնքը ազատ թողուլ, հայ ոք չըդարձուցանել ՚ի մոգութիւն, ուրացութեան համար դաս և պատիւ չըտալ և կրակարաններ չըշինել Հայաստանի մէջ ։

2. Հայոց ազնուականներն ու ազատնե-րը թողուլ ըստ հայրենի օրինակին, վաստա-կաւորներն ու անվաստակաւորները քննել ու ճանաչել, և ազգուրացները կամ՝ անարգ-ները յառաջ չըմատուցանել ։

3. Քսուներու և սուտակապաններու խօսքին միտ դնելով մարդ չըդատել, այլ արքայական ատենին մէջ ամեն գործ և գոր-ծող յայտնէ յանուանէ տեսնել, նկատել և ապա դատաստանը վճռել ։

Այս առաջարկութենէն յետոյ՝ Վահան պատանդներ կ՚առնու Նեխորէն քանի մի նշա-նաւոր պարսիկներ, ապա տեսութեան կ՚երթայ Նեխորին իւր զօրականներովը, կը մանէ Արեաց բանակին մէջ փողեր հնչեցնելով, կը մեծա-րի ուխտապահներով հանդերձ, ամօթա-հար կը լինին ուխտանենգները, ընթրիքներ կը կազմուին Վահանեանց համար և Նեխոր բանիւ Թագաւորին՝ կը խոստանայ անյիշու-թեան տալ անցեալ անցքերը ։

Այս խաղաղասիրական տեսակցութենէն զկնի Վահան ինքնին կ'երթայ 'ի Պարսկաստան, կը տեսնուի Վաղարշ Թագաւորին հետ, չքեղ մեծարանք կ'ընդունի և ուխտապահ Նախարարաց պատիւը կը վերահաստատէ, իւր առաջարկած ազատական դաշինքը և այլ խնդրոց կատարումն կ'ընդունի, Սպարապետ կը կարգուի հայկական զօրաց և ուրախութեամբ կը դառնայ 'ի Հայաստան, որուն համար և գոհութեան հանդէս կը կատարուի 'ի Ս. Էջմիածին։

Սակաւ ժամանակէն զկնի Վահան Մարզպան կը կարգուի Հայաստանին, Ջատագովութեամբ Անդեկան պարսիկ Մարզպանին և Հրովարտակաւ Թագաւորին։ Կ'ուրախանայ Վահան աստուածային յաջողութեան վրայ, բայց միանգամայն և կը տրտմի, որ ուրացողաց նախանձը պիտի շարժուի։ Դունայ Եկեղեցին կը մտնէ, Մանդակունի ծերունի հայրապետին հետ, գոհացողական մաղթանք մատուցանելու Աստուծոյ, կը համախմբէ մեծ բազմութիւն, ուրախութիւնը կը փայլատակի ամենեցուն երեսներուն վըրայ, հայրապետն կ'ատենաբանէ և կը հրաւիրէ Ազգն Աստուծոյ այցելութիւնը փառաւորելու, որ երկարատև հալածանքէն յետոյ կը մխիթարէ իւր սեպհական ժողովուրդը, ուրախական և տրտմական արտասուքներ

էրար կը խառնուին, — ուրախական՝ ճշմարտութեան գեղեցիկ յաղթութեան համար, և տրտմական՝ ուխտանենգ եղբարց համար։ «Ձեռն տուք գթալով, կը գոչէ գթոտ հայրապետն, չէ սաստ 'ի քարեղէն սալս գրեալ անմթողութիւնք օրինացն։ Քրիստոս է սաստ՝ որ ասէ՝ ոչ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն (1)», որով և հաշտութիւնք և գրկախառնութիւնք կը լինին։

Երբ այսպէս սակաւ ինչ շունչ կ՚առնու Հայաստան, կը սկսի այնուհետև Վահան, Մամիկոնի հայրապետի հետ, կռատունները կործանել, խախտուած վանքերն ու տաճարները նորոգել և ամեն կերպով աշխարհի շինութեան հոգ տանիլ։

Մանդակունի հայրապետը կը վախճանի խորին ծերութեան մէջ վեցամեայ կաթողիկոսութենէն զկնի և կը յաջորդէ իւր աշակերտն Բաբկէն, Վանանդայ գաւառէն, Ոթմսոյ գեղջէն։ Իսկ Հայրապետի մի աշակերտն Շուփհաղիշէ Աղուանից կաթողիկոս կ՚ընտրուի, որ և Վաչէի որդի Վաչական հայկազուն թագաւորի հետ եկեղեցական ժողով կը կազմեն և ինչ ինչ բարեկարգութիւններ կ՚առնեն և դպրոցներ կը բանան։ Սոյն ժամանակ կը գտնուին նաև նշխարք

(1) Փարպ. էջ — 245 — 317.

Գրիգորիսի, առաջին կաթողիկոսին Աղուանից և Թոռան Ս. Լուսաւորչի, ինչպէս կը պատմեն Մովսէս Կաղանկատուացի և Ստեփաննոս Օրբէլեան :

---

## Ե.

Ակնարկ Քաղկեդոնի ժողովին վրայ. — Բաբգէն կաթողիկոս. — Ժողով Վաղարշապատու. — Մերժումն ժողովոյն Քաղկեդոնի. — Շարժառիթ յունական և հռովմէական մախանաց և հետեւանք. — Կաթողիկոսութիւն Սամուէլի, Մուշէի, Սահակայ Բի, Քրիստափորի Բի, Ղեւոնդի, Ներսիսի Բի. — Ժողով ՚ի Դուին և կանոնական սահմանադրութիւնք. — Կաթողիկոսունք՝ Յովհաննէս Բ, և Մովսէս Եղիվարդեցի. — Ժողով ՚ի Դուին և կարգաւորութիւն հայկական Տօմարի. — Հալածանք ՚ի Պարսից և Թուղթ Մովսիսի առ Խոսրով արքայ Պարսից. — Պատերազմ յունական և պարսկական. — Քաջութիւնք Հայկազուն իշխանաց. — Սմբատ՝ մարզպան Հայոց. — Ուսումն Հայերէն լեզուի յաշխարհն Վրկանաց :

Մինչդեռ Հայոց, Վրաց և Աղուանից աշխարհներն, երկար տարիներ մոգակրօնութեան դէմ արիաբար դիմադրաւելէն և արեամբ ողողուելէն զկնի, առ վայր մի կը խաղաղէին և եկեղեցական բարեկարգութեանց կը ձեռնարկէին, փութով սկիզբն կ՚առնու պարսկական հալածանքէն առաւել վնասակար յուզմունք քաղկեդոնական

ժողովքին ։ Քաղկեդոնական ժողովի աշխարհայոյզ խնդիրները քառասուն տարի (451–491) յունական և հռովմէական եկեղեցեաց մէջ Քրիստոնէութիւնը խռովելէն զկնի, կ'անցնին Հայաստան. Հայաստան որ իւր նահատակները հազարներով պարսկական սրոյն ճարակ կը տար իւր առաքելահիմն հաւատոյ պաշտպանութեան համար և ամենեւին նոր վարդապետութեան կարօտ չէր և ոչ որ և իցէ ժողովի նոր վճռոյ, մանաւանդ քաղկեդոնականին, որ նոյն իսկ յունական և հռովմէական քրիստոնէից մէջ շատերէն ընդունուած չէր, և որոյ ապօրինաւորութեան դէմ Զենոն կայսրն, բազմաթիւ եպիսկոպոսաց ստորագրութեամբ շրջաբերական հրովարտակ հանած էր, միայն Նիկիոյ Կ. Պոլսոյ և Եփեսոսի տիեզերական ժողովներն օրինաւոր խոստովանելով. իսկ Անաստաս կայսրն այնչափ զզուած էր քաղկեդոնեան յուզմունքներէն, բառական բանակռուութեանց խազերէն և մեծամեծ երկպառակութիւններէն, որ հրաման հանած էր ամենեւին չըխօսիլ Քաղկեդոնի ժողովին վըրայ ։ Վասն զի այս ժողովի վիճաբանութեանց և կուսակցութեանց բորբոքմանէն ոչ միայն անհաշտ ատելութիւնք մտած էին քրիստոնէից մէջ, այլ և աքսորանք և սպանութիւնք անգամ եղած էին, ինչպէս արդէն խօսած

Digitized by Google

ենք երեք տիեզերական ժողովոց պատմա-
կան տեսութեան մէջ ։

Ուստի, երբ Քաղկեդոնական ժողովին դա-
ժան խնդիրները կը սկսին Հայաստանի մէջ
արծարծիլ, Բաբգէն աշալուրջ կաթողիկոսը կ'ա-
ճապարէ առաջն առնուլ խորհրդով և հա-
ւանութեամբ Հայոց, Վրաց և Աղուանից
աշխարհաց, որոնք Քաղկեդոնի ժողովին եր-
կարամեայ և տարօրինակ անցքերը մասամբ
լուած լինելով՝ կը զարհուրէին իբրեւ Քրիս-
տոնէութեան նախատինք բերող իրողու-
թիւններէ ։ Բաբգէն ժողով կը գումարէ
Վաղարշապատին կամ Էջմիածնին մէջ, ուր
բաց ՚ի հայ, աղուան, վրացի և հոռոմ
բազմաթիւ ժողովականներէն, յատկապէս
կը գտնուին Աղուանից կաթողիկոսն իւր ե-
պիսկոպոսներով, Վրաց Գաբրիէլ կաթողի-
կոսն իւր եպիսկոպոսներով, Մուշէ եպիսկո-
պոս Սիւնեաց՝ յաջորդ Ստեփաննոսի, և այլ
ականաւոր անձինք ։ Երկար բանախօսութե-
նէ վերջ՝ կը կարդացուի այս ժողովին մէջ
նմանապէս և Զենոնի հրովարտակն, և ապա
բոլոր ժողովականաց հաւանութեամբ կը
մերժուի Քաղկեդոնի ժողովն և կը սահմա-
նուի, ՚ի մասին հաւատոյ վարդապետութեան
և եկեղեցական օրինապահութեան, շա-
տանալ Առաքելոց քարոզածներով և երեք
Տիեզերական Ժողովոց առաքելաւանդ որո-

շումներով։ Սակայն սոյն այս մերժումէն (որ-
խիստ օրինաւոր էր Բաղկեդոնեան ժողովէն
վայրապար վէճերուն և խռովայոյզ անցքե-
րուն նայելով), կը սկսի յունական և հռով-
մէական ոխերիմ ատելութիւնը Հայոց դէմ,
և դժբաղդաբար կը տեւէ մինչեւ ցայսօր։
Այս ատելութեանը զոհ գնացին, եթէ չենք
սխալիր, Հայոց Բագրատունի և Ռուբեն-
եան թագաւորական հարստութիւններն ու
ազգային արքայական իշխանութեան թագն
ու գաւազանը։ Այս ատելութեան մախան-
քէն բազմիցս նախատակոծ եղաւ և կը լինի
Հայաստանեայց առաքելական Եկեղեցին —
Քրիստոնէութեան նախկին և բազմաչարչար
Վկայուհին ասիական ազգաց հալածանաց
մէջ։ Այս ատելութեան բորբոքումէն տար-
ուբերեցան շատ հայրապետներ և վարդա-
պետներ և գումարեցան զանազան ժողով-
ներ, որոց վրայ պիտի խօսինք կարգաւ ըստ
ժամանակին։ Այս ատելութիւնը տեղի տը-
ւաւ դարաւոր վէճերու և խռովութիւննե-
րու և գրուեց շատ մատենագիրներու միջէ
ու մատեաններու էջեր։ Այս ատելութեան
հրապուրանքէն շատ զաւակներ թողին Հա-
յաստանեայց եկեղեցւոյ մայրենի գիրկը և
օտարներուն հետ խառնուելով անյայտացան
և կամ խորթացան, և մինչեւ ցայսօր կը թո-
ղուն նոյն մայրենի ծոցը և կը խորթանան։

Digitized by Google

Վերջապէս Քաղկեդոնի ժողովի մերժումն և Հայաստանեայց եկեղեցւոյ բռնած անկախ և ազատական դիրքը՝ գայթակղութեան քար դարձաւ յունական եւ հռովմէական եկեղեցեաց համար, որոնք ամենայն զօրութեամբ ջանացին և կը ջանան սասանել։ Բայց քանի որ Հայաստանեայց եկեղեցին բազմադարեան փորձերով համոզուած է, որ իւր տեւականութիւնն իւր անկախութեան կամ ինքնուրոյն գոյութեան մէջ է, յուսով ենք, որ կը յարատեւէ իւր ընթացքին մէջ, վասն զի հակառակորդաց յարձակումներն ուղղակի նորա ինքնօրէնութեան դէմ են և ոչ թէ նորա քարոզած վարդապետութեան և հաւատալեաց, զորս ունէին համօրէն քրիստոնէական եկեղեցիք մինչ 'ի ժողովն Քաղկեդոնի։ Բայց մենք թողունք առ այժմ քաղկեդոնեան ժողովի տխուր հետեւանքները, որոց շատ անգամ պիտի հանդիպինք դըժբաղդաբար, պատմութեան յետագայ շրջաններուն մէջ, և շարունակենք մեր պատմութեան թելը։

Բաբկէն կաթողիկոսը, հնգամեայ հայրապետութենէն զկնի, կը մեռանի և տեղը կը յաջորդէ Սամուէլ, Բզնունեաց գաւառէն՝ Արծկէոյ գեղջէն։

Սամուէլի կաթողիկոսութեան ժամանակ պարսկական հալածանքները վերստին կ'ար-

ծարծին Հայաստանի մէջ։ Պարսից Կաւատ Թագաւորը զօրք և մոգեր կը հանէ Հայոց աշխարհը, որ կրակատուններ շինեն զանազան տեղ և ժողովուրդը հրապաշտութեան ստիպեն, բայց Վահան մարզպան ստուածապաշտ նախարարները ժողովելով կը յարձակի Պարսից զօրքերուն և մոգերուն վրայ, կը հարուածէ և կրակատունները կը կործանէ. իսկ Կաւատ մինչդեռ Հայոց աշխարհը աւերելու կը պատրաստուի, իւր իշխանաց ձեռքով աթոռէն կը զրկուի։

Սամուէլ տասնամեայ կաթողիկոսութենէն զկնի կը վախճանի և կը յաջորդէ Մուշէ, Կոտէից գաւառէն, Այլաբերից գեղջէն։ Մուշէին կը յաջորդէ Սահակ Բ. Հարք գաւառէն, Ուղկայ գեղջէն։ Սորա հայրապետութեան ժամանակ կը մեռանի Վահան Մամիկոնեան, 25 տարի Հայաստան կառավարելէն զկնի, և մարզպան կը կարգուի Նորա Վարդ եղբայրն, որ մի տարիէն զկնի կը հանուի։

Սահակ Բ. կաթողիկոսին կը յաջորդեն Քրիստափոր Բ. Բագրեւանդ գաւառի Տիրառինջ գիւղէն, Ղեւոնդ Առբերանի գաւառի Առաստոյ գիւղէն, և Ներսէս Բ. Աշտարակեցի։ Ներսէս եկեղեցական ինչ ինչ ներքին բարեկարգութեանց համար ժողով կը գումարէ Դունայ մէջ, ուր 'ի միջի բազմա-

Թիւ ժողովականաց կը գտնուին Ներշապուհ եպիսկոպոս Մամիկոնեան և Պետրոս եպիսկոպոս Սիւնեաց, քերթող, յաջորդ Մաշտոցի: Այս ժողովին մէջ վերստին կը մերժեն Քաղկեդոնի ժողովը և կը սահմանեն երեսուներեք աւելի կանոններ, մեծ մասը Ս. Սահակայ կանոններէն առնլով, մանաւանդ որոնք կը վերաբերին եպիսկոպոսաց, քահանայից, վանականաց և սարկաւագաց ուղղութեանն և առ միմեանս և առ ժողովուրդն ունեցած պարտաւորութեանց: Այս ժողովի մէջ կը սահմանեն նոյնպէս շաբաթական պահք իւրաքանչիւր ամսուան համար, որ և մինչև ցայսօր կան, ոմանք շարժականապէս և ոմանք անշարժ, այն է Ա. պահք Եղիական. Բ. պահք Ամառային կամ Լուսաւորչի. Գ. պահք Վարդավառի. Դ. պահք Աստուածածնի. Ե. պահք Խաչի. Զ. Պահք Վարագայ խաչի. Է. պահք Յիսնակաց. Ը. պահք Ձմեռային կամ Ս. Յակոբայ. Թ. պահք Յայտնութեան. Ժ. պահք Առաջաւորաց (Լուսաւորչի ժամանակէն սահմանւած, որ անգիտութբ կը կոչուի նաև Ս. Սարգսի պահք), իսկ երկու ամսոց շաբաթական պահքը քառասնորդական պահոց հետ կը հաշուին: Ներսէս իննամեայ կաթողիկոսութենէն յետոյ կը վախճանի և տեղը կ'ընտրուի Յովհաննէս Բ. Գաբեղենից գա-

ւառէն Սիւնձերղուան գիւղէն, որոյ հայրապետութեան ժամանակ կը բորբոքէին պարսկական հալածանքները։ Դենշապուհ մարզպանը Դունայ մէջ կրակատուններ կը բանայ, պարսկաստանէն բազմաթիւ մոգեր բերել կը տայ և Հայերը կրակապաշտութեան կըստիպէ։ Հայք կ'ընդդիմանան և յուզմունքը կը սաստկանայ երկու կողմէն։ Այս խռովութեան միջոցին կը վախճանի Յովհաննէս, 17 ամեայ կաթողիկոսութենէն զկնի և տեղը կ'ընտրուի մեծիմաստն Մովսէս, Արագածոտըն գաւառի Եղիվարդ գիւղէն։ Սորա առաջին գործը կը լինի հայկական Տոմարը կարգաւորել, որոյ համար արդէն իւր նախորդի օրով աշխատանքներ եղած էին Գլակայ վանուց Աթանաս առաջնորդի ձեռամբ և անկատար մնացած։ Մովսէս ժողով գումարելով Դունայ մէջ հմուտ եկեղեցականներէ և աշխարհականներէ՝ կը կարգաւորէ Հայկական Տոմարը, և ապա առանձին թուական եւս կը սահմանեն, որ կըսկսի փրկչական 551 թուականէն և կը կոչուի Թուական Հայոց, որ և գործ կը դրուի մատենագրութեանց և արձանագրութեանց մէջ, միշտ փրկչական թուականէն 551 տարի պակաս հաշուելով։

Մովսէս կը ջանայ նմանապէս կրակապաշտական բռնաբարութեանց առաջն առնուլ, որ կը շարունակուէր իւր նախորդի

Digitized by Google

ժամանակէն 'ի վեր և նահատակութիւններ եղած էին, որոց մէջ նա և մօգպետի որդին որ հաւատալով մկրտուած էր և Յեզտաբուզդ (Աստուածատուր) անուանուած։ Պատգամաւորներ կ'առաքէ առ Խոսրով և ընդ նմին աղաչանաց թուղթ քրիստոնէական կրօնքն ազատ թողելու և մոգութեան հրապուրանքները դադրեցնելու։ Այս թղթթի մէջ կը յիշեցնէ Մովսէս Խոսրովին Վաղարշի շնորհած ազատութիւնները և դաշն խաղաղութեան, որով և իւր խնդրանաց կատարումն կը ստանայ, ըստ որում իսկոյն մարզպանութենէ կը փոխուի Դենշապուհ և առժամանակ մի հալածանքները կ'ընդհատին։ Սակայն շատ չանցնիր, Հայաստան անհնարին աղէտից տեսարան կը դառնայ. որովհետեւ սարսափելի պատերազմներ կը բացուին Յունաց և Պարսից մէջ և Հայաստան իրարու ձեռքէ յափշտակել կը ջանան։ Հայերը Յունաց յարելով 'ի Պարսից կը տառապին, և Պարսից յարելով 'ի Յունաց։ Վարդան Բ. Մամիկոնեան քանի մի պատերազմներու մէջ Պարսից զօրքը կը ջարդէ, և Խոսրով զայրանալով կը սպառնայ բոլոր Հայաստան աւերել և Յունաց բաժինն եւս գրաւել, որով և ահագին աւերմունքներ կը լինին Տարօնոյ գաւառին մէջ, մինչեւ որ Պարսկաստանի մէջ ներքին խռովութիւններ կը ծագին և

սակաւ ինչ կ՚անդորրանայ Հայոց աշխարհն։ Այս պարսկական խռովութեանց մէջ արիական պատերազմներ կը մղեն. Հայկազուն իշխանքը՝ Ներսէս յունական զօրքով և Մուշեղ Մամիկոնեան և Սմբատ Բագրատունին իւրեանց զօրքերով, Խոսրով Բ. Թագաւորեցնելու համար, (որուն Հայկազուն կայսրըն Յունաց Մօրիկ եւս օգնական էր,) որով և Սմբատ մարզպան կը կարգուի և կը դառնայ ՚ի Հայաստան։ Երբ Վրկանաց աշխարհը կը հանի Սմբատ, կը տեսնէ որ տեղւոյն Հայ բնակիչք՝ իսպառ մոռացած են իւրեանց մայրենի լեզուն, ուստի և կ՚աճապարէ ուսուցիչներ բերել տալ հայերէն դպրութեան համար, և Աբէլ անուն երէց մի կ՚ուղարկէ առ Մովսէս կաթողիկոսն և Վրկանաց վրայ եպիսկոպոս ձեռնադրել կը տայ, որով և նոյն երկիրը Հայոց կաթողիկոսութեան վիճակ կը դառնայ։

---

Չ.

Նախնի քրիստոնէական ընտանութիւն Հայոց, Վրաց և Աղուանից. — Կիւրիոն Ջաւախացի. — Քաղկեդոնական յուզումն 'ի Վրաստան. — Հակառակութիւն Կիւրիոնի և Ցուրտաւայ Մովսէս եպիսկոպոսի. — Թղթակցութիւնք Աբրահամ կաթողիկոսի Հայոց և Կիւրիոնի. — Բաժանումն Վրաց 'ի դաւանակցութենէ Հայոց. — Ժողով 'ի Կ. Պօլիս հրամանաւ Մօրիկ կայսեր. — Յովհաննէս հակաթոռ կաթողիկոս Յունաց բաժնի Հայոց վրայ. — Պատերազմ Յունաց և Պարսից. — Նահատակութիւնք 'ի Տարօն — Կոմիտաս կաթողիկոս և բարեկարգութիւնք իւր. — Քրիստափոր Գ. — Եզր կամ Եզրաս Փառաժնակերտացի. — Գաւառաժողով 'ի Կարին բուռն հրամանաւ Հերակլ կայսեր. — Եզր կ'ընդունի Քաղկեդոնի ժողովն, և հաւանութեամբ Ազգին իսկոյն կը մերժուի կաթողիկոսութենէ. — Յովհաննէս վարդապետ՝ ախոյեան հայրենի աւանդութեանց. — Յունական մոլեկրօնութիւնք Յունաց բաժնի Հայոց մէջ. — Յարձակումն Պարսից 'ի Տարօն. — Վերջ անցից.

Երրորդ Շրջանին։

ԱՐԴԷՆ պատմած ենք, որ Վրաստան ընդունեց Հայաստանէն, ինչպէս քրիստոնէական լոյսը Լուսաւորչի ժամանակ, նոյնպէս և իւր ազգային դպրութեան տարերքը՝ նշանագիրները — մեր երանելի Թարգմանչաց Ս. Սահակայ և Մեսրոպայ ժամանակ։ Վրաստանի դրացիութիւնը Հայաստանին և Վրաց դաւանակցութիւնը Հայոց հետ՝ այնպիսի սերտ մտերմութիւն հաստատած էր երկու

ազգաց մէջ, որ Հայք ոչ միայն իւրեանց հայրենեաց՝ այլ և Վրաստանի մէջ Քրիստոնէութիւնը պաշտպանելու համար նահատակութեան արիւններ կը թափէին, ինչպէս տեսանք մանաւանդ Վարդանանց պատերազմին ժամանակ։ Երկու ազգաց այս քաղաքական և կրօնական ընտանութենէն ցնծութեամբ կը կատարուէին սէր և խնամութիւն մարմնաւորական և հաղորդութիւն հոգևորական։ Հայք կը դիմէին ուխտ Մծխիթայի խաչին և Վրացիք կը դիմէին 'ի Ս. Էջմիածին։ Չըկար ամենեւին կրօնական խտրութիւն եւ բռնաբարութիւն։ Վրաց կաթողիկոսը կ'ընտրուէր իւր ազգէն և կ'օծուէր Հայոց կաթողիկոսէն, ինչպէս և Աղուանիցն։ Սակայն իւրաքանչիւր ազգ իւր լեզուաւ կը կատարէր իւր եկեղեցական պաշտամունքն ազատօրէն։ Հայոց կրօնական ազատութիւնը միշտ Յունաց ազգէն կը բռնաբարուէր, բայց Հայք երբէք Վրաց և Աղուանից նկատմամբ սիրոյ և միաբանութեան ճանապարհէն չէին հեռանար։ Նոյնպէս որ Վրաց և Աղուանից կաթողիկոսութիւնները Հայոց հայրապետութեան երկու մեծ թեմեր համարուած էին և կաթողիկոսներն յամենայնի աջակից և գործակից Հայոց հայրապետին։

Բայց դժբաղդաբար քաղկեդոնեան յուզ-

մունքները Վրաց ազգը պառակտեցին Հայոց ազգէն և ատելութիւն սերմանեցին երկու եկեղեցեաց մէջ: Վրացիք Հայոց տառապակիր ազգի դաւանակցութենէն բաժանուեցան և Յունաց յարեցան պաշտպանութիւն գտնելու նպատակաւ, բայց նոյն պաշտպանութիւնը իւրենց ազգայնութեանը շատ սուղ նստաւ, և ով գիտէ թէ 'ի ժամանակին բոլորովին չը պիտի զոհուէր նոյն ազգայնութիւնը: Վրաց բաժանման դժբաղդանցից դէպքերը այսպէս կը սկսին, ինչպէս կ՚աւանդեն ամենայն պատմիչք:

Մովսէս Եղիվարդեցւոյ կաթողիկոսութեան ժամանակ չփոթութիւն կը ծագի Վրաց մէջ կաթողիկոսի ընտրութեան համար. ուրի ազգովին կ՚առաջարկեն Մովսէս Հայոց կաթողիկոսին, որ ինքնին Վրաց համար կաթողիկոս ընտրէ, ձեռնադրէ և առաքէ 'ի Վրաստան, և ինքեանք կը խոստանան առանց հակառակութեան ընդունիլ: Մովսէս կ՚ընտրէ և կը ձեռնադրէ Կիւրիոն անուն մէկը, Գաւախաց գաւառէն, ազգաւ վրացի, հմուտ հայերէն, յունարէն, պարսկերէն և վրացերէն լեզուաց: Կիւրիոն երբ Վրաստան կը դառնայ, գուցէ Յունաց ազգէն ստիպուելով և պաշտպանութեան խոստմունքներէ խաբուելով, կը քարոզէ իւր ազգին՝ Քաղկեդոնի ժողովն ընդունել և կայսեր

հպատակիլ։ Ցուրտաւ քաղաքի Մովսէս ե-
պիսկոպոսն, (ձեռնադրուած Կիւրիոնէն,)
անհամամիտ կը գտնուի իւր ձեռնադրողի
ընթացքին և գրով կ'իմացնէ Հայոց Վըր-
թանէս վարդապետին, որ նշանաւոր էր
Հայաստանի մէջ, օգնական էր Մովսէս կա-
թողիկոսին կենդանութեան ժամանակ, և նո-
րա փոխմանէն զկնի կաթողիկոսական գործ-
քերը կը տնօրինէր, որպէս տեղապահ։ Վըր-
թանէս կ'աճապարէ և թուղթ կը գրէ Կիւ-
րիոնին յետս կալ քաղկեդոնեան հաղոր-
դակցութենէն, բայց Կիւրիոն կը յամառի
և աւելի ճանապարհ կը բանայ ատելութեան։
Այս միջոցին Աշտունեաց Աբրահամ եպիս-
կոպոսը (Աղբաթան գիւղէն) Սմբատ մարզ-
պանի և այլ նախարարաց խորհրդով և ազգի
հաւանութեամբ կաթողիկոս կ'ընտրուի Հա-
յոց. և մինչդեռ Կիւրիոն Ցուրտաւայ Մով-
սէս եպիսկոպոսն առ ինքն կոչէ, որ դատէ ամ
բաստանութեան համար, նա կը փախչի և
կ'ապաւինի Աբրահամ կաթողիկոսին և մի
առ մի կը յայտնէ Կիւրիոնի արարքները։
Աբրահամու և Կիւրիոնի մէջ երկար գրա-
գրութիւններ կը բացուին, որոց հաւաքա-
ծոյն աւանդած է Ուխտանէս պատմագիրը։
Աբրահամ կը յորդորէ զԿիւրիոն քաղկե-
դոնական բաժանմամբ չը վրդովել Հայոց և
Վրաց դարաւոր սէրը և խաղաղութիւնը,

Digitized by Google

իսկ նա փոխանակ զիջանելու՝ անարգական պատասխաններ կը գրէ. ուստի և Աբրահամ կաթողիկոսն կը ստիպուի ժողով գումարել և իսպառ մերժել զԿիւրիոն և նորա հետևողները ՚ի հաղորդութենէ Հայաստանեայց եկեղեցւոյ: Կիւրիոն սաստիկ կը վիրաւորի և կը բողոքէ Յունաց Մօրիկ կայսեր, և սա Հայոց և Յունաց եպիսկոպոսներէն ժողով կը գումարէ Կ. Պօլսոյ մէջ, ուր ՚ի միջի այլոց կը գտնուին Վրթանէս աթոռակալն և Գրիգոր եպիսկոպոսն: Եպիսկոպոսներէն ոմանք կայսեր ահէն հաւանութիւն կը ցուցնեն Քաղկեդոնի ժողովին և շատերը ընդդիմանալով կը դառնան ՚ի Հայաստան: Մօրիկ զայրանալով Յունաց բաժնի Հայոց համար Յովհաննէս անուն մէկը, Բագարան գիւղէն, կաթողիկոս կը կացուցանէ, որպէս հակաթոռ Աբրահամու կաթողիկոսին Հայոց: Երբ հայրապետութիւնը այսպէս կը բաժանուի յունական նենգութեամբ, մեծ յուզմունքներ կը լինին Հայոց մէջ ՚ի վնաս հանրութեան ազգին: Այս միջոցին սաստիկ պատերազմական կոտորածներ կը լինին Յունաց և Պարսից մէջ, որով և Երուսաղէմը կ՚առնուի, Խաչափայտը կը գերուի ՚ի Պարսկաստան, ընդնմին և Զաքարիա Պատրիարքն և 30,000 անձինք: Այս պատերազմաց ժամանակ Հայոց

Տարօնոյ գաւառն եւս անհագին կոտորածնե-րու ասպարէզ կը դառնայ, ուր Մուշեղ և Գայլ — Վահան Մամիկոնեանք հարուածներ կու տան պարսկական հրոսակներուն ։ Այս պարսկական ասպատակութեան մէջ կը նա-հատակուին եօթն խոստովանողներն, որ Յունաստանէն Գլակայ վանքն եկած էին և ճգնողական կեանք կը վարէին խոտաբուտ կենօք ։

Յունաց բաժնի մէջ Յովհաննէս հակա-թոռն կը վախճանի և իրեն չը յաջորդեր ոք ։ Սակաւ ժամանակէն զկնի կը մեռանի նոյն-պէս և Աբրահամ կաթողիկոսն, որ իւր կեն-դանութեան ժամանակ ամեն կերպով աշ-խատեցաւ Հայոց, Վրաց և Աղուանից կրօ-նական միաբանութեան համար և նամակներ գրեց ինչպէս Վրաց՝ նոյնպէս և Աղուանից, բայց դժբաղդաբար Վրացիք չը կարացին նոյն վաղեմի մտերմութիւնը պահպանել, զոր պահպանեցին Աղուանք ։

Աբրահամու տեղ կ՚ընտրուի կաթողիկոս Տարօնոյ Մամիկոնեանց եպիսկոպոսն և Գլա-կայ վանից առաջնորդն՝ Կոմիտաս, Արագա-ծոտն գաւառի Աղց գիւղէն ։ Սա կը ձեռ-նարկէ Հռիփսիմեանց վկայարանի և Էջմի-ածնի գմբէթի նորոգութեանը ։ Առաջնոյն մէջ կը գտնուին Հռիփսիմեանց նշխարքը՝ Ս. Լուսաւորչի և Սահակայ մատանիներով։

Digitized by Google

ընկուած տապանի մէջ, զոր առանց բանա-լու վերստին կ՚ամփոփէ Կոմիտաս, չքեղ հանդէս կատարելով և «Անձինք նուիրեալք» գե-ղեցիկ շարականը երգել տալով, զոր ինքն շա-րագրած և նուիրած էր Ս. Կուսանաց փա-ռացն ու յիշատակին, որպէս վայելուչ և արտաշարժ ներբող: Կոմիտաս այլ և այլ ե-կեղեցական բարեկարգութիւններ կ՚ընէ, և եօթնամեայ կաթողիկոսութենէն զկնի կը վախճանի և իւր տեղը կ՚ընտրուի Քրիստափոր Գ. Ապահունեաց գաւառէն, ազատ տանէ, խորհրդով Վարազտիրոց մարզպանին, Թէ-ոդորոս Ռշտունի իշխանին և այլ նախարա-րաց և հաւանութեամբ ազգին: Սակայն ե-րեք տարիէն յետոյ՝ իւրովի կը հրաժարի կա-թողիկոսութենէ և առանձնանալով կրօնա-ւորական կեանք կը վարէ:

Քրիստափորին կը յաջորդէ Եզր կամ Եզրաս, Նիգ գաւառի Փառաժնակերտ ա-ւանէն, որ սնուած էր կաթողիկոսարանի մէջ և փակակալ էր Ս. Գրիգոր եկեղեցւոյն: Սորա կաթողիկոսութեան ժամանակ Հա-յաստանեաց եկեղեցին չարաչար կը տագ-նապի քաղկեդոնական մոլեկրօնութենէն: Հերակլ Յունաց կայսրը Պարսից հետ հաշ-տուելէն և Խոռեմ Թագաւորէն Խաչափայ-տը առնելէն զկնի (որ գերուած էր Խոս-րովի ժամանակ), կը դիմէ ՚ի Կարին (որ և

Թէոդուպօլիս), և կը հրամայէ գաւառական ժողով գումարել Յունաց և Հայոց եպիսկոպոսներէն, առանց մասնակցութեան բոլոր ազգին Հայոց, ուր կը կոչէ նոյնպէս և Եզր կաթողիկոսն՝ Մժեժ գնունի նախարարի պատգամաւորութեամբ, ազդ առնելով միանգամայն, որ եթէ չը հաճի երթալ, Յունաց բաժնի մէջ այլ կաթողիկոս պիտի նստուցանէ և չը թողու որ Եզր կաթողիկոսական իշխանութիւն վարէ: Եզր այս ըսպառնական ազդարարութենէն ստիպուած, կ'ուղեւորի դէպ 'ի Կարին և կը ցանկայ իւր հետ տանել Մաթուսաղա մեծիմաստ վարդապետը նախարարաց խորհրդով, սակայն նա Երասխաձորի վարդապետարանին մէջ զբաղած լինելով դաստիարակութեամբ՝ կը հրաժարի և միայն դաւանութեան գիր կ'ուղարկէ և կը պատուիրէ որ կայսեր առջեւ կարդան ժողովի մէջ: Որբելեան իւր պատմութեան մէջ կ'աւանդէ այս դաւանութեան գիրը ամբողջապէս, որ ընտիր և ողջախոհ իմաստներ կը պարունակէ հաւատոյ էական մասանց վրայ): Եզր Կարին կը հասնի քանի մի եպիսկոպոսներով և վարդապետներով: Ժողովը կը գումարուի (629ին), ուր մէջ կը բերուին Հայոց դաւանութեան թուղթն (Մաթուսաղայի գրած) և Յունաց դաւանագիրը ստորագրութեամբ Հե-

Digitized by Google

բանկը կայսեր և քանի մի եպիսկոպոսաց ։ Երկար միաբանութիւններ կը լինին առանց համաձայնութեան ։ Եզր առանձինն կը խորհի հայ եպիսկոպոսաց ու նախարարաց հետ և քանի մի առաջարկութիւններ կ'առնէ կայսեր ։ Կայսրը կը մերժէ և միայն կը ստիպէ որ Քաղկեդոնեան ժողովը ընդունուի, սպառնալեաց հետ պատուաւորական պարգեւներ եւս խոստանալով Եզրին ։ Եզր, կայսեր հրապուրանքներէն ստիպուելով, կ'ընդունի Քաղկեդոնի ժողովն և ընդ նմին Կողբ գիւղաքաղաքը՝ որպէս պարգեւ ։ Բայց սոյն այս դաւաճանութիւնը առիթ կը լինի, որ յետ ժամանակաց իւր իսկական փառքէն կը զրկուի և կաթողիկոսաց շարքին մէջ իւր անուան գլխագիրն գլխիվայր և ներհակ կը գրուի, ըստ որում փոխանակ իւր ընդհանուր ազգի համոզմանը հետեւելու՝ հպատակ եղաւ յունական հրապուրանքներուն (1)։

Եզր Դուինն կը դառնայ մեծամեծ պարգեւներով և փառքով, բայց, ըստ պատմելոյ Օրբելեանի, Կապուտ կողոպուտ 'ի հայրենի տեղաց և 'ի Ծղմակէ հատուցող, և կ'աշխատի նոր ժողովով հաստատել իւր ընդունած դաւա-

(1) Մեր ամեն պատմագիրներն միաբան կը կշտամբեն Եզրի թուլամտութիւնն ու ագահութիւնը ։ Սեբէոս, Գլ. ԻԹ. Ասողիկ. Բ. Գիրք Գլ. Բ. — Սամուէլ. — Վարդան. — Կիրակոս. — Օրբէլ.

նութիւնը, սակայն սաստիկ շշուկ կը տարածուի ազգին մէջ, կաթողիկոսարանի նշանաւոր վարդապետն և Ս. Գրիգոր եկեղեցւոյն փակակալն՝ Յովհաննէս՝ յայտնապէս կ'ընդդիմանայ Էջմին, կ'անարգուի և այս խօսքերը կ'ասէ. «Յիրաւի կոչեցաւ անունդ Էջմ, վասն զի յեզր տարեալ հաներ զՀայաստանեայս, քակեալ զսահման հաւատոյ հարցն մերոց ուղղափառաց և խրամատեալ զցանկն առաքելական և 'ի մարդադաւան տումարն Լեւոնի (Հռովմայ Պապին) կործանեալ»(1): Էջմ կը հրամայէ գան հարկանել զվարդապետն, բայց նա ելնելով կ'աղաղակէ. «Ահաւասիկ գնացի խնդալով յերեսաց ատենին, զի վասն անուան Տեառն արժանի եղէ անարգելոյ»(2), որ և այս աքսորանքէն յետոյ կ'առանձնանայ Մայր վանքին մէջ, սակայն այն տեղէն եւս կը հալածուի դէպ 'ի Աղուանք, և իբր 'ի նախատինս՝ յիշեալ վանքը կը կոչուի Գոմ (Մայրագոմ) և վարդապետըն՝ Մայրագոմեցի:

Մինչդեռ սոյնօրինակ ընդդիմութեամբ կը տագնապի Էջմ. Դունայ մէջ, յունական բաժնի Հայոց մէջ ևս սաստիկ խռովութիւն կը ծագի, որովհետեւ քաղկեդոնիկութեան միտողներն արդէն սկսած էին ընդդէմ ա-

(1) Յովհաննէս կաթողիկոս: (2) Նոյն:

ռաքելական սովորութեան Հայոց՝ Հաղորդութեան բաժակի մէջ ջուր խառնել, հացը՝ խմորուն առնել, Ծննդեան, Յայտնութեան և Մկրտութեան տօնից նախնական կարգը փոխել, Սուրբ Աստուածն՝ առանց Խաչեցարի երգել, և այլն, որոց համար և խռովութիւնն այնչափ կը զայրանայ, որ ընդունողներն անգամ՝ վերստին կը մերժեն Քաղկեդոնի ժողովն։

Այս կրօնական շփոթութեանց միջոցին, որ Յունաց շնորհիւ ճարակուած էր, Պարսիկները կը յարձակին Տարօնոյ գաւառին վրայ, դրդռելով յունական արտաքին մտերմութեան ցոյցերէն առ Հայս, և հարուած կը կրեն Հայոց կողմէն։ Պարսից յարձակումներն իսպառ կը դադարին Վահան Կամսարականի (այսպէս կը կոչուի, թէպէտ և Մամիկոնեան ցեղէն), և իւր Տիրան որդւոյն ժամանակ, որոնք պարսկական զօրքին կը դիմադրաւեն և կը ցրուեն։ Տարօնական վերջին պատերազմին կը մասնակցին, նոյնպէս Գլակայ վանուց 300 կրօնաւորներն՝ խաչադրօշ նշանաւ մոգպաշտութեան դէմ զինելով։

Այսպէս կը վերջանան, ինչպէս պարսկական հալածանքներն, նոյնպէս և եկեղեցական պատմութեան Երրորդ Շրջանը (450 –640), սակայն քրիստոնեայ Հայաստան դար-

ձեռալ հանգստութիւն չը գտներ. վասն զի քաղկեդոնական ատելութիւններն անընդհատ կը շարունակէին Յունաց կողմէն, և մագակրօնականին կը յաջորդեն հագարական հալածանքները կամ արաբական արշաւանքները, որոց վրայ խօսիլն յաջորդ Շրջանին թողլով, այժմ հարևանցի ակնարկ ձգենք միայն՝ թէ ի՞նչ վիճակ ունեցաւ. ազգային մատենագրութիւնը Թարգմանչաց ժամանակէն կամ հինգերորդ դարէն զկնի։



# ԵԿԵՂԵՑԱԿԱՆ

# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

---

## Ա.

*Ընդհանուր տեսութիւն Երրորդ Շրջանի մատենագրութեան վրայ. — Ուսումնականք. — Երկասիրութիւնք Մամիկոնեան Աբրահամ եպիսկոպոսի, Սիւնեաց Պետրոս եպիսկոպոսի, Մովսէս, Աբրահամ և Կոմիտաս կաթողիկոսաց, Մաթուսաղայի, Յովհաննու Մայրավանեցւոյ, Յովհաննու Մամիկոնեան և ձոն Բարսղի։*

ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ բարգաւաճանքն կամ նուազութիւնն կախումն ունի ժամանակակից դէպքերէն, որոց ենթարկուած է ազգ մի կամ ժողովուրդ։ Այս նկատմամբ եթէ պատկերացնենք մեզ Երրորդ Շրջանի բուն նկարագիրը, ակներեւ կը տեսնենք, որ մեր ազգն ամենեւին ժամանակ չունէր ուսման և գրագիտութեան մէջ ծաղկելու. վասն զի մոգակրօնութեան հալածանքէն ամենեւին հանգստութիւն չըկար, ոչ հայրենեաց մէջ, ոչ ընտանեաց մէջ և ոչ անապատներուն մէջ անգամ։ Ամբողջ ազգի վիճակը շարունակ զինուորութիւն էր հաւա-

Digitized by Google

տոյ պաշտպանութեան համար ։ Արդարեւ Հալածանքը մի գեղեցիկ դպրոց էր քրիստոնեայ Հայաստանին համար, ուր զգացմունքները կ'ազնուանային, հոգիները կը վառուէին երկնաւոր սիրով և միտքերը միշտ արթուն էին աստուածպաշտութեան խորհրդներով, բայց գրաւորապէս բարգաւաճելու ժամանակ չը կար. ուստի նոյն Երջանիկ Հայերը իւրեանց նահատակութեան և ջերմ քրիստոնէութեան յիշատակը միայն կարացին աւանդել յետագայից և ոչ գրաւոր հարստութիւն ։ Թողունք ասել, որ քաղկեդոնական տարապարտ խնդիրներն եւս եկան խառնեցան մոգակրօնական հալածանաց հետ և սկսան վիճաբանութեամբ ըզբաղեցնել միտքերը ։ Ուստի ինչպէս պիտի տեսնենք, 6դ և 7դ դարերուն մէջ նուազ են թէ մատենագիրք և թէ մատենագրական ճոխութիւնք ։

Գլխաւոր ուսումնավայրքն էին 6դ դարուն մէջ Աթենեաց վարդապետարանը. իսկ 7դ դարուն մէջ Արշարունեաց Երասխաձորի Վարդիկ-Հայր կոչուած վարդապետարանը, Շիրակայ Դպրեվանքը և Կարնոյ Խաչկայվանքը ։ Իսկ նոյն դարուց մէջ գրաւոր երկասիրութեամբ յայտնի հեղինակներն են սոքա ։

Digitized by Google

ԱԲՐԱՀԱՄ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԱՄԻԿՈՆԵԱՆՑ. — Աղուանից Վաչական Թագաւորի խնդրանօք գրած է քանի մի խրատներ եւ Թարգմանած է Եփեսոսի տիեզերական ժողովի պատմութիւնը, զոր երկասիրած է Նաբովկ քաղաքի Փիլիքսիանոս եպիսկոպոսն ։ Ոմանք այս պատմութիւնը կը համարեն նոյն իսկ Աբրահամու ինքնագիր երկասիրութիւն, վասն զի ձեռագրաց վրայ կը գտնուի Վաչագանեայ անունը, որուն նուիրուած է, առանց յիշուելու, որ Թարգմանութիւն է ։

ՊԵՏՐՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՍԻՒՆԵԱՑ. — Սորա վերայ մեծ գովեստով կը խօսի Ս. Օրբելեան եւ Մովսէս Խորենացւոյ աշակերտ կը համարէ, (ժամանակագրութեան նայելով աւելի ստոյգ է աշակերտի աշակերտ համարել,) սակայն իւր երկասիրութիւններէն շատերը մեզ չեն հասած, ինչպէս են՝ Պատմութիւն մի եւ Ներբող Վասակայ հայր Բաբիկին վրայ, որք կը յիշատակուին պատմագրութեանց մէջ ։ Պետրոսի անուամբ մեզ հասած երկասիրութիւնքն են — Ներբողեան Աստուածածնի վերայ այսպիսի սկզբնաւորութեամբ «Բազմութիւնք քրիստոսասէր ժողովրդոց» — Ճառ Քրիստոսի ծննդեան վերայ, «Ո՛նանի Իմմանուէլ՝ Աստուած մարդացեալն», եւ Պատասխանի առ Հարցմունս Վաչագանայ իշխանի, որուն

մէջ կը խօսուի ընդհանրապէս Քրիստոսի մարդեղութեան վրայ : Պետրոս, իբրեւ ժամանակակից նշանաւոր գիտնական, մասնակցութիւն ունեցաւ Հայոց Տօմարի ուղղութեանը, որ կատարեցաւ Մովսէս Եղիվարդեցի կաթողիկոսի օրով :

ՄՈՎՍԷՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԵՂԻՎԱՐԴԵՑԻ. — Սորա ուսումնականութիւնը յայտնի է Հայոց Տօմարի ուղղութեան գիտնական հետազօտութենէն, բայց մասնաւոր երկասիրութիւն չունի, բաց 'ի այն թուղթը, զոր գըրեց առ Կիւրիոն, նախնի Հայոց շաւղին մէջ մնալու եւ ոչ թէ քաղկեդոնիկութեան յարելու :

ԱԲՐԱՀԱՄ ԿԱԹՈՂԻԿՈՍ. — Մովսէս կաթողիկոսի մահէն յետոյ՝ Աբրահամին վիճակեցաւ թէ կաթողիկոսութիւնը եւ թէ Վըրաց բաժանման առաջն առնելու պարտաւորութիւնը : Ուստի Աբրահամ զանազան թղթեր գրեց առ Կիւրիոն եւ նոյնպէս առ Աղուանս : Այս թղթերը, զորս ժողոված է Ուխտանէս պատմագիրը, կը պարունակեն իրենց մէջ զգուշացուցիչ յորդորներ եւ դաւանաբանական տեղեկութիւններ :

Digitized by Google

ԿՈՄԻՏԱՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ. — Եօթներորդ դարու սկիզբն հայրապետ ընտրուելով Հռիփսիմեանց վկայարանը նորոգել տուաւ։ Սորա մտաց և զգացման ծնունդն է Հռիփսիմեանց Շարականը — Անձինք, ինչպէս և առաջ տեսայինք։ Այս համառօտ ներբողին մէջ կը նկարագրուի կուսանաց պատմութեան գլխաւոր մասերը, մանաւանդ Հռիփսիմէ հրաշագեղ կուսին, որուն գեղեցկութեան վրայ կը յիմարի Թագաւորը. Հեթանոսները կը սքանչանան՝ աշխարհը արհամարհելուն համար. իսկ հրեշտակները կը տօնեն ուրախութեամբ անմեղ կուսի մահը։ Արեւմուտք և Արեւելք — Դիոկղետիանոս և Տրդատ — յայտնապէս իրարու կը խոստանան և ծածուկ իրարմէ յափշտակել կը ջանան Հռիփսիմէն, բայց նա աշխարհի սէրը և մեծութիւնը կը զոհէ երկնաւոր սիրոյն։ Աշխարհի հզօրներու զէնքերը և բազուկները կը թուլանան և տկար կանայքն աստուածային սիրով կը զօրանան և կուսական ձեռքերով կը յաղթահարեն պերճաշուք թագաւորները։ Միով բանիւ Աստուծոյ տըկարները կը զօրանան աշխարհի հզօրներէն՝ և յիմարները կ'իմաստանան աշխարհի իմաստուններէն։ Կոյսերը իրենց քրիստոնէութեամբ կը ծնանին շատ ազգեր և մանուկ մայրերը՝ ծերոց հրապարակներ (բազ-

Digitized by Google

մամթիւ ծերեր)։ Բայց 'ի այս գեղեցիկ շարականէն Կոմիտաս գրած է նմանապէս քանի մի թղթեր հաւատոյ դաւանութեան վըրայ, և ինչ ինչ քննաքանական կամ՝ աստուածաբանական համառօտ գրուածքներ։

ՄԱԹՈՒՍԱՂԱ. — Մինչդեռ Հերակլ Յունաց կայսրը Կարնոյ ժողովին մէջ կը յուզէր քաղկեդոնական խնդիրները Եզր կաթողիկոսի հետ, Մաթուսաղա առանձնացած Երասխաձորի վարդապետարանին մէջ գիշեր ցերեկ կ'աշխատէր աշակերտելոց յառաջադիմութեան համար, ուր կարգուած էր Կոմիտաս կաթողիկոսէն։ Երբ կանչեցաւ Մաթուսաղան ևս իւր հետ Կարնոյ ժողովը տանել, իբրև նոյն ժամանակի բազմահըմուտ անձն, բայց նա իւր տկարութիւնն պատճառ բռնելով՝ առաւել լաւ համարեց իւր վարժապետութիւնը շարունակել՝ քան թէ տարապարտ վէճերու խառնուիլ, որոց մէջ աւելի տիրապետական բռնութիւն կը նշմարէր քան թէ քրիստոնէական խորհրդածութիւն և ճշմարտութեան հետազօտութիւն։ Մաթուսաղա բաւական համարեց Դաւանութեան Գիր միայն ուղարկել Կարնոյ ժողովին մէջ կարդալու, որ իբրև միակ երկասիրութիւն Մաթուսաղայի հասած է մեզ. թէպէտ և կը կարծուի որ ուրիշ գրուածք-

ներ եւս ունեցած լինի , որոնք 'ի կորուստ մատնուած են . վասն զի իւր համբաւը շատ մեծ եղած է ժամանակակցաց մէջ , ինչպէս և կըտեսնենք Ս. Օրբելեանի խօսքերէն . «Մեծ քերթող և անյաղթ փիլիսոփայ , զարգացեալ ամենայն առաքինութեամբ . ուսեալ զքերթողութիւն և վարժեալ ճարտասանականաւըն , հմտացեալ փիլիսոփայական արուեստից , լի ամենայն իմաստութեամբ և կատարեալ գիտութեամբ . . . . կացուցանեն ( զՄաթուսաղա ) յաստիճան վարդապետութեան եկեղեցւոյ և նստուցանեն գլուխ ամենայն վարդապետացն 'ի վերայ բարձր ահարկու ամբիոնի րաբունարանին , յորմէ բղխէր գետօրէն աստուածային իմաստութիւնն և փարթամացուցանէր զամենայն աշակերտեալսն » (1) . Մաթուսաղա իւր անժամաւորութեամբ եպիսկոպոս դարձաւ Սիւնեաց , որ Հայոց կաթողիկոսութեան մեծ թեմն էր .

ՅՈՎՀԱՆ ՄԱՅՐԱՎԱՆԵՑԻ . — Սա Եզր կաթողիկոսին ընդդիմացաւ Քաղկեդոնի ժողովին ընդունելու համար և աքսորուեցաւ . Այս առանձնութեան մէջ երեք գիրք շարադրեց , (ինչպէս կ'աւանդեն Ասողիկ եւ

(1) Ստ. Օրբել. Գլ. ԻԸ.

Digitized by Google

Վարդան պատմիչք) Յունաց և քաղկեդոնական վարդապետութեան դէմ այսպիսի անուններով — Խորափ Վարոց, Համափարմաք և Նոյեմոկ, և թէպէտ փախնալով, իբրեւ իւր հեղինակութիւն չէր հրապարակ հանած, սակայն իւր հակառակորդները (քաղկեդոնականք) անհետացուցին։ Յովհան այնչափ նշանաւոր էր, որ նախարարք, ինչպէս Սամթուսաղայի, նոյնպէս և սորա համար, խորհուրդ տուին Եզրին որ հետը տանի Կարնոյ ժողովին, սակայն նա չը կամեցաւ տանել։ Այս մասին կը խօսին Յովհաննէս կաթողիկոս, Կաղանկայտուացի, Օրբելեան և այլք։

ՅՈՎՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ. — Սա մամիկոնէից եպիսկոպոսն էր և Ներսէս Շինող կաթողիկոսի օրով գրած է Տարօնոյ պատմութիւնը իբրեւ Շարայարութիւն Զենոբայ երկասիրութեան, որուն վրայ արդէն խօսած ենք։ Յովհաննու պատմական գրուածքի յիշատակարանին մէջ կը յիշուի, որ ինքն Տարօնոյ պատմութեան հաւաքածոյն աւանդած է երեսուն գլուխներով։ Սակայն այժմեան գտնուածն ու տպագրուածը միայն ութ գլուխներէ կամ պատճէններէ բաղկացած է, որոց հինգն յանուն Զենոբայ, և երեքն միայն յանուն Յովհաննու, իսկ մնացածներն

Digitized by Google

կամ կորուսուած են, կամ մեզ չեն հասած։

Յովհաննու երկասիրութեան գլխաւոր նիւթն է այն անցքերուն կամ պատերազմներուն պատմութիւնը, որոնք պատահեցան Մուշեղ Մամիկոնեանի և նորա որդւոյն Գայլ Վահանայ ժամանակ։ Պատմութիւնը գրուած է աշխոյժ գրչով, բայց տեղ տեղ ժամանակի և անձանց շփոթութիւններ կան, որոնք պատմական ստուգութիւնը կ'աղաւաղեն։ Կը կարծուի որ յետին ժամանակաց գրիչներ պատճառ եղած լինին այս անտեղութեան, որովհետեւ նոյն պատմութեան յիշատակարանին մէջ ազատութիւն տրըւած է, որ կամեցողն իւր ժամանակի պատմութիւնը աւելցնէ։

ԲԱՐՍԵՂ ՃՈՆ. — Սա Դպրեվանից առաջնորդն էր և իւր ժամանակին նշանաւոր։ Երկասիրած է մեկնութիւն Մարկոսի աւետարանին և այլ գրուածքներ, նմանապէս մասնակից եղած է Դունայ ժողովին, որ գումարեցաւ Ներսէս Շինողի օրով, և ՚ի մէջ այլ խնդրոց, ընտրութիւն եղաւ Շարականաց։

## Բ.

Երկասիրութիւնք Սեբէոս եպիսկոպոսի. Մովսէսի Կաղանկայտուացւոյ, Դաւթի Բագրեւանդացւոյ, Անանիայի Շիրակացւոյ, Թէոդորոսի Քռթենաւորի, Մովսէսի Սիւնեցւոյ, Գրիգորի Արշարունւոյ, Փիլոնի Շիրակացւոյ, Սահակ կաթողիկոսի Ձորափորեցւոյ. — Համառօտագրութիւն պարունակութեան իւրաքանչիւրոց:

Սեբէոս եպիսկոպոս. — Բագրատունեաց ցեղի եպիսկոպոսն, ինչպէս և յիշուած է Ներսէս Շինողի ժամանակ գումարուած Դունայ ժողովի եպիսկոպոսաց կարգին մէջ: Երկասիրած է Պատմութիւն Հերակլի, որուն մէջ խառն են և Հայոց ականաւոր իշխանաց արարքներն: Սեբէոսի պատմագրութեան գլխաւոր նիւթն են Խոսրով Բ, Կաւատ, Մօրիկ և Հերակլի ժամանակ կատարուած պարսկական և յունական պատերազմները. բայց համառօտ կերպիւ աւանդուած է մինչեւ նոցա օրերը Հայոց պատմութիւնը 'ի Հայկայ սկսեալ: Սեբէոս կը պատմէ նմանապէս Պարսից Սասանեան տէրութեան տկարանալն և Մահմետականաց զօրանալն:

Բաց 'ի քաղաքական անցքերէն Սեբէոս կը պատմէ Յունաց և Հայոց մէջ պատահած եկեղեցական խնդիրները, նոցա ստիպմունքները Քաղկեդոնի ժողովին ընդունելու համար և Հայոց մերժումն: Կը յիշէ նմա-

նապէս Կոմիտաս և ուրիշ քանի մի կաթողիկոսաց գործքերը։ Կ'աւանդէ Երուսաղէմի պատրիարքական տեղապահ Մոդեստոսի գրած թուղթն առ Կոմիտաս և սորա պատասխանն։ Սեբէոսի երկասիրութիւնը քանի մի մասամբ արժանի է մտադրութեան, մանաւանդ այն անցքերով, որոնք ուրիշ պատմագրաց մէջ չեն յիշուիր։

ՄՈՎՍԷՍ ԿԱՂԱՆԿԱՏՈՒԱՑԻ. — Ուտի գաւառի Կաղանկատույց քաղաքաւանէն, մօտ Պարտաւ վաղեմի մայրաքաղաքին և Տրտու կամ Թարթառ գետոյն։ Մովսէս մատենագրական յիշատակարանաց մէջ կոչուած է, նոյնպէս Կաղանկատուացի, Կաղկանտուացի և երբեմն Աղուանեցի։ Նշանաւոր է սա եօթներորդ դարու մատենագրաց մէջ իւր երկասիրութեամբ, որ է Պատմութիւն Աղուանից։

Այս պատմութիւնը բաղկացած է երեք Գրքէ, բայց ժամանակագրական հաշուով՝ երկու Գիրքը միայն Մովսիսին կը պատկանին, իսկ երրորդը անանուն հեղինակի շարայարութիւն է. վասն զի Մովսէս ապրած է Աղուանից Ջեւանշէր թագաւորի և Վիրոյ կաթողիկոսի ժամանակ, Էդ դարուն մէջ, որոց գործքերը իբրեւ ականատես կը պատմէ. իսկ երրորդ Գրոց պատմական անցքերը մինչեւ Ժդ դարուն վերջերը կը հասնին։

Մովսէսի երկասիրութիւնը պատմագրական մեծ արժէք ունի. վասն զի Աղուանից ծագման, վարուց, բարուց և երկրի բերքերուն վրայ այնպիսի ծանօթութիւններ կը տայ, զորս ուրիշ պատմագրաց մէջ անօգուտ է որոնել։ Կը պարունակէ Աղուանից աւանդութիւնները և նոյն աշխարհին մէջ պատահած պատերազմները Պարսից, Հայոց, Հոնաց, Արաբացւոց, Խազրաց, Թուրքաց և այլոց։ Սակայն Մովսիսի պատմութեան քաղաքային, ցեղային և երկրային ծանօթութեանց հետաքրքրութիւնը մեր նպատակէն արտաքոյ լինելով՝ կը թողունք բանասիրական և գրագիտական պատմութեան (1), և միայն կը համառօտագրեմք եկեղեցական պատմութեան վերաբերեալ ծանօթութիւնները։

Մովսէս կը խօսի Աղուանից (կամ աւելի լաւ ասել Հայ—Աղուանից) քրիստոնէական դարձի վրայ, առաքելութեամբ Եղիշէի, հաւատոյ վերանորոգութեան և կաթողիկոսական սկզբնաւորութեան վրայ քարոզութեամբ Ս. Լուսաւորչին և իւր թոռան Գրիգորիսի, որ նահատակեցաւ Մազքթաց ազգէն. նոյնպէս կը խօսի Մեսրոպայ և իւր

(1) Մովսիսի պատմութեան Փարիզի տպագրութիւնը. Շահնազարեան Կ. պատմագէտ վարդապետի ձեռամբ, ունի ընդարձակ յառաջաբան, յորմէ ընթերցողք մեծ լոյս կարեն առնել Աղուանից ազգի, երկրի, պատմագրի և նաև հին ժամանակակից ազգաց վրայ.

Digitized by Google

աշակերտաց գրագիտական, վարդապետական և դաստիարակական վաստակոց վրայ ՚ի շինութիւն Աղուանից աշխարհին: Մովսէս կը խօսի Աղուանից երկրին մէջ կատարուած քրիստոնէական նահատակութեանց, եկեղեցական ժողովոց և բարեկարգութեանց, վանօրէից և եկեղեցեաց շինութեան, քրիստոնէական վկայից մարտիրոսութեան, անապատականաց կրօնաւորութեան, կաթողիկոսական աթոռոյ վիճակի և փոխադրութեան և սրբազան նշխարաց յայտնութեանց վրայ: Մովսէս կը խօսի տեղտեղ գտնուած հեթանոսական սովորութեանց, դիւթական աղանդոց և մանաւանդ մատնահատութեան չար աղանդոյն բարձման վրայ ձեռամբ Վաչագանայ: Կը խօսի Աղուանից կաթողիկոսաց, բարեպաշտ իշխանաց և եպիսկոպոսաց վարուց, գործոց և Հայոց հայրապետութեան հետ ունեցած յարաբերութեանց վրայ, որոյ մասին և կ'աւանդէ զանազան թղթեր, ինչպէս են թուղթք Գիւտ կաթողիկոսի, Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոսի, Մատթէ երիցու առ Վաչագան, Յովհաննէս կաթողիկոսի Հայոց առ Աբաս կաթողիկոս Աղուանից, Աբրահամ կաթողիկոսի Հայոց վասն զգուշացուցանելոյ ՚ի քաղկեդոնականութենէ, թուղթ Ջեւանշէրի առ կայսրն Յունաց Կոստանդին և նորին պատասխանի,



Digitized by Google

Թուղթ Դաւիթ և Յովէլ Երիցանց և պա-տասխանի Ուխտանէս կաթողիկոսէն և Ջե-ւանշէրէն, գրուած ինչ Մայրավանեցւոյն, Ողբ Դաւթակայ ՚ի Ջիւանշէր մեծագործ թագաւոր, որ Կաղանկայտուացւոյ պատմա-կան դիւցազն է, և այլն:

Մովսէս կը խօսի առաւել ընդարձակօրէն քանի մի եկեղեցական հոլովաց քրիստոնէա-կան և ուսումնասիրական ջանից վրայ, մանա-ւանդ Մեծկունեաց գաւառի Իսրայէլ եպիս-կոպոսի, որ Հոնաց ազգը ծառայապաշտու-թենէ և Թանգրի-Խան հսկայ չաստուածոյ պաշտամունքէն Քրիստոնէութեան կը դար-ձընէ և եկեղեցիներ անգամ կը շինէ նոցա համար, բայց յետագայ ժամանակաց հովիւ-ներու անհոգութենէն վերստին կռապաշ-տութեան կը դիմեն: Կը խօսի վերջապէս Եռուսաղեմի եկեղեցեաց և ՚ի յիշատակ Ա-ղուանից եղած վանօրէից վրայ:

Իսկ Մովսիսի երկասիրութեան անանուն Շարայարիչն (ըստ ոմանց Մովսէս Դասխու-րանեցին) կը պատմէ զանազան կրօնական դէպքեր Քաղկեդոնի ժողովոյն նկատմամբ, և Հայոց Եղիա կաթողիկոսի երթալն յԱ-ղուանս, միաբանութեան համար եղած ժո-ղովներու գումարումներն և Արաբացւոց արշաւանքները: Վերջապէս համառօտիւ կը թուէ Աղուանից կաթողիկոսաց անուն-

ներն և գործքերը, Եղիշէ առաքելէն և Լուսաւորչի Թոռն Գրիգորիսէն սկսելով և հաստուցանելով մինչև տէր Մովսէս առաջնորդ Փառախոյ վանաց, որ ԺԴ դարու վերջերը կաթողիկոս նստաւ Աղուանից։

ԴԱՒԻԹ ԲԱԳՐԵՒԱՆԴԱՑԻ. — Բագրեւանդ գաւառի Բագաւան գիւղէն, խմբագրեց և մեծ փիլիսոփայ կոչուած Ասողիկէն։ Կոստանդին Յունաց կայսեր հրովարտակաւ պատգամաւոր եղաւ առ Ներսէս Շինող կաթողիկոս և առ Սմբատ Կիւրապաղատ Վարազտիրոցեան։ Շարագրած է Ճառ մի Քրիստոսի աստուածային և մարդկային բնութեան վրայ, Աշոտ պատրկի խնդրանօք, որ ցարդ տպագրուած չէ։ Նմանապէս Թարգմանած է Ս. Բարսղի քանի մի ճառերը։

ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ. — Մանկութեան ժամանակ կը հմտանայ բարոյական ուսմանց և Աստուածաշունչ Գրոց, և ապա հետամուտ կը լինի ուսողական (մաթէմատիկական) գիտութեան։ Այս նպատակաւ կ'ուղևորի ի Կարին, ի Չորրորդ Հայաստան առ Քրիստոսատուր գիտնական, ի Պոլիս, և ապա ի Տրապիզոն առ Տիւքիկոս։ Ութ տարի կը մնայ Տրապիզոն Տիւքիկոս գիտնաւորի մօտ և համարողական ուսմանց մէջ վարժելով Հայաս

տան կը դառնայ և շատ աշակերտներ կ՚ունենայ ։

Անանիայի երկասիրութեանց մէջ նշանաւոր են Աստեղաբաշխութիւն կամ Աստեղագիտութիւն, որ սովորաբար Յաղագս Երկնից կը կոչուի. Ժամանակագրութիւն ընտիր կարգաբանութեամբ. Յաղագս չափոց և կշռոց. իբրեւ մեկնաբանութիւն Ս. Գրոց մէջ յիշուած և գործածուած չափուց և կշռոց ։ Անանիայի երկասիրութեանց հետազօտութիւնը մեր նպատակէն արտաքոյ համարելով կը թողունք առանց դիտողութեան ։ Միայն այսչափը կ՚ասենք, որ նախնեաց մէջ համարողական գրուածք չըլլինելուն պատճառաւ, շատ յարգի եղած է Անանիայի երկասիրութիւնը, մանաւանդ աստեղագիտութիւնը, ինչպէս կը կարդանք Մագիստրոսի մի թուղթը, որով կը խնդրէ Պետրոս Գետադարձ կաթողիկոսէն Անանիայի գրուածքն իրեն ղրկել ընթերցասիրելու ։

ԹԷՈԴՈՐՈՍ ՔՌԹԵՆԱՒՈՐ. — Արագած լերան ստորոտը շինուած Աստուածածին վանքին վանահայրն, որ կը համարուի Մաթուսաղայի աշակերտ և Կոմիտաս կաթողիկոսի եղբօրորդին ։ Երկասիրած է քանի մի ճառեր, այն է Ներբողեան ի սուրբ խաչն աստուածընկալ, նմանողութեամբ Դաւիթ Անյաղթի ճառին.

Digitized by Google

Գողգոթա Դ սուրբ Աստուածածին եւ նոյն Մարիամ, և Նա՝ ինչ ինչ մոլորութեանց դէմ։ Թէոդորոսին աշակերտած են Սահակ և Յովհան (Իմաստասէր) կաթողիկոսները, յորոց վերջինն Թէոդորոսի վրայ խօսած ժամանակ «Վարժապետ վեհագոյն և յԱստուծոյ պարգեւեալ հայր» կ'անուանէ և կը դրուատէ նորա աննախանձ և մեծաջան ուսուցչութիւնը։

ՄՈՎՍԷՍ ՍԻՒՆԵՑԻ. — Հայկականին հետ տեղեակ և յունական դպրութեան, որ և երբեմն Քերթող կոչուած է քանի մի մատենագրաց մէջ։ Սիւնեցւոյն կ'ընծայուին ձեռագրաց մէջ ճարտասանական և քերականական գրուածքներ և նա և Խորենացւոյ Պիտոյից Գիրքն։

ԳՐԻԳՈՐ ԱՐՇԱՐՈՒՆԻ. — Սահակ կաթողիկոսի ձեռնադրութեամբ եպիսկոպոս կը կարգուի Արշարունեաց գաւառին և Վահան Կամսարականի խնդրանօք կը շարագրէ Մեկնութիւն ընթերցուածոց, որուն մէջ կը խօսի ազգային և յունական տօներուն վրայ։ Կը ցուցինք որ սոյն օրինակ երկասիրութիւնն տակաւին տպագրուած չէ։ Ըսողիկ կ'ասէ որ Ներսէս Կամսարականի խնդրանօք գրած է, իսկ Կամրջաձորեցին՝ Յովհան Իմաստասէրի, սակայն գրուածքին մէջ Վա-

հան Կամսարականը գովաբանուած է՝ որպէս Հաւատով և իմաստութեամբ ծերունի և յԱստուծոյ պարգևեալ Թագաւոր ազգին, և նորան նուիրուած է երկասիրութիւնը։ Գրիգոր Ներսէս գտնուած է Յովհան Օձնեցւոյ կամ Իմաստասիրի 'ի Մանազկերտ գումարած ժողովին, որուն վրայ պիտի խօսինք իւր ժամանակին։

ՓԻԼՈՆ ՏԻՐԱԿԱՑԻ ԿԱՄ ՇԻՐԱԿԱՑԻ. —Ներսէհ Կամսարականի խնդրանօք յունարէնէ հայերէն թարգմանած է յոյն եկեղեցական պատմիչ Սոկրատ Սքօլաստիկոսի գրուածքը, որ եօթն գիրք բաժնուած է և Եւսեբիոսի համանուն գրոց շարայարութիւնն կարէ համարուիլ, Կոստանդիանոսի մահէն մինչև Թէոդոսի կայսրութիւնը։ Այս թարգմանական աշխատութեան մէջ իւր կողմէն խօսած է Փիլոն՝ Փլաբիանոսի, Եւտիքէսի և Եփեսոսի ժողովոյն վրայ (1)։

ՍԱՀԱԿ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՁՈՐԱՓՈՐԵՑԻ. —Բրաթենաւորի աշակերտ, որոյ անձնադիր հայրապետութեան վրայ պիտի խօսիմք յաջորդ Շրջանին մէջ. իսկ նորա երկասիրութիւնքն

(1) Սոկրատայ գրոց հարազատ թարգմանութիւնը կը գտնուի սուրբ Աթոռոյս գրատան մէջ։

Digitized by Google

են Հագարացի Մահմատ ոստիկանին վրայ գրած Թուղթն, զոր կ'աւանդէ Ղեւոնդ Արաբացւոց Արշաւանաց պատմիչն. Ճառ Արմաւենեաց կամ Ողոգոմեան (Ծաղկազարդի) տօնախմբութեան վրայ եւ Շարականք Նաւակատեաց Ս. Խաչի։ Որչափ որ մնացիր ենք պատեհ առթիւ առանձինն խօսիլ Հայաստանեայց Եկեղեցւոյ աստուածպաշտական Նուագարանի կամ Շարականոցի եւ Ժամագրոց պարունակութեան վրայ, այնու ամենայնիւ աւելորդ չենք համարիլ Սահակայ երկասիրած Խաչի շարականաց վրայ քանի մի խօսք ասել։ Խաչի շարականները մեր Եկեղեցւոյ աստուածպաշտութեան ընտիր նուագները կը կազմեն, որոց իմաստները վսեմ են եւ ոգանչելի, քրիստոնէական ոգին ողջամիտ եւ ուղղափառ, ներբողական դարձուածները վայելուչ եւ սրտառուչ։ Վասն զի, համարեա՛ թէ իւրաքանչիւր տան մէջ կը յիշուի Խաչէ եւ Խաչելութեան մեծ խորհուրդը մարդկութեան համար. իւրաքանչիւր տան մէջ մխիթարութիւն եւ քաջալերութիւն փրկութեան։

Խաչը նկարագրուած է որպէս վէմ հիման Եկեղեցւոյ եւ միանգամայն որպէս զոհարան եւ սեղան սրբութեան, ուր մատուցաւ Ճշմարիտ պատարագ եւ զենումն անապական։

Digitized by Google

Խաչը նկարագրուած է որպէս պսակ փառաց Եկեղեցւոյ, որպէս պսակ եդեալ 'ի գլուխ մեղուցելոց, վայելուչ երանգօք ներկեալ — արեամբ և ջրով:

Խաչն նկարագրուած է որպէս նշան Եկեղեցւոյ 'ի հոգեւոր զինուորութեան և որպէս զէն յաղթութեան՝ սրեալ արեամբ Որդւոյն Աստուծոյ:

Խաչն նկարագրուած է որպէս աթոռ և բազմոց տէրունի, որպէս կառք անպատում և ընդունարան անքննելի խորհրդոյն մարդասիրութեան Յիսուսի և փրկութեան տիեզերաց:

Խաչն նկարագրուած է որպէս փայտ կենաց՝ զՔրիստոս պտղաբերող, որպէս յոյս հաստատութեան, որպէս գաւազան մեղաց ծովու անդունդը պատառող, որպէս առաջնորդ և կարապետ քրիստոնէական կենաց և բանալի արքայութեան:

Խաչն նկարագրուած է որպէս աշխարհակեցոյց նշան և զօրութիւն աշխարհի մէջ տնկուած՝ խաչելութեամբ Փրկչին, որ բազկատարած կը կոչէ իւր մարդասէր թեւոց տակ վաստակեալները և բեռնաւորները — առհասարակ վշտաչարչար մարդկութիւնը: Կը կոչէ աշխարհականները, որ գան և մարդասիրութիւն սովորին Խաչի պատուանդանին տակ: Կը կոչէ աշխարհասէրները և անձ-

նաւէրները, որ գան ողորմածութիւն և անձնանուիրութիւն ուսանին Խաչի առջև ։ Կը կոչէ ճշմարտութեան և արդարութեան համար հալածեալները, որ գան Խաչերուն նայիլ և սփոփուիլ ։ Կը կոչէ մեղաւորները աշխարհի մէջ վշտացածներն ու յուսահատածները, որ գան Թողութիւն և ապաւէն գտնեն Ներող Փրկչէն և ուսանին, որ սրտի խաղաղութիւն և հոգւոյ երջանկութիւն չըկայ առանց Խաչի ։

Ո՞չ ապաքէն այս փրկչական հրաւէրներու գեղեցիկ պատասխանն է այն մխիթարական և քաջալերական տողերը, որ Խաչի շարականաց իւրաքանչիւր տան մէջ կը կրկնուին. — Եկէ՛ք ժողովուրդ, երկիրպագենք Քրիստոսի Աստուծոյ, որ Խաչիւ պարգեւ շնորհեց աշխարհի ։ Եկէ՛ք, յաղթական և նոր օրհնութիւն երգենք Քրիստոս Թագաւորին, որ իւր Խաչիւ յաղթեց աշխարհի և ճանապարհ բացաւ մեզ յաղթութեան ։ Եկէ՛ք, ժողովուրդ, սուրբ Խաչն օրհնենք, որ մեր փրկութեան համար կանգնեցաւ ։ Այսպիսի իմաստներով զեղուն են Խաչի շարականները, որ յայտնապէս կը քարոզեն հեղինակի քրիստոնէական զգացմանց կատարեալ զարգացումն ։

Սահակ կաթողիկոսով կը վերջանան Զդ և Էդ. դարերու մատենագիրները, որոց անուն-

ները և գրուածքները նշանակեցինք . սակայն կը ցաւինք որ շատերու վաստակները տը-պագրուած չը լինելուն և ձեռագիրներն առ-ձեռն չունենալուն պատճառաւ՝ չը կարա-ցինք աւելի ընդարձակ ծանօթութիւն տալ ։



# ՉՈՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

Հայաստանեայց Եկեղեցւոյ Ցունականութենէ եւ Մահմետականութենէ կրած հալածանքներէն մինչեւ կաթողիկոսական Աթոռոյ փոխադրութեան եւ բաժանման ներքին յուզումներն ։

## 640–1080

## Ա.

*Ընդհանուր ակնարկ այս Շրջանին վրայ. — Արշաւանք Արաբացւոց 'ի Հայաստան. — Կաթողիկոսութիւն Ներսէսի Շինողի. — Ժողով 'ի Դուին. — Յարձակումն Արաբացւոց 'ի Հայաստան. — Կրօնական հալածանք Կոստանդին կայսեր Յունաց. — Ժողով 'ի Դուին, — Ժողով 'ի Մանազկերտ. — Հաստատութիւն տօնի Վարագայ Ս. Խաչի. — Կաթողիկոսունք Անաստաս, Իսրայէլ և Սահակ Ձորափորեցի. — Տառապանք Եկեղեցւոյն Հայոց 'ի Յունաց և 'ի Հագարացւոց. — Կալանաւորութիւն Սահակ կաթողիկոսի և Թուղթ աղաչանաց առ Մահմետ զօրավար. — Կաթողիկոսութիւն Եղիայի Արճիշեցւոյ. — Կոչմ ոստիկան և. այրումն Նախարարաց և ժողովրդոց յեկեղեցին Նախիջեւանի. — Նահատակութիւն Վահանայ Գողթնացւոյ. — Երթ Եղիա կաթողիկոսի յԱղուանս ։*

ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՆ պարսկական մոգակրօնութենէն կրած հալածանքներէն աւելի սաստիկ հալածանքներ կը կրէ Արաբացի Խալիֆայից, Ամիրապետաց և Ոստիկանաց տիրապետութեան ժամանակ։ Հազարներով և բիւրերով սպանութիւնք, գե-

Digitized by Google

րեվարութիւնք, և ընդ նմին հրձգութիւնք և աւերմունք դարերով կը շարունակին Հայաստանի մէջ։ Ցա՛ւ է ասել, որ քրիստոնեայ Յունաց ատելութիւնն եւս Մահմետական հարստահարութեան հետ անընդհատ կը զայրանայ Հայաստանեայց Եկեղեցւոյ զաւակաց դէմ և մեծամեծ վրդովմանց և աղէտից պատճառ կը դառնայ։ Հայոց իշխաններն ու եկեղեցական հովիւները, ժողովրդեան և Հայրենեաց անդորրութեան համար կը ստիպուին երբեմն Յունաց կայսերներուն դիմել և երբեմն արաբացի Ամիրապետաց, բայց երբէք երկիրը տեւական խաղաղութիւն չըստանար։ Թէ՛ Յոյնք և թէ՛ Արաբացիք միշտ կը ջանան Հայոց ազգն ու Եկեղեցին ստրկաբար հպատակեցնել և քաղաքական ազատութեան հետ հոգեւոր ազատութիւնն եւս բառնալ։ Այս ժամանակաց մանրամասն դէպքերը, որոնք սոսկումն կը պատճառեն, Ազգային Պատմութեան կը թողունք, և միայն Եկեղեցւոյն հասած հարուածները կը պատմենք. Թէ եւ գիտենք, որ անհնարին է բաժանել Ազգային և Եկեղեցական Պատմութիւնը, ըստ որում երկուքն շարունակ մի հոգի և մի մարմին կազմած են և Հայոց դիմադրութիւնն ու կրած կոտորածներն առաւել խղճի և կըրօնի ազատութեան համար եղած նահատա-

կուլթիւններ են, քան թէ աշխարհային իշխանութեան համար եղած պատերազմներ:

Մինչդեռ քաղկեդոնական հրապուրանքները կը յուզին Եզրի կաթողիկոսութեան ժամանակ՝ Արաբացիք Տարօն կ'արշաւեն և բազմաթիւ Հայք կը կոտորեն, որոնք, հաւատոյ պաշտպանութեան համար, Վահան Կամսարականի առաջնորդութեամբ դէմ ելած էին, որով և կոտորածի տեղին Սուրբ Բանակ կը կոչուի: Տարօնէն կ'արշաւեն ի Դըւին, ուր էր կաթողիկոսական աթոռն, և Եզր վախճանած՝ տակաւին կաթողիկոս չէր ընտրուած: Ահագին աւերմունքներ և կոտորածներ կը հասցնեն, 12,000 հոգի կըսպաննեն և 35,000 հոգի գերելով՝ կը դառնան յԱրաբիա: Տակաւին անկելոց դիակները անթաղ՝ կը ժողովին Հայք՝ Տայոց Ներսէս եպիսկոպոսը կաթողիկոս ընտրելու, բայց նա, Եկեղեցւոյ և Ազգի դառնաղէտ վիճակէն զարհուրելով, կը հրաժարի: Ի վերջոյ Թէոդորոս Ռշտունւոյ և այլ նախարարաց աղաչանքէն ստիպուելով՝ կ'ընդունի Ազգի առաջարկութիւնը և կաթողիկոս կը ձեռնադըրւի: Նորընտիր հայրապետը լալով կը թաղէ անկեալ դիակները, և ապա կըսկսի քանդուած տաճարները նորոգել և եկեղեցիներ շինել ի Վաղարշապատ և յԱրտաշատ, որոց համար և Շինող կը կոչուի:

•

Digitized by Google

Ներսէս, (645 ին) իւր կաթողիկոսութեան Ջդ տարին, եկեղեցական ինչ ինչ խնդրոց համար, ժողով կը գումարէ Դունայ մէջ, ուր կը հաւաքուին 70 եպիսկոպոսունք բազմաթիւ եկեղեցականք և իշխանք։ Այս ժողովին մէջ նախ կը մերժուի քաղկեդոնական ժողովը, որոյ յուզած երկպառակութիւնքը տակաւին կը շարունակուէին, եկեղեցական ժառանգաւորաց պարտուց համար կանոններ կը խմբագրուին և ապա ընտրութիւն կը լինի Շարականաց, որոց թիւը խիստ բազմանալով տեղի տուած էր ժամերգութեան խանգարման և երկարաձգութեան։

Հագարացիք վերստին կը յարձակին ի Հայաստան և Հայք հպատակիլ կը խոստանան, եթէ ազատ թողուն իրենց Կրօնը և Եկեղեցին։ Սակայն Յոյնք կը կառաղին Հայոց հպատակութեան վրայ, և Կոստանդին կայսրն բազմաթիւ զօրքով Հայաստան կը դիմէ սպառասպուռ ջնջել ազգը։ Հայք յերկիւղէ մտերմութիւն կը խոստանան Յունաց (և այս մտերմութեան լուրն յետ ժամանակաց Արաբիա հասնելով Ամիրապետը Հայոց 1775 պատանդները կոտորել կը տայ), սակայն կայսրն այս խոստումով չը բաւականանալով և Հայոց նեղ վիճակը յարմար առիթ հարելով իւր հետ բերած քահանայից կը հրա-

մայէ պատարագել և զՆերսէս կաթողիկոսն կըստիպէ հաղորդիլ ըստ յունական արարողութեան, որուն ակամայ կը հնազանդի խեղճ հայրապետն. բայց եպիսկոպոսներէ մին Հաղորդութեան համար կ'ընդդիմանայ կայսեր և պատճառ կը բերէ, որ կաթողիկոսի հաճութիւնն ևս ակամայ է, վասն զի ինքն յատուկ ժողովով մերժած է քաղկեդոնիկութիւնն։

Կայսրը բազմաթիւ զօրք կը թողու Հայաստանի մէջ, որպէս զի զինու զօրութեամբ ազգը յունական ծիսից վարժեցնեն։ Հայք այնչափ կը զզուին այս զօրականաց անարգական և լկտի վարմունքէն, որ կըստիպուին քաղկեդոնիկութիւնն և անհաւատութիւն համանուն ճանաչել։ Զօրական վերակացուները կը բողոքեն կայսեր, և նա սպառնալեօք հրովարտակ կը գրէ Հայոց հայրապետին և նախարարաց։ Այս հրովարտակին համար վերստին ժողով կը գումարուի Դուինայ մէջ, ուր բոլոր ժողովական բազմութիւնը միաբերան կ'աղաղակէ. «Մեք նոր աւանդութիւն ոչ ընդունիմք, զոր ինչ ընկալեալ եմք վարդապետութիւն հաւատոյ յառաջելոց մերոց 'ի Թադէոսէ և 'ի Բարդուղիմէոսէ և 'ի սրբոյ Լուսաւորչէն և յերից ժողովոց և 'ի սուրբ Թարգմանչաց մերոց, զայն միայն ունիմք հաստատուն, զայլ

ինչ ոչ կարեմք յանձն առնուլ»։ Եւ կայսեր վրայ թուղթ կը գրեն և կ'աղաչեն, որ թոյլ տայ իրենց հաւատոյ մէջ մնալու, ինչպէս Պարսից թագաւորներն Կաւատ և Խոսրով թոյլ տուեր են։

Այս թղթէն յետոյ Յունաց վերակացուքն եւս առաւել կը նեղեն Հայերն և Ներսէս իւր հայրապետութենէն կը հրաժարի և Յովհաննէս Մանազկերտացին կը տեղապահէ։ Յովհաննէս, մայրենի եկեղեցւոյ նախնականութեան նախանձով վառուած, տեսնելով թէ յունական սովորութիւններ կը սպրդին տեղ տեղ և ինքն չէ կարող յայտնի ժողով գումարել Դունայ մէջ, ուր կը բնակէր Յունաց զօրքն, կը հեռանայ Մանազկերտ և ժողովով կը պատուիրէ իւր հօտին անփոփոխ պահպանել նախնական աւանդութիւնքն, ինչպէս են՝ Հաղորդութեան Խորհուրդն (անջրախառն և անխմոր), Ծննդեան և Յայտնութեան տօնի կատարման ժամանակն (6 յունուարի), և պահոց հայկական առանձին սովորութիւններն։

Ներսէս վեցամեայ հրաժարմանէն զկնի վերստին կը շարունակէ իւր հայրապետութիւնն և կը հաստատէ տօնախմբութիւն Վարագայ Ս. Խաչի, որ Վարագայ լերան վրայ լուսեղէն նմանութեամբ երեւեցած էր

Digitized by Google

Թոդիկ ճգնաւորին (1)։ Ներսէս (661) կը վախճանի և ընտրութեամբ Եզրին տեղը կը յաջորդէ նորա սենեկապետն Անաստաս Ակոռի գեղջէն ։ Աս հիւրանոցներ և մենաստաններ կը հաստատէ քանի մի տեղ, (որուն աջակից կը լինի Գրիգոր Մամիկոնեան, Արագածոտն լերան ստորոտն Արուճ աւանի մէջ նոյն օրինակ շէնքեր կառուցանելով) և Անանիա Շիրակացւոյն կը յանձնէ Հայոց Տոմարը կատարելագործել, որոյ ինչ ինչ խանգարմունքներն զգալի էին, բայց տակաւին գործոյն վախճան չեղած՝ ինքն կը վախճանի և տեղը կը յաջորդէ Իսրայէլ Վանանդեցի, Աթըմսոյ գեղջէն, որ ներկայ եղած էր Դունայ ժողովին, Ներսէս Շինողի հայրապետութեան ժամանակ ։ Իսրայէլ տասնամեայ կաթողիկոսութենէն զկնի կը վախճանի և կը յաջորդէ Սահակ Ձորափորեցի, (677)։

Սահակայ հայրապետութեան ժամանակ աղէտները կը սաստկանան ։ Մի կողմէն կը յարձակին Խազիրք, մի կողմէն Յուստինի-

(1) Ազգային աւանդութիւնը կը պատմէ, որ այս խաչը պահուած էր Վարագայ լերան մէջ, Հռիփսիմեանց կուսանաց հալածանաց ժամանակէն. բայց որովհետեւ Գիւտ խաչին Մեծին կոստանդիանոսի օրով եղած է, Հռիփսիմեանց նահատակութենէն զկնի. ուստի կ'աւանդուի որ յԱռաքելոց ժամանակէն մասն ինչ խաչափայտին ձեռքէ ձեռք անցնելով հասած է Հռիփսիմեանց, որոնք իրենց փախստեան ժամանակ ծածկած են Վարագայ լերան մէջ։



Digitized by Google

անոս Բ․ կայսրն Յունաց բազմաթիւ զօրք կ'ուղարկէ Հայաստան, որք հրով և դեռութեամբ կը քանդեն Հայաստանի 25 գաւառներն և 8,000 տուն գերելով կը փախցնեն յօտար երկիր, և միւս կողմէն Հագարացիք, Մոհմատ զօրավարի առաջնորդութեամբ, կ'ապատակեն մեր երկիրն, և ժողովուրդը դառն հարուածներէն ստիպուած հպատակութիւն կը խոստանայ։ Սակայն Յուստինիանոս առաւել զայրանալով այս հպատակութեան վրայ՝ ինքնին զօրօք Հայաստան կ'արշաւէ, Սահակ կաթողիկոսը հինգ եպիսկոպոսաց հետ կը կալանաւորէ, և ապա արձակելով խոստիւ հրամաններ կը տայ և կը դառնայ 'ի Պօլիս պատանդներով հանդերձ։

Հայաստանեայց Եկեղեցին այսպէս կը տառապի յունական և հագարական երկու սուրին մէջ, իշխանք և կաթողիկոսունք կը շուարին և կը տատամսին։ Յուստինիանոսի գործած անգթութիւններէն մի քանի տարի յետոյ արաբացի Ամիրապետն՝ Աբդլլա անուն զօրավար մի կը ղրկէ, որ նախ քաղցրութեամբ կը վարի, ապա չարերը կը գերէ, Սահակ կաթողիկոսը շղթայակապ Դամասկոս կ'առաքէ և Արարատեան գաւառի բոլոր եկեղեցեաց սպասները կը կողոպտէ։ Կը նահատակէ Դաւիթ Դունեցի, որ պարսիկ

Digitized by Google

զարմէ էր և 'ի հայ մօրէ, և Անաստաս կաթողիկոսի ժամանակ, Գրիգոր Մամիկոնեանի կնքահայրութեամբ քրիստոնեայ դարձած էր և 'ի Դունին նահատակուելուն պատճառաւ՝ Դունեցի կը կոչուի:

Աբդըլլայէն զկնի՝ կը դրկուէ 'ի Հայաստան Մոհմատ Ոգբայ, Ամիրապետէն հրաման ունենալով, եթէ հնար է Հայ ազգը իսպառ ջնջել: Սահակ կաթողիկոսն, Դամասկոսի մէջ կալանաւորուած, այս աղէտալի գոյժն լսելով, կը ցանկայ Մոհմատին հետ տեսնըուիլ և հրաման առնալով, չղթայակապ ընդառաջ կ'ելնէ զօրավարին. սակայն ճանապարհին հիւանդանալով՝ կը վախճանի: Երանելի հայրապետը հիւանդ ժամանակ աղաչանաց գիր կը գրէ և կը պատուիրէ մեռած ժամանակը իւր ձեռքը դնել: Մոհմատ, հայրապետի վախճանը լսելով, ինքն տեսութեան կը գայ. ողջունելով՝ աղաչանաց գիրը ձեռքէն կ'առնու իբրեւ 'ի կենդանւոյ: Անգըթութիւնը կը խոնարհի կարեկցութեան առջեւ, հազարացի զօրքերով երանելոյն մարմինը Հայաստան կ'ուղարկէ Մոհմատ և կը խոստանայ գրած աղանչանքը կատարել, որով և Ամիրապետի հրամանը, Հայ ազգը ջնջելու համար, 'ի բաց կը թողու:

Սահակին կը յաջորդէ Եղիա Արճիշեցի, Բզնունեաց գաւառէն (704). Սորա կա-

Թողիկոսութեան ժամանակ, անլուր չարիք կը գործէ Հայաստանի մէջ Կաշմ ոստիկանը, որ բոլոր նախարարները Նախիջեւանի եկեղեցին կը գումարէ, որպէս թէ խաղաղութեան դաշն կապելու համար, սակայն յետոյ անգթաբար եկեղեցին կը հրդեհէ և բոլոր բազմութիւնը հրոյ ճարակ կը տայ։ Անմեղ զոհերը կը ճենճերին լափլիզող բոցերու մէջ, ճիչն ու աղաղակը մինչեւ երկինք կը բարձրանան և 'ի վերջոյ եկեղեցւոյ փլատակներուն տակ կը փոշիանան, եկեղեցւոյ ազատութիւնն սուրկութեան չը մատնելու համար։ Անգութ բռնաւորներն այս տեղէն կը դիմեն Դունայ վրայ, կ'աւերեն և կ'ապպատակեն, շատ այր և կին կը գերեն և շատերը կը նահատակեն չուրանալու համար, ինչպէս էր Վահան Կամսարականի Շուշան դուստրն։

Այս դառնաղէտ հալածանքներէն յետոյ Հագարացիք բոլորովին կը տիրեն Հայաստանին, Օմարի Ամիրապետութեան ժամանակ, և աշխարհի կառավարութիւնը Ոստիկանաց ապաստան կը լինի։ Արաբիայէն կը դառնան Հայոց կենդանի մնացած գերիները, ընդ որս և Վահան Գողթնացի, Գողթանայ տեառն Խոսրովի որդին, որ 'ի տղայութեան բռնի տաճկացած լինելով կրկին իւր քրիստոնէութիւնը կը շարունակէ,

Digitized by Google

տակայն յետ ժամանակաց կը կոչուի Ամիրապետէն և Ռուծափ քաղաքի մէջ կը գլխատուի հաւատոյ մէջ հաստատուն մնալուն համար։

Եղիա կաթողիկոս, որչափ ժամանակը և դէպքերը կը ներեն, հայրապետական ծանր պարտքերը կատարելու կը ջանայ, կը ճանապարհորդէ Աղուանք՝ ինչ ինչ խռովութեան պատճառաւ, տեղւոյն Սիմէոն նորընտիր կաթողիկոսի հետ ժողով կը գումարէ եկեղեցական բարեկարգութեան համար և մօտ 15 ամեայ կաթողիկոսութենէն զկնի՝ կը վախճանի և իրեն կը յաջորդէ (718) Յովհաննէս Գ. Օձնեցի, Տաշրաց գաւառէն, Իմաստասէր մականուանեալ։



## Բ.

Կաթողիկոսութիւն Յովհաննու իմաստասիրի . — Պաւղիկեանք , Արեւորդիք և Եղիւտք . — Ժողով ՚ի Դուին . — Յովհան իմաստասէր առաջի Ամիրապետին . — Կաթողիկոսունք՝ Դաւիթ Ա. և Տրդատ Ա. — Տառապանք ՚ի Հագարացւոց . — Կաթողիկոսունք՝ Տրդատ Բ. և Սիոն . — Ժողով ՚ի Պարտաւ Աղուանից . — Եսայի կաթողիկոս . — Նահատակութիւն Արծրունի իշխանացն Համազասպայ և Սահակայ . — Բողոք առ Ամիրապետն . — Կաթողիկոսունք՝ Ստեփաննոս Ա. Յովաբ , Սողոմոն , Գէորգ Հոլորբեցի . Յովսէփ Բ. և տառապանք իւր . — Կաթողիկոսունք՝ Դաւիթ Բ. Յովհաննէս Ովայեցի . — Տառապանք Եկեղեցւոյն և Ազգի ՚ի Բուղայ Ոստիկանէ . — Նահատակութիւնք . — Ստեփաննոս կոն , Սմբատ խոստովանող . — Կաթողիկոսութիւն Զաքարիայի Կոտայեցւոյ ։

ՅԱՌԱՋՔԱՆ Յովհան իմաստասիրի հայրապետութեան ժամանակի դէպքերու և եկեղեցական վիճակի վրայ խօսիլը՝ կարեւոր կը համարինք ըսել, որ Ներսէս Շինողէ ժամանակէն ՚ի վեր Հայաստանի հարստահարութեան միջոցին քանի մի տեսակ նորամուտ աղանդներ յղացած էին , քաղկեդոնականաց յուզած տարապարտ վիճմանց և Մանիքեցի Պաւլիկեանց դարանամուտ որոմնացանութեանց շնորհիւ , որոց հակած էին և ոմանք պարզամիտ Հայերէն ։ Այս մոլորութեանց հետախուզութիւնը և նկարագրութիւնը մեր նպատակէն արտաքոյ է ,

Digitized by Google

վան զի ժամանակակից պատմութեանց նայելով խիստ այլանդակ խոտորմունքներ կը պարունակեն ։ Միայն այսչափ հարկ կը համարինք ասել, որ սոյն խումբը զանազան ազգերէ կազմուած էր և հետեւապէս տհաս մնաց զանազան քմածին խառնուրդէ, որոնք մեր ազգի բազմատագնապ վիճակը ապահով մինչ համարելով՝ զանազան երկիրներէ ժողոված դարանակալած էին Գ րկայ լճակին մօտ ։ Սոյն մէկ մասն Արեւորդիք կը կոչուէին, գուցէ արեգակն և լուսին յօգնութիւն կոչելու համար. ոմանք Եղերք, Հագարացւոց կրօնքէն քանի մի բան ընդունելուն համար. և այսպէս բազմանալով սկսած էին Ասորոց, Արաբացւոց և Հայոց աշխարհին մէջ տեղ տեղ յուզել պարզամիտներու սիրտը ։ Թողունք ասել քաղկեդոնականաց բորբոքած խռովութիւնքը, որ երկար ժամանակէն 'ի վեր կը շարունակուէր ։

Յովհան Իմաստասէր երբ հայրապետութեան աթոռը կը բարձրանայ, առաջին մտածութիւնն կը լինի այս ներքին չարեաց առաջն առնուլ, որ արտաքին հալածանքներէն առաւել կորստական էր ։ Իւր հայրապետութեան երկրորդ տարին ժողով կը գումարէ Դուինի մայրաքաղաքին մէջ, և հանդիսականաց առջեւ ընդարձակ ատենաբանութեամբ կը սկսի պատկերացնել

Digitized by Google

Եկեղեցւոյ վիճակը, կ՚առաջարկէ երեսուն երկու կանոններ, որոնք կ՚ընդունուին ժողովականներէն. կը մերժուի նաև սոյն ժողովին մէջ քաղկեդոնիկութիւնն, որ տեղ տեղ ըսպրդած էր Յունաց բաժնի Հայոց մէջ (1), և ապա կ՚արձակուի ժողովը.

Ինչպէս Յովհան Իմաստասէրի, նոյնպէս և այլ ազգային ժողովական կանոնաց վրայ չենք ուզեր խորհրդածել. վասն զի չունինք առ ձեռն նախնական ձեռագիրներ և Վենետիկեան տպագրութեանց ևս չենք կարող անկասկած հաւատ ընծայել: Ուրեմն կանոնական քննութիւնը զանց առնելով՝ պատմութեան թելը շարունակենք:

Վլիթ ոստիկան կը դառնայ առ Ամիրապետն և կը ջատագովէ զՅովհան Իմաստասէր, այնպէս որ Ամիրապետն կը փափաքի իր աչքով տեսնել և առ ինքն կը կոչէ զՀայրապետն: Յովհան Իմաստասէր կ՚երթայ Ամիրապետին և իր պատկառելի կերպարանքով, շքեղ հագուստով և փայլուն վարմունքով ազդեցութիւն կ՚առնէ Հագարացի տիրապետին վրայ և մեծ ընդունելութեամբ կը մեծարուի: Սակայն Ամիրապետն արտաքոյ կարգի շքեղութիւն նշմարելով Հայրապետի վրայ և քրիստոնէական կրօնի քարոզած պարզութեան և աշխարհային անփառասիրու-

(1) Ստեփան Ասողիկ. Միխայէլ Ասորի.

Digitized by Google

թեան վրայ մասնաւոր ծանօթութիւն ունենալով՝ կը հարցնէ Իմաստասիրին. «Ի՞նչ է պատճառն, որ ձեր կրօնքը պարզութիւն և անձնուրացութիւն կը քարոզէ, և սակայն դուք չքեղութեամբ կը փայլիք»: «Պատճառն այն է, կը պատասխանէ Հայրապետն, որ առաջին դարուց քրիստոնէական սքանչելիքները չեն կատարուիր մեր ձեռքով, և ժողովուրդն եւս մեր արտաքին կերպարանքէն և հանդերձէն միայն կ՚ակնածէ. ուստի այսպէս կը զգեստաւորիմք, որ գոնէ այսու նուաճեմք ժողովուրդն 'ի բարին»: և ապա մեկուսանալով՝ կը ցուցնէ Ամիրապետին 'ի ներքուստ զգեցած խարազն, որով և կը համոզէ թէ 'ի ներքուստ դարձեալ կը պահպանեն կրօնի պատուէրը, առանց անձնատուր լինելու փափկասիրութեան: Ամիրապետը կը զարմանայ, մեծ պարգեւներով կ՚արձակէ, և 'ի պատիւ այս սրտաշարժ տեսակցութեան անդորրութիւն կը խոստանայ Հայաստանին:

Յովհան Իմաստասէր 11ամեայ կաթողիկոսութենէն զկնի կը վախճանի և (729) տեղը կ՚ընտրուի Դաւիթ Ա. Կոտէից գաւառէն Արամոնս գիւղէն:

Դաւիթ կաթողիկոս սաստիկ կը նեղէ Մահմատ խռովարար ոստիկանէն և ստիպուած կ՚առանձնանայ իւր գեղն, կը կառու-

ցանէ հոյաշէն եկեղեցի գեղեցիկ բնակութանօք և յետ քանի մի ժամանակաց վերստին Դուին կը դառնայ և 12ամեայ կաթողիկոսութեան պաշտօն վարելէն զկնի՝ կը վախճանի։

Դաւթին կը յաջորդէ Տրդատ Ա. Վանանդ գաւառի Ոթմսոյ գիւղէն, որոյ պարկեշտասէր վարուց վրայ գովեստիւ կը խօսին պատմիչք։ Տրդատայ կաթողիկոսութեան ժամանակ Հագարացիներէն սաստիկ տառապանքներ կը հասնին Հայաստանին։ Կը հրամայուի եկեղեցեաց խաչերը վերցնել, գանձատուները կնքել, սուրբ սպասները վաճառել, գիշերային պաշտամունքներն արգելուլ, ուսումն դրոց խափանել, մօրուաները գերծուլ, երկար գլխարկներ ծածկել արտաքոյ հայրենի սովորութեան, և կապարեայ կնիք կախել իւրաքանչիւր պարանոցէ ՚ի նշան ստրկութեան։ Այս չարիքները կը գործուին ինչպէս Աբդլազիզի, նոյնպէս և Եզիտի ոստիկանութեան ժամանակ։ Այնօրինակ հարստահարութենէ ստիպուած՝ կաթողիկոսն և նախարարները բողոք կը բառնան առ Ամիրապետն, բայց շահ չեն ստանար։ Ուստի և ողորմելի կաթողիկոսն այս աղէտներէն և սրտացաւութենէն հիւանդանալով կը վախճանի անմխիթար։

Տրդատ Վանանդեցւոյն կը յաջորդէ Տրդատ Բ. Դասնաւորեցի, Տուրուբերան գա-

Digitized by Google

ւառէն, ունենալով իւր կաթողիկոսարանի մէջ մի անուանի եպիսկոպոս Սիոն անունով։

Սիոն, որ արդէն յայտնի էր իւր հմտութեամբ եւ առաքինութեամբ, Տրդատի մահէն զկնի (767) կաթողիկոս կը ձեռնադրուի Դուին քաղաքի մէջ փառաշուք հանդիսիւ, որուն ներկայ էր Սիւլէյման ոստիկանը։

Սիոն Աղուանից Պարտաւ քաղաքի մէջ ժողով կը գումարէ, ուր ցականէ յանուանէ ներկայ էին Գէորգ՝ Ոստան եպիսկոպոս, Սատովկ՝ Սիւնեաց եպիսկոպոս, Եսայի Գողթան եպիսկոպոս. այլովք հանդերձ. և քանի մի իշխանք — Սահակ պատրիկ Բագրատունի, Ատրներսեհ Սիւնեաց տէր, Սմբատ Բագրատունի, Մերուժան Արծրունի, Վահրամ Խորխոռունեաց տէր, Արտաւազդ Աշոցայ տէր, Վահան Վանանդայ տէր, Սահակ Գողթան տէր և այլք, — որոց հաւանութեամբ կը խմբագրուին 24 կանոնք, (որոց մեծ մասն առաջուց կային) գլխաւորապէս հովուաց և առաջնորդաց պարտուց վրայ, և այս Ս. Գրոց ընթերցանելի Գրքերը կ'որոշուին։

Հայք դարձեալ կը նեղուին Հագարացիներէն, 700 հոգի կը կոտորուին և 12,000 կը գերուին։ Կաթողիկոսը կը վախճանի և կը յաջորդէ Եսայի, Նիգ գաւառի Եղիպատ-

րուշ գիւղէն ։ Նշայիի համար կը պատմուի՝ որ մայրն մանուկ հասակէն կը սնուցանէր Պոլնայ կաթողիկոսարանի դրանը, և երբ կը հարցնէին՝ թէ ինչո՞ւ այդպէս բացօդեայ կը սնուցանես և տուն չես մտներ, կը պատասխանէր թէ, «Կաթողիկոսութեան համար կը սնուցանեմ, և արդէն իսկ տառապանաց կը վարժեցնեմ»։ Նշ արդարեւ ազգի և եկեղեցւոյ տառապալից օրերուն մէջ՝ անձնագիր հայրապետներն ամենէն աւելի տանջանքներ կրած են ։

Նշայիի կաթողիկոսութեան ժամանակ հագարական անգթութիւնքը կը զայրանան ․ Հարոն Ամիրապետի հրամանաւ և Եզիտ ոստիկանի (1) ձեռքով Արծրունեաց երեք իշխաններն — Համազասպ, Սահակ և Մերուժան տանջանաց կը մատնուին և չարաչար կը խոշտանգուին՝ հաւատը ուրանալու. վերջինը կ'ուրանայ, իսկ առաջին երկուքն ըսքանչելի արիութեամբ միմեանց խրախոյս կարդալով կը գլխատուին Յայտնութեան տօնին ։ Նմանապէս քառասունէն աւելի քահանայք և կրօնաւորք կը խողխողուին Բագաւան գիւղի մէջ, և տեղւոյն Ս. Գրիգոր անուամբ եկեղեցին կը կողոպտուի ։ Այսքան տառապանաց և հարկաց ծանրու-

(1) Ըստ Ղեւոնդ պատմագրի — հրամանաւ Մուսէի և ձեռամբ Խուզիմայ ։

Digitized by Google

թեան համար Նախարարք Եսայի կաթողիկոսին հետ միասին կը բողոքեն Ամիրապետին, բայց անօգուտ ։ Հայրապետն կը փախճանի, եկեղեցւոյ ստացուածքն ու սպաները քննութեան կ՚առնուին Հագարացի հրամանատարի ձեռքով, եկեղեցականներն տուեան կը կոչուին, որ բան չը ծածկեն ։ Ոսկեղէն ու արծաթեղէն անօթներն, ականակուռ զգեստներն և Թագաւորաց հանդերձները, որոնք պահուած էին գանձարանի մէջ, հրամանատարի արիւնարբու ագահութեանը զոհ կը լինին, որ կ՚իւրացուցանէ պատուականները և ընտիրները, իսկ մնացեալներն ՚ի պահեստի կը դնէ ։

Եսայիին կը յաջորդէ (788) Ստեփանոս Ա. Դունեցի, որ ըստ պատմութեան Ղեւոնդի կաշառքով կաթողիկոսանալով՝ կը ստիպուի ՚ի վերջոյ բոլոր ստացուածքները ծախել և գրաւ դրած գիւղերն ու ծառաներն ազատել ։

Ստեփանոս երկու տարի հազիւ կը մնայ կաթողիկոսական աթոռոյ վրայ՝ կը վախճանի և տեղը կը յաջորդէ Յովաբ կամ Յոբ Դունեցի, որ 16 ամիս միայն կ՚աթոռակալէ ։

Յովաբին կը յաջորդէ Սողոմոն Գառնեցի Գեղարքունի գաւառէն, որ մենաւորական կեանք վարած էր ցծերութիւն Մաքենոցաց (1) կամ Մաքենեաց մենաստանի մէջ ։

(1) Այս անունը եկած էր միաբանից հագուստէն, որ

բուշ գիւղէն ։ Եսայիի համար կը պատմուի՝ որ մայրն մանուկ հասակէն կը սնուցանէր Դունայ կաթողիկոսարանի դրանը, և երբ կը հարցնէին՝ թէ ինչո՞ւ այդպէս բացօդեայ կը սնուցանես և տուն չես մտներ, կը պատասխանէր թէ, «Կաթողիկոսութեան համար կը սնուցանեմ, և արդէն իսկ տառապանաց կը վարժեցնեմ»։ Եւ արդարև ազգի և եկեղեցւոյ տառապակիր օրերուն մէջ՝ անձնադիր հայրապետներն ամենէն աւելի տանջանքներ կրած են ։

Եսայիի կաթողիկոսութեան ժամանակ հագարական անգթութիւնքը կը զայրանան ։ Հարոն Ամիրապետի հրամանաւ և Եզիտ ոստիկանի (1) ձեռքով Արծրունեաց երեք իշխաններն — Համազասպ, Սահակ և Մերուժան տանջանաց կը մատնուին և չարաչար կը խոշտանգուին՝ հաւատը ուրանալու. վերջինը կ'ուրանայ, իսկ առաջին երկուքն ըսքանչելի արիութեամբ միմեանց խրախոյս կարդալով կը գլխատուին Յայտնութեան տօնին ։ Նմանապէս քառասունէն աւելի քահանայք և կրօնաւորք կը խողխողուին Բագուան գիւղի մէջ, և տեղւոյն Ս. Գրիգոր անուամբ եկեղեցին կը կողոպտուի ։ Այսքան տառապանաց և հարկաց ծանրու-

(1) Ըստ Ղեւոնդ պատմագրի — հրամանաւ Մուսէի և ձեռամբ Խուզիմայ ։

թեան համար Նախարարք Եսայի կաթողիկոսին հետ միասին կը բողոքեն Ամիրապետին, բայց անօգուտ ։ Հայրապետն կը վախճանի, եկեղեցւոյ ստացուածքն ու սպասները քննութեան կ'առնուին Հագարացի հրամանատարի ձեռքով, եկեղեցականներն ատեան կը կոչուին, որ բան չը ծածկեն ։ Ոսկեղէն ու արծաթեղէն անօթներն, ականակուռ զգեստներն և Թագաւորաց հանդերձները, որոնք պահուած էին գանձարանի մէջ, հրամանատարի արիւնարբու ագահութեանը զոհ կը լինին, որ կ'իւրացուցանէ պատուականները և ընտիրները, իսկ մնացեալներն 'ի պահեստի կը դնէ ։

Եսայիին կը յաջորդէ (788) Ստեփանոս Ա. Դունեցի, որ ըստ պատմութեան Ղեւոնդի կաշառքով կաթողիկոսանալով՝ կը ստիպուի 'ի վերջոյ բոլոր ստացուածքները ծախել և գրաւ դրած գիւղերն ու ծառաներն ազատել ։

Ստեփանոս երկու տարի հազիւ կը մնայ կաթողիկոսական աթոռոյ վրայ՝ կը վախճանի և տեղը կը յաջորդէ Յովաբ կամ Յոբ Դունեցի, որ 16 ամիս միայն կ'աթոռակալէ ։

Յովաբին կը յաջորդէ Սողոմոն Գառնեցի Գեղարքունի գաւառէն, որ մենաւորական կեանք վարած էր ցծերութիւն Մաքենոցաց (1) կամ Մաքենեաց մենաստանի մէջ ։

(1) Այս անունը եկած էր միաբանից հագուստէն, որ

Երբ կ՚առնէին ծերունւոյն ընտրութեան ժամանակ՝ թէ դու ծեր ես, ինչպէ՞ս պիտի երթաս Դուռն և աթոռակալես. պատասխանեց. «Երթամ, զի գեղապաճոյճ դեղով նկարողաց սեւել զիս ընդ այլ հայրապետան տամ յորմն եկեղեցւոյ» (1): Այսինքն կ՚երթամ, ոչ թէ հայրապետութեան համար, այլ իբրեւ սուտեր հայրապետաց, և կ՚երթամ մեռնելու համար, որով միայն պատկերս պիտի մնայ եկեղեցւոյ որմին վրայ (2). և արդարեւ մի տարիէն յետոյ վախճանեցաւ:

Սողոմոնի տեղը կ՚ընտրուի տէր Գէորգ (որ և Ճոլորբուկ) Աշտարակ կամ Օշական գիւղէն, որ երեք տարիէն զկնի կը վախճանի:

Գէորգին կը յաջորդէ Յովսէփ Գ. Արագածոտն գաւառէն: Սորա հայրապետութեան ժամանակ Խուզիմայ ոստիկանը կը ջանայ կաթողիկոսարանի կալուածները գրաւել, և երբ կաթողիկոսը սաստիկ կ՚ընդդիմանայ, կը ցանկայ ծախու առնել. բայց կաթողիկոսը կը պնդէ որ եկեղեցական կալուածները ծախելու իրաւունք չըկայ. վասն

մաքիններու. բուրդէ կամ սուէ էր սովորաբար:

(1) Յովհ. կաթողիկոս:

(2) Գուցէ սովորութիւն կար նոյն ժամանակ՝ եկեղեցւոյ պատին վրայ նկարել կաթողիկոսաց պատկերներն իբրեւ պատմական յիշատակարան:

Digitized by Google

զի մեծ մասը կոտորուած են յարատեւ պահպանութեան յիշատակագրերով: Ոստիկանք կարեվէր խոցուելով եղեռնական չարութեան կը դիմէ, երբ ծառայն ծածուկ կը սպանանէ և յետ քանի մի աւուրց յանցանքը Դունեցւոց վրայ կը ձգէ, կաթողիկոսն և այլ մարդիկ շղթայակապ կ'առնէ և կը նեղէ, և 'ի գինարեան կալուածները կը պահանջէ, բայց հայրապետը դարձեալ չը զիջանիր: Ի վերջոյ բանտէ հանել կը տայ, Ամիրապետի առջեւ ամբաստանութեան ենթարկուելու երկիւղէն, և կաթողիկոսական կալուածներէն բռնի իրեն կը գրաւէ Արտաշատ աւանը: Զանազան չարիքներ կը հասցնէ աւանդապահ հայրապետին, եղբայրը սպանել և ծովակը ձըգել կը տայ, և ողորմելի կաթողիկոսը վշտահարութենէն կը հիւանդանայ և կը վախճանի 11ամեայ հայրապետութենէն զկնի:

Յովսէփին կը յաջորդէ (806) Դաւիթ Բ. Կակաղեցի, Մազազայ գաւառէն, որոյ կաթողիկոսութեան ժամանակ կը նահատակուին Սահակ և Յովսէփ 'ի հայ մօրէ և 'ի պարսիկ հօրէ:

Դաւիթ 27 ամեայ կաթողիկոսութենէն զկնի կը վախճանի և տեղը կ'ընտրուի Յովհաննէս Ե. Ովայեցի, Կոտայից գաւառէն, Բագարատ Բագրատունւոյ պատրկութեան կամ վերակացութեան ժամանակ: Յովհան-

նիսի վրայ ապիրատ մարդիկ զրաբանութիւն կը յարուցանեն, որուն կ'անսայ և Բագարատ, ուստի և կաթողիկոսն ինքնին կը հրաժարի աթոռէն։ Բայց երբ զրպարտողաց մեղադրանքները քննութեամբ սուտ կ'ելնեն, կրկին կը վերակոչուի խնդրանօք ազգին և կը շարունակէ իւր պաշտօնը։

Յովհաննիսի կաթողիկոսութեան ժամանակ Ամիրապետի հրամանաւ Բուխայ արիւնարբու և անգութ բռնաւորը մեծաթիւ զօրքով Հայաստան կ'արշաւէ այն պայմանաւ, որ հայ իշխանները կալանաւորէ և Ամիրապետին ղրկէ, երիտասարդները (մանաւանդ վայելչահասակները եւ քաջաբազուկները) մահմետականութեան դարձնէ, իսկ միւսները սրամահ առնէ։ Բուխայ (850) Հայաստան մտնելով, արտաքոյ կարգի անգթութեամբ կըկատարէ Ամիրապետի հրամանը, ասպատակ կըսփռէ Սասունի և Տարօնի գաւառներուն մէջ, ուրիշ նախարարազանց հետ, Բագարատի Աշոտ և Դաւիթ որդիքն ու գերդաստանը և Արծրունեաց Աշոտ իշխանի կինն ու որդիքն Ամիրապետին կը ղրկէ, Վասպուրական նահանգի մէջ եւս, ինչպէս և 'ի Տարօն, շատերը տանջանքով յուրացութիւն կ'ըստիպէ և անխնայ կը կոտորէ։ Այնօրինակ և առաւել դժնդակ աղէտներու կը հանդիպին նմանապէս Արարատեան աշխարհն, Ու-

տի, Աղուանք և Դուին կաթողիկոսական աթոռանիստն, ուր անլուր արհաւիրքներէն սոսկալով ոմանք կը տկարանան հաւատոյ մէջ. բայց բազմաթիւ վայելչահասակ իշխանք և շինականք, երիտասարդք և կուսանք հաւատոյ հաստատութեան համար զէրար կը քաջալերեն, ՍՆոյուտ վան Բրխպութ, կը գոչեն և կը նահատակուին ուրախութեամբ. Այսպէս արիւնով կը ներկուի Հայաստանեայց Եկեղեցին — քրիստոնէական հաւատոյ բազմադարեան և բազմաչարչար Վկայուհին, — որոյ գլխին հալածանաց շանթեր և կարկուտներ կը տեղան. սակայն քրիստոնէական սիրով ամենուն կը գիմագրաւէ և արիւնաթաթաւ վէրքերով աննկուն կը մնայ իր կոչման մէջ։

Բուխա, անպատում կոտորածներէն զկնի բազմաթիւ կալանաւորներ Ամիրապետին կը ղրկէ, որոնք դարձեալ բանտից և տանջանաց կը մատնուին և շատերը կը մարտիրոսանան, որոց մէջ յայտնի են մանաւանդ Ստեփաննոս Կոն և Սմբատ, որ հաւատը չուրանալու համար՝ երկար ժամանակ բանտի մէջ կը մնայ և այն տեղ կը վախճանի, որ և այս մասին կը կոչուի Խոստովանող, որոյ որդի Աշոտէն, յետ սակաւ ժամանակի, կը սկսի Բագրատունեաց թագաւորական հարստութիւնը։

Բուխայի արիւնահոս ասպատակութեան

և աւերանաց ժամանակ Յովհաննէս կաթողիկոսն աթոռանիստը թողով և գաւառներու մէջ տառապեալ ժողովրդին այցելութեան և մխիթարութեան ելնելով կը հեւանդանայ Գեղարքունւոյ Մաքենոցաց մենաստանի մէջ և 22 ամեայ կաթողիկոսութենէն զկնի կը վախճանի ։ Իսկ Սմբատ, որ տակաւին Բուխային չէր ներկայացած, կ'աճապարէ և նոր կաթողիկոսի ընտրութեան համար ժողով կը գումարէ Երազգաւորս կամ Շիրակաւան գիւղի մէջ (որ միայն էր ապահով նոյն դառնադէտ միջոցին) ուր բազմաթիւ ժողովոյ հաւանութեամբ կ'ընտրըւի Զաքարիա Կոտայեցին, և մի աւուր մէջ (854ին) կը ձեռնադրուի սարկաւագ, քահանայ, եպիսկոպոս և կաթողիկոս ։ Քանզի կաթողիկոսութեան ընտրական իրաւունքն ամենեւին խտրութիւն չը դնէր եկեղեցականի և աշխարհականի մէջ, ըստ առաքելական սովորութեան Հայաստանեայց Եկեղեցւոյ, ինչպէս յայտնի է նոյն իսկ Լուսաւորչի և Մեծին Ներսիսի ընտրութեան պատմութենէն ։

Digitized by Google

## Գ.

*Դարձ գերեալ նախարարաց. — Թղթակցութիւնք Զաքարիա կաթողիկոսի Հայոց և Փոտ պատրիարքի Յունաց. — Ժողով 'ի Շիրակաւան. — կաթողիկոսութիւն Գէորգայ Գառնեցւոյ և Թագաւորութիւն Աշոտոյ. — Ակնարկ Բագրատունի Թագաւորութեան վրայ. — Գէորգ կաթողիկոս իբրև հաշտարար. — կալանաւորութիւն նորա. — Մաշտոց Բ. Եղիվարդեցի. — Յովհաննէս Դրասխանակերտացի. — կալանաւորութիւն նորա Յուսուփ ոստիկանէն. — Հալածանք և տառապանք 'ի Յուսուփայ. — Նահատակութիւն Սմբատայ խոստովանողի. — Պաշարումն Երնջակայ և կալանաւորութիւն Հայ տիկնանց. — Բարբարոսութիւնք Յուսուփայ և քրիստոնէական վկայութիւն բազմաց. — Տօն նահատակաց։*

ԶԱՔԱՐԻԱՅԻ ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒԹԵԱՆ *եօթներորդ տարին* (862) *գերուած և առ ահի հաւատոյ մէջ տկարացած նախարարները Հայաստան կը դառնան և Սմբատ խոստովանողի Աշոտ որդւոյ Իշխանաց Իշխան կարգուած ժամանակ՝ կըսկսին համարձակապէս իրենց քրիստոնէական կրօնքը պաշտել, որով և ըստ ասելոյ Յովհաննէս պատմաբան կաթողիկոսի՝ Եկեղեցին կըսկսի իւր զաւակաց դարձին և բարեպաշտութեան վրայ։ «Զայն հարսի և փեսայի լսելի լինէր. ծնան որդիս և արարին պտուղ»։*

*Սակայն այս միջոցին Կ. Պոլսոյ Յունաց Փոտ Պատրիարքը կըսկսի իւր առաջնորդաց*

ձեռքով նեղել յունական բաժնի Հայերն,
որուն համար և Զաքարիա կըստիպուի
թուղթ գրել առ Փոտ, մերժելով նորա կար-
ծիքները Հայոց դաւանութեան մասին և
կը հետեւցնէ, որ Հայք հետեւողք են ե-
րեք նախկին տիեզերական ժողովոց և Ս. Գը-
րիգորի Լուսաւորչին:

Փոտ երկու պատասխանական թուղթ
կը գրէ Զաքարիային և Աշոտին, որով Հա-
յաստանեայց Եկեղեցւոյ առաքելական անա-
րատ աւանդապահութիւնը գովելէն զկնի
կը յորդորէ 'ի միութիւն ընդ Յունաց: Այս
թղթոց պատճառաւ Զաքարիա ժողով կը
գումարէ Շիրակաւանի մէջ (862), ուր
կը գտնուի 'ի միջի այլոց և Նանա սարկա-
ւագ Ասորին, որ ժամանակակցաց մէջ հը-
մուտ համարուած էր: Այս ժողովը ստի-
պողական կերպարանք կ'առնու Յունաց կող-
մէն, որովհետեւ Փոտի թղթերը բերող
Նիկիոյ Վահան յոյն եպիսկոպոսն ինքնին եր-
կար ատենաբանութիւնն կ'առնէ, Քրիստոսի
մարդեղութեան խորհրդոյն վրայ և կանոն-
ներ կ'առաջարկէ, և յետ ժողովոյն կարծե-
լով թէ արդէն Հայք միաբանեցան ընդ
Յունաց, կը դառնայ 'ի Պոլիս: Բայց այս
ժողովի լուրը մեծ ալեկոծութիւն կը պատ-
ճառէ Հայաստանի մէջ և Տայոց Սահակ ե-
պիսկոպոսն (Մռուտ կոչեցեալ) 'ի դիմաց Ա-

Digitized by Google

շոտոյ Իշխանաց Իշխանին սաստիկ թուղթ կը գրէ Փոտին, նոյնպէս կը գրէ և Զաքարիա առ Վահան եպիսկոպոս, Ծննդեան տօնի կատարման ժամանակի համար։ Եւ այսպէս յունական կարծեցեալ միութիւնը մեծ ընդդիմութեան կը հանդիպի Հայոց կողմէն և ապարդիւն կըմնան հետամտողաց նենգ ջանքերը։

Զաքարիա իւր 21ամեայ կաթողիկոսութեան մէջ ազգի խաղաղութեանը խնամ կը տանէ, Ամիրապետէն անգամ կը պատուի գրաւոր երկասիրութիւններ եւս կը թողու. և ապա վախճանելով իրեն կը յաջորդէ ընտրութեամբ ազգին Գէորգ Գառնեցի, որ սնուած էր կաթողիկոսարանի մէջ։

Գէորգ Գառնեցւոյ կաթողիկոսութեան ժամանակ Աշոտ հանդիսիւ թագաւոր կ'օծուի, Անի քաղաքին մէջ, (885) թագ ըստանալով Ամիրապետէն և Յունաց Վասիլ (Արշակունի) կայսերէն, և օծադիրն կը լինի նոյն ինքն կաթողիկոսն. և այսպէս Արշակունեաց թագաւորական հարստութեան վերջանալէն 452 տարիէն զկնի կը կանգնի թագաւորական նոր հարստութիւն Բագրատունի ցեղէն, այսինքն այն ցեղէն, որ Քրիստոսի թուականէն շատ առաջ, Հրաչէի թագաւորութեան կամ նահապետութեան ժամանակ Հրէաստանէն գաղթելով և առան

ձին նախարարական ցեղ կազմելով Թագադիր ասպետութեան պատիւն ունէր Հայաստանի մէջ, ինչպէս յայտնի է ազգային պատմութենէն ։ Զօրացած էր այս ցեղը թէ՛ հարստութեամբ և թէ՛ իւր նշանաւոր նախարարաց և արի զօրավարաց մեծագործութեամբ ։ Սակայն այս Բագրատունի թագաւորական հարստութեան ժամանակ ոչ սակաւ կը տառապէր Հայաստանեայց Եկեղեցին որպէս և 'ի ժամանակս Արշակունեաց և Ռուփինեանց ։ Արտաքին խռովութեանց հետ կը յաճախեն և ներքին խռովութիւնք և այն Թագը, որ օտարաց ձեռքով տրուած էր Հայաստանին, երկու հարիւր տարի անդամ չը տեւեր, դարձեալ օտարաց ձեռքով կը բարձուի ։

Մեր նպատակէն արտաքոյ լինելով Բագրատունի Թագաւորութեան կարճատեւութեան վրայ երկարօրէն և հիմնովին խորհրդածել, միայն այսքանը կ'ասենք, որ օտարները Թագ տալով Հայաստանին՝ հետամուտ էին տեսակ մի քաղաքական ստրկութեան մէջ պահել Հայոց ազգը, ուստի եթէ կը գտնուէին ազգաշէն և եկեղեցաշէն Թագաւորներ, և կամ ազգի ինքնուրոյն և անկախ իշխանութեան ջանադիրներ, շուտով նոյն օտարները ուրիշ ստրկասէր իշխանի կամ նախարարի մի Թագ խոստանալով և նաեւ օ-

Digitized by Google

Ժանդակելով՝ կը յարուցանէին ներքին խռովութիւններ և կոտորածներ : Այս էր պատճառն որ երբեմն քանի մի իշխանք իրարու հակառակ Թագ. կը կապէին և իրարու դէմ կը զինէին : Ողորմելի Հայրապետները եւս, ինչպէս պիտի տեսնենք, ստիպուած էին երբեմն ներքին խռովութեանց հաշտութեան համար ջանալ, և երբեմն Հագարացւոց, Պարսից և Յունաց տիրապետաց անգթութիւնները մեղմելու աշխատիլ։ Վասն զի Ազգը և Եկեղեցին մի մարմին կազմելով՝ վնասն և հարուածները կրողը դարձեալ նոյն մարմինն էր :

Այսպէս ահա Սմբատ Ա Թագաւորի՝ Աբաս սպարապետի (որ կ՚ուզէր Թագաւորական իշխանութիւնը յափշտակել) և կուսակցութեան բաժնուած նախարարաց մէջ սաստիկ գժտութիւն կը ծագի, և Գէորգ կաթողիկոս իբրեւ հաշտարար մէջ կը մտնէ : Սակայն Աբաս զրպարտութեան կը մատնէ զՀայրապետն, եպիսկոպոսները նորա դէմ կը գրգռէ, կաթողիկոսութիւնը Եղիվարդեցի Մաշտոց վարդապետին կը խոստանայ, եթէ իրեն համակսի, բայց արդարասէր վարդապետէն յանդիմանական և յորդորական պատասխան ընդունելով՝ հազիւ հազ կը հաշտուի Հայրապետի հետ :

Նոյն Գէորգ կաթողիկոս կը ջանայ Սմ

բատ Թագաւորի և Ատրպատականի Ափշին ոստիկանի մէջ ծագած գժտութիւնը վերցընել և այս մասին շղթայի կը զարնուի Ոստիկանէն և երկու ամիս տառապանաց կը մատնուի։ Մինչդեռ ոստիկանը կ'ուզէ ըզ Հայրապետն շղթայակապ Ատրպատական տանիլ, Հայ նախարարներն ու իշխաններն ոսկի և արծաթ տալով՝ կալանաւորութենէ կ'ազատեն և իւր կաթողիկոսական աթոռը կը դարձնեն։

Հայաստանի մէջ ներքին խռովութիւններ կը յուզէն և Ափշին ոստիկան պատեհ միջոց գտնելով բազմաթիւ զօրքով վերստին կ'արշաւէ զանազան գաւառներու վրայ և ահագին կոտորածներ կ'առնէ, որուն վրայ և Հայրապետն իւր սրտի ցաւէն առանձնանալով 'ի Վասպուրական կը վախճանի (897) 21 ամեայ կաթողիկոսութենէն զկնի։ Գէորգ կը թաղուի Ձորոյ վանքին մէջ, ուր Յովհաննէս կաթողիկոս կը պատմէ, թէ ամփոփուած էր Լուսաւորչի գաւազանն և տէրունական խորհրդոյ սեղանն, զոր տակաւին եկեղեցիներ չը շինուած ժամանակ՝ իւր հետ կը շրջեցուցանէր։

Գէորգին կը յաջորդէ Մաշտոց Բ Եղիվարդեցի, Արագածոտն գաւառէն, 60 տարեկան հասակին մէջ, և 7 ամսէն յետոյ կը վախճանի։ Սա կաթողիկոսութենէն առաջ

Digitized by Google

վարժելով Մաքենոցաց մենաստանի մէջ և սուրբ Գրոց ուսմամբ ճոխանալով՝ նորոգած էր Սևանայ մենաստանն և հոգևոր ուսմանց և բարեպաշտական վարուց վարժարան դարձուցած, աշակերտելով շատերը ։ Մաշտոց կը թաղուի Գառնի գիւղաքաղաքին մէջ, ուր էր Տրդատայ հոյակապ հովանոցն, որոյ արտասուաշարժ փլատակները և գեղաքանդակ սիւներն ու խոյակները տակաւին կը տեսնուին և հնասէրները կը զարմացնեն ։

Մաշտոցի տեղ կաթողիկոս կ'ընտրուի· (897) Նորա աշակերտն (ըստ ոմանց քեռորդին) Յովհաննէս Զ Դրասխանակերտացի կամ Դասհոնակերտացի, պատմաբան ։ Սա որպէս ականատես, մանրամասնաբար գրած է իւր ժամանակի բոլոր անցքերն ու այն տառապանքները, զորս կրած է Հայաստանեայց Եկեղեցին ։ Յովհաննու երկասիրութեան մէջ պարունակուած անցից ընդարձակ հետաղօտութիւնն ընթերցողաց թողլով, մենք միայն գլխաւոր կէտերը կը քաղուածենք ։

Յովհաննէս կաթողիկոս ըստ ամենայնի ներհակ է քաղկեդոնականութեան, որոյ յուզած երկպառակութիւններն այնչափ խոր ազդած են սրտին, որ միշտ պախարակելով կը խօսի իւր պատմութեան մէջ, որոյ պարունակութեան մասին 'ի ժամանակին պիտի քանի մի խօսք ասենք ։

Digitized by Google

Յովհաննէս իբրեւ հաշտարար հայր կը հանդիսանայ ազգին մէջ և Թագաւորի ու Նախարարաց գժտութիւնները վերցնելու կը ջանայ արդարամէտ միջամտութեամբ։ Կ'երթայ նմանապէս մեծամեծ ընծաներով առ Յուսուփ ոստիկանն Ատրպատականի և աղերսական թղթիւ կը խնդրէ խաղաղութեան դաշն հաստատել Սմբատ Թագաւորի, Նախարարաց և բովանդակ Հայոց աշխարհի հետ։ Նախ սիրով կ'ընդունուի ոստիկանէն և ապա կը կալանաւորուի և կը բանտարկուի։ Յուսուփ բազմաթիւ զօրքով Հայաստան կ'արշաւէ և զկաթողիկոսն շղթայակապ իրեն հետ կը բերէ, կը յարձակի Նախ Սիւնեաց աշխարհի վրայ և Զատկի տօնին (909) շատ մարդիկ կը կոտորէ, և ապա դիմելով 'ի Դուին, Երասխայ ափանց վրայ բանակ կը կազմէ։ Կը յարձակի Սմբատայ վրայ և չը կարենալով բռնել, բովանդակ ամառն կ'աւերէ Հայաստան. իսկ ձմեռն Դուին կը մնայ, տառապեցնելով շղթայակապ հայրապետն, որ ինքնին այսպէս կը գրէ իւր համար. "Արբեցի այնուհետեւ 'ի դահճաց անօրէն մահահոտ իմն լուտանօք գանս և բանտս և գեղարանս և արգելարանս 'ի խաւարչուտ տեղւոջ և յանձուկ վայրս, այլ և 'ի վիրապս և 'ի վիհս խորոց ընկեցայ սաստիկ և դառն կտտանօք։ Ու պահապանացն սաստիկ աղա-

ղակն և ճիչն դատափետ ոչ հեռացեալ հատանէր 'ի լսելեաց իմոց յերեկորեայ մինչեւ ցառաւօտն, և սակս այսօրիկ քարձեալ էր յինէն նինջ արտեւանաց և հանգիստ իրանաց իմոց »:

Սոփիկան սակի և արծաթ կը խնդրէ կաթողիկոսէն, և ստապատեհ առիթ համարելով ազատութիւն կը խնդրէ, որ երթայ ժողովէ և հատուցանէ: Բանտէ կ'արձակուի, այլ ոչ կապանքէ, և ընդ հսկողութեամբ պահապանաց շղթայակապ կը շրջի ազգին մէջ և արծաթ ու սակի կը ժողովէ անգութ քռնաւորին համար: Յաջող միջոց գտնելով կը փախչի Աղուանից երկիրը. Սահակ իշխանի և Ատրներսեհ Թագաւորի մօտ, և ապա դառնալով անտի կը բնակի Գուգարաց աշխարհի մէջ:

Յուսուփ միանալով Վասպուրականի ինքնակոչ Թագաւոր Գագիկ Արծրունւոյ հետ., կը հետամտի Սմբատը կալանաւորել կամ սպաննել: Հուր և սուր կը շողան ամեն ուրեք. եկեղեցիները կը կողոպտուին, եկեղեցականք և աշխարհականք կը գերուին, և հանգոյն Վարդանանց դարուն, աշխարհի բընակիչները կը ստիպուին թողուլ իրենց բընակարանները և լեռներն ու անտառներն ապաւինիլ: Շատ իշխանք ձերբակալ կը լինին. Սմբատ Թագաւորի Մուշեղ որդին

և Սմբատ եղբօրորդին հաւատը չուրանալու համար կը Թիւնաւորուին անագորոյն բըռնաւորներէն ։

Սմբատ կ'ապաստանի Կապոյտ ամրոցն իւր Թիկնապահ զօրքով և Յուսուփ պաշարելով, քրիստոնեայ զօրականները յառաջ կը վարէ որ նետաձիգ լինին ։ Երկու կողմէն նետահարութիւնը կը շարունակի, և Սմբատ, խնայելով քրիստոնէից արիւնն ու կոտորածն զօրք իր պատճառաւ կը նետահարէին զմիմեանս, անձնատուր կը լինի, ստիկանէն խաղաղութեան երդումն խնդրելով ։ Սակայն յետոյ ընդդէմ երդման կը կալանաւորուի Յուսուփէն, շղթայակապ խաւարչտին բանտի կը մատնուի և տանջանքներու կ'ենթարկուի հաւատն ուրանալու ։ Նա կը տարուի Գողթան գաւառն և Երնջակ բերդի հանդէպ, ուր ղօղուած էին նախարարազուն կանայք և որդիք, Յուսուփ կամելով բերդի մէջ ամրացածներուն ահ և սոսկումն պատճառել և հնարքով կալանաւորել, սաստիկ տանջանաց կը մատնէ զՍմբատ ։ Սմբատ հաստատուն կը մնայ իւր քրիստոնէական հաւատքին վրայ և կը հաղորդուի մի ծպտեալ քահանայէ ։ Անտանելի տանջանքներէն յետոյ գլուխը կը կտրեն և մարմինը կը տանին 'ի Դուին, կը բեւեռեն խաչափայտի վրայ, իբր 'ի նախատինս իւր քրիս-

տմնէութեան, և այսպէս կը կատարի Թագաւոր Նահատակն Սմբատ (914), որոյ արիական մարտիրոսութիւնը, ըստ Յովհաննու կաթողիկոսի, պատճառ կը դառնայ շատ այլազգիներու քրիստոնէական դարձին:

Յուսուփ, սոյն անգթութենէն զկնի, Երնջակի պաշարումն առաւել սաստկացնելով վերջապէս կը գրաւէ նենգութեամբ, և այնչափ կոտորած կ'առնէ գիշերը քաղաքին մէջ, որ առաւօտուն արիւններկ կը գտնուի քաղաքն: Այս տեղէն շատ մեծամեծաց կանայք կալանաւորուելով Դուին կը տարուին և այնպիսի դժնդակ բանտարկութեան կը մատնուին, որ փափկասուն տիկնայք, սակաւ ժամանակէն զկնի, կը մեռնին բանտերու մէջ:

Աշոտ, որդին Սմբատայ, կը թագաւորէ, բայց սակաւ ժամանակէն զկնի Յուսուփ հագարացի ոստիկաններ կը սփռէ Հայաստանի մէջ և այնքան կոտորածներ և աղէտներ կը հասուցանէ և այնպիսի բարբարոսական տանջանքներով կը տանջէ հաւատացեալները, որ ընթերցողը կը սոսկայ և կը քստմնի, երբ կը կարդայ Յովհաննէս կաթողիկոսի պատմութեան մէջ, այս աղէտից դառն նկարագիրը: Եօթն տարի անընդհատ կը շարունակին այս անգթութիւններն և հարցափորձական ատեաններու և տանջանարանաց խստութեան առջեւ աներկիւղ

կը խոստովանին Հայաստանեայց Եկեղեցւոյ զաւակները իրենց քրիստոնէութեան սըրբութիւնն ու ճշմարտութիւնը և ամենայն խոստմունք ուրացութեան առ ոտն կը հարկանեն ։ Բազմաթիւ այրք և կանայք, ծերք և մանկունք կը մարտիրոսանան, որոց մէջ կը յիշուին քանի մի պատանի նահատակներ, — Միքայէլ Գուգարացի և Գնունեաց ազգէն երկու եղբարք՝ Դաւիթ և Գուրգէն — որոնք ամենայն գահճական արհաւիրք և իշխանական խոստումն կը քամահրեն և ուրախութեամբ մահ կը ճաշակեն 'ի սէր Աստուծոյ ։

Այս ամեն նահատակներու յիշատակն, որոնք Յուսուֆի ժամանակ կը մարտիրոսանան, կը պատուի Եկեղեցւոյ մէջ, որուն համար այսպէս կը գրէ ինքն Յովհաննէս կաթողիկոս ․ “ Ամենեքեան սոքա սուրբք, յիրաւի տարեւորական տօնախմբութեամբ պատուին միշտ յեկեղեցիս սրբոց՝ որ յիշատակն սոցա սահմանեալ Մարերի ամսոյ՝ որ օր 27 ” ․ և ապա կամելով ցուցանել թէ աստուածային սիրով վառուածներն երկիւղ և ցաւ չեն զգար արհաւիրքէ և տանջանքէ, կը յաւելու ․ “ Չիք ինչ ահաւոր, ուր սէր Հօր է, և ոչ այն ինչ որ ցաւեցուցանէ, ուր փառքն Քրիստոսի են ” ։

Digitized by Google

## Դ.

Տօմ 'ի Հայաստան. — Թուղթ մխիթարանաց 'ի Նիկողայոս պատրիարքէն Յունաց. — Թուղթ Յովհաննէս կաթողիկոսին առ կայսրն Յունաց. — Ներքին խռովութիւնք և երեք թագաւորք 'ի Հայաստան. — Նոր ոստիկան և կաթողիկոսն Յովհաննէս. — Նահատակութիւնք և գերութիւնք. — Գրաւումն կաթողիկոսարանին Դունայ. — Կաթողիկոսունք՝ Ստեփաննոս Բ և Թէոդորոս Ա. — Թագաւորութիւն Աբասայ և շինութիւն վանօրէից. — Կենդաղ վանականաց. — Եղիշէ կամ Եղիաէ Ա. և Անանիա Մոկացի. — Աբաս և Թագաւորն Ափխազաց՝ Բեր. — Հրդեհ մոլեկրօնութեան Յունաց. — Թագաւորութիւն Աշոտ Ողորմածի. — Գծագիր կենաց նորա. — Շինութիւն Հաղբատու և Սանահնի վանաց.

Յուսուֆի զօրքերէն, Պարսից կուսակալներէն, Յոյներէն և Կովկասեան հիւսիսաբնակ ազգերէն հասած հարստահարութեանց և վրդովմանց պատճառաւ երկրագործութիւնը կը դադարի Հայաստանի մէջ ուստի և սաստիկ սով կը տիրէ բոլոր աշխարհին, որոյ աղէտալի պատկերը, զոր կը նկարագրէ Յովհաննէս պատմաբան կաթողիկոսըն, սարսուռ կը պատճառէ ընթերցողին։ Այս աւերանաց և աղէտից համբաւներն ամեն տեղ կը տարածուին և Յունաց Կոստանդին Պերփերոուժէն կայսրը կը յանձնէ Կ. Պօլսոյ յունական Նիկողայոս պատրիարքին մխիթարանաց և ցաւակցութեան գիր

գրել առ Յովհաննէս կաթողիկոս, որ Վրաց աշխարհի մէջ էր, Ատրներսեհ թագաւորի մօտ։ Այս թղթէն կընշմարուի, որ Վրացիք, չընայելով Ախուրանի ժամանակ պատահած բաժանման, տակաւին Հայաստանեայց կաթողիկոսական իշխանութեանը կըհպատակէին, վասն զի Նիկողայոս այս խօսքերը կըգրէ առ Յովհաննէս կաթողիկոս. «Յոյժ տրտմութիւն և անպակաս ցաւք են սրտից մերոց յաղագս Հայոց, Վրաց և Աղուանից միահամուռ քոյդ հաւատացեալ հօտիցդ»։

Այս թուղթը ստանալէն վկնի Յովհաննէս կաթողիկոս Վասպուրականէն կըդառնայ 'ի Տարօն և տեսնելով երկիրը տակաւին թըշնամիներէ պաշարուած, ցաւօք և հեծութեամբ սրտի (920), երկար թուղթ մի կը գրէ Յունաց կայսեր և Հայաստանի բոլոր աղէտները պատմելով օգնութիւն կըխնդրէ։ Կայսրը կաթողիկոսի թուղթը կարդալով՝ պատգամաւոր կըղրկէ՝ Հայոց Աշոտ թագաւորին և կաթողիկոսին 'ի Պօլիս հրաւիրելու։ Թագաւորը կայսեր հրաւէրին համեմատ Պօլիս կ'երթայ և մեծ պատուով ու թագով կըպսակուի. իսկ կաթողիկոսը չըհաճիր երթալու, որպէս զի իւր անձը իւր հօտին առջեւ կասկածանաց չենթարկէ և քաղկեդոնիկութեան համախոհ չհամարուի. ուստի և Տարօնէն կ'ուղեւորի 'ի Դերջան

իւր Հօտին այցելութեան։ Տառապակիր Հայրապետը Հայաստանի գաւառներուն մէջ շրջելէն և աղէտներուն ականատես լինելէն զկնի՝ չը կարենալով տոկալ կ՚առանձնանայ։ Արտաքին արհաւրաց հետ ներքին խռովութիւնք ևս կը յաճախեն Հայաստանի մէջ։ Երեք թագաւորներ միմեանց ներհակ թագ կը կապեն, այն է Աշոտ երկաթ Սմբատեան, որ արդէն Պոլսէն դարձած էր և կը թագաւորէր ՚ի Շիրակ, Աշոտ Շապուհեան, որ Յուսուփէն թագ ստանալով՝ կը բռնակալէր ՚ի Դուին, և Գագիկ Արծրունի, որ կ՚իշխէր Վասպուրական աշխարհին։ Խաղաղասէր հայրապետն իւր առանձնութեան մենարանէն դառնալով՝ շատ անգամ կը ջանայ այս ազգաւեր անիշխանութեան առաջն առնուլ, բայց տեւական հաշտութեան չարժանանար աշխարհը. ուստի և արտաքին թշնամիները ներքին խռովութիւններէն աւելի օգուտ քաղելով, որ արդէն իրենց բորբոքած էր, աւերմունքները կը շարունակեն։ Հայրապետի հաշտարարական միջամտութեանց ժամանակ Վրաց տոհմը կը հետամտէ հայրապետն կալանաւորել, ինչպէս կալանաւորած էր Հայոց երկու մեծ իշխանները՝ Սահակ և Բաբկէն և ուրիշները։ Հայրապետը Գեղարքունի գաւառի Այրեվանից մէջ լինելով՝ այն տեղէն կ՚անցնի Սեւան կղզին և



Digitized by Google

վարդապետաց՝ խորհրդով զանազան ընծաներ կը ղրկէ Ոստիկանին զայրոյթը զիջուցանելու համար և երդման թուղթ ստանալով կը յօժարի երթալ 'ի Դուին կաթողիկոսարանն ։ Սակայն Ոստիկանը կը ստէ իւր երդմանը, զօրք կը ղրկէ Այրեվանքը կողոպտելու, ուր պահուած էին կաթողիկոսական գանձերը և եկեղեցական սպասներ և գրքեր ։ Կրօնաւորները կը դիմակալեն և բոլորը զանազան տանջանքներով կեանքէ կը զրկուին ։ Ապա զօրք կը ղրկէ Բիւրական բերդը, ուր էր կաթողիկոսն, որպէս զի կալանաւորեն և իւր մօտ բերեն ։ Կաթողիկոսը մօտահաս վտանգէն կ'ազատի փախչելով, կարծելով թէ միայն իւր անձին համար է զօրականաց հետամտութիւնը. սակայն թշնամիք բերդը կը պաշարեն, ուր բաւական բազմութիւն, քահանաներով և եպիսկոպոսով հանդերձ ամրացած էին ։ Ամրոցը կը մատնուի թշնամեաց ձեռքը, 200 հոգի սրով կը խողխողին հաւատոյ մէջ հաստատուն մնալու համար, և սպանելոց գլուխները արանց և կանանց հետ գերի կը տարուին Ոստիկանին ։ Այս գործը կաթողիկոսի ականջը կը հասնի և յետոյ տեղեկանալով, որ գերիներուն ազատութիւն եղած է, իսկ տասն մանուկներ թշնամիքն իրենց տներուն մէջ պահած են, արծաթով կը գնէ և կ'ազատէ ։

Նսըր կը գրաւէ Դունայ կաթողիկոսարանը և բնակարան կը դարձնէ իւր ծառայից համար, իսկ Յովհաննէս կաթողիկոս տեսնելով թէ՝ վերստին ժառանգելը յոյս չկայ, կ՚ուղեւորի ՚ի Վասպուրական առ Գագիկ Արծրունի և անդադար կը տառապի այն տեղ Եկեղեցւոյ և Ազգի վիճակին վրայ։ Այս թախծութեան մէջ, արտասուօք և հեծութեամբ կ՚աւարտէ իւր պատմական երկասիրութիւնը, որ վաղուց սկսած էր և որոյ համար յատկապէս խնդրած էին Գագիկ և Աշոտ, և կը կնքէ մի յորդորական սրտաշարժ վերջաբանով։ Ինքն ևս բազմաչարչար հայրապետն սակաւ ժամանակէն զկնի կը վախճանի, 27 տարի կաթողիկոսական պաշտօն վարելէն զկնի, և կը թաղուի Վասպուրականի մէջ (924)։

Յովհաննիսին տեղ կաթողիկոս կ՚ընտրուի Ստեփաննոս Բ. որ կը նստի Աղթամար կղզւոյ մէջ, վասն զի Դունայ կաթողիկոսարանն արդէն գրաւուած էր Հագարացի ոստիկանէն։ Ստեփաննոս մի տարիէն յետոյ կը վախճանի և իրեն կը յաջորդէ Թէոդորոս Ա։ Սորա կաթողիկոսութեան երկրորդ տարին, երբ Աբաս կը թագաւորէ իւր եղբայր Աշոտի տեղ, Դունայ կաթողիկոսարանը կ՚առնուի, բայց Թէոդորոս Աղթամար կը նստի։

Աբասի թագաւորութեան ժամանակ Հա-

յաստան աշխարհը սակայն ինչ խաղաղութիւն կը գտնէ, լեռնական պատսպարեալները կը դառնան, եկեղեցեաց և վանօրէից շինութեան ձեռնարկութիւնք կը լինին, որք արդէն շատ տեղ աւերուած և այրուած էին։ Այս վանօրէից շինութեանք պատճառ կը դառնան մանաւանդ այն վարդապետներն, որոնք Հայաստանէն ցրուած էին Իբերացւոց և Հոռոմոց երկիրներուն մէջ և հալածուելով իրենց հայրենիքը դարձան։ Այն ժամանակին մէջ շինուած գլխաւոր վանքերը սոքա են. — Կամրջաձորոյ վանք, Արշարունեաց գաւառի Երասխաձորի մէջ. — Հոռոմոսի վանք, Շիրակ գաւառի մէջ, որ Հոռոմոց երկրէն հալածուած կրօնաւորաց ձեռքով շինուեցաւ. — Խլաջորի վանք, Դերջան գաւառի մէջ. — Նարեկայ վանք, Ռշտունեաց գաւառի մէջ. — Սողխավանք, Խարբերդի մօտ. — Հնչուց վանք, Կարնոյ մօտ. — Ցախացքար վանք, Վայոց ձորոյ մէջ. — Կապուտաքար վանք, Արշարունեաց մէջ. — Նորոգեցաւ նմանապէս և Շիրակ գաւառի Դպրեվանքը։

Այս վանօրէից շինութեանը կ՚օժանդակէ Աբաս Թագաւորն, որոց մէջ կը ծաղկին զանազան ուսումնախնդիր վարդապետներ և ՚ի ժամանակին զանազան գաւառներու մէջ առաջնորդ կը կարգուէին, որոց գրագիտական արդեանց և ընթացից վրայ առանձին

պիտի խօսինք ։ Այս վանուց միաբանից կեն-
ցաղին վրայ ծանօթութիւններ կ՚առանդէ Ասողիկ, ասելով, որ գլխաւորապէս երեք կանոն խստութեամբ կը պահպանէին, այն է պարապիլ ընթերցման և աղօթից, օրը մի անգամ ճաշել և իսպառ անստացուած մընալ։ Այս էր պատճառն որ բարեպաշտ մարդկանց կողմէն մեծամեծ նուէրներ կ՚ընծայուէին, ոչ թէ կրօնաւորաց համար, որոնք ուխտած էին չիւրացուցանել բնաւ, այլ իբրև պահեստի տրուած հաստութիւն Եկեղեցւոյ, ՚ի ժամանակին ազգային հոգեւոր պիտոյից համար գործածելու։

Թէոդորոս 10 ամեայ (ըստ Ասողկայ 11) կաթողիկոսութենէն յետոյ կը վախճանի (935) Աղթամարայ մէջ, և կ՚ընտրուի նորա եղբայրըն Եղիշէ կամ Եղիսէ Ա. որ եօթը տարի միայն կաթողիկոսական պաշտօն կը վարէ (թէ և երկու տարին իբրև հրաժարեալ) և կը վախճանի (943)։ Եղիշէին կը յաջորդէ Անանիա Մոկացի, Վարագայ ուխտի առաջնորդը, որ Աղբւանից և Սիւնեաց աշխարհն եւս կը ճանապարհորդէ ինչ ինչ խռովութիւններ անդորրացնելու համար։

Ինչպէս արդէն տեսած էին զանազան վանօրէից շինութիւններ, նոյնպէս Աբաս Թագաւորը հիմնարկել կը տայ Կարսայ կաթողիկէ եկեղեցին և 5 տարիէն յետոյ կ՚ա-

Digitized by Google

և Ամբատ եղբօրորդին հաւատը չուրանալու համար կը թիւնաւորուին անագորոյն բռնաւորներէն ։

Ամբատ կ'ապաստանի Կապոյտ ամրոցն իւր թիկնապահ զօրքով և Յուսուփ պաշարելով, քրիստոնեայ զօրականները յառաջ կը վարէ որ նետաձիգ լինին ։ Երկու կողմէն նետահարութիւնը կը շարունակի, և Ամբատ, խնայելով քրիստոնէից արիւնն ու կոտորածն որոնք իր պատճառաւ կը նետահարէին զմիմեանս, անձնատուր կը լինի, ստիկանէն խաղաղութեան երդումն խնդրելով ։ Այլ յետոյ ընդդէմ երդման կը կալանաւորուի Յուսուփէն, շղթայակապ խաւարչտին բանտի կը մատնուի և տանջանքներու կ'ենթարկուի հաւատն ուրանալու ։ Ապա կը տարուի Գողթան գաւառն և Երնջակ բերդի հանդէպ, ուր ղօղուած էին նախարարազուն կանայք և որդիք, Յուսուփ կամելով բերդի մէջ ամրացածներուն ահ և սոսկումն պատճառել և հնարքով կալանաւորել, սաստիկ տանջանաց կը մատնէ զԱմբատ ։ Ամբատ հաստատուն կը մնայ իւր քրիստոնէական հաւատքին վրայ և կը հաղորդուի մի ծըպտեալ քահանայէ ։ Անտանելի տանջանքներէն յետոյ գլուխը կը կտրեն և մարմինը կը տանին 'ի Դուին, կը բեւեռեն խաչափայտի վրայ, իբր 'ի նախատինս իւր քրիս-

տունէութեան, և այսպէս կը կատարի Թագաւոր նահատակն Սմբատ (914), որոյ արիական մարտիրոսութիւնը, ըստ Յովհաննու կաթողիկոսի, պատճառ կը դառնայ շատ այլազգիներու քրիստոնէական դարձին:

Յուսուփ, սոյն անգթութենէն զկնի, Երնջակի պաշարումն առաւել սաստկացնելով վերջապէս կը գրաւէ նենգութեամբ, և այնչափ կոտորած կ՚առնէ գիշերը քաղաքին մէջ, որ առաւօտուն արիւններկ կը գտնուի քաղաքն: Այս տեղէն շատ մեծամեծաց կանայք կալանաւորուելով Դուին կը տարուին և այնպիսի դժնդակ բանտարկութեան կը մատնուին, որ փափկասուն տիկնայք, սակաւ ժամանակէն զկնի, կըմեռնին բանտերու մէջ:

Աշոտ, որդին Սմբատայ, կը թագաւորէ, բայց սակաւ ժամանակէն զկնի Յուսուփ՝ հագարացի աստապակներ կը սփռէ Հայաստանի մէջ և այնքան կոտորածներ և աղէտներ կը հասուցանէ և այնպիսի բարբարոսական տանջանքներով կը տանջէ հաւատացեալները, որ ընթերցողը կը սոսկայ և կը քստմնի, երբ կը կարդայ Յովհաննէս կաթողիկոսի պատմութեան մէջ, այս աղէտից դառն նկարագիրը: Եօթն տարի անընդհատ կը շարունակին այս անգթութիւններն և հարցափորձական ատեաններու և տանջանարանաց խստութեան առջեւ աներկիւղ

և Սմբատ եղբօրորդին հաւատը չուրանալու
համար կը թիւնաւորուին անագորոյն բըռ-
նաւորներէն ։

Սմբատ կ'ապաստանի Կապոյտ ամրոցն
իւր թիկնապահ զօրքով և Յուսուփ պաշա-
րելով , քրիստոնեայ զօրականները յառաջ
կը վարէ որ նետաձիգ լինին ։ Երկու կողմէն
նետահարութիւնը կը շարունակի, և Սմբատ,
խնայելով քրիստոնէից արիւնն ու կոտորածն
որոնք իր պատճառաւ կը նետահարէին զմի-
մեանս , անձնատուր կը լինի , ոստիկանէն
խաղաղութեան երդումն խնդրելով ։ Սակայն
յետոյ ընդդէմ երդման կը կալանաւորուի
Յուսուփէն , շղթայակապ խաւարչտին բան-
տի կը մատնուի և տանջանքներու կ'ենթար-
կուի հաւատն ուրանալու ։ Նա կը տարուի
Գողթան գաւառն և Երնջակ բերդի հան-
դէպ , ուր ղօղուած էին նախարարազուն
կանայք և որդիք , Յուսուփ կամելով բերդի
մէջ ամրացածներուն ահ և սոսկումն պատ-
ճառել և հնարքով կալանաւորել , սաստիկ
տանջանաց կը մատնէ զՍմբատ ։ Սմբատ
հաստատուն կը մնայ իւր քրիստոնէական
հաւատքին վրայ և կը հաղորդուի մի ծըպ-
տեալ քահանայէ ։ Անտանելի տանջանքնե-
րէն յետոյ գլուխը կը կտրեն և մարմինը
կը տանին 'ի Դուին , կը բեւեռեն խաչա-
փայտի վրայ , երբ 'ի նախատինս իւր քրիս-

Digitized by Google

տոնէութեան, և այսպէս կը կատարի Թագաւոր նահատակն Սմբատ (914), որոյ արիական մարտիրոսութիւնը, ըստ Յովհաննու կաթողիկոսի, պատճառ կը դառնայ շատ այլազգիներու քրիստոնէական դարձին ։

Յուսուփ, սոյն անգթութենէն զկնի, Երընջակի պաշարումն առաւել սաստկացնելով վերջապէս կը գրաւէ նենգութեամբ, և այնչափ կոտորած կ'առնէ գիշերը քաղաքին մէջ, որ առաւօտուն արիւններկ կը գտնուի քաղաքն ։ Այս տեղէն շատ մեծամեծաց կանայք կալանաւորուելով Դուին կը տարուին և այնպիսի դժնդակ բանտարկութեան կը մատնուին, որ փափկասուն տիկնայք, սակաւ ժամանակէն զկնի, կըմեռնին բանտերու մէջ ։

Աշոտ, որդին Սմբատայ, կը թագաւորէ, բայց սակաւ ժամանակէն զկնի Յուսուփ՝ հագարացի աստապակներ կը սփռէ Հայաստանի մէջ և այնքան կոտորածներ և աղէտներ կը հասուցանէ և այնպիսի բարբարոսական տանջանքներով կը տանջէ հաւատացեալները, որ ընթերցողը կը սոսկայ և կը քստմնի, երբ կը կարդայ Յովհաննէս կաթողիկոսի պատմութեան մէջ, այս աղէտից դառն նկարագիրը ։ Եօթն տարի անընդհատ կը շարունակին այս անգթութիւններն և հարցափորձական ատեանները և տանջանարանաց խստութեան առջև աներկիւղ

Digitized by Google

կը խոստովանին Հայաստանեայց Եկեղեցւոյ զաւակները իրենց քրիստոնէութեան սրբութիւնն ու ճշմարտութիւնը և ամենայն խոստմունք ուրացութեան առ ոտն կը հարկանեն ։ Բազմաթիւ արք և կանայք, ծերք և մանկունք կը մարտիրոսանան, որոց մէջ կը յիշուին քանի մը պատանի նահատակներ, — Անքայել Գուգարացի և Գնունեաց ազգէն երկու եղբարք՝ Դաւիթ և Գուրգէն—որոնք ամենայն դահճական արհաւիրք և իշխանական խոստումն կը քամահրեն և ուրախութեամբ մահ կը ճաշակեն 'ի սէր Աստուծոյ ։

Այս ամեն նահատակներու յիշատակն, որոնք Յուսուփի ժամանակ կը մարտիրոսանան, կը պատուի Եկեղեցւոյ մէջ, որուն համար այսպէս կը գրէ ինքն Յովհաննէս կաթողիկոս ․ "Ամենեքեան սոքա սուրբք, յիրաւի տարեւորական տօնախմբութեամբ պատուին միշտ յեկեղեցիս սրբոց՝ որ յիշատակի սոցա սահմանեալ Մարերի ամսոյ՝ որ օր 27 ". և ապա կամելով ցուցանել թէ աստուածային սիրով վառուածներն երկիւղ և ցաւ չեն զգար արհաւիրքէ և տանջանքէ, կը յաւելու . "Զիք ինչ ահաւոր, ուր սէր Հօր է, և ո՛չ այն ինչ որ ցաւեցուցանէ, ուր փառքն Քրիստոսի են "։

## Դ.

Սով 'ի Հայաստան. — Թուղթ մխիթարանաց 'ի Նիկողայոս պատրիարքէն Յունաց. — Թուղթ Յովհաննէս կաթողիկոսին առ կայսրն Յունաց. — Ներքին խռովութիւնք և երեք թագաւորք 'ի Հայաստան. — Նոր ոստիկան և կաթողիկոսն Յովհաննէս. — Նահատակութիւնք և գերութիւնք. — Գրաւումն կաթողիկոսարանին Դունայ. — Կաթողիկոսունք՝ Ստեփաննոս Բ և Թէոդորոս Ա. — Թագաւորութիւն Աբասայ և շինութիւն վանօրէից. — Կենցաղ վանականաց. — Եղիշէ կամ Եղիաէ Ա և Անանիա Մոկացի. — Աբաս և թագաւորն Ափխազաց՝ Բեր. — Հրդեհ մոլեկրօնութեան Յունաց. — Թագաւորութիւն Աշոտ Ողորմածի. — Գծագիր կենաց նորա. — Շինութիւն Հաղբատու և Սանահնի վանաց։

ՅՈՒՍՈՒՓԻ զօրքերէն, Պարսից կուսակալներէն, Յոյներէն և Կովկասեան հիւսիսաբնակ ազգերէն հասած հարստահարութեանց և վրդովմանց պատճառաւ երկրագործութիւնը կը դադարի Հայաստանի մէջ ուստի և սաստիկ սով կը տիրէ բոլոր աշխարհին, որոյ աղէտալի պատկերը, զոր կը նկարագրէ Յովհաննէս պատմաբան կաթողիկոսն, սարսուռ կը պատճառէ ընթերցողին։ Այս աւերանաց և աղէտից համբաւները ամեն տեղ կը տարածուին և Յունաց Կոստանդին Պերփիւռուժէն կայսրը կը յանձնէ Կ. Պօլսոյ յունական Նիկողայոս պատրիարքին մխիթարանաց և ցաւակցութեան գիր

գրել առ Յովհաննէս կաթողիկոս, որ Վրաց աշխարհի մէջ էր, Ատրներսեհ թագաւորի մօտ։ Այս թղթէն կընշմարուի, որ Վրացիք, չընայելով Կիւրոնի ժամանակ պատահած բաժանման, տակաւին Հայաստանեայց կաթողիկոսական իշխանութեանը կը հպատակէին, վասն զի Նիկողայոս այս խօսքերը կը գրէ առ Յովհաննէս կաթողիկոս. "Յոյժ տրտմութիւն և անպակաս ցաւք են սրտից մերոց յաղագս Հայոց, Վրաց և Աղուանից միահամուռ քոյդ հաւատացեալ հօտիցդ"։

Այս թուղթը ստանալէն վերջ Յովհաննէս կաթողիկոս Վրաստանէն կը դառնայ 'ի Տարօն և տեսնելով երկիրը տակաւին թշնամիներէ պաշարուած, ցաւօք և հեծութեամբ սրտի (920), երկար թուղթ մի կը գրէ Յունաց կայսեր և Հայաստանի բոլոր աղէտները պատմելով օգնութիւն կը խնդրէ։ Կայսրը կաթողիկոսի թուղթը կարդալով՝ պատգամաւոր կը ղրկէ՝ Հայոց Աշոտ թագաւորն և կաթողիկոսն 'ի Պօլիս հրաւիրելու։ Թագաւորը կայսեր հրաւէրին համեմատ Պօլիս կ'երթայ և մեծ պատուով ու թագով կը պսակուի. իսկ կաթողիկոսը չըհաճիր երթալու, որպէս զի իւր անձը իւր հօտին առջեւ կասկածանաց չենթարկէ և քաղկեդոնիկութեան համախոհ չհամարուի. ուստի և Տարօնէն կ'ուղեւորի 'ի Դերջան

իւր Հօտին այցելութեան։ Տառապակիր Հայ-
րապետը Հայաստանի գաւառներուն մէջ
շրջելէն և աղէտներուն ականատես լինելէն
զկնի՝ չը կարենալով տոկալ կ՚առանձնանայ։
Առաջին արհաւրաց հետ ներքին խռովու-
թիւնք եւս կը յաճախեն Հայաստանի մէջ։
Երեք թագաւորներ միմեանց ներհակ թագ
կը կապեն, այն է Աշոտ երկաթ Սմբատեան,
որ արդէն Պոլսէն դարձած էր և կը թագա-
ւորէր ՚ի Շիրակ, Աշոտ Շապուհեան, որ
Յուսուփէն թագ ստանալով՝ կը բռնակալէր
՚ի Դուին, և Գագիկ Արծրունի, որ կ՚իշխէր
Վասպուրական աշխարհին։ Խաղաղասէր
հայրապետն իւր առանձնութեան մենարա-
նէն դառնալով՝ շատ անգամ կը ջանայ այս
ազգաւեր անիշխանութեան առաջն առնուլ,
բայց տեւական հաշտութեան չարժանանար
աշխարհը. ուստի և արտաքին թշնամիները
ներքին խռովութիւններէն աւելի օգուտ
քաղելով, որ արդէն իրենց բորբոքած էր,
աւերմունքները կը շարունակեն։ Հայրապե-
տի հաշտարարական միջամտութեանց ժա-
մանակ Նըսր ոստիկանը կը հետամտէ հայ-
րապետն կալանաւորել, ինչպէս կալանաւո-
րած էր Հայոց երկու մեծ իշխանները՝ Սա-
հակ և Բաբկէն և ուրիշները։ Հայրապետը
Գեղարքունի գաւառի Այրեվանից մէջ լե-
նելով՝ այն տեղէն կ՚անցնի Սեւան կղզին և

վարդապետաց՝ խորհրդով զանազան ընծաներ կը ղրկէ Ոստիկանին զայրոյթը զիջուցանելու համար և երդման թուղթ ստանալով՝ կը յօժարի երթալ 'ի Դուին կաթողիկոսարանն ։ Սակայն Ոստիկանը կը ստէ իր երդմանը , զօրք կը ղրկէ Արեվանքը կողոպտելու , ուր պահուած էին կաթողիկոսական գանձերը և եկեղեցական սպասներ և զարդեր ։ Կրօնաւորները կը դիմակալեն և բոլորը զանազան տանջանքներով կեանքէ կը զրկուին ։ Ապա զօրք կը ղրկէ Բիւրական բերդը , ուր էր կաթողիկոսն , որպէս զի կալանաւորեն և իր մօտ բերեն ։ Կաթողիկոսը մօտահաս վտանգէն կ'ազատի փախչելով , կարծելով թէ միայն իր անձին համար է զօրականաց հետամտութիւնը . սակայն թշնամիք բերդը կը պաշարեն , ուր բաւականին բազմութիւն , քահանաներով և եպիսկոպոսով հանդերձ ամրացած էին ։ Ամրոցը կը մատնուի թշնամեաց ձեռքը , 200 հոգի սրով կը խողխողեն հաւատոյ մէջ հաստատուն մնալու համար , և սպանելոց գլուխները արանց և կանանց հետ գերի կը տարուին Ոստիկանին ։ Այս գոյժը կաթողիկոսի ականջը կը հասնի և յետոյ տեղեկանալով , որ գերիներուն ազատութիւն եղած է , իսկ տասն մանուկներ թշնամիքն իրենց տներուն մէջ պահած են , արծաթով կը գնէ և կ'ազատէ ։

Նսըր կը գրաւէ Դունայ կաթողիկոսարանը և բնակարան կը դարձնէ իւր ծառայից համար, իսկ Յովհաննէս կաթողիկոս տեսնելով թէ՝ վերստին ժառանգելու յոյս չըկայ, կ'ուղեւորի ՚ի Վասպուրական առ Գագիկ Արծրունի և անդադար կը տառապի այն տեղ Եկեղեցւոյ և Ազգի վիճակին վրայ: Այս թախծութեան մէջ, արտասուօք և հեծութեամբ կ'աւարտէ իւր պատմական երկասիրութիւնը, որ վաղուց սկսած էր և որոյ համար յատկապէս խնդրած էին Գագիկ և Աշոտ, և կը կնքէ մի յորդորական սրտաշարժ վերջաբանով: Ինքն եւս բազմաչարչար հայրապետն սակաւ ժամանակէն զկնի կը վախճանի, 27 տարի կաթողիկոսական պաշտօն վարելէն զկնի, և կը թաղուի Վասպուրականի մէջ (924):

Յովհաննիսին տեղ կաթողիկոս կ'ընտրուի Ստեփաննոս Բ. որ կը նստի Աղթամար կղզւոյ մէջ, վասն զի Դունայ կաթողիկոսարանն արդէն գրաւուած էր Հագարացի ոստիկանէն: Ստեփաննոս մի տարիէն յետոյ կը վախճանի և իրեն կը յաջորդէ Թէոդորոս Ա: Սորա կաթողիկոսութեան երկրորդ տարին, երբ Աբաս կը թագաւորէ իւր եղբայր Աշոտի տեղ, Դունայ կաթողիկոսարանը կ'առնուի, բայց Թէոդորոս Աղթամար կը նստի:

Աբասի թագաւորութեան ժամանակ Հա-

Digitized by Google

յաստան աշխարհը սակաւ ինչ խաղաղու-
թիւն կը գտնէ, լեռնական պատսպարեա-
ները կը դառնան, եկեղեցեաց և վանօրէից
շինութեան ձեռնարկութիւնք կը լինին, որք
արդէն շատ տեղ աւերուած և այրուած էին։
Այս վանօրէից շինութեանը պատճառ կը
դառնան մանաւանդ այն վարդապետներն,
որոնք Հայաստանէն ցրուած էին Եգերաց-
ւոց և Հոռոմոց երկիրներուն մէջ և հալած-
ուելով իրենց հայրենիքը դարձան։ Այն ժա-
մանակին մէջ շինուած գլխաւոր վանքերը
սոքա են. — Կամրջաձորոյ վանք, Արշարունեաց գա-
ւառի Երասխաձորի մէջ. — Հոռոմոսի վանք,
Շիրակ գաւառի մէջ, որ Հոռոմոց երկրէն
հալածուած կրօնաւորաց ձեռքով շինուե-
ցաւ. — Խլաձորի վանք, Դերջան գաւառի մէջ.
— Նարեկայ վանք, Ռշտունեաց գաւառի մէջ.
— Մոլխավանք, Խարբերդի մօտ. — Հնձուց վանք,
Կարնոյ մօտ. — Ցախացքար վանք, Վայոց ձորոյ
մէջ. — Կապուտաքար վանք, Արշարունեաց մէջ.
— Նորոգեցաւ նմանապէս և Շիրակ գաւա-
ռի Դպրեվանքը։

Այս վանօրէից շինութեանը կ՚օժանդա-
կէ Աբաս Թագաւորն, որոց մէջ կը ծաղկին
զանազան ուսումնախնդիր վարդապետներ
և ՚ի ժամանակին զանազան գաւառներու
մէջ առաջնորդ կը կարգուին, որոց գրագի-
տական արդեանց և ընթացից վրայ առանձին

պիտի խօսինք։ Այս վանուց միաբանից կենցաղին վրայ ծանօթութիւններ կ'աւանդէ Ասողիկ, ասելով, որ գլխաւորապէս երեք կանոն խստութեամբ կը պահպանէին, այն է պարապիլ ընթերցման և աղօթից, օրը մի անգամ ճաշել և իսպառ անստացուած մնալ։ Այս էր պատճառն որ բարեպաշտ մարդկանց կողմէն մեծամեծ նուէրներ կ'ընծայուէին, ոչ թէ կրօնաւորաց համար, որոնք ուխտած էին չհեռացուցանել բնաւ, այլ իբրեւ պահեստի տրուած հաստութիւն Եկեղեցւոյ, 'ի ժամանակին ազգային հոգեւոր պիտոյից համար գործածուելու։

Թէոդորոս 10 ամեայ (ըստ Ասողկայ 11) կաթողիկոսութենէն յետոյ կը վախճանի (935) Աղթամարայ մէջ, և կ'ընտրուի նորա եղբայրն Եղիշէ կամ Եղիսէ Ա. որ եօթը տարի միայն կաթողիկոսական պաշտօն կը վարէ (թէ և երկու տարին իբրեւ հրաժարեալ) և կը վախճանի (943)։ Եղիշէին կը յաջորդէ Անանիա Մոկացի, Վարագայ ուխտի առաջնորդը, որ Աղուանից և Սիւնեաց աշխարհն եւս կը ճանապարհորդէ ինչ ինչ խռովութիւններ անդորրացնելու համար։

Ինչպէս արդէն սկսուած էին զանազան վանօրէից շինութիւններ, նոյնպէս Աբաս թագաւորը հիմնարկել կը տայ Կարսայ կաթուղիկէ եկեղեցին և 5 տարիէն յետոյ կ'ա-

ւարտի։ Ափխազաց Բեր Թագաւորը կը դիմէ Հայաստանի վրայ և խրոխտալով կըսպառնայ նորաշէն եկեղեցին Կարուց ծիսով օրհնել տալ, իբրեւ արհամարհանք Հայոց կանոնական արարողութեանց։ Աբաս Հայոց եպիսկոպոսներն և վարդապետները կը ժողովէ իմանալու՝ թէ ուստի՞ են Հայոց եկեղեցւոյ օրհնութեան կանոնքն, և երբ պատասխան կըստանայ թէ 'ի Ս. Լուսաւորչէն են և երանելի Մեսրոպէն և ծանուցուած են վերջին դարուց վարդապետներն, կըզայրանայ և կը պատերազմի Ափխազաց Թագաւորի հետ և կալանաւորելով կը բերէ Կարսայ նորաշէն եկեղեցին և կ'ասէ. "Տես այժմ սորա գեղեցկութիւնը, վասն զի միւսանգամ չը պիտի տեսնես". և յետոյ աչքերը հանել կը տայ։

Մինչդեռ Աբասի Թագաւորութեան ժամանակ սակաւ ինչ խաղաղացած էր Հայաստան աշխարհը հարստահարութենէ և հալածանքէ, յանկարծ բորբոքեցաւ յունական մոլեկրօնութիւնը, որ սովորաբար կը գրգռուէր միշտ այն ժամանակ, երբ Հայք կըսկսէին փոքր ինչ ներքին բարեկարգութեամբ զբաղիլ, փոքր ինչ անդորրանալով հագարական և պարսկական տառապանքներէ։ Այնչափ կը զայրանայ Յունաց կրօնական ատելութիւնը, որ կըսկսին Հայերը նզովել իբրեւ

Եւտիքեան, եկեղեցւոյ խորհուրդները պախարակել, բռնադատել ազգային ծէսերը փոխելու, իրենց յարոգները վերստին մկրտելու դրոշմել և եթէ քահանայք են՝ վերստին ձեռնադրել, և այսպէս առիթ տալ չարաչար խռովութեանց։ Յունաց բաժնի Հայերէն շատերն այս աններողամտութեան հալածանքէն ձգուելով կը տեղափոխին Մեծ Հայոց Շիրակ և Վանանդ գաւառները, որոյ համար ատելութիւնն աւելի կը զայրանայ և երկար դարեր կը տեւէ։

Աբաս այս յունական հալածանաց և այլ բարբարոս ազգաց ասպատակութեան միջոցին կը վախճանի։ Նախարարք Անանիա կաթողիկոսին հետ կը խորհին շուտով թագաւոր օծել Աբասի որդի Աշոտն, և այս պատճառաւ պատգամաւորաց ձեռամբ կը հրաւիրեն Աղուանից Փիլիպպոս հայկազուն թագաւորն ու Յովհաննէս կաթողիկոսն, և երբ կը ժողովին ամենքն, ուր էին 40 էն աւելի եպիսկոպոսունք, (961) Անի քաղաքի մէջ Աշոտը թագաւոր կ'օծեն, և նոյն քաղաքն արքայական աթոռանիստ կը դառնայ։

Աշոտ մեծ խնամք կը տանի Եկեղեցւոյ պայծառութեան և իւր մարդասիրական խնամքներով առաւել հայր կը հանդիսանայ Հայաստանին քան թէ թագաւոր։ Կըսափոփէ Ազգի տառապեալներն ու կարօտեալնե-

րը ։ Սեղանակից կ'առնէ իրեն՝ կաղերը, կոյրերը, ցաւագարները և շատ անգամ ինքը կըապաստաւորէ, իւր բոլոր արքայական հարստութիւնը ազգի կարօտելոց համար գործադրելով, այնպէս որ մահուան ժամանակ մի դրամ գոնէ չըգտնուիր գանձատան մէջ ։ Այս մարդասիրութեան խնամոց և գթութեան համար կըկոչուի Աշոտ Ողորմած ։ Աշոտի նման ողորմած կըլինի նմանապէս և Խոսրովանոյշ Թագուհին, որ Սեւորդեաց աշխարհին մէջ կառուցանել կը տայ Հաղբատ և Սանահին հոյակապ վանքերն, որոնք մինչեւ ցայսօր կանգուն կան ։ Խոսրովանոյշ գթած մայր կըհանդիսանայ բոլոր ազգին և արժանաւոր Թագուհի Բագրատեան Թագաւորութեան ։

Իսկ Անանիա կաթողիկոս Աղթամարայ, Վարագայ և ապա Անիի մէջ հայրապետական պաշտօն վարելով կըվախճանի 22 ամեայ կաթողիկոսութենէն զկնի ։



## Ե.

Վահան կաթողիկոս. — 'Ի Յունաց արծարծեալ խնդիր միութիւն. — Ժողով յԱնի. — Փախուստ Վահանայ 'ի Վասպուրական. — Ընտրութիւն Ստեփաննոս Գ-ի. — Երթ Ստեփաննոսի առ Վահան և աքսորանք իւր յԱղթամար. — Խաչիկ Ա. — Կրօնական հալածանք 'ի Յունաց. — Թղթակցութիւնք. — Բարեկարգութիւնք Խաչիկի. — Ժողով յԱնի և ընտրութիւն Սարգսի Ա. — Մոլորութիւն Թոնդրակեցւոց. — Ժողով յԱնի. — Պետրոս Ա. — Գաղթականութիւն 'ի Սեբաստիա. — Տուղրիլ Սկիւթացի և Վասակ Պահլաւունի. — Հարեւանցի ակնարկ ազգային կրօնական և քաղաքական վիճակի վրայ։

ԱՆԱՆԻԱՅԻ տեղ, Ժողովական հաւանութեամբ (ուր էր և Աղուանից Յովհաննէս կաթողիկոսն), կաթողիկոս կ'ընտրուի (965) Սիւնեաց Բաղաց գաւառի Ջուանշէր իշխանի որդին Վահան կամ Վահանիկ, որ առաջ եպիսկոպոս ձեռնադրուած էր նոյն գաւառի վրայ Անանիայի ձեռամբ։ Վահան կաթողիկոսանալով կը նստի Արգինայ գիւղաքաղաքի մէջ, վասն զի տակաւին Անիի կաթողիկոսարանն պատրաստուած չէր։ Վահան իւր կաթողիկոսութեան միջոցին, յունական ատելութենէն ստիպուած, որ ամենայն հալածանքով կը շարունակուէր, կամ ինքնին աւելի հակամիտ լինելով նոյն կողմը, առանց հաւանութեան և գիտութեան Աղ-

գին, կը միաբանի Յունաց հետ և առանձինն իւր կողմէն գիր գրելով և պատկեր բերել տալով կը դնէ Հայոց եկեղեցւոյն մէջ, իբր 'ի նշան անխտրութեան։ Վահանայ արարմունքը սաստիկ խռովութիւն կը յուզէ Ազգի մէջ, որոնք կը սոսկային յունական միակերպութենէն և վնասակար կը համարէին ազգային Եկեղեցւոյ գոյութեանը, որ իւր առանձին ծէսերով և սովորութեամբ կը պարծէր։ Այս խռովութեան առթիւ մեծ ժողով կը գումարուի Անիի մէջ (ուր յականէ յանուանէ կը լինին — Տէր Խաչիկ Արշարունեաց եպիսկոպոս, հայր Պօղիկարպոս Կամրջաձորոյ վանական, հայր Սարգիս Հոռոմոսի վանուց վանական և այլ եպիսկոպոսունք և բազմաթիւ մարդիկ) Վահանայ ինքնահաճ գործը քննելու։ Վահան տեսնելով Ազգի յուզմունքը և ժողովին գումարումն, որուն ինքը պատճառ տուած էր, կը փախչի Վասպուրականի Աբուսահլ Թագաւորին մօտ, որ Գագիկ Արծրունիի որդին էր։ Յիշեալ ժողովն հաւանութեամբ և Վահանայ փախստեան պատճառաւ կաթողիկոս կ'ընտրուի Ստեփաննոս Գ. Սեւանայ վանուց վանական։ Երկար գժտութիւններ կը լինին Վահանի և Ստեփանի մէջ, մինչեւ որ վերջինը կը ստիպուի անձամբ Վասպուրական երթալ և Վահանն ու իր պաշտպանն Աբու-

տաճը յանդիմանել։ Ստեփաննոս իւր ուղեկից վարդապետաց հետ կ'աքսորուի Աղթամար կղզին և անտի կը տարագրուի միայնակ Կոտորոց բերդը, ուր և կը վախճանի երկամեայ կաթողիկոսութենէ զկնի։

Յունականութեան յարումն ուրիշ արդիւնք չէր կարող ունենալ Հայոց համար, եթէ ոչ ներքին վրդովմունք և երկպառակութիւնք եկեղեցւոյ զաւակաց մէջ, ինչպէս կը տեսնենք Վահանի և Ստեփաննոսի պատմութենէն։

Ստեփաննոսի տեղ կաթողիկոս կ'ընտրուի, (972) Խաչիկ Ա. Արշարունեաց եպիսկոպոսն, Անանիայի քեռորդին, որոյ մասին պատմաբաններէն ոմանք կ'ասեն թէ՝ Վահանի կենդանութեան ժամանակն ընտրուեցաւ, իսկ ոմանք կ'ասեն թէ՝ Վահան արդէն վախճանած էր։ Խաչիկ եւս Արգինայ գիւղաքաղաքի մէջ կը նստի, ուր և հոյակապ եկեղեցի կը կառուցանէ և բազմաթիւ մատեաններ ժողովելով՝ հարուստ թանգարան կը պատրաստէ։ Սա զանազան օտար երկիրներու մէջ գտնուած Հայոց համար եպիսկոպոսներ կը հաստատէ հայկական հօտի օտարութեան մէջ ցրուած խումբերը հովուելու։

Խաչիկ կաթողիկոսի խորհուրդը շատ օրինաւոր էր, վասն զի ուր հօտն է, այնտեղ պէտք է լինի և հովիւն։ Ինչ ժամանակ որ այս

օրինաւորութիւնը գործադրուած չէ, մինչ-
կորուստ եղած է Անգլին և շատ տեղ և շատ
անգամ անխնամակալութենէ պարզամիտ
ժողովրդէն շատերն օտարաց հետ խառնը-
ւելով անյայտացած են։

Խաչիկի կաթողիկոսութեան ժամանակ
Յոյնք սաստիկ կը տագնապեն Հայերը դա-
ւանաբանական խնդրոց համար։ Սեբաստի-
ոյ Յոյն մետրապօլիտը բռնաբար կը տանջէ
Հայ քահանայքը և նոցա գլխաւորները եր-
կաթի կապանքներով կապեր կը խրկէ ՚ի Պօ-
լիս, ուր ոմանք բանտերու մէջ կը մեռանին
և ոմանք յակամայս կը ստիպուին Քաղկեդո-
նի ժողովն ընդունիլ։ Յունական մետրա-
պօլիտները զանազան թղթեր կը գրեն Խա-
չիկ կաթողիկոսին՝ միաբանութեան ժան-
տախտով տոգորուած և կը պախարակեն Հա-
յաստանեայց Եկեղեցին, և յունական բաժ-
նի Հայոց մէջ կ՚արգելուն ժամհարութիւնն
ու աղօթատեղին ժողովելը։ Հայոց վարդա-
պետները կը ժողովին Խաչիկ կաթողիկոսի հը-
րամանաւ և կը պատասխանեն Յունաց գրած
թղթերուն։ Հայոց պատասխաններէն մին,
որ բաւական ընդարձակ է. կ՚աւանդէ Ասո-
ղիկ ժամանակակից պատմագիրն իւր երկասի-
րութեան մէջ, (Գլուխ ԻԱ), յորմէ պարզա-
պէս կ՚երեւի թէ որչափ այլանդակ եղած են
Յունաց գրած թղթերն առ Խաչիկ կաթո-

Digitized by Google

ղիկոս ։ Նոյնպէս Թուղթ կը գրէ Թէոդորոս Յոյն մետրապօլիտն , որուն կը պատասխանէ Սամուէլ Կամրջաձորեցին, Խաչիկ կաթողիկոսի հրամանաւ ։

Այս ամէն յուզմունքներն և Թղթակցութիւնները պարզապէս կը յայտնեն մեզ թէ որչա՜փ աղէտներ կարող էին հասնիլ քրիստոնէական Եկեղեցւոյն , երբ սէրը՝ մոլեռանդութեան փոխուած է և քրիստոնէութեան ճշմարիտ հոգին՝ ծիսական վիճաբանութեան ։ Այս պատկերով կը ներկայանայ մեզ նոյն ժամանակեայ յունական եկեղեցականութիւնը , որ հակառակ Աւետարանի հոգւոյն , օրհնութեան տեղ՝ անէծքներ կը տեղայ Հայոց վրայ և տառապակիր Ազգ մի տարապարտ վէճերով կը պաղեցնէ ։

Խաչիկ յունական ատելութենէն չը տատամսելով՝ ներքին բարեկարգութեանց ևս ջանք կը տանի և Տրդատ անուն նշանաւոր ճարտարապետի ձեռամբ կը շինէ Անիի կաթողիկէ եկեղեցին , ուր և կը հաստատուի կաթողիկոսարանն . նմանապէս Գագիկ Ա . Աշոտ Ողորմածին երէց որդին , Կատրամիտէ Թագուհւոյ աջակցութեամբ զանազան եկեղեցիներ կը շինեն Անիի մէջ , որոց մէջ նշանաւոր էր մանաւանդ Նրաշխաձորէ մէջ կառուցածն՝ նմանութեամբ Էջմիածնի ։ Այս եկեղեցեաց մէջ Գագիկ Շահնշահ ինք-

նին շատ անգամ եկեղեցական պաշտօնէից հետ ժամասացութեան կ'երգակցէր ։

Խաչիկ 19 ամեայ կաթողիկոսութենէն ըզ-կնի՝ իւր արդիւնաւոր կեանքը կը կնքէ և կը թաղուի Արգինայի հանգստարանին մէջ և ապա Գագիկ Շահնշահ մեծ ժողով կը գու-մարէ Անիի մէջ նոր հայրապետի ընտրու-թեան համար, ուր և բոլոր ժողովականաց հաւանութեամբ կ'ընտրուի (992) Սարգիս Ա Սեւանայ վանուց առաջնորդն, որոյ համար կ'ասէ Ասողիկ. "Ոչ ինքն զկնի պատուոյն, այլ պատիւն զկնի ինքեան ընթացաւ ։ Սորա հրամանաւ է որ Ասողիկ կը գրէ իւր պատ-մական երկասիրութիւնն, որոյ վրայ առան-ձինն պիտի խօսինք ։

Եկեղեցական Պատմութեան անաչառ հարցասիրութենէն քաջ յայտնի է, որ իմաս-տակութենէ և մոլեկրօնութենէ ծագած վէճերը միշտ կը խանգարեն հաւատացելոց սրտերն՝ եկեղեցական պաշտելի խորհրդնե-րըն առարկայ լինելով տկար մտքերու շաղա-կրատութեան, կը ցամաքեցնեն բարեպաշ-տական զգացմունքներն և հետեւապէս կը ծնուցանեն այլանդակութիւններ ։ Նա-յայտնի է քրիստոնէութեան սկզբնաւորու-թենէն 'ի վեր, որ միշտ մոլորութիւններ յառաջացած են, երբ Աստուածութեան անհաս խորհրդները մարդկային տկարամիտ-

հետազօտութեան ենթարկուած են։ Կը ցաւինք ասել, որ Յունաց ազգի կրօնական աններողամտութիւնն ու հակառակասիրութիւնը մեր ազգի մէջ ևս շատ մտքեր պղտորեց և քանի մի անբարեպաշտ մտածութիւններ յերևան հանեց, որոց մէջ նշանաւոր են Թոնդրակեցիք կամ Թուլայլեցիք։ Սոցա իմաստակութիւնքը, մօտ 200 տարի կը տևէ, Յովհաննէս Ովայեցի կաթողիկոսի օրէն սկսեալ մինչև Սարգսի և Պետրոս Գետադարձի ժամանակներն, երբեմն մարելով և երբեմն արծարծուելով։ Թոնդրակեցւոց մոլորամիտ կարծիքներուն վրայ երկարապատում լինիլ մեր նպատակէն արտաքոյ է, միայն այսչափ կ՚ասենք, որ բռնական խռովութեան և մտայուզութեան տեղի տուաւ Հայաստանի մէջ։ Սարգսի կաթողիկոսութեան ժամանակ այնքան սաստկացան այս վրդովմունքները, որ ստիպուեցաւ ժողով գումարել առաջն առնելու համար։ Ժողովը չըկարաց իւր նպատակին հասնիլ, բայց յետ ժամանակաց Գրիգոր Մագիստրոս Միջագետի Դուքսը ցրուեց այս աղանդաւորութեան գլխաւոր ապաստանարաններն, որք էին Թոնդրակ, Թուլայլ և Խնուն կամ Խնուս գիւղերն, ուր ամրացած էին նոքա և երբեմն տարածուելով պարզամիտ ժողովրդի մէջ որոմն կը սերմանէին և համախոհ-

ներ կը շահէին, մինչեւ անգամ իշխաններէն քահանաներէն և կիներէն ։ Գրիգոր Մագիստրոսի ահէն կը դառնան իրենց մոլորութենէն և Հարք գաւառի ժողովին մէջ մօտ հազար հոգի միասին կ'աշակերտին ուղիղ վարդապետութեան, որոց կը հետեւէին ապա և շատերն ։

Այս մոլորութեան առաջին սերմանողն կը լինի Սմբատ մի, Ծաղկոտն գաւառէն, որ ուսած էր մի պարսիկ մոգ բժշկի մօտ ։ Սմբատին հետեւեցան յաջորդաբար զանազան անձինք, որոնք առանձին դասապետութիւն կը կազմէին նախագահով հանդերձ ։

Սարգիս Ա. իւր կենդանութեան ժամանակ, հաւանութեամբ ազգին իրեն յաջորդ կ'ընտրէ (1019) Պետրոս առաջին իւր ծերութեան պատճառաւ և. ինքն 27 ամեայ կաթողիկոսութենէն զկնի կը վախճանի ։ Պետրոսի կաթողիկոսութեան շրջանը մօտ 40 տարի կը տեւէ և կը համարուի Հայաստանեայց Եկեղեցւոյ և Ազգի արհաւրալից տառապանաց միջոցը ։ Այս ժամանակին մէջ Վասպուրականի վերջին թագաւորն Սենեքերիմ Յունաց կայսեր հետ դաշն կը կապէ, իւր երկիրներն կը յանձնէ և Սեբաստիան փոխարէն ընդունելով Վասպուրականէն այն տեղ կը փոխադրուի, որուն կը հետեւի Պետրոս կաթողիկոսն և շատ կրօնաւորներ, մանաւանդ

Նարեկայ վանքէն, իրենց հետ տանելով Վարագայ խաչն և բաւականին ժողովուրդ, որոնք Անի և Արագկեր քաղաքները կը շինեն, ինչպէս և Նոր եկեղեցի Վարագայ խաչի անուամբ: Այս Թշուառ ժամանակին մէջ Սկիւթացւոց Տուղրիլ բէգը Հայաստան կ'արշաւէ և գաւառները կ'ապատակէ, շատերը կըստիպէ հաւատն ուրանալ և եկեղեցիները կ'այրէ, որով և կը բացուի նահատակութեան նոր ասպարէզ: Գրիգոր Մագիստրոսի հայրն՝ Վասակ Պահլաւունի, Հայոց սպարապետը, հրաման կը հանէ իրեն հետ միանալ, ով որ կը փափաքի քրիստոնէական հաւատոյ պաշտպանութեան համար մեռանիլ: Այս հրաւէրը տարածուելուն պէս կը գումարուի մեծ բազմութիւն, 5000 էն աւելի, ամենքը կը հաղորդուին, խրախոյս կը-տան միմեանց և Վարդանանց նման կը գոչեն. «Մեր պատերազմն Եկեղեցւոյ պարծանաց համար է, չերկնչինք ուրեմն հաւատոյ Թշնամիէն և մեր մահը՝ քաջութիւն համարենք»: Կը ճակատին Տուղրիլի բազմախուռն հրոսակին հետ և մեծ արիւնհեղութիւն կը լինի, և ապա երկու կողմէն ետ կը ցրուին: Մինչ Վասակ պատերազմէն յետոյ գոհաբանական աղօթք կը մատուցանէ Աստուծոյ, դարան մտած Թշնամին քարով կը զարկէ և կը մեռցնէ քաջ նահատակը:

Դարձեալ Պետրոսի կաթողիկոսութեան թշուառ ժամանակին՝ ներքին խառվութիւններն և արտաքին արհաւիրները, ներքին թուլութիւնն ու անհաւատարմութիւնն և արտաքին թշնամեաց բարբարոսութիւնն իրար խառնուելով Բագրատունի թագաւորութեան կործանումը կը պատրաստեն։

Այն ժամանակի սոսկալի անցքերու, աւերանաց և կոտորածներու մանրապատում նկարագիրը կը թողունք ազգային քաղաքական պատմութեան (մանաւանդ Մատթէոս Ուռհայեցւոյն և Արիստակէս Լաստիվերացւոյն), և միայն մեր պատմական թելն չընդհատելու համար՝ մի հարեւանցի ակնարկ կը ձգենք Անիի և Եկեղեցւոյ կրած տառապանաց վրայ, որուն պատճառ կը լինին արտաքուստ Յունաց նենգութիւնն և Պարսից ու այլ բարբարոս ազգաց անգթութիւնն. իսկ 'ի ներքուստ Սմբատեան Յովհաննէս թագաւորի երկչոտութիւնը, Պետրոս կաթողիկոսի անքաղաքագիտութիւնը, Սիրակոս քահանայի արծաթամոլութիւնը, Վեստ Սարգսի փառամոլութիւնն ու տիրանենգութիւնն և Գրիգոր մագիստրոսի իշխանասիրութիւնը։

## Զ.

*Յովհաննէս խանձրամիտ և Պետրոս Գետադարձ. — Դարձ Պետրոսի 'ի Պոլսոյ 'ի Հայաստան. — Սենեքերիմ Արծրունի. — Կալանաւորութիւն Պետրոսի. — Խռովութիւն Դէոսկորոսի Սանահնեցւոյ. — Ժողով յԱնի. — Հալածանք Ապուսվարայ և արիական դիմադրութիւն քրիստոնէից. — Պահանջ Միքայէլ կայսեր Յունաց. — Թագաւորութիւն Գագկայ. — Վեստ Սարգիս. — Երթ Գագկայ 'ի Պոլիս և տարագրութիւն. — Անի կը մատնուի Յունաց. — Դքսութիւն Մագիստրոսի. — Բարձումն Բագրատունի թագաւորութեան. — Նկարագիր Աղէտից. — Թակարդ Յունաց վասն բարձման կաթողիկոսութեան Հայոց. — Կալանաւորութիւն Պետրոսի Գետադարձի և երթն 'ի Պոլիս. — Դարձ նորա 'ի Սեբաստիա։*

ՅՈՎՀԱՆՆԷՍ թագաւորն մի կողմէն Յունաց Վասիլ կայսերէն երկնչելով, որ Վրաց Գէորգի թագաւորին յաղթելէն զկնի Հայաստանի վրայ կ'արշաւէ, և միւս կողմէն երկրաշարժութեան և լուսնի խաւարման բնական երեւոյթներէն սարսափելով և կորուստներ գուշակելով (որ տգէտ ու նախապաշարեալ գլուխներու գործ է), Անի քաղաքը Պետրոս կաթողիկոսի միջնորդութեամբ և առանձին նամակաւ, կը խոստանայ իւր մահէն յետոյ Վասիլ կայսեր թողուլ, որպէս զի Հայաստանը չը նեղէ։ Կաթողիկոսն այս միջնորդական վնասակար գործողութեան մէ-

ջոցին բուական ժամանակ կը մնայ կայսեր մօտ և ըստ պատմելոյ Մատթէոսի Ուռհայեցւոյն և Լաստիվերտցւոյն, որ մի, կայսեր խնդրանօք Հայաստանեայց Եկեղեցւոյ ծիսով ջրօրհնեաց հանդէսը կատարելու ժամանակ, երբ կը խաչակնքէ Կենաց Փայտիւ, ջուրը կը կանգնի իւր ընթացքէն և լոյս կը փայլի, ուստի և այս պատճառաւ է ինքն կը կոչուի Գետադարձ ։

Պետրոս կաթողիկոսը Պոլսէն կը դառնայ Սեննեքերիմ Թագաւորի մօտ և այն տեղէն Անի քաղաքը ։ Անիէն վերստին կը դառնայ Սեբաստիա Սեննեքերիմի հիւանդութեան պատճառաւ, որ վախճանելով, իւր կենդանութեան ժամանակ աւանդած պատուէրին համեմատ Վարագայ Նշանը յետ կը դարձուի իւր առաջին տեղն և իր մարմինը կը տարուի 'ի Վասպուրական և այն տեղ կը թաղուի, որով և կը վերջանայ Վասպուրականի Թագաւորութիւնը ։ Հայրենասիրութեան պարտքը կը պահանջէր, որ Սեննեքերիմ իւր կենդանութեան ժամանակ ամենեւին չը տեղափոխուէր Վասպուրականէն, քան թէ յետոյ իւր մարմնաւոր մնացորդը կըտակէր հայրենեաց մէջ թաղելու ։

Պետրոս Գետադարձն, որ իւր կենաց մեծ մասը Սեբաստիա և այլ տեղեր կ'անցընէր, երբ Անի կը դառնայ, մեծ դժուա-

թիւն և տարուն կը ծագի ազգի մէջ նորա երկար բացակայութեան համար, որով և կըստիպուի նա Վասպուրական երթալ, ուր կ'իշխէին Յոյն վերակացուք։ Վերստին կը կոչուի Անի, որ իւր կաթողիկոսական պաշտօնը շարունակէ և Յովհաննէս թագաւորի հրամանաւ Բջնայ բերդին մէջ կ'արգելուի, որպէս կալանաւոր։ Սանահնայ վանուց առաջնորդ Դէոսկորոսը կաթողիկոս կ'ընտրուի և սորա պատճառաւ ժողովուրդը սաստիկ կ'երկպառակի և 1036ին մեծ ժողով կը գումարուի Անի քաղաքին մէջ, 4000 եկեղեցական և աշխարհական անձներէ, ուր կը գըտնուի և Աղուանից Յովսէփ կաթողիկոսն իւր եպիսկոպոսներով։ Դէոսկորոս պաշտօնէ կը ձգուի իբրև հակաթոռ և իւր վանքը կ'ուղարկուի, իսկ Պետրոս վերստին պաշտօնի կը հրաւիրուի։

Այս կաթողիկոսական երկպառակութեան միջոցին Դունայ Ապուսվար Ամիրայն սաստիկ հալածանքներ կը հանէ Հայ քրիստոնէից դէմ, եկեղեցիներն այրելով, խաչերը խորտակելով, շատերը բռնի թլփատելով և այլ տառապանքներ տալով։ Քրիստոնեայք կրօնական ազատութիւնը պաշտպանելու համար կը դիմադրեն այս եկեղեցաւէր բռնակալութեանն, աշխարհիկ բազմութիւնը զէնքերով, իսկ եպիսկոպոսաց, երիցանց և վա-

Digitized by Google

նականաց դասը՝ խաչիւ և Աւետարանաւ Ապուսվարի զօրաց դէմ ճակատելու կամ լաւ եւս ասել նահատակուելու պատրաստութեամբ։ Երբ պատերազմը կըսկսի, քրիստոնէից բազմութիւնն միաբարբառ կ՚աղաղակէ. «Արի Տէր, օգնեա՛ մեզ և փրկեա՛ զմեզ վասն անուան քո»․ և աներկիւղ կը դիմէ ՚ի նահատակութիւն, որով և թշնամեաց բանակը կը ցրուի։ Այս տագնապը տակաւին չանդորրացած՝ Յունաց Միքայէլ կայսրը Յովհաննէս Թագաւորի մահը լսելով դեսպան կը ղրկէ և Անի քաղաքը կը պահանջէ ըստ դաշնագրին։ (Չմոռանանք ասել, որ Վասիլ կայսեր վախճանելու ժամանակ, սոյն պայմանագիրը Կիրակոս հայ քահանային յանձնուած էր, որ դարձնէ իւր Թագաւորին (Յովհաննիսին), բայց ապիրատ քահանայն մօտը պահելով վաճառած էր Վասիլի յաջորդ Միքայէլ կայսեր, փոխարէնն արծաթ ընդունելով)։ Հայք կ՚ընդդիմանան Միքայէլ կայսեր պահանջմանը։ Յոյնք բանակ բանակի վրայ Հայաստան կը ղրկեն, որով սարսափելի կոտորածներ կը լինին։ Հայոց նախարարները Վահրամ սպարապետի խորհրդով, ազգի հաւանութեամբ և Պետրոս կաթողիկոսի ձեռքով Յովհաննէս Թագաւորի Աշոտ եղբօր որդին՝ Գագիկը Թագաւոր կ՚օծեն (1042), 16 կամ 17 ամեայ

Digitized by Google

հասակին մէջ, որ 'ի մանկութենէ կրթուած էր իմաստութեան և բարեպաշտութեան մէջ։ Յոյնք Գագիկէն կը պահանջէին Անին, և նա բոլորովին կ'ընդդիմանայ, որով և Յոյնք նորանոր նենգութեանց կը պատրաստուին։ Միքայէլի յաջորդն զԳագիկ Բ 'ի Պօլիս կը կոչէ և խոստումն կը լինի Անի քաղաքի դաշնագիրն իրեն յանձնուելու, բայց նա կը կասկածի երթալու. սակայն տիրանենգն Վեստ Սարգիս (որ Վասակայ նման ազգը մատնելով թագաւորական պատուոյ արժանանալու տենչ կը սնուցանէր սրտին մէջ.) կը յորդորէ նախարարներն ու Պետրոս կաթողիկոսն, որ թագաւորը համոզեն Պօլիս երթալու, և սոքա կը միաբանին և կը խոստանան Գագիկի իրաւունքը պաշտպանել, միայն թէ ինքը Պօլիս երթայ կայսեր ցասումը աւելի չը գրգռելու համար։ Գագիկ զինքը յորդորողներու խոստմանը և հաւատարմութեանը վստահելով կ'ուղեւորի 'ի Պօլիս, նախ մեծ պատուով կ'ընդունուի և ապա երկար խօսք կը բացուի Անի քաղաքի համար։ Թագաւորն իւր իրաւունքն քաջասրտութեամբ պաշտպանելու համար առ ժամանակ կը տարագրուի մերձակայ կղզի մի, որպէս կալանաւոր։ Այս լուրը Հայաստան կը հասնի և նախարարներն ու կաթողիկոսը, փոխանակ իրենց խոստումը պահպանելու՝ թուղթ կը

Digitized by Google

գրեն կայսեր, Անի քաղաքն իրեն յանձնելու և Անիի 40 բանալիները Վեստ Սարգսի ձեռքով Կայսեր կը ղրկուին: Մոնոմախոս կայսրը վերստին Գագիկն իրեն մօտ կը կոչէ և վիճաբանութեան ժամանակ բանալիները կը ցուցնէ, որով և խեղճ Թագաւորը կը շըւարի որպէս կայծակնահար: Այն միջոցին Գրիգոր Մագիստրոս Պօլիս կ'երթայ, ունած էր 'ի մանկութենէ, որպէս Թէ խաղաղական ելք մի գտնելու համար, բայց նա եւս կը տկարանայ իւր հայասիրութեան և իրաւանց մէջ, և իւր հայրենի ժառանգական երկիրը կայսեր տալով, 'ի փոխարէն Ասորոց կողմը նոր երկիր կ'ընդունի և դըքսութեան պաշտօն առնալով կը փոխադրուի այն տեղ. ուր և կը պատահի Թոնդրակեցւոց աղանդին բարձումին, որուն վրայ արդէն խօսած ենք:

Այսպէս ահա Հայոց Թագաւորանիստ և մեծահռչակ ու հոյաշէն քաղաքն Անի Յունաց ձեռքը կ'անցնի և 'ի փոխարէն Պիզու քաղաքը կը տրուի Գագիկին, որով և կը բարձուի Բագրատունեաց ցեղէն Թագաւորութիւնը, որ 160 տարի միայն տեւողութիւն ունեցաւ: Հայաստանի առիւծասիրտ և յունական նենգութեանը մատնուած Գագիկ Բ. Թագաւորն 25 տարի պանդխտական կեանք կը վարէ և օր աւուր կը յաճախեն

Զգաստալ և 'ի հեռաւոր աշխարհս, մինչև ցԱսորիս և Հուշեթացիս և առ լեռամբն Կաւկասայ և Ա՛նիդ մինչև 'ի մաւտն 'ի Գաղա և ընդ Տապաստանն և ընդ ամենայն հիւսիսականս և ընդ արեւելս, 'ի հեռաւորս գնալով ատեաք զգոյժ քաղաց և նախնեաց։ Այս ընթացքը բռնած է Թովմա ժամանակաւ հնագոյն անցից նկատմամբ, որ օրինաւոր պատմագրի ջանք է. իսկ ժամանակաւ մերձաւորագոյն անցքերուն խնդրին ականատես եղած և այնպէս գրած է, որոյ համար և կ'առէ. «Եւ իբրև յայլոց համբաւոյ տեղեկացեալ՝ ընծայեալ արձանագրուցանեմ քեզ սոսայոգ բանից պաճուճեալ առասպելս, այլ ականատես և ականջալուր և իմով իսկ ձեռօք շօշափեալ, պատմեմ քեզ հաւաստապէս զեղելոցն զարմանս»։

Ինչպէս տեսանք, Թովմայի երկասիրութեան բուն նպատակն է Արծրունեաց ցեղի պատմութիւնը աւանդել, բայց որովհետև սոյն ցեղը Հայաստանի մէջ յայտնի էր Հայկազունեաց նահապետական հարստութենէն 'ի վեր, ուստի և Թովմայի պատմութիւնը մեր ազգային սկզբնական ժամանակներէն սկսած է և Արծրունեաց ցեղի պատմութեան հետ այլ և այլ դէպքեր ևս յեղյեղուած. Թովմայի պատմական երկասիրութիւնը բաժնուած է չորս դպրութեան.

որոց առաջինն կը սկսի մեր Ազգի սկզբնաւորութենէն եւ կ'աւարտի Արշակունեաց թագաւորութեան հետ. երկրորդն կը սկսի Վարդանանց պատերազմէն և կը հասնի մինչեւ Բուղայ ոստիկանի գալուստն 'ի Հայաստան. երրորդն կը սկսի Բուղայի հալածանքներէն և կը հասնի մինչեւ Սմբատ Խոստովանողի որդի Աշոտոյ ժամանակները: Իսկ չորրորդն կը սկսի Գրիգոր Դերենիկի, Նորա որդւոց Աշոտոյ, Գագիկի և Գուրգենի գործքերէն և նովաւ կ'աւարտի: Վերջին երկու դպրութիւնները առաւել ընդարձակ են և մանրապատում. վասն զի Թովմայի մանկութեան ժամանակի և ականատես անցից պատմութիւնը կը պարունակեն: Հինգերորդ դպրութիւն մի եւս կայ, որ մինչեւ Ժ դարը կը հասնի, բայց այս Թովմայի գործը չըհամարուիր, այլ յետին ժամանակաց շարայարողի: Թովմայի պատմութեան մէջ քանի մի ազգային երկասիրութիւններ կը յիշուին, բայց մինչեւ ցայսօր գտնուած չեն: Սոքա են՝ Դ. Գիրք Խորենացւոյ պատմութեան, Անայորդ Պատմութիւն Հայոց՝ Սամբրէի և Թէոդորոսի, Համառօտ Պատմութիւն Վարդանանց՝ Աբրահամ Խոստովանողի և այլն:

Թովմայի պատմութեան անցքերը մի առ մի համառօտագրելը մեր նպատակէն

Իններորդ դարուն մէջ կը յիշատակուին մի քանի մանր բանաստեղծներ եւս, ինչպէս են — ՅՈՎՀԱՆՆԷՍ ԲԺԻՇԿ, Թարգմանիչ Դիոնեսիոսի պատմութեան. — ԴԱՒԻԹ ՎԱՆԱՀԱՑԻ. որ իբր թէ Շապուհ Բագրատունեաց պատմութեան մէջ քանի մի ճառ յաւելցուցած է. — ՍՏԵՓԱՆՆՈՍ աշակերտ Մաշտոց կաթողիկոսի, որ Մաշտոց Գիրքը օրինակած է (893) և իւր վարդապետի վարքը գրած. — ԳՈՒՐԳԷՆ ԱՐԾՐՈՒՆԻ, Անձեւացեաց Տէրն, որ Աբդլմսեհի վկայաբանութիւնը թարգմանել տուած է արաբերէնէ 'ի հայերէն (873), ըստ մակագրին “Յօգնականութիւն անձին իւրոյ և ամուսնոյ իւրոյ Հեղինէի աստուածասիրի և որդւոց իւրոց Տաճատայ և Ատոմայ”։

Սոյն հատուածի իմաստն այս է. Գագիկ կամեցած է նորակերտ եկեղեցւոյն փրկչի անուամբ յորջորջել. բայց ոչ թէ Նեստորականաց և Քաղկեդոնականաց նման փրկչի մարմինը Բանէն բաժնելով և նոյն մարմինը եկեղեցի և տաճար համարելով Բանին, այլ փրկչի անուանն միայն եկեղեցւոյ վրայ դնելով։ Վասն զի կ'ասէ, նոքա' որ մարմինը Բանէն բաժնելով եկեղեցի կամ տաճար կը համարին և միանգամայն նոյն մարմինը կը պատարագեն, կը նշանակէ թէ' նոյն եկեղեցւոյ քարերը, փայտերը և այլ երկաթեղէն կահքերը կ'ուտեն, որ շատ և շատ ծաղրելի է։ Իրաւ է կ'ասէ, որ առաքեալք և ամէն մարդիկ տաճար և եկեղեցի Աստուծոյ կը կոչուին, բայց ոչ թէ նոյն ինքն փրկիչն և Աստուած. և ոչ մարմին փրկչին. վասն զի մարմինն Բանէն բաժնելն' անմտոց գործ է։

Digitized by Google

## Գ.

Ուսումնականք Ժ դարու. — Երկասիրութիւնք Անանիայի Շիրակացւոյ. Խոսրովի Անձևացւոյ. Գրիգորի Նարեկացւոյ և պարունակութիւնք իւրաքանչիւրոցն. — Քանի մի ուսումնականք. — Երկասիրութիւն Ասողկայ. — Արտաւազդ Մագաղութնի և Տաճատ վարդապետք։

ՏԱՍՆԵՐՈՐԴ դարու մէջ Հայաստանի նշանաւոր ուսումնականքն էին — Կամրջաձորոյ վանք՝ Արշարունեաց գաւառի մէջ. Հնձոյ կամ Կարմիր վանք՝ Կարնոյ մօտ. Հոռոմոց վանք՝ Շիրակայ մէջ, որ ապաստանարան եղաւ Յունաց կայսերէն հալածուած միաբանից. Նարեկայ վանք՝ Ռշտունեաց գաւառի մէջ. Ապարանից եպիսկոպոսանիստ ուխտ՝ Մոկաց գաւառի մէջ. Յովհաննու մենաստան՝ զոր Ասողիկ "բարձրահռչակ և սուրբ առաքինաստանդ" կը կոչէ. Մարմաշէն կամ Մարմարաշէն վանք՝ Շիրակայ մէջ։ Իսկ սոյն դարու նշանաւոր մատենագիրքն են սոքա ։

ԱՆԱՆԻԱ ՆԱՐԵԿԱՑԻ. - Ազգային պատմիչները մեծապէս կը գովեն Անանիա, իբր փիլիսոփայ, գիտնական, ըստ Սամուէլ Անեցւոյ և այլ մատենագիրներ տալով թէ և իւր գրուածներն մեր ձեռքը հասած չեն, որ կարենանք ըստ արժանւոյն գնահատել։ Անանիա Նարեկացւոյ անուամբ յիշուած երկասիրութիւններն են — Հերքում

մոլորութեան Թոնդրակեցւոց, զոր կը յիշատակեն Մագիստրոս և Ներսէս Շնորհալի. Մեկնութիւն առաքելական թղթոց, հետեւողութեամբ Եփրեմի, Ոսկեբերանի և Կիւրղի. Ճ–եփորանոց նահատակութիւն, և այլն.

Ինչպէս իւրաքանչիւր մատենագրի, նոյնպէս և Անանիայի տրուած գովեստները՝ իրենց կեցած դարերու մտաւորական զարգացման չափով պարտինք ընդունել, ապա թէ ոչ կամ սաստիկ նուաղեցուցած և կամ սաստիկ բարձրացուցած կը լինինք որ և իցէ հեղինակի արժանաւորութիւն։ Ուստի, որչափ որ Անանիայի գրուածները մեր ձեռքն հասած չեն, այնու ամենայնիւ կարեմք գուշակել, որ իւր դարու ուսումնականութեան չափով նշանաւոր անձն եղած է և Նարեկայ վանքի առաջնորդական պաշտօնի մէջ իւր օրինակով նոյն վանքը ուսումնասիրութեան վայր դարձուցած է։ Այս նկատմամբ ուրեմն, ինչպէս ամեն գեղեցիկ և շահաւէտ գործոց հիմնադիր, նոյնպէս և Անանիա Նարեկացի արժանի է մեծ երախտագիտութեան։

ԽՈՍՐՈՎ ԱՆՁԵՒԱՑԻ. — Սա իւր մանկական հասակէն հետամուտ կը լինի ուսման և գիտութեան և Անանիա Նարեկացւոյ եղբօր դստեր հետ ամուսնանալով կ'ունենայ երեք որդի — Յովհաննէս, Սահակ և Գրի-

գոր — և յետ ժամանակաց. Անձեւացեաց զաւառին եպիսկոպոս կ'ընտրուի: Խոսրով իւր բարեպաշտութեամբ և քրիստոնէական իմաստութեամբ նշանաւոր եղած է տասներորդ դարուն մէջ և իւր աստուածային հոգին պարզապէս կը փայլի իւր գրաւոր երկասիրութեան մէջ, զոր շարադրած է իւր եպիսկոպոսութեան ժամանակ:

Խոսրովու երկասիրութիւնն է՝ Մեկնութիւն Ժամագրոց, որոյ վրայ ամփոփ և ստոյգ գաղափար ունենալու համար՝ հարկաւոր է նոյն իսկ Ժամագրքի պարունակութեանը կատարելապէս հասու լինել: Ժամագիրքը, որ մեր քրիստոնէական բարեպաշտութեան և եկեղեցական ժամերգութեան հանապազօրեայ Աղօթամատոյցն է, կը պարունակէ իւր մէջ այնպիսի սքանչելի աղօթքներ, մաղթանքներ, քարոզներ և երգեր, որոնք բարեպաշտ ըղձմանց և քրիստոնէական ջերմեռանդութեան վճիտ բղխումներ են և այնպիսի խոր-դրուածներ, որոնք ամեն ժամանակ և ամեն դիպուածի մէջ ամենակարեւոր են քրիստոնէի համար, որ կը փափաքի իւր Արարչի և իւր երկնաւոր Հօր հետ խօսակցիլ: Խոսրով մեծն զգալով Աղօթամատոյցի պարունակութեան վսեմութիւնը՝ իրեն նուիրական պարտք համարած է զայն մեկնել իւր ազգաթանկէր հօտի համար, որպէս զի իւրաքանչիւր

ոք հասկնայ և զգածի՝ թէ ինչ զգացմունքով պարտաւոր է. ոգեւորիլ հասարակային ժամերգութեան ժամանակ, և ինչ է զոր Քրիստոնէական Եկեղեցին կամ հաւատացելոց բազմութիւնը կը հայցէ երկնաւոր Հօրէն, միահամուռ գումարմամբ և միաբարբառ շրթամբք ։ Խոսրով իւր մեկնական երկասիրութիւնը բարեխիղճ կերպով կատարելու համար՝ ընթերցասիրած է իրմէն առաջ եղած եկեղեցական Հարց խորհրդածութիւնքը, որոց շատերու անուններն ու հատուածները կը յիշատակէ ։ Խոսրովի երկասիրութեան մէջ մեկնուած են միայն այն մաղթանքներն ու քարոզները, որոնք իւր ժամանակ Ժամագրքի պարունակութիւնը կը կազմէին, և հետեւապէս այժմեան Ժամագրքի ամբողջ մեկնութիւնը չէ ։ Վասն զի մենք գիտենք, որ Խոսրովէն զկնի Ժամագրոքի պարունակութիւնը շատ ընդարձակուած է, մանաւանդ Ներսէս Շնորհալւոյ ժամանակ ։

Խոսրովի երկասիրութիւնը, բաց 'ի մեկնական մասերէն, կը պարունակէ նոյնպէս ժողովրդին և եկեղեցականաց ուղղած համառօտ յորդորականներ, որոնք զեղուն են բարեպաշտական զգացմունքով, և որովհետեւ գլխաւոր նպատակն եղած է հաւատացեալները հրաւիրել Ս. Գրոց ընթերցման և ա-

ղօթասիրութեան , ուստի անդ անդ խիտ գեղեցիկ ձեւերով բացատրած է Սուրբ Գր-քոց ուսման եւ աղօթից կարեւորութիւնը , որուն ապացոյց՝ արժան կը համարիմք հետեւեալ տողերը առաջ բերել . « Աստուածասի-րութիւն ՚ի Գրոց ծնանի ՚ի մարդս . . . Այ-արդ՝ պատուեսցուք զԳիրս Սուրբս վերծանութեամբ , որ են պատճառք մեզ ամենայն բարեբաւութեան : Փափագեսցուք սիրով ՚ի վերծանութիւն Գրոց Սրբոց եւ յընթեր-նուլն կրկին հոգ յանձին բերցուք . — Ա՛հ , զի իմասցուք զընթերցեալն եւ միւս եւս՝ զի անմոռաց ՚ի միտ կալցուք , մանաւանդ թէ՝ գործով կատարեսցուք եւ լիցուք առնողք արինացն . զի մի՛ զրկեսցուք ՚ի մեծագոյն բարեացն թեթեւամտութեամբ » : Իսկ աղօթից վրայ երկարօրէն խօսելէն զկնի այսպէս կը պարզաբանէ աղօթելու օգուտը . « Իսկ զպտուղ աղօթից յամենայն ժամու պահանջիմք յԱստուծոյ եւ յամենայն հասակի եւ ՚ի դիպուածի : Տղայոց բարուք սննդականց է աղօթքն եւ պահապան յելս եւ ՚ի մուտս : Երիտասարդաց գործակից . ծերոց՝ յոյս հատատութեան . քահանայից՝ պսակ պարծանաց . ժողովրդոց՝ պարիսպ ամրութեան : զընաւորաց՝ վահան փրկութեան . թագաւորաց՝ ցնծութիւն . իշխանաց՝ ուղղութիւն . դատաւորաց՝ ըզգաստութիւն . Ճգնաւորաց՝

մարտակից. կուսանաց՝ կառավարութիւն. աղաւորաց՝ սփոփանք. բերկրեցելոց՝ հրճուանք. նեղելոց՝ անդորրութիւն. խաղաղացելոց՝ զգուշութիւն. արանց՝ գործակից. կանանց՝ անակից. ճանապարհորդաց՝ ուղեկից. նաւորդաց՝ առաջարկութիւն. առողջոց՝ խնդութիւն. հիւանդաց՝ մխիթարութիւն. մեղուցելոց՝ քաւութիւն. արդարոց՝ խնդութիւն. ննջեցելոց՝ թոշակ կենաց և յոյս բարեաց . . . ք։

Սրովհեանու Ժամագրքի վրայ ուրիշ պատեհ առթիւ դարձեալ պիտի խօսինք, ուստի այսքանը բաւական համարելով այս միայն կը յաւելունք Խորովի երկասիրութեան մասին, որ եթէ նորա մեկնած մաղթանքներն ու քարոզները նոյնութեամբ թողլով և աշխատասիրած մեկնութիւնը ընտրանօք համառօտելով ու աշխարհաբար թարգմանելով միասին տպագրուի, խիստ արդիւնաւոր կը լինի բարեպաշտ աղօթասիրաց համար, և այնչափ քրիստոնէական ոգի կարող է ներշնչել, որ երբեք նոյն արդիւնաւորութիւնը չըստացուիր քանի մի նոր ժամանակիս Բողոքականն գիտնելեաց չոր ու ցամաք տեսարականներէն, որոնք իբրեւ դասագիրք գործ կը դրուին դպրոցաց մէջ։ Վասն զի Խորովի գրքաւոր նպատակը եղած է իւր երկասիրութեամբ քրիստոնէական ուսմունքներ

ուսուցանել, որուն համար և ինքն յայտնապէս ասած է. «Որովհետև շատերու մէջ ամենամեծ տգիտութիւն տեսայ, ուստի արժան համարեցի եպիսկոպոսութեանս պարտուց համեմատ այս գրուածքը յօրինել, որ կարդան և ուսանին, վասն զի անկարելի է միայն խօսքով (քարոզով) կարեւոր դարման մատուցանել»:

ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ.—Անձեւացեաց Խոսրով եպիսկոպոսի որդին, ծնաւ 951 թուականին, և իւր մանկութեան հասակէն Ըշտունեաց գաւառի Նարեկայ վանքի առաջնորդ Անանիա վարդապետի խնամոցն յանձնուեցաւ: Գրիգորի վարուց սրբութիւնը, մաքուր սիրտը և անզբաղ միտքը առաջնորդեցին զինքը իմաստութեան մէջ զարգանալու և աստուածախօս հանճարներէն մին դառնալու: Քսան և վեց տարեկան հասակին մէջ արդէն շատ իշխաններ Գրիգորին կը դիմէին իրենց ինչ ինչ տարակուսանաց լուծումն ստանալու: Սակայն ինչպէս արեգական ջերմութիւնը երբեմն գարշահոտ գոլորշիներ կը յարուցանէ գետնէն, նոյնպէս և սրբասուն մարդկանց կեանքը և բարեպաշտական ջերմութիւնը՝ կռիւներ կը յուզէ աշխարհիս մէջ: Այսպէս պատահեցաւ և Գրիգորին, որոյ դէմ չարամիտներ ոմանք

յուզեցան ատելութեամբ և գնալով Դու-
նայ կաթողիկոսարանը՝ ամբաստանեցին զԳր-
իգոր իբրեւ Թերամիտ ՚ի հաւատոց, բայց
չը կարացին իրենց նենգ նպատակին հաս-
նիլ և վնասել. որովհետեւ Գրիգոր ոչ միայն
արդարացաւ քննութեան մէջ, այլ իւր ա-
ռաքինական վարուց համբաւն եւս աւելի
հռչակեցաւ. վասն զի առաքինութիւնն ու
վարուց սրբութիւնը մահ չունի, և մինչ-
դեռ թշնամիք կը կարծեն թէ արատաւորե-
լով կը մահացնեն, ընդհակառակն աւելի կը
կենդանացնեն : Այս փորձուած ճշմարտու-
թիւն է ամեն ժամանակ :

Գրիգոր իւր անձն մենաւորական կենաց
և գրաւորական վաստակոց նուիրելով ըն-
թերցասիրաց և շարագրաց մինչեւ իւր 60
տարեկան հասակը և վախճանելով թաղուե-
ցաւ Նարեկայ վանքի մէջ, ուր մինչեւ ցայ-
սօր աւանդութեամբ կը ցուցնեն իւր գե-
րեզմանը : Գրիգոր Նարեկացին գրած է գլ-
խաւորապէս այն տեսակ նիւթերու վրայ,
որոնք մարդոյ վախճանական նպատակը կը
կազմեն : Գրիգորի երկասիրութեան բուն
համառօտութիւնն է այս — Ի ներքուստ սըր-
տիցն սրտի խորոց և Ի վերուստ աստուածայնոյն անհուն
ծարաւակրօնութիւնը : Գրիգոր այս եռանդով վա-
ռուած աստուածային բանաստեղծ մի կը
ներկայանայ մեզ իւր գրուածոց մէջ. բա-

նիւ յորդառատ և զգայնակ զեղուն ։ Կը ներբողէ ինչ որ աստուածային է, կը գովասանէ ինչ որ մարդկային առաքինութիւն է։ Մերթ կը յափշտակուի և կը վերացանայ թեւով աստուածային սիրոյն և մերթ կը խոնարհի և կը հեծէ մարդկային վայրաքարշ կերից վրայ։ Գրիգոր այն հոգիներէն է, որ աստուածային սիրով կը ճենճերի, արտասուելով կը ժպտի և ժպտելով կ'արտասուէ։ Համառօտիւ ասենք, Գրիգոր այնպէս կը պատկերացնէ զԱստուած և զմարդ, որ ամեն երկիւղած սրտերու մէջ խորին ապաւարութիւն կը թողու իւր կենդանի երանգներով։

Գրիգոր Նարեկացւոյ երկասիրութիւններն սոքա են գրութեան ժամանակի կարգաւ ։ — Պատմութիւն խաչին Ապարանից ։ որոյ պարունակութիւնը համառօտիւ այս է։ Մոկաց Դաւիթ սրբասուն եպիսկոպոսը եղբօրորդին, (որ գերութեամբ գնացած էր ի Պոլիս Վասիլ և Կոստանդին կայսերաց ժամանակ) ի պատիւ գերեզմանի Դաւթին սրբոց կ'ընդունի յիշեալ ինքնակալներէն Կենաց Փայտի մասն և այլ նուիրական ընծաներ. և կը դառնայ Մոկաց գաւառն Դաւթի քեռորդի Ստեփանոսի եպիսկոպոսութեան ժամանակ։ Այս պարգեւները կ'ամփոփուին, նախ Դաւթի հանգստարանի մէջ, յետոյ Յովհաննէս Կաթողիկոսի տա-

Ճարին մէջ, և ապա Աստուածամօր եկեղեց-
ւոյն մէջ ։ Այս վերջին փոխադրութեան հանդիսին ներկայ կը գտնուին Արծրունի Թադապար հարազատներն՝ Մենեքշերիմ, Գուրգէն և Աշոտ, ինչպէս որ Խաչի պատմութեան մէջ փոխադրութեան հանդիսի նկարագիրն ևս պարունակուած է ։ Այս առթիւ գրած է Գրիգոր նոյնպէս Խաչի ներբողն և նորա հետ միասին Աստուածածնի ներբողն — «Գումարք խմբից, և այլն» ։

Այս երեքն ևս գրուած են Ստեփանոս եպիսկոպոսի խնդրանօք, ինչպէս կը ցուցնէ իւր մի Ընծայականն առ նոյն եպիսկոպոսն ։ Սակայն Նարեկացւոյ այն գրուածոց մէջ գտնուած քանի մի անժամանակակից անցքերն և ինչ ինչ իմաստներն տեղի կը տան կարծել, որ այլոց ձեռքով յետոյն ժամանակաց յաւելուած են ։

Տաղ ՚ի գովեստ Աստուծոյ, որոյ մէջ առաքելական կոչման մեծութիւնը բացատրուած է և Աղեքսանդրոյ Գիրքն առաջ յօրինուած է, ինչպէս և կը յիշուի Զք. 2. Գլխոյն մէջ. «Զորոց (առաքելոց) զգովեստն արժանաւորութեան՝ ըստ իմում կարի յայլում բանի պաշտեցի» ։

Մեկնութիւն Երգերգոյ. — Այս երկասիրութիւնը գրած է Նարեկացին իւր երիտասարդական հասակին մէջ, Ընձեւացւոց Թա-

դաւոր Գուրգէն Արծրունիի խնդրանօք, որուն ուղղած է և իւր համեստ Ընծայականն։ Մերձ Երգոց Գիրքը, որ իւր վառվռուն իմաստ-ներով և գեղեցիկ նկարագիրներով, Փեսայի և Հարսի անուամբ, Քրիստոսի խանդակաթ սէրը կը պատկերացնէ առ Եկեղեցին, երբեմն ակարամիտ մարդկանց գայթակղութեան առիթ եղած է։ Այս պատճառաւ Եկեղեցւոյ նախնի Հարք հաւատացելոց ուղղամտութիւնը անայթաք պահպանելու համար՝ մեկնած են նոյն Գիրքը, բարեպաշտութեամբ զեղուն զգացմունքներով։ Նախնի մեկնիչներուն մէջ յայտնի է մանաւանդ Գրիգոր Նիւսացին, որ Ողոմպիադա ազնուական տիկնոջ խնդրանօք բացատրեց Երգ Երգոյն, այն գայթակղութիւնները վերցնելու նպատակաւ, որով ոմանք Բիւզանդիոնի մէջ ակարամտութեամբ նոյն Գիրքը աշխարհական մտօք շարագրուած կը համարէին։ Մեր Նարեկացին իւր մեկնութեան մէջ հետեւած է Գրիգոր Նիւսացւոյն, բայց այնպիսի համառօտախօս և պարզ եղանակ բռնած է, որ Եւրոպական բանասէրներէն ոմանք Ժննան Թէյլո-Րեան կ'անուանեն Նարեկացւոյ երկասիրութիւնը։ Այս պարզութեան գլխաւոր շարժառիթն այն եղած է, որպէս զի ոչ միայն հմուտները, այլ և հասարակ մարդիկ ըմբռնեն և կանայք կարենան

դիւրութեամբ հասկանալ և երբեք չըմոռ-ցանել իրենց սրտերուն մէջ դայթակղական զգացմունքներ։ Երգ Երգոցի վսեմ հոգին ըմբռնելու համար՝ բաւական է միայն որ նիւթական նկարագիրներն հոգեւորի փոխենք և Քրիստոսի անհուն սէրը պատկերացնենք մեզ, որով սիրած է զԵկեղեցին, իւր անձը զոհելով։ Այժմէ աշխարհի մէջ սէր մի չէ կարող հաւասարիլ Քրիստոսի սիրոյն, հետեւապէս և ոչ Գիրք մի կարող է այնպէս յարմարիլ Քրիստոսին և Եկեղեցւոյն, ինչպէս Երգ Երգոցն, երկնաւոր Փեսայի և Հարսի զքանչելի սիրոյն նկարագրութեամբ։ Որուն կարող է վայելչապէս յարմարիլ, և ո՞վ կարէ լինիլ Երգ Երգոցի նկարագրած այն Սեւ և Գեղեցիկ հարսն, եթէ ոչ մարդկութիւնը, որ Սեւ էր պատուիրանազանցութեամբ և սակայն այնչափ Գեղեցիկ և սիրելի, որ Քրիստոս նորա սիրոյ համար մահ յանձն առաւ և սեւութիւնը իբրեւ ձիւն սպիտակացնելով՝ հարսնացոյց իրեն հետ և յաւիտենական միութեան դաշն հաստատեց։

Աղօթք կամ Նարեկ, որ կը կոչուի նմանապէս Ողբերգութեան, և կազմուած է 95 գլուխներէ, որոց վերտառութիւնն է “ Ի խորոց սրտից խօսք ընդ Աստուծոյ ”։ Նարեկացւոյ այս երկասիրութիւնն՝ այնպիսի հանրական ընդունելութիւն գտած է Հայաստանեայց Եկեղե-

ցւոյ զաւակաց մէջ և այնպիսի յորդ՝ համայն բանաստիրաց առջեւ, որ երկարօրէն գովաբանել այս տեղ՝ աւելորդ կը համարինք։ Այսչափ միայն կ՚ասենք, որ Նարեկացւոյ Աղօթական կամ Ողբերգական երկասիրութեան մէջ ամեներեւ կը նշմարուի Սուրբ Գրոց մը ու լի հմտութիւն, երկիւղած սիրտ, վառ եռանդ, կորովի ճանաչողութիւն աստուածային կատարելութեանց և մարդկային վախճանին, և այս ամենքի հետ՝ յորդութիւն վսեմ իմաստից և դարձուածոց։ Նարեկի մէջ կը նշմարուին կրկնութիւնք իմաստից։ Ու այս շատ բնական է, որովհետեւ Նարեկն պատմական և իմաստասիրական գիրք չէ, այլ աղօթական, և ջերմեռանդութեամբ վառուած սրտի համար յորդութիւնը բնական յատկութիւն է, կամ այնպէս ասենք. սրտի հոսանքը՝ չափոյ և սահմանի տակ չ՚ամփոփիր, միտքն է միայն որ չափով և սահմանով կը տրամադրէ։ Ուստի, եթէ մտային դրուածոց մէջ տրամաբանութիւնն է գովելի, սրտային գրուածոց մէջ՝ գովելին է ազնիւ զգացմանց յորդութիւնը, ճոխութիւնք և ջերմութիւնք։

Նարեկի պարունակութիւնը աղօթքներ լինելով անշուշտ կարող է հասկանալի լինել միայն ջերմ սիրտ ունեցողներուն. իսկ

անտիրաներուն ոչ միայն անհասկանալի, այլ և գուցէ ձանձրալի թուի։ Որովհետև այդ-տային երկարութիւն հասկանալու համար՝ սիրտ հարկաւոր է։ Այս այնչափ ըզ-գալի է, որ կարելի է ասել թէ մի և նոյն ընթերցողի համար մի և նոյն Նարեկն եր-բեմն հասկանալի է և երբեմն անհասկա-նալի, նայելով ընթերցողի սրտի փոփոխա-կան ջերմութեան կամ սառնութեանը։ Գուցէ այս է պատճառն, որ ոմանց համար Նարեկն մթին և խրթին գիրք երեւցած է, որ և Կ. Պոլսոյ Պատրիարքըն Յակոբ Նալեան և Վենետիկի Մխիթարեան Ուխտէն Հ. Գաբրիէլ Աւետիքեան երկարօրէն մեկնած են զայն։

Նարեկի յիշատակարանին մէջ կ՚աւան-դուի, որ Աղօթամատոյց գրքի յօրինմանը օժանդակած է Նարեկացւոյ Յովհաննէս եղբայրն, սակայն այս օգնութիւնը առա-ւել եղբայրական խորհրդակցութիւն պիտի համարինք, քան թէ գործակցութեամբ եր-կասիրութիւն։

Գրիգոր Նարեկացին շարագրած է նմա-նապէս մանր երկասիրութիւններ, ինչպէս են Գան-ձեր, Մեղեդիներ և Տաղեր, որոց մէջ կը փայլի բանաստեղծական ոգի, համաձայն և աշխոյժ։ Գանձերն թուով երեք են. այն է՝ ի Գո-[illegible] Հոգւոյն Սրբոյ, ի Խաչն և Եկեղեցւոյ. ևն

տաղերն ու մեղեդիները քանիէն աւելի են ։ կամ նմանապէս և մի քանի այլ երկասիրութիւններ, այն է Թուղթ, Ա՛նկոմբեան, խրատ և այլն, որոնք Նարեկացւոյն կ'ընծայուին ։

Այս դարու մէջ կը յիշատակուին քանի մի ուսումնասէր անձինք, որք են. — ԽԱՉԻԿ ԿԱԹՈՂԻԿՈՍ, որ դպրատուն հաստատեց Շիրակ գաւառի մէջ. ԴԱՒԻԹ ՎԱՆԱՀԱՅՐ, ՊԵՏՐՈՍ՝ ՄԵԿՆԻՉ ԳՐՈՑ, ՄՈՎՍԷՍ ՏԱՐՕՆԵՑԻ, ՍԱՐԳԻՍ, ՍՏԵՓԱՆՈՍ ՄՈԿԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ, որուն կ'ընծայուի Ալբոմբեան որբոց շարականը, ԴԱՒԻԹ ՄԱՀԿՈՏՆ, ԴԱՒԻԹ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄՕԿԱՑ և այլն ։ Բայց սոցա երկասիրութիւնքն մեզ հասած չեն, և որոշակի չեն յիշատակուիր պատմութեանց մէջ ։

ՍՏԵՓԱՆՆՈՍ ԱՍՈՂՆԻԿ կամ ԱՍՈՂԻԿ. — Մեր պատմագրաց մէջ նշանաւոր տեղ ունի Ստեփանոս Տարօնեցի, որ և երաժշտական երգոց հմտութեան պատճառաւ Ասողիկ կը կոչուի ։ Ստեփաննոս երկասիրած է իւր պատմութիւնը Գագիկ Ա. Թագաւորի և Սարգիս Ա. կաթողիկոսի հրամանաւ, որ սկզբնաւորութենէն սկսելով հասուցած է մինչև Քրիստոսի 1004 թուականը ։ Նախնի պատմութեան նկատմամբ հետևած է Եւսեբիային և Խորենացւոյն ։ Երեք Գիրք բաժնուած է այն պատմական երկասիրութիւնը, որոց

երրորդը միայն իւր ժամանակակից անձերը կը պարունակէ ։ Իսկ առաջին երկուքի մէջ կը խօսուի համառօտիւ Իսրայէլացւոց ծագման, Եգիպտոսի Պտղոմեանց Թագաւորաց, Ասորոց, Մարաց և Պարսից իշխանակալաց, մեր Արշակունի և Բագրատունի Թագաւորաց, Սասանեան ցեղի արքայից և Հագարացւոց Ամիրապետաց վրայ ։ Իւր ժամանակակից անձերը պատմած ժամանակ բաւական լայն կը ծագէ Ասողիկ ազգային պատմական կենաց վրայ և այս պատճառաւ իրաւամբ մեծ յարգանաց արժանացած է հետեւեալ դարուց պատմիչներէն, մինչեւ անգամ Մագիստրոսէն կոչուած է Երջանիկ ծայրագոյն ծեր ։ Ասողիկ ականատես լինելով յունական կրօնական հալածանաց, զոր բորբոքած էին Հայոց դէմ, սուրբ նախանձախնդրութեամբ վառուած կը խօսի նոյն անձերուն վրայ ։

Ասողկին կ'ընծայուի նմանապէս՝ Մեկնութիւն ինչ Գրոց Երեմիա մարգարէին, սակայն այս երկասիրութիւնը ցարդ երեւցած չէ ։

Նոյն դարու մէջ կը յիշատակուին քանի մի գրուածքներ եւս, ինչպէս են Ճառն ընդդէմ Արիոսեանց, Եւտիքեանց, Նեստորականաց, զոր գրած է մի անանուն վարդապետ, Կարուց Թագաւոր Մուշեղ Բագրատունեաց խնդրանօք, այսպիսի սկզբնաւորութեամբ « Ո՛վ քաջ քահանայից, տէր իմ

Մուշեղ Բագրատունի, պերճաբանող և հանճարեղ գունակցեալք առ ծայրագոյն խորոց խոհեմագոյն ըստ գործնականին և տեսականին գրող ստորոգութեանց»։

[illegible] պատուիրանաց, զոր գրած է ՄԱՂԱՔԻՈՒՆԵԱՑ ՏԷՐ ԱՐՏԱՒԱԶԴ հրամանաւ Սատամայ Անձեւացւոյ։

Հարց պատասխանի. զոր երկասիրած է ՏԱՃԱՑ անուն վարդապետ մի։ Այս երկասիրութիւններն անուամբ և եթ կը յիշատակուին, բայց տակաւին լոյս տեսած չեն։

---

## Դ.

Ուսումնականք ԺԱ դարու. — Երկասիրութիւնք Յովհաննէս Կոզեռն վարդապետի. Գրիգորի Մագիստրոսի. Գէորգայ Գետադարձի, Անանիայի Սանահնեցւոյ, Սարգսի Սեւանեցւոյ, Արիստակէսի Լաստիվերտցւոյ. Գրիգորի Վկայասէրի և պարունակութիւնք իւրաքանչիւրոցն. — Գէորգ. Թէոդորոս և Սիմէոն վարդապետք. — Պօղոս Տարօնեցի.

ՍՈՅՆ ԴԱՐՈՒ նշանաւոր ուսումնականքն էին՝ Ձորագետայ մէջ Հաղբատ և Սանահին վանքերուն, որք շինուեցան Աշոտ Ողորմածի բարեպաշտ ամուսնին Խոսրովանոյշ Թագուհւոյ առատաձեռնութեամբ, և յետոյ նորոգեցան Աղուանից Բագրատունի Կիւրիկէ Թագաւո-

թի ձեռամբ և Հաղբատ եպիսկոպոսանիստ դարձաւ, որոյ մատենադարանը յիշատակարանաց մէջ ամենափարթամ գանձարան կոչուած է։ Նոյնանի էին նմանապէս Խնոփի վանքն, Աթենոփէլէլ Բենաքանն Տրապիզոնի մօտ և Արգինայ վանքն՝ Արարատայ Շիրակ գաւառի մէջ։ Իսկ մետասաներորդ դարու անուանի մատենագիրներն սոքա են. —

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՎԱՐԴԱՊԵՏ ԿՈԶԵՌՆ ՏԱՐՕՆԱՑԻ, որ ծաղկեցաւ Խաչիկ Բ կաթողիկոսի օրով, և այնչափ մեծ էր իւր համբաւն, որ, ըստ պատմելոյ Ուռհայեցւոյն, Պետրոս կաթողիկոսն Յովհաննէս Թագաւորին ղրկեցին նորա մօտ զՍագիստրոս և այլ նշանաւոր անձինք, որպէս զի նոյն ժամանակ պատահած արեգական խաւարման պատճառներն իմանան։ Թէպէտ և իրենց առած պատասխանն աստեղագիտական չէր, այլ լոկ խրատական գուշակութիւն։ Վասն զի նոյն ժամանակ աստեղագիտութիւնը տակաւին ծաղկած չէր և բնական երեւոյթներուն այլ տեսակ մեկնութիւններ կը տային։

Նատրիվերոցին կ՚աւանդէ, որ Կոզեռն վարդապետն շարադրած է Հայոց Գիրք մի, բայց ցարդ երեւան ելած չէ։ Շարադրած է նմանապէս երկարաբանութիւն մը իւր ժամանակին [illegible] և [illegible] ու [illegible] վրայ. Ըսէ

կերպացի եպիսկոպոսի խնդրանօք, եւ այն գրուածքէն մի հատուած միայն հասած է մեզ։

ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍ, Վասակայ որդին, Պահլաւունի ցեղէն։ Սա իւր հօր մահէն յետոյ միացաւ նախարարաց հետ, որոնք Թագաւորեցուցին Գագիկ Բ. Բագրատունին։ Բայց յետոյ Վեստ Սարգսի պատճառաւ ինքն եւս կասկածաւոր համբաւուելով Թագաւորի առջեւ՝ Թողաւ Արարատեան աշխարհն և առանձնացաւ 'ի Տարօն, ուր սկսաւ վանքեր շինել, 'ի Թիւս որոց և Ս. Կարապետի ժամատունը։

Յետոյ սոյն շինութիւնքն իւր Հրահատ գործակալին յանձնելով ինքն գնաց Բիւզանդիոն, ուր շատ մեծարանք գտաւ եւ Մագիստրոս ու Դուքս տիտղոսներն ստացաւ, որով և աւելի կասկածաւոր եղաւ Գագիկ Թագաւորի առջեւ, Յունաց հետ ունեցած սոյն մտերմութեան պատճառաւ։ Գագիկ Թուղթ գրեց Մագիստրոսին, իբրեւ Հայրենի իրաւանց մատնչի վրայ, և պաշտպանողական պատասխան ստացաւ, բայց իւր կարծիքն չը փոխեց։

Երբ Յոյնք Անի քաղաքն յափշտակեցին՝ Գրիգոր Մագիստրոս Կ. Պօլիս գնաց, ուր էր և Գագիկ, որպէս զի Բագրատունիք

թագաւորութիւնը կործանման վտանգէն ազատեն, բայց անկարող գտնուելով՝ իւր հայրենի ամրոցներն եւս — Բջնի, Կայեան եւ Կայծոն — Յունաց ձեռքը յանձնեց եւ Միջա-գետաց մէջ 'ի փոխարէն քանի մի կալուածներ առնելով, այն տեղ քաշուեցաւ. իսկ Տարօ-նոյ մէջ ունեցած իշխանութիւնը յանձնեց Գառնիկ Մամիկոնեանին։

Այս ժամանակէն յետոյ Մագիստրոս ըն-կաւ պարապիլ աւելի մատենագրական եր-կասիրութեամբ եւ 1058ին կնքեց իւր կեանքը։

Մագիստրոս ունեցաւ նաեւ քանի մի նշ-անաւոր աշակերտներ, ինչպէս են Բարսեղ եւ Եղիաէ, որ եպիսկոպոսութեան աստիճա-նի հասան, եւ իւր որդին Գրիգոր Պահլա-ւունի կամ Վկայասէր, որ կաթողիկոսու-թեան աթոռն բարձրացաւ, ինչպէս արդէն խօսած ենք նախորդ պատմական Շրջանին մէջ։ Մեր մատենագիրներէն ոմանք գովու-թեամբ կը խօսին Մագիստրոսի հմտութեան վրայ, որոց գովեստներն մի առ մի յառաջ բերել այս տեղ շատ երկար կը լինի։ Ուստի կը մնայ մեզ իւր երկասիրութեանց վրայ խօսիլ։

Գրիգոր Մագիստրոսի երկասիրութիւն-ները այս են.

Ա. Թղթեր, որոց թիւն ութսունի կը հասնի եւ զորս կարենք երեք բաժանման վե-

բանձել , այն է Հայրապետական , Իմաստասիրական և ընտանեկան . Այս Թղթերուն մէջ նշանաւոր են . — Գրիգորիսի Հայոց կաթողիկոսի Թղթոյն , զոր Տիգրանակերտէն գրած էր առ Մագիստրոս իբրեւ գանգատ Թոնդրակեցիքն հալածելու համար , և խիստ զօրաւոր պատասխան ընդունեց Մագիստրոսէն : — Թուղթ առ Աբրեհամ Ամիրայ Հագարացի , որուն կինը Հայ ըլլալով , Մխակեան ցեղէն՝ և 'ի մանկութենէ քրիստոնեայ , գրաւոր կերպով խնդրած էր Մագիստրոսէն իւր մի քանի կրօնական տարակուսանքներն փարատել , և Մագիստրոն նոյն առաջարկութիւնը սիրով ընդունելով՝ գըրած էր իւր Թուղթը : — Թուղթ դարձեալ առ նոյն Ամիրայ քրիստոնէական կրօնի մասին : Մագիստրոս գրած է նմանապէս քանի մի Թղթեր , մեծ մասամբ անհասկանալի , առ Եփրեմ եպիսկոպոս Բջնոյ՝ իրեն ղրկած նուանց համար , առ Մամիկոնեան՝ կարմրախայտ ձկանց ընծայից համար , առ որդին իւր Վեստ Վահրամ և առ ծուլագոյն աշակերտսն : — Թուղթ մի առ Պետրոս Գետադարձ կաթողիկոս , և երկու Թուղթ առ առաջնորդն Սեւանայ Սարգիս և առ Յովհաննէս Սիւնեաց արքեպիսկոպոս , և այլն : Առ Պետրոս և առ Սարգիս գրած Թղթերով Մագիստրոս կընկարագրէ իւր փորձը ,

զոր Պօղիկ Թագաւորէն կը կրէր . իսկ առ Յովհաննէս գրածով՝ գոհութիւն կը մատուցանէ այն մխիթարական թղթոյն համար, զոր Միւնեաց արքեպիսկոպոսն գրած էր առ Մագիստրոս, իւր Վասակ հօր մահուան համար, հոգեւոր մխիթարանք մատուցանելով:

Բ. Մագիստրոս, Թղթերէն զատ, ունի քերթողական գրուածներ, այն է Ներբող ՚ի սուրբ խաչն աստուածընկալ, բարեպաշտական զգացմունքներով զեղուն . Ոտանաւոր ինչ, զոր ընծայած է Պետրոս Գետադարձ Հայրապետին, մի խաչանշան գաւազանի հետ, յաւելով երկար տեղեկութիւն վիպասանական քերթութեան վրայ . — Հազարտողեան տաղաչափութիւն . որով չափու առած է Հին և Նոր Կտակարանաց պատմութիւնը, Մանուչէ Հազարացւոյ խնդրանօք, որուն հետ ծանօթացած էր Բիւզանդիոնի մէջ: Մանուչէ տեղեակ էր զանազան լեզուաց, նաև Հայերէնի և բաւական տեղեկութիւն ունենալով քրիստոնէական կրօնի վրայ՝ շատ անգամ կը կարծէր Աստուածաշունչն, ուստի խոստացաւ Մագիստրոսին՝ քրիստոնէական հաւատքն ընդունիլ, եթէ կարող լինի նա իւր հարցասիրութիւնը գոհացնել: Այս առթիւ գրեց Մագիստրոս Հազարտողեան Ոտանաւորն ; որուն վրայ սքանչանալով Մանուչէ՝ քրիստոնէական կրօնքն ընդունեց: Այս

քերթուածի սկզբնաւորութիւնն է. «Մեծ են գործք Աստուծոյ»:

Վերոգրեալ ինքնագիր երկասիրութիւններէն զատ Մագիստրոս պարապած է քանի մի յունական և ասորական գրոց թարգմանութեամբ, բայց այս թարգմանութիւններէն շատ սակաւ հասած են մեզ, և իւր երկասիրութիւններէն քանի մի թղթեր և ոտանաւորներ միայն հրատարակուած են, իսկ միւսները մնացած են առանց տպագրութեան: Մագիստրոսի գրաւոր վաստակոց լեզուաքննական նկատողութիւնը մեր նպատակէն արտաքոյ համարելով՝ այսչափ միայն կ'ասենք որ ընդհանրապէս խրթին են եւ մթին և նաև քանի մի հատն բոլորովին անհասկանալի, միայն վարդապետական գրուածքներն են, որ պարզ են և դիւրըմբռնելի:

ՊԵՏՐՈՍ ԳԵՏԱԴԱՐՁ, որուն հայրապետական կենաց պատմութեան վրայ արդէն խօսած ենք. իսկ գրաւոր երկասիրութեան կողմանէ իրեն կ'ուանդուին Շարականք Մարտիրոսաց և Հանգստեան և նոյն համառօտ և գեղեցիկ շարականներն, որ ընդհանուր անուամբ կը կոչուին Մանկունք, որոց շատերն այնչափ ընտիր են, թէ երգաբանական շնորհագրոյն և թէ վայելուչ իմաստից. կող-

մանէ, որ նշանաւոր տեղ կը բռնեն Շա-րակնոցի մէջ։

ԱՆԱՆԻԱ ՍԱՆԱՀՆԵՑԻ որուն, կ'ընծայուին հետեւեալ երկասիրութիւններն. — Մեկնու-թիւն չորեքտասան Թղթոց Պօղոսի. զոր գը-րած է 'ի խնդրոյ Գետադարձ Հայրապետին. — Բան Հակաճառութեան ընդդէմ երկաբնակաց (Յունաց) զոր գրած է հրամանաւ Գետա-դարձին և որուն մէջ կը խօսի Հայոց և Յու-նաց մէջ միաբանութեան նիւթ եղած խնդ-րոց վրայ, այն է անխառնականութեան դէմ, Քրիստոսի մարմինն ապականացու համարող-ներուն դէմ, Ներքինացեալներու դէմ, Քաղ-կեդոնի ժողովոյն դէմ, Սրբոց բաժանման վրայ, պատկերաց վրայ, միւռոնին, բաղար-ջին, Քրիստոսի ծննդեան տօնի և երից սըր-բասացութեանց վրայ. — Համեմատութիւն չա-րից Աւետարանչաց. — Նորընծայ Շողակա-թի, այն է Վաղարշապատի Էջմիածին ա-թոռանիստ կաթողիկէին. — Խրատք քահա-նայից. — Յաղագս Յովհաննու Մարգարէի և Յով-հաննու Մկրտչի. — Ի խաչելութիւն Պետրոսի։ Այս վերջին գրուածներէն մի քանիսն ուրիշ հա-մանուն վարդապետի կ'ընծայուին և շատ հաւանական է։

ՍԱՐԳԻՍ ՍԵՒԱՆԵՑԻ, որ Մ՚ագիստրոսի գըլխաւոր թղթակիցն է, գիտնական և քերթուածագէտ, ինչպէս և Մ՚ագիստրոս կը վկայէ իւր թղթոց մէջ ասելով. «Միշտ կարօտեալ եմ բանի քում և գրի. քանզի հզօր ես ՚ի պատետիկոսական մատենագրութեան, և սիրելք ինձ ոչ այլ ինչ՝ եթէ ոչ այնպիսի ինչ լսել կամ ասել»: Սակայն Սարգսի Սեւանեցւոյ անուամբ երկասիրութիւն կամ թարգմանութիւն տակաւին երեւցած չէ: Նոյնպէս են ժամանակակից քանի մի վարդապետներ՝ ՍԱՄՈՒԷԼ, ԳԷՈՐԳ, ՏԻԳՐԱՆ ՊԱՀԼԱՒՈՒՆԻ, որոց ուսումնասիրութիւնը միայն կը յիշատակուի պատմութեանց մէջ:

ԱՐԻՍՏԱԿԷՍ ԼԱՍՏԻՎԵՐՏՑԻ, որ Հայաստանի արհաւրալից ժամանակի ականատես, ականջալուր և սուգապատում պատմագիրն է: Լաստիվերտցւոյ պատմական երկասիրութեան քննիչներէն ոմանք կը յանդիմանեն զինքն, որ աւելի ողբ գրած է քան թէ պատմութիւն: Սակայն այս դատողութեան խըստութիւնը ինքնին կը մեղմի, երբ ընթերցողը պատկերացնէ իւր աչաց առջեւ այն սոսկալի և արիւնահեղ տեսարանն, այն աւերանաց, գերութեանց և վտարանդութեան արհաւրալից ժամանակամիջոցն, որուն մէջ Հայաստան՝ յունական վայրագ ատելութեան

և պատուհական մարդախողող բարբարոսութեան ենթարկեցաւ և աղէտից հանդիսարան դարձաւ: Ըստ մեզ, պզտայուն հայրենասէր մի, ինչպէս էր Լաստիվերտցին, այլապէս չէր կարող նկարագրել այն աղէտներն, եթէ ոչ ողբալով և արտասուելով: Աման զի Հայաստանի հոյաշէն քաղաքներն, ամրոցներն ու բերդերը քայքայուած, վանքերն ու եկեղեցիներն աւերանաց մատնուած, զօրականք և ժողովուրդք անհնարին տառապանաց մատնուած, Թագաւորանիստ Անի՝ փառաւորուրկ, Թագաւորն՝ վտարանդի և հայրապետական աթոռն՝ ամայի. այս ամեն սրտաճմլիկ տեսարանին հանդիսատես թշուառ պատմագիրն ինչ կարող էր առնել, եթէ ոչ ողբախառն տողերով աւանդել իւր պատմութիւնը, հառաչելով իւր սրտի խորքէն. «Ահ, Թագաւորըն (Գագիկ Բ.) անկեալ 'ի պատուոյ, իբրև զգերի կալանաւոր նստի 'ի հեռաբնակ տեղիս . . . հայրապետական աթոռն ամայացեալ՝ ցուցանի տխուր դիմօք, իբրև զկին նորահարսն մնացեալ յայրութեան . . . յողբըս փոխեցաւ մեզ ամենայն»:

Լաստիվերտցւոյ սիրտն աւելի կը մորմոքի, երբ Դաւիթ Կիւրապաղատի և Աշոտ Բագրատունւոյ Թագաւորութեան ժամանակի խաղաղաւէտ հայրենիքը կը համեմատէ Յովհաննէս Սմբատի և Գագիկի իշխա-

Digitized by Google

նութեան ժամանակի խռովայոյզ և տառապեալ հայրենեաց հետ։ Այս հակապատկերէն սաստիկ կը զգածի խեղճ պատմագիրն և այնպէս կը խօսի, կարծես թէ արիւն կը բղխէ սրտէն։ Լաստիվերացւոյ պատմական երկասիրութիւնը տպագրուած է թէ Հայերէն և թէ Գաղղիարէն։

Լաստիվերացւոյն կ'ընծայուին Ճառք մեկնութեան ընթերցուածոց, որ տակաւին տպագրուած չեն։

ԳՐԻԳՈՐ ՎԿԱՅԱՍԷՐ, որդի Գրիգորի Մագիստրոսի։ Վկայասիրի կաթողիկոսութեան շրջանի պատմութիւնն արդէն ընդարձակօրէն աւանդուած ենք, կը մնայ այժմ նորա գրաւոր երկասիրութիւններն յիշատակել։ Վկայասիրի երկասիրութեանց գըլխաւորներն են. — Վկայաբանութիւն Սրբոց, զոր թարգմանելով կարգի դրաւ և տօներ հաստատեց, որոց համար և Վկայասէր կոչուեցաւ. — Թարգմանութիւն Յովհան Ոսկեբերանի վրայ յօրինած Պրոկղի ներբողին. — Պատմութիւն Վարուց Ոսկեբերանի. — Վկայաբանութիւն Սրբոյն Գէորգայ, Եւդոքսեայ և Ռոմելայ։ Վկայասէր իւր թարգմանական աշխատութեանց մէջ գործակից ունեցաւ ԿԻՐԱԿՈՍ գիտնական վարդապետն և ՄԱՏԹԷՈՍ քահանայն։

Digitized by Google

Այն ժամանակները ծաղկեցան ԳԷՈՐԳ ՎԱՐԴԱՊԵՏ, որ քաղցրուսոյց վարդապետութեան համար Մեղրիկ կոչուեցաւ. ԹԷՈԴՈՐՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ, որ քաղցրանուագ ալէլուիա նուագելուն համար՝ Ալախօսիկ կոչուեցաւ. ԵՒՍԻԱՆՈՍ կամ ԱՒՍԻՆՈՍ ՍԵԲԱՍՏԱՑԻ, որ իւր հայրենեաց մէջ նահատակուած քառասուն մանկանց վրայ ներբողեան գրեց. ՊՕՂՈՍ ՏԱՐՕՆԵՑԻ, որ Թէոփիստէ յոյն կրօնաւորի հակառակասիրութենէն ստիպեալ՝ մի սարսափելի գրուածք հրատարակեց՝ հարուածելով այն նենգժոտ մոլեկրօնութիւնն, որով Յոյնք նախատակոծ կ'առնէին Հայաստանեայց Եկեղեցին: Պօղոս երկասիրած է նոյնպէս եկեղեցւոյ կարգաց Վերլուծութիւն, այսինքն պատճառք Տօնից, Ժամակարգութեանց Ընթերցուածոց, և Օծից:



# ՀԻՆԳԵՐՈՐԴ ՇՐՋԱՆ

**Հայաստանեայց Հայրապետութեան՝ ի Կիլիկիա փոխադրուելէն մինչեւ վերստին փոխադրութիւնն յԱրարատեան նախկին աթոռանիստ Էջմիածին եւ մինչեւ սկզբնաւորութիւնն Կիլիկիոյ ժառանգաւոր կաթողիկոսութեան**

**1080–1441**

## Ա.

*Համառօտ տեսութիւն*

*Հինգերորդ Շրջանին վրայ։*

ՆԱԽԸՆԹԱՑ ՇՐՋԱՆԻՆ մէջ տեսանք, որ Բագրատունի Թագաւորական Հարստութեան անկումէն զկնի՝ ազգային գաղթականութեան հետ Հայաստանեայց Հայրապետական Աթոռն եւս փոխադրեցաւ ՚ի Կիլիկիա։ Ազգային կենաց այս յեղաշրջումէն Կիլիկիա պատմական նոր կերպարանք ստացաւ մեր Ազգի նկատմամբ, այսինքն մի կողմէն կանգնեցաւ այն տեղ Ռուբինեան իշխանական նոր Հարստութիւնն և միւս կողմէն վտարանդի և լեռներուն ապաստանած Կաթողիկոսական Աթոռն որ աւուր աւելի հաստատութիւն ստացաւ։

Կիլիկիոյ հայկական իշխանութեան կամ Թագաւորութեան շրջանին մէջ, որ Գագիկ Բի ազգական Ռուբէն իշխանապետէն սկսելով (1080) Ռուբինեան կոչուեցաւ, և մօտ 300 տարի տեւելով՝ Լուսինեան Լեւոն Զ Թագաւորի մահուամբ վերջացաւ, պիտի տեսնենք որ Հայաստանեայց Եկեղեցին յունական հարստահարութենէն տարուբերելով՝ կ'ենթարկի միանգամայն և Պապական ազդեցութեան և յերկուստէք նոր հրապուրանքներու մէջ կը ծփայ։ Ռուբինեան Հարստութիւնն, Կիլիկիոյ գեղեցիկ և վաճառաշահութեան նպաստաւոր դրից պատճառաւ, սակաւ ժամանակի մէջ բաւական կը զօրանայ, բայց տիրապետող Հայ իշխանաց և Թագաւորաց լատինական ազգի հետ ունեցած խնամութեանց և ակնածական յարաբերութեանց առթիւ Եկեղեցւոյ անկախութիւնը վտանգուելու կը մերձենայ։ Հետեւապէս պիտի տեսնենք Ներկայ Շրջանին մէջ, որ յունական հրապոյրներուն վրայ կը յաւելուն նմանապէս հռոմէական հետամըտութիւններն, մեր Եկեղեցւոյ ինքնօրէն գոյութիւնը ստրկացնելու դիտաւորութեամբ։ Երկու կողմէն եւս կը յաճախեն բանագնացութիւնք և թղթակցութիւնք և մեր Հայրապետներէն ոմանք կը ստիպուին քանի մը ժողովներ կազմել և ջանալ պաշտպանել մեր

Եկեղեցւոյ ուղղափառութիւնը յունական և հռովմէական աններողամիտ պահանջումներին ու վիճաբանութիւնները մեղմելու նպատակաւ ։ Սակայն Հայոց հայրապետաց այն քրիստոնէական խաղաղասիրութեան միջոցները ոչ միայն չէին զիջուցանէր յունական և հռովմէական աններողամտութիւնն , որ ուղղակի միակերպութիւն և ստրկութիւն կը պահանջէր Հայաստանեայց Եկեղեցիէն , այլ ընդհակառակն ներքին խռովութեան տեղի կը տայ մեր Եկեղեցւոյ զաւակաց մէջ։ Հայոց արևելեան վարդապետներին Եկեղեցւոյ անկախութեան կորուստ ու ազատութեան վտանգ նշմարելով Արևմտեան կամ Կիլիկիոյ Հայ վարդապետաց ունեցած յարաբերութեանց մէջ յունականաց եւ հռովմէականաց հետ՝ սաստիկ կը յուզին և կը զայրանան ։ Այս պատճառաւ Լամբրոնեանք Կիլիկիայէն և Զորագետացիք Հաղբատէն առ ժամանակ մի նախատանաց կարկուտներ կը տեղան իրարու վրայ ։ Լամբրոնեանք կը նախատուէին իբրեւ հայկական Եկեղեցւոյ նախնի պարզութեան աղաւաղիչներ և լատինական ու յունական նորաձեւութեանց մուծիչներ . իսկ Զորագետացիք կը նախատուէին իբրեւ եկեղեցական բարեզարդութեան արգելիչներ և վաղեմի սովորութեանց կուրօրէն հետեւողներ ։ Ն-

Digitized by Google

րեւելեան վարդապետաց կասկածն երթալով աւելի կը զօրանայ եւ իրականութիւն կը ստանայ, քանի որ Կայսերներու և Պապերու յարաբերութիւնները կը յաճախէին մեր Հայրապետաց ոմանց հետ, և մանաւանդ քանի որ լատինական Միաբանութեան կամ Ունիթօռութեան ջանքերը կ'արծարծին Հայաստանի մէջ։ Ունիթօռութեան երեւոյթն աւելի պարզ կերպով կը յայտնէ, որ Պապականութիւնը, պատրելով մեր Արեւմտեան վարդապետաց քրիստոնէական հոգին, և խաղաղասիրութիւնն իւր համար պատրուակ բռնելով, կը ճգնի Եկեղեցւոյ անկախութեան հիմունքը փորել և կրօնական միութեան հետ՝ ազգայնութեան հոգին ջնջել։ Սակայն Արեւելեան վարդապետք շուտով առաջն կ'առնուն այս կորստական երեւոյթին, չընայելով որ յանիրաւի պիտի դրոշմուին հակառակասէր և անխաղաղասէր մակդիրներով։

Այս միաբանական շփոթութեանց և Կիլիկիոյ ոմանց կաթողիկոսաց ու Հռովմայ պապերու յարաբերութեանց բուն աղբիւրըն որոնելու համար՝ եթէ ընդհանուր պատմութեան սոյն ժամանակեայ անցից վրայ հարեւանցի ակնարկ դարձնենք, ամեն բան կը պարզուի։ Այն միջնադարեան շրջանին մէջ, մինչդեռ Հայք պարսկական բռնութեան

և յունական հալածասիրութեան պատճառաւ իրենց բնիկ Հայրենիքէն գաղթելով ՚ի Կիլիկիա կ'ապաստանէին, Արեւմուտքն ևս կամ քրիստոնեայ Եւրոպան դէպ ՚ի Արեւելք արշաւելու խորհուրդներ կը յղանար։ Աշխարհն երկու բաժնուած էր, մի մասն Աւետարանին կը հպատակէր, միւսն Կուրանին, և թէպէտ երկուքն ևս երբեմն իրարու կ'ընդհարէին, բայց յաղթող և յաղթեալ տակաւին որոշուած չէր։ Շուտով խաչակրութեան արշաւանքներն սկսան դէպ ՚ի Արեւելք. Երուսաղէմը մահմետական իշխանութենէ ազատելու համար, որով և Եւրոպական ու Ասիական յարաբերութիւններն օր աւուր սկսան զօրանալ։ Կիլիկիոյ հայ թագաւորք և ժողովուրդք ևս քրիստոնէական սիրով ողջունեցին իրենց Եւրոպացի քրիստոնեայ եղբարքն, օժանդակելով և մտերմական յարաբերութիւններ հաստատելով, այնպէս կարծելով թէ բարոյապէս և նիւթապէս պիտի շահին այս մտերմութենէն. սակայն յետ ժամանակաց շատ սուղ նստաւ իրենց այս յարաբերութիւնը։ Վասն զի խաչակիր արշաւանաց տակէն առաւել աշխարհակալութեան և Պապական տիրապետութեան տենչանքներ երեւան ելան, քան թէ ազատութիւն Երուսաղէմի։ Ժամանակի պարագաները հաստատեցին, որ Հռովմայ



Digitized by Google

րեւելեան վարդապետաց կասկածն երթալով աւելի կը զօրանայ եւ իրականութիւն կը ստանայ, քանի որ Կայսերներու և Պապերու յարաբերութիւնները կը յաճախին մեր Հայրապետաց ոմանց հետ, և մանաւանդ քանի որ լատինական Միաբանութեան կամ Ունիթոռութեան ջանքերը կ'արծարծին Հայաստանի մէջ։ Ունիթոռութեան երեւոյթն աւելի պարզ կերպով կը յայտնէ, որ Պապականութիւնը, պատրելով մեր Արեւմտեան վարդապետաց քրիստոնէական հոգին, և խաղաղասիրութիւնն իւր համար պատրուակ բռնելով, կը ճգնի Եկեղեցւոյ անկախութեան հիմունքը փորել և կրօնական միութեան հետ՝ ազգայնութեան հոգին ջնջել։ Սակայն Արեւելեան վարդապետք շուտով առաջն կ'առնուն այս կորստական երեւութին, չընայելով որ յանիրաւի պիտի դրոշմուին հակառակասէր և անխաղաղասէր մակդիրներով։

Այս միաբանական շփոթութեանց և Կիլիկիոյ ոմանց կաթողիկոսաց ու Հռովմայ պապերու յարաբերութեանց բուն աղբիւրըն որոնելու համար՝ եթէ ընդհանուր պատմութեան սոյն ժամանակեայ անցից վրայ հարեւանցի ակնարկ դարձնենք, ամէն բան կը պարզուի։ Սոյն միջնադարեան շրջանին մէջ, մինչդեռ Հայք պարսկական բռնութեան

և յունական հալածասիրութեան պատճառաւ իրենց բնիկ Հայրենիքէն գաղթելով ՚ի Կիլիկիա կ'ապաստանէին, Արեւմուտքն ևս կամ քրիստոնեայ Եւրոպան դէպ ՚ի Արեւելք արշաւելու խորհուրդներ կը յղանար։ Աշխարհն երկու բաժնուած էր, մի մասն Աւետարանին կը հպատակէր, միւսն Կուրանին, և թէպէտ երկուքն ևս երբեմն իրարու կ'ընդհարէին, բայց յաղթող և յաղթեալ տակաւին որոշուած չէր։ Շուտով խաչակրութեան արշաւանքներն սկսան դէպ ՚ի Արեւելք, Երուսաղէմը մահմետական իշխանութենէ ազատելու համար, որով և Եւրոպական ու Ասիական յարաբերութիւններն օր աւուր սկսան զօրանալ։ Կիլիկիոյ հայ թագաւորք և ժողովուրդք ևս քրիստոնէական սիրով ողջունեցին իրենց Եւրոպացի քրիստոնեայ եղբարքն, օժանդակելով և մտերմական յարաբերութիւններ հաստատելով, այնպէս կարծելով թէ բարոյապէս և նիւթապէս պիտի շահին այս մտերմութենէն. սակայն յետ ժամանակաց շատ սուղ նստաւ իրենց այս յարաբերութիւնը։ Վասն զի խաչակիր արշաւանաց տակէն առաւել աշխարհակալութեան և Պապական տիրապետութեան տենչանքներ երեւան ելան, քան թէ ազատութիւն Երուսաղէմի։ Ժամանակի պարագաները հաստատեցին, որ Հռովմայ

րեւելեան վարդապետաց կասկածն երթա-լով աւելի կը զօրանայ եւ իրականութիւն կը ստանայ, քանի որ Յիսուսեաններու և Պապե-րու յարաբերութիւնները կը յաճախեն մեր հայրապետաց ոմանց հետ, և մանաւանդ քանի որ լատինական Միաբարութեան կամ Ունիթոռութեան ջանքերը կ'արծարծին Հայաստանի մէջ: Ունիթոռութեան երե-ւոյթն աւելի պարզ կերպով կը յայտնէ, որ Պապականութիւնը, պատրելով մեր Արեւ-մտեան վարդապետաց քրիստոնէական հո-գին, և խաղաղասիրութիւնն իւր համար պատրուակ բռնելով, կը ճգնի Եկեղեցւոյ անկախութեան հիմունքը փորել և կրօնա-կան միութեան հետ՝ ազգայնութեան հոգին ջնջել: Սակայն Արեւելեան վարդապետք շուտով առաջն կ'առնուն այս կորստական երեւութին, չընայելով որ յանկուսի պիտի դրօշմուէին հակառակասէր և անխաղաղասէր մակ-դիրներով:

Այս միարարական շփոթութեանց և Կիլիկիոյ ոմանց կաթողիկոսաց ու Հռոմայ պապերու յարաբերութեանց բուն աղբիւ-րըն որոնելու համար՝ եթէ ընդհանուր պատ-մութեան սոյն ժամանակեայ անցից վերայ հարեւանցի ակնարկ դարձնենք, ամէն բան կը պարզուի: Սոյն միջնադարեան շրջանին մէջ, մինչդեռ Հայք պարսկական բռնութեան

և յունական հալածաւորութեան պատճառաւ իրենց բնիկ Հայրենիքէն գաղթելով 'ի Կիլիկիա կ'ապաստանէին, Արեւմուտքն ևս կամ քրիստոնեայ Եւրոպան դէպ 'ի Արեւելք արշաւելու խորհուրդներ կը յղանար։ Աշխարհն երկու բաժնուած էր, մի մասն Աւետարանին կը հպատակէր, միւսն Կուրանին, և թէպէտ երկուքն ևս երբեմն իրարու կ'ընդհարէին, բայց յաղթող և յաղթեալ տակաւին որոշուած չէր։ Շուտով խաչակրութեան արշաւանքներն սկսան դէպ 'ի Արեւելք, Երուսաղէմը մահմետական իշխանութենէ ազատելու համար, որով և Եւրոպական ու Ասիական յարաբերութիւններն օր աւուր սկսան զօրանալ։ Կիլիկիոյ հայ թագաւորք և ժողովուրդք ևս քրիստոնէական սիրով ողջունեցին իրենց Եւրոպացի քրիստոնեայ եղբարքն, օժանդակելով և մտերմական յարաբերութիւններ հաստատելով, այնպէս կարծելով թէ բարոյապէս և նիւթապէս պիտի շահին այս մտերմութենէն. սակայն յետ ժամանակաց շատ սուղ նստաւ իրենց այս յարաբերութիւնը։ Վասն զի խաչակիր արշաւանաց տակէն առաւել աշխարհակալութեան և Պապական տիրապետութեան տենչանքներ երեւան ելան, քան թէ ազատութիւն Երուսաղէմի։ Ժամանակի պարագաները հաստատեցին, որ Հռովմայ

Պապերը խաչակրութեան արշաւանքներ(1)ը հրատարակելով, ուրիշ նպատակ չունէին, եթէ ոչ Եւրոպայի տիրապետներն ու ժողովուրդը զբաղեցնել և իրենց նիւթական ոյժն ընդարձակել։ Կարծ՛ ասենք, պապականութիւնն յարձակողական սուր տուաւ Քրիստոնէից ձեռքն, որ Աւետարանի սկզբանց դէմ էր, և սակայն Նախախնամութիւնն այնպէս տնօրինեց, որ նոյն սուրը յետ ժամանակաց

(1) Թէպէտ և խաչակրութեան պատերազմը Աւետարանին կամ Հռոմէական Եկեղեցւոյ պատմութեանը կը վերաբերի, սակայն իբրև նշանաւոր երևոյթ մարդկային ազգի պատմութեան մէջ, հարկ կը համարինք հետևեալ համառօտ ծանօթութիւնը տալ։

Խաչակրութեան կ'անուանին այն արշաւանքներն, որոնց մասնակցեցան Եւրոպայի զանազան Թագաւորներն ու իշխաններըն (1096—1270) Հռոմայ Պապերու յորդորանօք, Երուսաղէմը Մահմետականաց ձեռքէն ազատելու համար. և որովհետև նոյն արշաւանաց համար զինուորողներն ու մասնակցողներն իրենց հագուստի վրայ խաչի նշան կը կրէին, այս պատճառաւ խաչակիր կոչուեցան։

Ընդհանրապէս 8 Արևելեան խաչակիր արշաւանք կը յիշուին աշխարհագրական պատմութեան մէջ, որոց առաջինն կատարեցաւ Ուրբանոս Բ՛ պապութեան ժամանակ (1096—1100) Պետրոս անապատականի հրաւիրական քարոզութեամբ և Գոդֆրոա Բուլիոնացու, Նորմանդիոյ դուքս Ռոբերտոս Բ՛ի, Տարենտոյ իշխան Բոհեմոնդի և այլոց առաջնորդութեամբ։ Երկրորդն կատարեցաւ Եւգենիոս Գ՛ պապութեան (1174—1149) Ս. Բեռնարդոսի քարոզութեամբ և Ֆրանսայոյ Թագաւոր Լուդովիկոս Է՛ի, և Գերմանիոյ կայսր Կոնրադի առաջնորդութեամբ։ Երրորդն կատարեցաւ Կղեմէս Գ՛ պապութեան ժամանակ, Գուլիէլմոս արքեպիսկոպոսի քարոզութեամբ, և

ընդդէմ պապականութեան դարձաւ և բոլոր զօրութիւնը քաշքշեց, ինչպէս պիտի տեսնենք յաջորդ Շրջանին մէջ։ Պապականութիւնը խաչակրութեան համար զինուորագներուն երկնից արքայութիւնը խոստանալով և մերժողաց վրայ բանադրանք, նզովք և դժոխոց սպառնալիք տեղալով՝ պատճառ դարձաւ միլիոնաւոր անմեղ ա֊

Ֆրանսայի Թագաւոր Փիլիպ — Օգոստոսի, Գերմանիոյ կայսր Ֆրետերիկոս Բարբըռուսայ և Անգղիոյ Թագաւոր Ռիչարդ Առիւծասրտի առաջնորդութեամբ։ Չորրորդն կատարեցաւ Իննովկենտիոս Գ․ի պապութեան ժամանակ (1202—1204) Ֆուլք Նէօյլայու քարոզութեամբ և Ֆլանդրիոյ դուքս Բօդուէն Թ․ի․ Մոնֆերատի Մարքիզ Բոնիֆաս Բ․ի և այլոց առաջնորդութեամբ։ Հինգերորդն կատարեցաւ Հոնորիոս Գ․ի պապութեան ժամանակ (1217—1221) Հունգարիոյ Անդրէ Թագաւորի և Երուսաղէմի Ժան դը Բրիէն անուանական Թագաւորի առաջնորդութեամբ։ Վեցերորդն կատարեցաւ Գրիգոր Թ․ի պապութեան ժամանակ (1228—1229) և Ֆրետերիկոս Բ․ի առաջնորդութեամբ։ Իսկ եօթներորդն և ութերորդն կատարեցան Իննովկենտիոս Դ․ի և Կղեմէս Դ․ի պապութեան ժամանակ (1248—1270) Ֆրանսայի Թագաւոր Ս․ Լուդովիկոսի առաջնորդութեամբ։

Այսքան արշաւանքներէն զկնի, որոց մէջ միլիոնաւոր զոհեր եղան, քրիստոնեայք, աւելի յաղթուելով քան թէ յաղթելով, մի քանի գաղթականութիւններ հաստատեցին Պաղեստինի մէջ, սակայն սոյն գաղթականութիւնքն եւս կործանեցան և Երուսաղէմ դարձեալ Մահմետականաց ձեռքն մնաց։ Այս արշաւանքներուն պատճառաւ Եւրոպիոյ Թագաւորներն իրարու դէմ զինեցան տիրապետութեան հոգւով և մէջ տեղը Պապութիւնն շահեցաւ, մանրաւոր իշխանաց տկարութեամբ զօրանալով։

Digitized by Google

Պապերը խաչակրութեան արշաւանքներ(1)ը հրատարակելով, ուրիշ նպատակ չունէին, եթէ ոչ Եւրոպիոյ տիրապետներն ու ժողովուրդը զբաղեցնել և իրենց նիւթական ոյժն ընդարձակել։ Կարճ ասենք, պապականութիւնն յարձակողական սուր տուաւ Քրիստոնէից ձեռքն, որ Աւետարանի սկզբանց դէմ էր, և սակայն Նախախնամութիւնն այնպէս տնօրինեց, որ նոյն սուրը յետ ժամանակաց

(1) Թէպէտ և խաչակրութեան պատերազմը Արևմտեան կամ Հռովմէական Եկեղեցւոյ պատմութեանը կը վերաբերի, սակայն իբրև նշանաւոր երևոյթ մարդկային ազգի պատմութեան մէջ, հարկ կը համարինք հետևեալ համառօտ ծանօթութիւնը տալ։

Խաչակրութիւն կ՚անուանեն այն արշաւանքներն, որոնց մասնակցեցան Եւրոպայի զանազան Թագաւորներն ու իշխաններըն (1096—1270) Հռովմայ Պապերու յորդորանօք. Երուսաղէմը Մահմետականաց ձեռքէն ազատելու համար. և որովհետև սոյն արշաւանաց համար զինուորողներն ու մասնակցողներն իրենց հագուստի վրայ նշմէր խաչ կը կրէին, այս պատճառաւ խաչակիրք կոչուեցան։

Ընդհանրապէս 8 Արևելեան խաչակիր արշաւանք կը հաշուին տիեզերական պատմութեան մէջ, որոց առաջինն կառավարեցաւ Ուրբանոս Բ՛ պապութեան ժամանակ (1096—1100) Պետրոս անապատականի հրաւիրական քարոզութեամբ և Գոդֆրիա Բույլիոնացու, Նորմանդիոյ դուքս Ռոբերտոս Բ՛ի, Տարենտի իշխան Բոհեմոնդի և այլոց առաջնորդութեամբ. Երկրորդն կառավարեցաւ Եւգենիոս Գ՛ պապութեան (1174—1149) Ս. Բեռնարդոսի քարոզութեամբ և Ֆրանսիոյ Թագաւոր Լուդովիկոս Է՛. և Գերմանիոյ կայսր Կոնրադի առաջնորդութեամբ։ Երրորդն կառավարեցաւ Կղեմէս Գ՛ պապութեան ժամանակ, Գուլիէլմոս արքեպիսկոպոսի քարոզութեամբ և

ընդդէմ պապականութեան դարձաւ և բոլոր զօրութիւնը քաջքայեց, ինչպէս պիտի տեսնենք յաջորդ Շրջանին մէջ։ Պապականութիւնը խաչակրութեան համար զինուորագներուն երկնից արքայութիւնը խոստանալով և մերժողաց վրայ բանադրանք, նզովք և դժոխոց սպառնալիք տեղալով՝ պատճառ դարձաւ միլիօնաւոր անմեղ ա-

Փրանսայի Թագաւոր Փիլիպ — Օգոստոսի, Գերմանիոյ կայսր Ֆրետերիկոս Բարբարոսայ և Անգլիոյ Թագաւոր Ռիչարդ Առիւծասրտի առաջնորդութեամբ։ Չորրորդն կատարեցաւ Իննովկենտիոս Գ. պապութեան ժամանակ (1202—1204) Ֆուլք Նէօյլացու քարոզութեամբ և Ֆլանդրիոյ դուքս Բօդուէնի Թ. Մոնֆերատի Մարքիզ Բոնիֆաս Բ. և այլոց առաջնորդութեամբ։ Հինգերորդն կատարեցաւ Հոնորիոս Գ. պապութեան ժամանակ (1217—1221) Հունգարիոյ Անդրէ Թագաւորի և Երուսաղէմի Ժան տը Բրիէն անուանական Թագաւորի առաջնորդութեամբ։ Վեցերորդն կատարեցաւ Գրիգոր Թ. պապութեան ժամանակ (1228—1229) և Ֆրետերիկոս Բ. առաջնորդութեամբ։ Իսկ Եօթներորդն և ութերորդն կատարեցան Իննովկենտիոս Դ. և Կղեմէս Դ. պապութեան ժամանակ (1248—1270) Ֆրանսայի Թագաւոր Ս. Լուդովիկոսի առաջնորդութեամբ։

Այսքան արշաւանքներէն զկնի, որոց մէջ միլիօնաւոր զոհեր եղան, քրիստոնեայք, աւելի յաղթուելով քան թէ յաղթելով, մի քանի գաղթականութիւններ հաստատեցին Պաղեստինի մէջ, սակայն սոյն գաղթականութիւնքն ևս կործանեցան և Երուսաղէմ դարձեալ Մահմետականաց ձեռքն անցաւ։ Այս արշաւանքներուն պատճառաւ Եւրոպայի Թագաւորներն իրարու դէմ զինեցան տիրապետութեան հոգւով և մէջ տեղը Պապութիւնն շահեցաւ, մեծամեծ իշխանաց ան-կարութեամբ զօրանալով։

րիւններու հոսման և այնքան մարդիկ մեռան նոյն արշաւանաց միջոցին, որ մի՛ նշանաւոր պատմաբանի ասածին պէս. «Եթէ ամեն կոտորածները յարութիւն առնէին, մի ընդարձակ երկիր կը բազմամարդէին»։ Բայց ՚ի հարկ է այս արեանց վրէժը ժամանակն պահանջեց պապականութենէն։

Այսպէս ուրեմն, պապականութիւնը, խաչակրութեան արշաւանաց շնորհիւ Ասի-ոյ Արեւմտեան մասներու հետ յարաբերութիւններ ունենալով և հետևապէս Կիլիկիոյ Հայ քրիստոնէից մտերմութենէն շահուելով, կը ճգնի Հայաստանեայց Եկեղեցւոյ անկախութիւնը բառնալ քրիստոնէական միութեան պատրուակաւ. սակայն Նախախնամութիւնն, որ պարսկական և հագարական հալածանքներուն մէջ օժանդակած էր Հայոց Եկեղեցւոյն, անակնկալ միջոցներով ազատ կը պահպանէ նա և պապական միաբարութեան հետամտութիւններէն։ Սակայն ցաւօք սրտի պիտի խոստովանինք, որ նոյն Շրջանին մէջ բարոյապէս վէրքեր կը կրէ մեր Եկեղեցին հռովմէականութենէն եւ յունականութենէն, այն է ներքին երկպառակութիւններ ազգային ամբողջութեան մէջ, վիճաբանական պղտորումներ Հաւատոյ անարատ համոզման մէջ և նորաձեւութիւններ վարդապետական ինչ ինչ բացա-

տրութեանց մէջ։ Եւ այս վէրքերն անհնարին էր որ չըկրէր․ որովհետեւ հալածանքն հեթանոսութենէ չէր, որ աւելի ամրացուցիչ է, այլ դաւանաբանական և ծիսաբանական տարապարտ վիճաբանութենէ, որ առաւել տկարացնել և քրիստոնէական զօրութիւնը մանրել գիտէ, քան թէ կազդուրել։

Ակսինք ներկայ Շրջանի պատմութիւնը, և ակներեւ պիտի տեսնենք սոյն համառօտ տեսութեան ստուգութիւնը։

---

# Բ․

## Կաթողիկոսութիւն Գրիգորի Պահլաւունւոյ և Ներսէսի Շնորհալւոյ։

Բարսեղ հայրապետի մահէն զկնի՝ կաթողիկոս կ'օծուի Գրիգոր Գ․ Պահլաւունի, որդի Ապիրատ իշխանի։ Գրիգոր Գ․ իւր մանուկ հասակէն, ինչպէս արդէն գիտենք, իւր եղբայր Ներսէսի (Շնորհալւոյ) հետ դաստիարակուած էր օրինաւոր կրթութեամբ և Վկայասիրի խնդրանօք յանձնուած էր Բարսեղ կաթողիկոսի խնամոց․ ուստի և կաթողիկոսացաւ իւր քսանամեայ հասակին մէջ, որուն վրայ արդէն ստահ էին, ինչպէս ինքն Բարսեղ հայրապետն, նոյնպէս և

ականատես ժողովուրդն ։ Սակայն հեռաւոր ազգայնոց մէջ բաւական շշուկ տարածուեցաւ այս մասին և Աղթամարայ Դաւիթ արքեպիսկոպոսն յաջողեցաւ մեծ կուսակցութիւն շահել իւր կողմն , և կաթողիկոսանալով Ձորոյ վանուց մէջ՝ նստաւ յԱղթամար , ուր էր (ըստ ոմանց) աջ , քող և գաւազան Լուսաւորչին , և մանաւանդ Վասպուրական աշխարհի համբաւն մեծ էր , և յիշատակն տակաւին կենդանի , որ աթոռանիստ եղած էր Արծրունի թագաւորաց ։

Գրիգոր Գ. . այս երկպառակութեան լուրըն առնելով, ժողով կազմեց (1114) Սեաւ լերան վրայ և զԴաւիթ անվաւեր հրատարակեց , սակայն Դաւիթ հաստատուն մնաց իւր վիճակին մէջ և իրմէն յետոյ շարունակեցաւ Աղթամարայ կաթողիկոսութիւնն , որոյ յաջորդութիւնը կը տեւէ մինչև մեր օրերը ։

Գրիգոր Պահլաւունի , որ միշտ կը մտածէր Հայաստանի Արեւելեան հօտին վրայ և հաստատուն աթոռ չունենալով , մերթ կը նստէր Շուղր անապատի մէջ , մերթ Կարմիր վանուց մէջ և մերթ այլ տեղեր՝ կամեցաւ փոխադրել յԱրարատեան աշխարհն . և այս առթիւ յատկապէս գիր գրեց Ապլ-սուար ամիրային , բայց շփոթութեանց պատճառաւ անկատար մնաց իւր իղձն և մտք

պուեցաւ կաթողիկոսական աթոռն հաստա-տել Խարբերդի և Արղնի մօտ՝ Ծովք գիւղի մէջ, որ իւր հայրենի իշխանական կալուածն էր։ Գրիգոր հրաւիրեց իւր մօտ իւր կրտսեր եղբայրն և քահանայական աստիճան տալով՝ Ներսէս անուանեց, յանուն Ներսիսի պարթևի. ապա եպիսկոպոս ձեռնադրեց և այցելու կարգեց Հայաստանեայց ցրուեալ հօտին։ Այս օրէն 'ի վեր Ներսէս իւր եղբօր ամենամտերիմ գործակիցն եղաւ կաթողիկոսական գործոց մէջ, թէ բանիւ և թէ գրով, և իւր քաղցրուսոյց վարդապետութեան համար Շնորհալի գեղեցիկ մականունն ստացաւ։

Գրիգոր, կաթողիկոսական աթոռոյ վարչութիւնն իւր հարազատին յանձնելով, Եւրուսաղէմ ուխտի գնաց, և այն տեղ, ինչպէս կը պատմէ Սամուէլ պատմագիր երէցն, Լատինական մասնաւոր մի ժողովի մէջ պաշտպանեց Հայաստանեայց Եկեղեցւոյ վարդապետութիւնն, որուն վրայ այլատարազ կարծիքներ կը ծնուցանէին Լատինք, ինչպէս և Յոյնք։

Սակայն, ինչպէս այն Շրջանի, ընդհանուր տեսութեան մէջ պատմած ենք և յաջորդ գլուխներուն մէջ ևս առիթ պիտի ունենանք պատմելու, արտաքոյ յունական կրօնամոլութեան, մի նորօրինակ վնասա-

բեր երեւոյթ եւս Լատինաց կողմէն ար-դէն 'ի վեր երեւելու վրայ էր ընդդէմ Հայաստանեայց Եկեղեցւոյ ։ Որչափ խաչակրութեան պատճառաւ Լատինք ծանօթացան Արեւելքին և Կիլիկիոյ գաղթական Հայք և կաթողիկոսունք յարաբերութիւն ունեցան նոցա հետ, այնչափ Լատինաց կողմէն մեր Եկեղեցւոյ անկախութեանը վտանգ սպառնացող երեւոյթներն աւելի զօրացան ։ Հայք, իբրեւ դարերով հարստահարուած ազգ, միշտ օգնութեան կարօտ էին, իսկ Յունաց և Լատինաց համար՝ օգնելու սկզբունքն ոչ այլ ինչ էր, եթէ ոչ տիրապետել Հայ Ազգի հոգւոյն և մարմնոյն, այսինքն քաղաքական ազատութեան հետ՝ բռնաբարել կրօնական ազատութիւնըն եւս ։

Այս խռովութիւններն Գրիգոր Պահլաւունւոյ ժամանակէն արդէն սկսան յայտնի լինիլ ։ Յունական ծիսաբանական վէճերն արդէն կը յուզէին, շատ անգամ բռնի ստիպելով, որ Հայք յունական արարողութիւնքըն ընդունին ։ Հայաստանի Արեւելեան բաժնի եկեղեցիները մերթ ընդ մերթ տիրապետող Ամիրաներէն կը կողոպտուէին, Կիլիկիոյ մէջ ներքին և արտաքին խռովութիւններն կը բորբոքէին անընդհատ դաւերագիրներով Յունաց հետ, և Գրիգոր

Պահլաւունեաց անունն ու համբաւը յայտնի էր Հռոմէական եկեղեցականաց, շատերուն, ինչպէս և Իննովկենտիոս պապը, արդէն հայրապետական քող և գաւազան ղրկած էր 'ի ցոյց միաբանութեան և յերախտագիտութիւն այն ընդունելութեանը, զոր Հայք ցուցած էին Խաչակիրներուն Կիլիկիոյ մէջ, և Լեւոն հայ իշխանն իւր լատին կնոջ խնդրանօք վանք եւս շինած էր լատին կրօնաւորաց համար: Հետեւապէս Հայք սկսած էին նոր յարաբերութիւն ունենալ Լատինաց հետ, բայց այս յարաբերութեանց մէջ Հռոմէական պապերը կրօնական հպատակութիւն պիտի երազէին, Յոյնք եւս աւելի պիտի արծարծէին մոլեռանդութեան վայրայթն, Արեւելեան Հայք պիտի տարակուսանօք պաշարուէին և Հայաստանեայց Եկեղեցւոյ անկախութեանը սպառնացող արհաւիրներ նշմարելով' պիտի ղարհուրէին: Բայց 'ի հարկէ, Աստուած, որ իւր Եկեղեցին չը մատնէր երբէք մոլեռանդութեան և տիրապետութեան անտի- քրիստոնէական տենչին, պիտի պահպանէր Հայաստանեայց Եկեղեցին ու Հայրապետութիւնն, ինչպէս պահպանած էր նախընթաց արհաւրալից դարերուն մէջ, թէպէտ և մեծամեծ զոհերով:

Գրիգոր Պահլաւունի, որ Երուսաղէմէն

գառնայրը ժամանակէն 'ի վեր Ծովք դղեկի մէջ կը նստէր և իւր հարազատին գործակցութեամբ Եկեղեցւոյ ներքին բարեկարգութիւնը զբաղած էր և միջադիտական ա-մանց Հայոց և Ասորւոց Թոնդրակեան նոր վերերեւցած յուզմունքներին անդորրացուցած էր, տեսնելով թէ Սկիւթական Հալածանքները կը սաստկանան Արեւելից մէջ, կաթողիկոսական ուխտը փոխադրեցաւ 'ի Կիլիկիա, և այն տեղ (1147) Հայրապետական Աթոռն հաստատեց Հռոմկլայի մէջ, որ լատին տիկնոջ իշխանութեան տակ էր և յետ ժամանակաց գնուելով կաթողիկոսական կալուած դարձաւ։

Գրիգոր Պահլաւունի, խորին ծերութեան հասնելով, ժողով կը գումարէ Հռոմկլայի մէջ և ժողովականաց հաւանութեամբ կաթողիկոս կ'օծանէ իւր եղբայրն Ներսէս, որ առաքինական վարուք և իմաստութեամբ յայտնի էր ոչ միայն Ազգին, այլ և օտարներուն։ Ներսէս, իւր ծերունազարդ եղբօր ձեռամբ օծուելէն և կաթողիկոսական քողն առնելէն զկնի, մի գեղեցիկ ատենաբանութեամբ կը յայտնէ, որ ոչ թէ փափաքանօք, այլ 'ի կարօտութենէ Ազգին և 'ի յորդորանաց եղբօրն կը ստիպուի յանձն առնուլ Հայրապետական վսեմ և ծանր պաշտօնն. ուստի և կ'աղաչէ որ ամենքն Աստուծոյ օժան-

դակութիւնը խնդրին լուծման համար։

Ներսէսի ձեռնադրութենէն երեք ամիս յետոյ Գրիգոր կը վախճանի (1166) և Ներսէս իւր վսեմ կոչման համեմատ ասպարէզ կը մտնէ իւր պարտաւորութիւնները կատարելու։

Ներսէս տակաւին եպիսկոպոս էր, որ Յունաց միութենական խնդիրներն սկսած էին սաստկապէս յուզուիլ, և նա՝ արդէն Կիռ Մանուէլ կայսեր փեսայ Ալէքս իշխանին գրով աւանդած էր Հայաստանեայց Եկեղեցւոյ դաւանութիւնը, ինչպէս վարդապետականն, նոյնպէս և ազգային ծիսականըն։ Նորընտիր հայրապետը, չընայելով որ այսպիսի մեծ խնդիր եկած է իւր առջեւ, որով պիտի մաքառի Յունաց մոլեռանդութեան դէմ, գրով և բանիւ, այս երկրորդական գործ համարելով, իւր մեծ ուշադրութիւնը կը դարձնէ Ազգի հոգեւոր շինութեան վրայ։

Այս ժամանակ Ազգը ցրուած էր ոչ միայն Մեծ և Փոքր Հայաստանի մէջ, այլ և Յունաստանի, Պարսկաստանի, Աղուանից աշխարհի, Եգիպտոսի և այլ սահմանաց մէջ. ուստի և արթուն հայրապետն, նախ՝ Ընդհանրական Թուղթ կամ շրջաբերական կ՚ուղղէ առ համօրէն որդիս Հայաստանեայց Եկեղեցւոյ, և ապա յատուկ թղթեր եւս կը

դրէ կրօնաւորաց, վանորէից առաջնորդաց, եպիսկոպոսաց, քահանայից. իշխանաց, զինուորաց, քաղաքականաց, երկրագործաց և ամենայն ժողովրդականաց և կանանց, յիշեցնելով ամենուն իրենց պարտքն առ Աստուած, առ Ազգն և առ միմեանս, և յորդորելով զամենեսեան 'ի սէր, 'ի միութիւն և 'ի՝ գործունէութիւն։

Եկեղեցւոյ Ժամանակարգութեան մէջ միակերպութիւն և վայելչութիւն պահպանելու նպատակաւ՝ բերել կը տայ Աքենոցաց ուխտէն, Թեղենեաց անապատէն և այլ երեւելի վանքերէ հին օրինակներ Գրոց ժամակարգութեանն և իրարու հետ համեմատելով և ինքնագիր շարականներով ու երգերով ճախացնելով՝ կը կարգաւորէ ըստ պատշաճի։

Եթէ չենք սխալիր, այս ժամանակարգական բարեկարգութեան և նորոգ ճոխութեամբ, իմաստուն հայրապետն գլխաւոր նպատակ կ'ունենայ եւս աւելի ազգայնութիւն տալ Հայոց եկեղեցական Ծիսակատարութեանն և ամուր պատուար քաշել ընդդէմ Յունաց, որք կը ջանային ծիսականապէս միակերպել մեր Եկեղեցին յունականին հետ։

Նոյնպէս, հովուական աչալրջութեամբ և քրիստոնէական տնտեսութեամբ, Ասորի կոչուած Հայերուն եւս, որոնք Լուսաւորչի ժամանակէն 'ի վեր Սամոսատ քաղաքի մէջ

և այլ տեղեր հեթանոսական պաշտամունքներով կը վարուէին, 'ի քրիստոնէութիւն կը դարձնէ, ինչպէս յայտնի է իւր գրած թըղթէն առ Թէոդոս եպիսկոպոս, որուն յորդոր կը կարդայ Արեւորդեաց դարձին համար ամենայն աշխատանք 'ի գործ դնել, և արդարեւ կը պսակուի այս հետեւողութիւնը։

Մինչդեռ Ներսէս այսպէս Եկեղեցւոյ ներքին շինութեամբ կը զբաղէր, յանկարծ կը հասնին Կիռ Մանուէլ կայսեր պատգամաւորներն ու թուղթը (որ ուղղած էր առ Գրիգոր Պահլաւունի, բայց չև հասած՝ նա վախճանած էր և Ներսէս կաթողիկոսացած) միութեան խնդրոյն նկատմամբ, զոր ստանալով Շնորհալի հայրապետն՝ կը պատասխանէ արժանապէս, յիշեցնելով միանգամայն, որ Հայք անհաւատներէն այնչափ չեն նեղուիր, որչափ Յունաց ազգէն, որոնք Հայաստանեայց Եկեղեցւոյ պաշտօնեայքը կը հալածեն, սեղանները կը կործանեն, պաշտամունքները կ'այպանեն (ինչպէս և ինքն Կիռ Մանուէլ, Գրիգորի կաթողիկոսութեան ժամանակ, Անտիոքայ Հայոց եկեղեցւոյն մէջ բռնի Յոյն եպիսկոպոս դրած էր, որ ամօթահար արտաքսուած էր) և այլ չարիքներ կը հասուցանեն, որոց ուրիշ դարման չըկայ, բայց միայն յունական պետութիւնն փոխել 'ի սէր, և հալածանքն՝ 'ի գթութիւն։

Digitized by Google

Այսօրն իւր պատգամաւորաց ձեռքով Ներսէս Շնորհալւոյ Թուղթն ստանալով և թարգմանել տալով կը հաղորդէ Պատրիարքին եւս, և ապա երկուքի խորհրդով Թէորիանէ յոյն աստուածաբանն և Յովհաննէս Ութման վանահայրն կը ղրկուին 'ի Կիլիկիա, որք ներկայանալով Շնորհալի հայրապետին Հռոմկլայի մէջ, երկարօրէն կը խօսին հաւատոյ մասանց և եկեղեցական արարողութեանց վրայ: Այս թուղթ առնելով կաթողիկոսէն առ կայսրն Մանուէլ և առ Պատրիարքն Միքայէլ կը դառնան 'ի Պոլիս: Շնորհալւոյ թուղթն, որոյ մէջ Հաւատոյ դաւանութեան հետ բացատրուած էր միանգամայն մեր ազգային Ծիսից նախնականութիւնն, անհաճոյ կ'երեւի կայսեր, եւ վերստին Կիլիկիա կ'ուղարկէ զԹէորիանէ և զՈւթման, իւր և Պատրիարքի թղթերով և յունական Եկեղեցւոյ կողմէն ինն գլխակարգութեամբ առաջարկութիւն մի առնելով, որ կամ պատասխանեն և կամ ընդունին:

Այս ինն առաջարկութիւնքն (զորս հարցասէրք կարեն գտնել Ներսէս Շնորհալւոյ Ընդհանրական Գրոց մէջ) կը պարունակէին իրենց մէջ ծիսաբանական կէտեր և մանաւանդ բարձումն անկախութեան և առաքելական իրաւանց Հայաստանեայց Հայրապետութեան: Ասոնք և իմաստուն Հայ-

Digitized by Google

բացեան Ներսէս բարուոք կը վարկանի պատասխանել Կայսերն եւ Պատրիարքին, որ առանց գիտութեան Արեւելեան եպիսկոպոսաց Հայոց՝ անձեռնհաս է միայն Միջագետաց եւ Կիլիկիոյ եպիսկոպոսաց խորհրդով պատասխանել յիշեալ առաջարկութեանց. յայս առնելով. «Զի թէպէտ եւ աթոռըս տարագրեցաւ ըստ մեղաց մերոց 'ի մէջ այլազգեաց եւ աշխարհ մեր յանօրինաց 'ի ստրկութիւն մատնեցաւ, սակայն հիմն հաստատութեան մեր նոքա (Արեւելեան Հայք) են եւ գլուխն անհնար է առանց անդամոցն՝ գործոյ ինչ կատարումն առնել»։ . . . Եւ թէ. «Առ 'ի մէնջ միայնոյ տալ պատասխանի ոչ համարեցաք 'ի դէպ, այլ 'ի լինիլ հանդերձեալ հանդիսական ժողովոյն՝ դիցուք առաջի զխնդրելիս»։ Եւ այսպէս երկու համառօտ նամակս կ'ուղեւորէ զԹէորիանէն եւ ինքն հայրապետն առանձին գըրով խնդիրն կը ծանուցանէ Արեւելեան եպիսկոպոսաց, որ ժողովին։ Չը մոռնանք ասել, որ Յոյնք ջանադիր էին Ասորիքն եւս 'ի միակերպութիւն հրապուրել եւ Ներսէս Շնորհալին Ասորւոց Միքայէլ պատրիարքին եւս գիր կը գրէ Թէորիանէի խնդրանօք, բայց մերժողական պատասխան կը հանի յիշեալ պատրիարքէն։

Այսպէս ահա մինչդեռ երանելի հայրա

պետն. կը պատէր եպիսկոպոսաց գումարման, որոց թուղթ գրած էր ՚ի Հայս, ՚ի Վիրս, յԱղուանս, ՚ի Պարսկաստան, յԱրեւմուտս եւ յայլ տեղիս, ինքն կը վախճանի 75ամեայ հասակին մէջ, (1173) եօթնամեայ կաթողիկոսութենէ զկնի, որ ըստ թըւոյ ամաց Հայրապետութեան եօթն եպիսկոպոս միայն ձեռնադրած էր ։

Երկար ժամանակ անթաղ կը մնայ Շնորհալի Հայրապետի մարմինն, որովհետեւ զանազան կողմերէ ժողովրդեան խուռն բազմութիւն կը դիմէր երանելոյն աջը համբուրելու եւ հրաժարական ողջոյն տալու հոգեւոր հօրն Հայաստանեայց ։ Հանգուցեալ Հայրապետի եղբօրորդին Գրիգոր, որ հեռաւոր երկրի մէջ հիւանդութեան լուրն առնելով աճապարած էր կենդանւոյն տեսնելու, հազիւ թէ յուղարկաւորութեանը կը հասնի ։ Իսկ երբ կ'աւարտի յուղարկաւորութեան հանդէսն եւ երանելի Հայրապետի մարմինն կ'ամփոփի Հռոմկլայի դամբարանին մէջ, բոլոր բազմութիւնն կը սկսի միաբերան աղաղակել եւ զԳրիգոր կաթողիկոս խնդրել ։ Ներկայ եպիսկոպոսները, բոլոր հանդիսականաց հետ, Գրիգորն եկեղեցին կը տանին եւ կ'օծեն կաթողիկոս, եւ նմանապէս նոյն օրը կ'որոշեն ամեն տարի Շնորհալւոյն տօնը կատարել եւ յիշատակել ՚ի

չարս սուրբ Հայրապետաց։ Շնորհալի հայրապետի վրայ դարձեալ պիտի խօսինք իւր գրաւոր երկասիրութեանց արժանաւորութիւնը կշռադատելու ժամանակ։

---

## Գ.

Շարունակութիւն յուղման միութեան խնդրոյն. — Գրիգոր Դ. Տղայ. — Գրիգոր Ե Գահավէժ. — Գրիգոր Զ Ապիրատ։

ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ մահուան դոյժն 'ի Պօլիս հասնելով տրտմութեամբ կը համակէ կայսրն, պատրիարքն և բոլոր մեծամեծներն։ Կայսրն մխիթարութեան թուղթ կը գրէ նորընտիր Գրիգոր կաթողիկոսին և Թէորիանէի ձեռքով ղրկելով կը յորդորէ միութեան խնդիրն 'ի գլուխ հանել։ Թէորիանէ ճանապարհին կ'արգելուի զանազան դժուարութեանց պատճառաւ և կայսերական թուղթը կը ղրկէ այլոց ձեռամբ։ Գրիգոր Տղայ ընդունելով կը տատամսի, որովհետեւ ակներեւ կը տեսնէ, որ ինն առաջարկութեանց խնդիրը պիտի վրդովէ Ազգի հոգեւոր անդորրութիւնը, որ փարատած էր 'ի վաղուց անտի յարգել իւր ազգային ծէսերն



Digitized by Google

ու առաքելական աւանդութիւնքն ։ Եւ արդարև, այս միջոցին կը հասնի Ներսէս Շնորհալւոյն Թղթոյն (զոր գրած էր Հեռաւոննակ եպիսկոպոսաց վրայ) պատասխանն, որով կը յայտնեն՝ թէ սէրը մեր երկնաւոր Հօր պատուէրն է և մենք պատրաստ ենք յօժարութեամբ սիրել ամենայն մարդիկ, բայց ամենևին թող չըստիպեն զմեզ Յոյնք մեր նախնի Հարց աւանդները փոխել ։

Գրիգոր, տեսնելով՝ թէ Հայք ոչ մի կերպիւ պիտի չըհաձին փոխել իրենց Եկեղեցւոյ վարդապետութիւնն ու արարողութիւնքը, թուղթ կը գրէ Մանուէլ կայսեր և կը խնդրէ ՚ի բաց թողուլ ինն առաջարկութիւնքն և այս թուղթը կ'ուղարկէ մի Յոյն քահանայի ձեռամբ, յորմէ ինքն յունարէն կ'ուսանէր ։ Իսկ միւս կողմէն Հայ վարդապետաց օգնականութեամբ, մանաւանդ Ներսէս Լամբրոնացւոյ, ինն առաջարկութեանց պատասխանը կը պատրաստէ և Լամբրոնացւոյն կը յանձնէ ատենաբանութիւն յօրինել սիրոյ և խաղաղութեան վրայ, և, եթէ ժողովի գումարման հարկ լինի, հանդիսականաց առջև կարդալ ։

Կայսրն Գրիգորի Թուղթն ստանալով՝ վերստին պատասխան կը գրէ, նոյնպէս և պատրիարքն, ստորագրութեամբ Յոյն եպիսկոպոսաց, որք և կը ստիպեն զԳրիգոր

ժողով գումարել: Տասնամեայ կաթողիկոսըն ; ըստ բռնադատութեան յունական թղթոց, գիր գրելով 'ի ժողով կը հրաւիրէ Հայոց եպիսկոպոսներն ու վարդապետները: Սակայն ոմանք կը ժողովին, ոմանք 'ի կամս կաթողիկոսին կը թողուն խնդրոց լուծումն, և ոմանք սաստիկ երգիծանաց թուղթ կը գրեն կաթողիկոսին, խստիւ մերժելով յունական միութիւնն և զգուշացնելով՝ որ ամենևին ինքնագլուխ բան չը բռնէ կաթողիկոսն:

Գրիգոր տղայ կըստիպուի պատասխանել իւր դէմ յուղուած ամբաստանութեանց, ջանալով համոզել, որ բաց 'ի սիրոյ և խաղաղութենէ ուրիշ միաբանական նպատակ չունի Յունաց հետ: Այս աւթիւ ընդդիմադիր կողմէն Անիի Բարսեղ եպիսկոպոսն կը ղրկուի 'ի Հռոմկլայ, ուր արդէն գումարուած էին բաւականին եպիսկոպոսներ և վանականներ և ժողովը կը սկսի (1179): Նախ՝ կ'ատենախօսէ Ներսէս Լամբրոնացին և ապա Յունաց կայսեր և Մետրապօլտաց թղթերը կը կարդացուին ու կը քննուին: Յետոյ ժողովականաց խորհրդով թղթեր կը գըրուին Յունաց կայսերն, Պատրիարքին և եկեղեցականաց, որով կը բացատրեն Հայաստանեայց Եկեղեցւոյ դաւանութիւնը, 'ի մէջ այլոց այս խօսքերն ևս գրելով. "Այլ

և ազգային աւանդութեանց ջնջումն : Հե-
տեւապէս , միութեան խնդիրն երեւա-
կայական բաղձանք մ' էր և երբէք պի-
տի չիրագործուէր , ոչ Սամուէլի հետա-
մտութեամբ և ոչ Գրիգորի կամ այլոց
զիջողութեամբ , քանի որ երկուց ազգաց ա-
գին բոլորովին իրարմէ տարբեր են , և քա-
նի որ Եկեղեցի կազմողն երկուց ազգաց ժո-
ղովուրդն էր և ոչ թէ մասնաւոր կայսր մը
կամ հայրապետ : Պատմութիւնն ինքնին կը
հաւաստէ մեր ասածն . որովհետեւ տակա-
ւին և ոչ միութեան նշոյլ երևցած , Ձորագե-
տացի վարդապետներն , հանդերձ Շիրակա-
ցի և Սիւնեցի եկեղեցականօք այնչափ կը
տոկան և կը զայրանան Հռոմկլայի ժողովի մա-
սին , որ սաստիկ յանդիմանութեան թուղթ
կը գրեն Գրիգորին և կ'ամբաստանեն , և
սա իւր կողմէն Նախատանաց թղթեր կը գը-
րէ : Եւ ահա այսպէս , միութեան խնդրոյն
յուզմամբ ոչ միայն չը մեղմանար յունական
ատելութիւնն ու մոլեռանդութիւնն , այլ
նոյն իսկ Հայաստանեայց Եկեղեցւոյ զաւա-
կաց մէջ մեծամեծ խռովութիւններ և երկ-
պառակութիւններ կը յուզին . վասն զի
Ձորագետացիք կամ Տուտէորդեանք , Շի-
րակացիք և Սեւլերան Հայերէն շատերն կը
միաբանէին զԳրիգոր չը ճանաչել իրենց կա-
թողիկոս , այլ կ'որոշեն Անի քաղաքի Բար-

սեղ եպիսկոպոսին հպատակիլ իբրեւ կաթողիկոսի ։

Մինչդեռ այս վիճակի մէջ էր յունական միութեան խնդիրն, միւս կողմէն լատինական յարաբերութիւններն աւելի կը բազմանային Հայոց մէջ, որք և տեղի կը տային, մի կողմէն յունական ատելութեան զայրագին բորբոքման, և միւս կողմէն պապական միապետութեան տենչանաց արծարծման ։ Մանաւոր յարակցութեանց պատճառաւ Լուսիոս պապը պատուասիրական նուէրներ կը ղրկէ Գրիգոր Տղային, նմանապէս Կղեմէս պապն եւս թղթեր կը գրէ առ Գրիգոր և առ Լեւոն իշխան Հայոց, երբ Ֆրետերիկոս Գերմանիոյ կայսեր առաջնորդութեամբ Խաչակիրք վերստին 'ի Պաղեստին կը դիմեն, Երուսաղէմն գրաւելու համար, և կը խնդրէ օգնել Խաչակրաց՝ քրիստոնէական ընդունելութեամբ և պաշարաւ, և Հայք կ'օգնեն ըստ արժանւոյն և մեծամեծ խոստումներ կը լինին Ֆրետերիկոսի կողմէն Հայոց կաթողիկոսին և իշխանին ։ Սակայն կայսրն Երուսաղէմ չը դարձած՝ կը մեռնի և խոստումներն անկատար կը մնան ։

Գրիգոր Տղայ քսանամեայ կաթողիկոսութենէն զկնի կը վախճանի, և խորհրդով Լեւոն իշխանի, մեծամեծաց և եպիսկոպոսաց, կաթողիկոս կ'ընտրուի Գրիգոր Տղայի եղբօ-

Digitized by Google

թողդին, (ըստ ոմանց քեռորդին) Գրիգոր Ե. որոյ մանկահասակ լինելուն պատճառաւ Լամբրոնացին սաստիկ կ՚ընդդիմանայ ընտրական ժողովի մէջ, բայց չը յաջողիր խափանել ընտրութիւնը, որովհետեւ շատերն կաշառած ունէին, որ մի՛ գուցէ Լամբրոնացին իւր կաթողիկոսանալու համար կ՚աշխատի։ Գրիգոր մանուկ կաթողիկոսն, տակաւ ժամանակէն զկնի ամբաստանութեան կ՚ենթարկուի ոմանց եպիսկոպոսաց և իշխանաց կողմէն, որով և Լեւոն իշխանն կը ստիպուի նորընտիր կաթողիկոսը արգելանոցի մէջ դնել և գիր գրել Հայոց մօտաւոր և հեռաւոր եպիսկոպոսներուն, որպէս զի ժողովքին արժանն խորհելու և սահմանելու։ Լամբրոնացին կը մերժէ Լեւոնի հրաւէրն և հազիւ հազ Լեւոնի չորս հինգ գրութիւններէն ստիպուած կը զիջանի Սիս գալ։ Սակայն դեռ եւս Արեւելեան եպիսկոպոսներն ու Լամբրոնացին Սիս չը հասած՝ Գրիգոր կը վախճանի աղէտալի մահուամբ, այն է, կամենալով արգելանոցէն փախչիլ, կտաւեղէն պարան կը կազմէ և մէջքէն կապելով կը կախուի պարսպի բարձրութենէն, և պարանը խզուելով՝ քարերուն կ՚ընդհարի և կը ջախջախուի, և այս պատճառաւ պատմութեանց մէջ կը կոչուի գահավէժ կամ քարավէժ։

Գրիգոր Գահավէժի վեշտասանամեայ

կաթողիկոսութենէն զկնի , Լեւոն իշխանն և ժողովական եպիսկոպոսաց հաւանութեամբ կ'ընտրուի Շահան զօրավարի Ապիրատ որդին (1195) , և կաթողիկոսանալով կը կոչուի Գրիգոր Զ. որ Ներսէս Շնորհալւոյ ժամանակէն 'ի վեր արդէն յայտնի էր իւր համբաւով ։ Տուտէորդեանք եւ Շիրակացիք Լամբրոնացւոյ մասն նշմարելով ընտրութեան մէջ , որուն հետ սաստիկ հակակիր էին , դարձեալ չէին հպատակեր նորընտիր կաթողիկոսին , այլ իրենց իբրեւ կաթողիկոս կը ճանաչէին Անեցի Բարսեղ եպիսկոպոսն ։

Այս եկեղեցական վարչութեան ներքին երկպառակութեան հետ՝ արտաքին հարըստահարութիւնք եւս կը յաճախեն Վրաց և Յունաց կողմէն ։ Վրացիք մի Հայոց եկեղեցի կը հրդեհեն , Զատիկը իրենց հետ չը տօնելու պատճառաւ , և քառասուն աղաթաւորներ կ'այրեն . իսկ Մելիտեցի Յոյնք կը սկսին Հայոց ազգէն չարախօսել և Պօլսոյ ու այլ տեղեաց մէջ գտնուած Հայերն նեղել և տառապեցնել , կրկին մկրտել շատերըն և վերստին ձեռնադրել , ստիպելով որ ամեն ծէս յունականին հետ միակերպ կատարեն ։ Այս յունական մոլեռանդութիւնը խաղաղելու նպատակաւ՝ Լամբրոնացին Պօլիս կը ղրկուի , իբրեւ պատգամաւոր կա-

Digitized by Google

թողիկոսի և Լեւոն իշխանի կողմէն ։ Սակայն անկարող կը գտնուի առաջն առնուլ եւ ցաւօք սրտի յետ կը դառնայ. իսկ հարստահարութիւններն կը շարունակին, շատ Հայեր բռնի կը ստիպուին յունանալ և շատերըն տարաբնակ կը հալածուին Աղէքս Անգելոս (Հրեշտակ) կայսեր իշխանութեան ժամանակ, ինչպէս կը գրէ Գրիգոր վարդապետըն Սկեւռացի ։ Այս մոլեռանդութեան հուրը առաւել բորբոքելու համար՝ Յոյնք այնպէս համբաւած էին, իբր թէ Հայոց հայրապետութեան կատարածը հասած է. ուստի հարկ է անշուշտ Հայոց քահանայքն վերստին ձեռնադրել, եւ այս յունական շաղփաղփութիւնը մերժելու համար երկար նամակ կը դրէ Լամբրոնացին առ Ոսկան անուն ոմն ։

Մինչդեռ Յունաց կողմէն կրօնական յուզմունքներն կը շարունակին, Լատինաց կողմէն մտերմական երեւոյթներն աւելի նշմարելի կը լինին ։ Լեւոն, բաւականին ընդարձակելով իւր իշխանութիւնն ու համբաւը, կը փափաքի թագաւոր օծուիլ և կը թըղթակցի Հռովմայ Կելեստինոս Պապին եւ Փրեդերիկոսի որդի Հենրիկոս Գերմանիոյ թագաւորի հետ, յիշեցնելով Փրեդերիկոսի խոստումն. ուստի և Պապն ու թագաւորն Մոգունտիոյ եպիսկոպոսի ձեռամբ ար-

Digitized by Google

քաղաքական Թագ և արծուէնշան դրօշ կը ղրկեն Լեւոնին. սակայն ընդ նմին կ'առաջարկեն նոյնպէս քանի մի խնդիրներ՝ ծիսական փոփոխութեանց նկատմամբ, որոց գլխաւորն էր տօները լատինականին համեմատ կատարել և Ճրագալուցին՝ պահքը չլուծանել, և այսպէս եկեղեցական խնդիրը կը սողոսկի պատուասիրական պարգեւներու տակ: Սակայն այս առաջարկութիւնները, որչափ որ ըստ երեւոյթին հաւանութիւն կ'ըստանան Լեւոնէն և կաթողիկոսէն, իրօք չեն կատարուիր և Հայք իրենց նախնի սովորութեան վրայ հաստատուն կը մնան: Շուտով հրաւիրանաց գրեր կ'ուղարկուին Լեւոնի և Կաթողիկոսի կողմէն զանազան տեղեր, որով և կը ժողովին 'ի Տարսոն եպիսկոպոսունք, վանահարք, իշխանք, զօրավարք և զօրք, նմանապէս Լատին և Յոյն երեւելի անձինք, և Գրիգոր կաթողիկոսի ձեռամբ թագաւոր կ'օծուի Լեւոն (1198), Յայտնութեան Տօնին, ուր կ'ատենաբանէ Ներսէս Լամբրոնացին, աւելւ շքեղութիւն տալով հանդիսին: Յունաց Աղէքս Անգելոս կայսրն այս թագաւորութեան լուրն առնելով՝ ինքն ևս թագ կը ղրկէ և կը յորդորէ իւր ղրկածն գործ դնել և ոչ լատինականն, սակայն Լեւոն երկուքն ևս փոփոխակի կը գործադրէ: Բայց երանի

թէ Լեւոն աւելի՝ նախապատիւ համարէր ազգային անշուք թագ մի՝ օտարաց շքեղազարդ թագերէն, որոց տակ հպատակութիւն քան թէ ինքնիշխան ազատութիւն կը ծածկուէր, թէ՛ իրեն և թէ՛ իւր յաջորդաց համար և որո՛նք պիտի երկարատեւ չը մնային Ռուբինեան ցեղի իշխանաց գլխոյն, ինչպէս և չը մնացին իսկ ։

Զօրագետացիք և Շիրակացիք լսելով՝ որ Կիլիկիոյ եպիսկոպոսներէն և վարդապետներէն ոմանք հաւանութիւն ցուցած են լատինական աւանդութեանց, սաստիկ վըրդովմամբ գիր կը գրեն առ Լեւոն թագաւոր և կ'ամբաստանեն զՍամբրոնացին իբրև գլխաւոր համամիտ նորաձևութեան. ուստի և Լեւոն կ'ըստիպուի Սամբրոնացւոյ եղբայր Հեթում Սեբաստոսի միջնորդութեամբ համոզել զՍամբրոնացին, որ տեղի չը տայ նորաձևութեանց և ազգային խռովութեան, ապա թէ ոչ եպիսկոպոսական իշխանութենէ կը ձգուի։ Այս առթիւ երկար գիր կը գրէ Սամբրոնացին առ Լեւոն, զինքն արդարացնելու համար. բայց տակաւ ժամանակէն զկնի՝ սաստիկ ցաւով կը մեռնի քարոզութեան ժամանակ և նոյն ցաւով կը վախճանի, թողլով բազմաթիւ գրաւոր երկասիրութիւններ, որոց վրայ պիտի խօսինք առանձինն ։

Լեւոն Թագաւորն շատ եկեղեցիներ և վանքեր շինել կու տայ, բազմաթիւ պատերազմներ կը մղէ օտարաց հետ, բայց միանգամայն խաղաղութեամբ կը սկսի վարել Լամբրոնի Հեթում և Կոստանդին իշխանաց հետ. և Գրիգոր կաթողիկոսն կ'ըստիպուի միջամտել և այս ազգային իշխանական յուզմունքները խաղաղել. և այն. ինչ կը հասնի իւր խաղաղասիրական նպատակին, ինքն ևս կը վախճանի, յետ եօթնամեայ կաթողիկոսութեան:

---

## Դ.

Երկպառակութիւն կաթողիկոսական ընտրութեան համար. — Կաթողիկոսունք՝ Յովհաննէս Մեծաբարոյ, Անանիա, Բարսեղ և Դաւիթ Գ Արքայակաղնեցի. — Հալածանք ընդդէմ Զորագետացւոց. — Կոստանդին Ա Բարձրբերդցի. — Յակոբ Ա Տարսոնացի:

ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ հայրապետութենէն զկնի արդէն ազգային եկեղեցական վարչութեան մէջ սկսած էր 'ի վեր երեւիլ մի ներքին երկպառակութիւն և հիւսիսային ու արեւելեան Հայք կասկածանօք կը նայէին Կիլիկիա փոխադրուած կաթողիկոսութեան աթոռոյն վրայ: Այս երկպառակութիւնը բնական

հետեւանք էր յունական և լատինական յա-
րաբերութեանց, որոց մէջ ակամայ կը գըտ-
նուէին Կիլիկիոյ հայրապետներէն ոմանք։
Այս երկպառակութիւնը տռաւել կը ծա-
րակի Գրիգոր Ապիրատի վախճանելէն զկնի,
նոր կաթողիկոսի ընտրութեան համար։ Ո-
մանք կը ցանկան Սեբաստիոյ Անանիա եպիս-
կոպոսն՝ կաթողիկոս ընտրել, որ ազգական
էր Պետրոս Գետադարձին, և կէսքն, յորդո-
րանօք Լեւոն Թագաւորի, կը ցանկան Սսոյ
Յովհաննէս եպիսկոպոսն ընտրել, որ միանգա-
մայն Թագաւորի ազգականն էր։ Մինչդեռ
մի կողմէն Յովհաննէս կ'ընտրուի և կը ձեռ-
նադրուի Հռոմկլայի մէջ, միւս կողմէն ևս
կ'ընտրուի Անանիա Սեբաստացի, Կեսարիոյ և
Փոքր Հայոց ժողովրդի հաւանութեամբ։
Սակաւ ժամանակէն զկնի Լեւոնի և Յով-
հաննէս Մեծաբարոյ կաթողիկոսի մէջ գըժ-
տութիւն կը ծագի և Թագաւորի կամքով
նոր կաթողիկոս մի ևս կ'ընտրուի Սսոյ մէջ,
այն է Տէր Դաւիթ Գ։ Այս դէպքն աւելի
առիթ կը տայ Փոքր Հայոց բնակիչներուն
աւելի ամուր պաշտպանել Անանիայի կաթո-
ղիկոսութիւնը։ Բայց ընդ նմին Շիրակացիք
ևս իրենց կաթողիկոս կ'անուանեն Անեցի
Բարսեղ եպիսկոպոսն։ Եւ ահա այսպէս մի
և նոյն ժամանակի մէջ չորս անձինք անխտ-
րրդաբար կաթողիկոսական անուն կը կրեն

և ըստ այնմ Հայաստանեայց հոգևոր հօտը 'ի չորս կուսակցութիւնս կը բաժանի ։

Այս կաթողիկոսական վարչութեան բաժանման միջոցին՝ նոր խնդիր մի կը ծագի ։ Զաքարէ Սպասալարն և իւր եղբայրն Իւանէ Աթաբէգն, որոնք մեծ համբաւ ունէին և կը զօրավարէին Վրաստանի թագաւորութեան մէջ, թուղթ կը գրեն Յովհաննէս կաթողիկոսին (որովհետև Դաւթի բռնութիւնը տակաւին լրած չէին) և Լևոն թագաւորին, և կը խնդրեն, որպէս զի ներուի իրենց — Ա. շարժական սեղան ունենալ զօրաբանակի մէջ և քահանայ՝ պատարագելու համար, և Բ. Աստուածածնի Վերափոխման և Խաչի տօները ըստ ծիսից Վրաց կատարել ։

Թագաւորն և կաթողիկոսն Դաւիթ, Զաքարէի առաջարկութեան վրայ խորհելու համար ժողով կը գումարեն (1204) Սիս քաղաքի մէջ շրջակայ եպիսկոպոսներէն և խորհրդակցելով հետեւեալ ութ կանոնական որոշմունքն կը ղրկեն Զաքարէին, այն է — Ա. Պատարագել սարկաւագօք, դպրօք և քահանայական զգեստով ։ — Բ. Շարժական սեղան ունենալ և 'ի պատահել հարկին բացօթեայ վրանի մէջ պատարագել ։ — Գ. Պատարագ մատուցանել ոչ միայն ննջեցելոց, այլ և կենդանեաց համար ։ — Դ. Վերափոխման տօնը կատարել Օգոս. 15 և Խաչի տօնը՝ Սեպ.

14, Յունաց և Վրաց երկիրներուն մէջ։—Ե. Յայտնութեան և յարութեան Ճրագալուցին պահքը լուծանել միայն ձկամբ և իւղով։—Զ. Յարգել Փրկչի և սրբոց պատկերները։—Է. Առանց դպիր ձեռնադրելոյ՝ սարկաւագ չձեռնադրել։—Ը. Կանոնական սահմանի մէջ փակել, որ կրօնաւորները սեպհական ստացուածք չունենան և միս չուտեն։ Իսկ Յովհաննէս կաթողիկոսն իւր կողմէն կանխապէս կը ղրկէ Զաքարէին մի եկեղեցանման վրան, մարմարոնեայ շարժական սեղան, սպասներ և քանի մի եկեղեցական պաշտօնեայք։

Զաքարէ այս կանոններն ու ընծաները ստանալով՝ ժողով կը գումարէ (1205) Լոռի քաղաքի մէջ, ուր կը գտնուի իւր ազգականն Գրիգոր Տուտէորդին՝ Հաղբատայ եպիսկոպոսն, Սանահնի Յովհաննէս վարդապետն, Դաւիթ Քոբայրեցին, Անիի Սարգիս եպիսկոպոսն (ըստ որում Բարսեղ արդէն վախճանած էր) Բջնոյ Վրթանէս եպիսկոպոսն և այլ եկեղեցականք։ Ժողովի մէջ կը կարդացուին վերոգրեալ ութ կանոնական որոշմունքն. սակայն ժողովականներէն ոմանք կը հաւանին և շատերն կ՚ընդդիմանան, ինչպէս Տուտէորդին, Յովհաննէս և Դաւիթ վարդապետներն և այլք, և այսպէս ժողովն կը լուծուի։ Զաքարէ Սպասալարն սաստիկ

կը զայրանայ և իւր կամքը բռնի յառաջ վարել կը ջանայ, ինչպէս և արդէն կը հրամայէ պատարագ մատուցանել, ուր և Տարօնացի Խաչատուր վարդապետն 'ի սկիզբն պատարագին կ'երգէ իւր յօրինած Խորհուրդ խորին երգը, որ մինչև ցայսօր եւս կ'երգուի Հայաստանեայց Եկեղեցւոյ մէջ։

Զաքարէ, ջանալով իսպառ նուաճել իւր ընդդիմադիրներն, իւր զայրոյթն 'ի բռնութիւն կը փոխէ և ամէնքն կալանաւորել կը ձգնի։ Տուտէորդին կը փախչի Գետկայ վանքը, Մխիթար Գօշ անուանի վարդապետին մօտ, բայց յետոյ այն տեղէն ելած ժամանակ կը բռնուի և կը կալանաւորի. իսկ միւսներէն ոմանք կը փախչին և ոմանք յերկիւղէ կը հնազանդին Զաքարէին։ Շփոթութիւններն ու պառակտումներն կը յաճախին Արեւելից մէջ և համբաւն մինչեւ Կիլիկիա կը հասնի, որով շատ կը տրտմին Լեւոն Թագաւորն և Յովհաննէս կաթողիկոսն. վասն զի Դաւիթ արդէն վախճանած էր և նոյն տարւոյն մէջ Անանիա Սեբաստացին եւս վախճանելով և Յովհաննէս միայն մնալով կաթողիկոսութեան մէջ՝ հաշտուած էր Լեւոնի հետ։

Զաքարէ տեսնելով որ կրօնական խռովութիւններն ու շփոթութիւններն երթալով աւելի կը զայրանան և կը տարածին, ժողով

կը գումարէ (1207) Սիսի մէջ, (զոր նոր առած էր Պարսից ձեռքէն) ուր կը հրաւիրուի և Միխիթար Գօշն, սակայն տակաւին ժողովական խորհուրդն չըսկսած՝ աղմուկ և շփոթութիւն կը յուզի և անկատար կը մնայ։ Ժողովականներէն շատերն կ'աքսորուին Զաքարէի ձեռամբ, և 'ի վերջոյ Իւանէ Աթաբէկի միջնորդութեամբ կ'ազատին։ Իսկ Սըսական ութն առաջարկութիւններէն մի քանիսն կիրառութեան մէջ կը մնան և մի քանիսն խափան կը մերժուին։

Չենք տարակուսիր վերագրեալ դէպքերէն հետեւցնելու, որ Զաքարէի հալածասիրական վարմունքն դատապարտելի է պատմութեան անաչառ դատաստանին առջեւ։ Վասն զի, իշխանական սաստ և սպառնալիք 'ի գործ դնել այն տեղ, ուր միայն խորհուրդ և համոզումն կը պահանջուի, այս կը նշանակէ սիրոյ տեղ՝ սուր շողացնել, որ պատերազմական գործի է և ոչ եկեղեցական ժողովի։

Զաքարէն, իբրեւ զաւակ Եկեղեցւոյ, իրաւունք ունէր միայն իւր կարծիքը յայտնել. իսկ Սսական առաջարկութեանց ընդունելութիւնն կամ մերժումն ընդհանուրի որոշման գործ էր։ Այս է եկեղեցական ժողովի անբռնաբարելի սկզբունքն; և ուր այս սկզբունքն կը պակսի, այն տեղ ժողովը վըճ-

ռազմական նշանակութիւն չունի, ինչպէս և չունեցան իսկ այն ամեն ժողովները, որոնք, առանց ընդհանուր Ազգի հաւանութեան, եղան, միայն յունական և լատինական թե-լադրութեամբ, և բաց ՚ի ազգային երկպառակութիւններէ՝ ուրիշ շահաւէտ արդիւնք չունեցան։ Եթէ Ազգին համար, Ազգն և ոչ եկեղեցական ժողովներու կարօտութիւն և ժամանակ ունէր իւր բազմատառապանաց վիճակին մէջ։

Եւ ահա՛ այսպէս, մինչդեռ Արեւմտեան Հայոց մէջ տակաւին երկպառակութիւններըն կը շարունակէին, սաստիկ վրդովումն կը ծագի Կիլիկիոյ սահմանի Հայոց և Լատինաց մէջ և Լեւոն Թագաւորն կ'ըստիպուի բոլոր լատինական կղերը արտաքսել, որոնք սկսած էին երկպառակութեան սերմ սերմանել։ Այս մասին Թղթակցութիւններ կը լինին Պապերու կողմէն, բայց Լեւոն չանսար բնաւ, և սակաւ ժամանակէն զկնի կը վախճանի, որուն տեղ Թագ կը կապէ իւր Զաբէլ դուստրն, Յովհաննէս կաթողիկոսի և իշխանաց հաւանութեամբ։ Շա-չանցնիր կը վախճանի նոյնպէս և կաթողիկոսն, 18ամեայ կաթողիկոսութենէն զկնի, և կը յաջորդէ Կոստանդին Ա Բարձրբերդցի։

Այս կաթողիկոսութեան ժամանակամիջոցին Անկիւթիական և Հոնական բարբա-

ռոմներն, կամ, աւելի պարզ ասել, Թաթա-
րական բռնաւորներն՝ Չինգիզխան, Ջալա-
լէդդին, Չարմաղան, Բաչու և այլք արիւ-
նով կը լուան Ասիական երկիրները, մանա-
ւանդ Արուանից աշխարհն, Վրաստան և
Հայաստան, և ամեն բարբարոսական կոտո-
րածներով և ապստամբութեամբ կը սասա-
նեցնեն քրիստոնեաները, և երբեմն եւս
խոշտանգելով կը ստիպեն իրենց հաւատն
ուրանալ։ Զաբէլի նոր ամուսին՝ Հեթում
Թագաւորն և Կոստանդին կաթողիկոսն ոչ
միայն անձեռնհաս կը լինին օգնել Արեւե-
լեան Հայերուն, այլ հազիւ հազ Կիլիկիոյ
մէջ յուզուած պապական և յունական խըն-
դիրներով կը զբաղին, և եկեղեցական ներ-
քին բարեկարգութեանը հսկելու համար
(1243) ժողով կը գումարեն Սիս քաղաքի մէջ
և 25 կանոններ կը հաստատեն, մեծ մասամբ
նախնական կանոններէն առնլով, որոնք գըլ-
խաւորապէս եկեղեցականաց պարտուց կը
վերաբերին և ժողովրդի հետ ունեցած յա-
րաբերութեանց։

Այս 25 կանոնաց վերջինն՝ վերջին Օծ-
ման կը վերաբերէր, զոր Հռոմայ Պապը
խնդրած էր կաթողիկոսէն իւղով կատարել,
սակայն այս պապական առաջարկութիւնն
ամենեւին չընդունուեցաւ Ազգի կողմէն,
որովհետեւ ընդդէմ էր Հայաստանեայց Ս-

կեղեցւոյ սովորութեան, որ միայն աղօթքով կը կատարէ ։

Այս կանոնները կ՚առնու Վարդան Բարձրբերդցի վարդապետն և կը տանի Հայաստանի զանազան կողմերն, իբրեւ այցելու, ունենալով իւր հետ կաթողիկոսի կողմէն շրջաբերական թուղթ առաջնորդներուն և իշխաններուն գրուած, որով կ՚ուրախանան ամենքն՝ և այսպէս Վարդան, յետ այցելութեան, դառնալով 'ի Հռոմկլայ, կ՚ուղեւորի անտի վերստին իւր մենարանն՝ Անդրէի վանքն և կը պարապի ընթերցասիրելով և ուսուցանելով ։

Առաջ ասացինք արդէն, որ լատինական յարաբերութիւններն միանգամ սկսելով անդադար պիտի վրդովէին Հայաստանեայց Եկեղեցւոյ վարդապետական անդորրութիւնը, և այսպէս իսկ կատարեցաւ ։ Վասն զի, Կոստանդնի կաթողիկոսութեան ժամանակ 'ի վեր երեւեցաւ Լատինաց կողմէն Հոգւոյն Սրբոյ բղխման խնդիրն, և Պապերն սկսան պահանջել Հայոց վարդապետական դաւանութիւնը այս մասին ։ Սակայն որչափ որ լատինական պահանջումներն յարատեւեցան և Հայոց վարդապետներէն ոմանք լատինական դարձուածներով կամեցան վարդապետել, այնու ամենայնիւ Հոգւոյն Սըրբոյ բղխումն աստուածային անհաս խոր-

հրդեհներէն մին լինելով անլուծանելի մնաց , և Հայք իրենց նախնական կիրառութիւնը պահպանեցին , Հոգւոյն Սրբոյ բղխումն ՚ի Հօրէ ասելով և ոչ ըստ Լատինաց և յՈրդւոյ։

Քրիստոնէական կրօնի վարդապետութեան մէջ ամենէն վնասակար ընթացքն է բառերու վէճ յարուցանելն ։ Վասն զի , բառերու վէճն տեսակ մի ժանտախտ է , որ քրիստոնէից միտքը կը ճարակէ և սէրը կը ցամաքեցնէ սրտերէն ։ Եկեղեցի մի , որ յաճախ բառական վէճեր կը յարուցանէ , կը նշանակէ որ չուզեր Քրիստոնէութեան հոգին ճանաչել , որ սէր կը պահանջէ հաւատացեալներէն և ոչ տարապարտ շատախօսութիւն ։ Վասն զի , բառական վէճերն ամենեւին վախճան չունին , և որչափ յուզուին այնչափ պիտի յարատեւեն , ինչպէս և մինչեւ ցայսօր կը տեւեն Յունաց կողմէն՝ Քրիստոսի բնութեան վէճն և Լատինաց կողմէն՝ Հոգւոյն Սրբոյն բղխման , և երկար դարերով՝ մեծաքանակ էջեր գրուած են մատենագրութեանց մէջ ։ Բայց մեր բաղձանքէն հեռու լինելով՝ այս տեսակ նիւթոց վրայ երկար խօսիլը , դարձեալ մեր պատմութիւնը շարունակենք ։

Կոստանդին կաթողիկոսն , Լատինաց նորարծարծ վէճերուն մէջ բառականին տարուբերելով և Եգիպտոսի Սուլթաններէն

Կիլիկիային հասած հարստահարութեանց եւ ականատես լինելով, 47 ամեայ կաթողիկոսութենէն զկնի կը վախճանի խորին ծերութեան մէջ։

---

## Է.

Վիճակ Եկեղեցւոյն Հայաստանեայց. Յակոբ Ա. Տարոնացի. Կոստանդին Բ Սսեցի. Ստեփաննոս Դ. Գրիգոր Է Անաւարզեցի. Կոստանդին Գ Լամբրոնացի։

ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ վիճակը խիստ տխուր կերպարանք կ'առնու վերոգրեալ կաթողիկոսաց հովուապետութեան ժամանակ։ Արտաքին հարստահարութիւնները կը սաստկանան Արեւելից մէջ Թաթարական խաներէն եւ Կիլիկիոյ մէջ Եգիպտական Սուլթաններէն. բայց ոչ պակաս կը սաստկանան ընդ նմին եւ եկեղեցական ներքին գժտութիւններն ու աղաւաղութիւններն։

Կոստանդին Բարձրբերդցւոյ մահէն զկնի՝ նոր կաթողիկոսի ընտրութիւնն բաւական կը յետաձգի եւ 'ի վերջոյ (1268) կ'ընտրուի Յակոբ Ա. Տարոնացի կամ Կլայեցի, որ Ներսէս Շնորհալւոյ Ընդհանրական Թղթերն օրինակել տալով՝ կը ղրկէ իւր ժամանակի եպիսկոպոսներուն, առաջնորդներուն, վարդապետա-

Ներսէն և այլն, պատուիրելով որ ըստ այնմ վարեն իրենց կեանքը և հսկեն հօտին վրայ: Իսկ ինքն Եկեղեցւոյ ներքին բարեկարգութեանը կըզբաղի, որոյ կաթողիկոսութեան ժամանակ կը յայտնուին Մեծին Ներսիսի նշխարքն, Թիլն աւանի մէջ, ինչպէս կը յիշատակուի Եզնկացի Յովհան վարդապետի յօրինած Որ զլոյս անճառ ծնընդեան շարականին մէջ:

Յակոբ Ա կը վախճանի և Նոր կաթողիկոսի ընտրութեան համար խռովութիւններ կը ծագին: Լևոն Թագաւորն կ'աշխատի կաթողիկոս ընտրել տալ Գրիգոր Անաւարզեցին. բայց վանականք և առաջնորդք կը դիմադրեն, ասելով թէ՝ Հոռոմ է, նաև դիւրահաւան, որ կարող է առաւել աղէտից պատճառ դառնալ քան թէ անդորրութեան: Ասոնք կը ցանկան Սիւնեաց Տարսայիճ իշխանի որդի Ստեփաննոս քահանայն ընտրել, որ այն ժամանակ եկած էր 'ի Կիլիկիա եպիսկոպոս ձեռնադրուելու՝ Սիւնեաց աշխարհին վրայ, սակայն սորա ընտրութեանն եւս շատերն անհաւան կը գտնուին: Ի վերջոյ կ'ընտրուի Կոստանդին Բ. Կատուկեցի (1287), որ և Պրօնագործ կը կոչուի մականուամբ: Սա եպիսկոպոս կը ձեռնադրէ Ստեփաննոս Օրբէլեան (ըստ ոմանց Աւագէլեան) որդի Տարսայիճ իշխանին և կը դարձնէ Սիւնեաց աշխարհին, որ յետոյ անմկուն ախոյեան կը

հանդիսանայ ընդդէմ քաղկեդոնականութեան: Սակայն, սակաւ ժամանակէն զկնի սաստիկ գժտութիւն կը ծագի Հեթում թագաւորի և Կոստանդին կաթողիկոսի մէջ, որոյ պատճառաւ և կաթողիկոսն Աթոռէն կը զրկուի ու կ'աքսորուի և նորա տեղ կաթոռակալէ Ստեփաննոս Դ., Հռոմկլայեցի (1290): Սա, Հեթում թագաւորի հրաւիրանօք Հռոմկլայէն Սիս կը կոչուի, քանի որում սաստիկ վէճեր սկսած էին յուզել Յունաց և Հայոց մէջ Զատկի տօնի կատարման համար, և կ'որոշուի Զատիկը կամ Օրապատիկն Յունաց հետ տօնել. սակայն այս որոշումն ամենեւին ընդունելութիւն չը գտներ Ազգի կողմէն, և դարձեալ կը շարունակեն իրենց նախնական սովորութիւնն:

Ստեփաննոսի կաթողիկոսութեան ժամանակ Եգիպտոսի Աշրաֆ բռնաւորն արիւնհեղութեամբ կը թալթաւէ բոլոր Կիլիկիա, Հռոմկլայի ամրոցը կը գրաւէ աւերմամբ, կաթողիկոսարանն կը կողոպտէ և եկեղեցւոյ սպասները կը յափշտակէ, ընդ որս և Լուսաւորչի աջն (բայց յետոյ կը դարձընէ). կաթողիկոսն կը գերուի Եգիպտոս միւս գերելոց հետ, և այն տեղ դառն ցաւօք պանդխտութեան մէջ կը վախճանի. Գամեայ կաթողիկոսութենէն զկնի:

Ստեփաննոսէն յետոյ կ'ընտրուի Գրիգոր

Նուարդեցի և կաթողիկոսական աթոռն, կը փոխադրուի 'ի Սիս, վասն զի Հռոմկլայն արդէն աւերուած էր։ Գրիգոր՝ Յայսմաւուրքի ընթերցուածները կը սահմանէ բաժանորդ ամսոյ և կը յաւելու շատ բաներ յունարէնէ և լատիներէնէ թարգմանելով։ Կը հետամտի քանի մի ծէսեր, ըստ յունական և լատինական սովորութեան, յարմարել, և իւրն առանձին տօնացոյց կը յերիւրէ։ Սակայն այս փոփոխութիւններն ամենեւին չեն ընդունուիր, այնպէս որ երբ կը լսեն Արեւելեան վարդապետներն Գրիգորի կաթողիկոսանալն և գաղտնի ջանքերն՝ սաստիկ կը զայրանային, ըստ որում առաջուց արդէն հռոմէական կը կոչէին, ժողով կը գումարեն Փոքր Սիւնեաց մէջ և ստորագրութեամբ առաջնորդ եպիսկոպոսաց և վարդապետաց սաստիկ յանդիմանութեան թուղթ կը գրեն, որով երկարօրէն ազգային նախնական ժողովներն թուարկելէն և յունական ու լատինական միակերպութեան միտումներն բացատրելէն զկնի՝ կը սպառնան ամենեւին կաթողիկոս չը ճանաչել զԳրիգոր, եթէ համարձակի նախնական սովորութիւններն աղաւաղել։

Գրիգոր առ ժամանակ մի կը լռէ, սպասելով իւր դէմ բորբոքուած յուզմունքէն, և ապա միջոց գտնելով՝ վերստին

թուղթ կը գրէ Արեւելեան քանի մը վարդապետաց իր առաջին մտադրութիւնն յառաջ տանելու համար. սակայն, այս անգամ դիմադրութիւնն եւս աւելի կը սաստկանայ։ Ուստի Գրիգոր յամառելով իր մտադրութեան վրայ թուղթ կը գրէ Հեթում թագաւորին՝ օգնել իր այն ձեռնարկութիւնը ՚ի կատար հասուցանելու համար եւ ժողով գումարել. իսկ ինքն դաւանութեան գիր պատրաստելով կը յանձնէ Հեթումի որդւոյն՝ Լեւոն թագաւորին, բայց իր ազգավնաս խորհրդոց կատարումը չը տեսնելով՝ կը վախճանի (1306), իր 14ամեայ կաթողիկոսութեամբ խռովութիւն միայն յուզելով Ազգի մէջ։

Լեւոն, ցանկալով Գրիգորի մտադրութիւններն յառաջ վարել, ժողով կը գումարէ Սիս արքայանիստ քաղաքին մէջ, ոչ միայն նոր կաթողիկոսի ընտրութեան համար, այլ եւ Գրիգորի դաւանաբանական թուղթը կամ նամակը կարդալու եւ քննադատելու համար։ Այս ժողովոյն մէջ, ուր ներկայ կը գտնուէին բաւականին եկեղեցականք եւ նոյն ինքն Լեւոն, իր հայրն Հեթում եւ այլ իշխանք, վերստին կաթողիկոս կ՚ընտրուի Կոստանդին Բ. Պրօնագործ, որ առաջ մերժուած էր Աթոռէն եւ շատերն, գուցէ յերկիւղէ թագաւորին, համաձայնութիւն կը տան ժողո-

փոխան որոշումներուն. բայց երբ կրակին գործածուիլ, սաստիկ խռովութիւն կը ծագի ժողովրդեան մէջ. ուստի և ոչ միայն անգործածելի կը մնան, այլ և շատերն կը թըշնամանան կաթողիկոսի, Լեւոնի և Հեթումի հետ (որ Թագաւորահայր կը կոչուէր, թէև Լեւոն իւր եղբօր որդին էր,) թէ ինչու նոյն կանոններն Սսոյ մէջ կը պահպանեն. և այսպէս զանազան ամբաստանութեամբ կը մատնեն Թաթարաց Պիւրղուխանին, որ խաբէութեամբ իւր մօտ կոչելով զՀեթում և զԼեւոն և այլ իշխաններ, բոլորն միասին սպաննել կը տայ: Այսպիսի չարիքներ կը ծնանին ահա՛ ծիսափոխական հետամտութիւններէն, ինչ տեղ որ Ազգին համաձայնութիւնը չը կայ:

Լեւոն Դին կը յաջորդէ իւր Օշին եղբայրն, և որովհետեւ աղէտից պատճառն եկեղեցական խնդիրներն էին, եպիսկոպոսներն ու վարդապետներն 'ի ժողով կը հրաւիրէ, բայց նոքա կը մերժեն նոր Թագաւորի հրամանը: Սակայն մեծ բազմութիւն քահանայից, աբեղայից, վանականաց, ընդնմին բազմաթիւ արք և կանայք ինքնին Սիս կը ժողովին և ահագին աղմուկ յարուցանելով իսպառ կը նանրացընեն Սսական ժողովին որոշումներն, որ Գրիգոր Անաւարզեցւոյն դաւանագրոյն շնորհիւ յուզուած էր: Օ

օգնութեան, յորդորական թուղթ միայն կը ստանայ պապէն, որոյ նպատակը կը լինի լատինական ծէսերը յառաջ վարել Հայոց ժողովրդի մէջ. և այն 'ի զուր աշխատանք։

Օշինին կը յաջորդէ Լեւոն Ե, որոյ թագաւորութեան ժամանակ Եգիպտոսի Սուլթաններն լսելով որ Հայք ընտանութիւն ունին Լատինաց հետ և շարունակ պատգամաւորութիւններ և թղթակցութիւններ կը լինին, աւելի կը զայրանան և Թաթարներու ու Թիւրքմէններու հետ միանալով՝ Կիլիկիա կ'ասպատակեն, անհնարին տառապանքներ հասուցանելով քրիստոնէից։

Այս տառապանաց լուրը պապին հասնելով՝ կը ջանայ վերստին յորդորել Եւրոպական թագաւորներն, որ Երեւելք արշաւեն և քրիստոնէից օգնեն, բայց ապարդիւն կը մնայ պապական յորդորը։ Այն ժամանակ Կոստանդին պրօնագործ կաթողիկոսն կը վախճանի և կը յաջորդէ Կոստանդին Գ. Լամբրոնացի (1323), որ անձամբ Սուլթանին կ'երթայ և խաղաղութեան դաշն հաստատելով՝ առ ժամանակ մի պատճառ կը դառնայ աղէտից դադարման։ Սակայն կարճ ժամանակէն զկնի այս դաշն կը լուծուի լատինական յարաբերութեանց առթիւ և եգիպտական աւերմունքներն կը շարունակին, ինչպէս վերջը պիտի տեսնենք։

Digitized by Google

## Ջ.

Յակոբ Բ Սսեցի. — Սկզբնաւորութիւն Ունիթոռութեան. — Աղմուկ կրօնական. — Մխիթար Քռնեցի. Մեսրոպ Արտազեցի. Կոստանդին Դ. Պօղոս Ա. Թէոդորոս Բ.

ԿՈՍՏԱՆԴԻՆ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ մահէն զկնի կաթողիկոսական Աթոռն կը բարձրանայ Յակոբ Բ Սսեցի, քեռորդի Գրիգոր Անաւարզեցւոյ, (1327), երբ արդէն ներքուստ և արտաքուստ արհաւիրները կը տիրէին։ Արհաւիրքներ, որոնք ոչ միայն Հայոց քաղաքական ոյժը կըսպառեն, այլ և բարոյականըն սաստիկ կը տկարացնեն կրօնական երկպառակութիւններով։

Յակոբայ կաթողիկոսութենէն մօտ տասն տարի առաջ Բարդուղիմէոս լատին եպիսկոպոս, Յովհաննէս պապի հրամանաւ Ատըրպատականի կողմերը գալով, կըսկսի քարոզել և վարպետութեամբ եկամուտներ պատրաստել լատինականութեան համար։ Քռնեցի Յովհաննէս հայ վարդապետն, որ աշակերտ էր Նչեցի Եսայի վարդապետին, կ՚երթայ կը յարի Բարդուղիմէոսին և լատիներէն ուսանելով կըսկսին զանազան գըրքեր թարգմանել Հայաստանի մէջ տարածելու համար։ Յետ ժամանակաց դառնա-

րով Յովհաննէս՝ Բունի աւանը՝ կը գրէ իւր աշակերտակիցներուն, որ ժողուին և Բարդուղիմէոսի հետ խօսին ու խորհին կրօնական և ծիսական վարդապետութեանց վրայ։ Աշակերտակիցներէն ոմանք կը ժողուին և միաբանութեան ուխտիւ կ'ուխտեն ազգային աւանդութիւններն իսպառ թողուլ և լատինական պաշտամունքներով վարիլ։ Երբ կըսկսին իրենց նենգ ուխտը կատարելու աշխատիլ և ժողովրդին ևս ծիսափոխութիւն քարոզել, գժտութիւններն ու աղմուկները կը սաստկանան։ Եսայի վարդապետն յանդիմանական գիր կը գրէ Բունեցւոյն և իւր համախոհներուն, որ թողուն իրենց ազգավնաս ընթացքը, սակայն նոքա չեն անսար և կը շարունակեն իրենց մտադրութիւնը։ Հայոց առաջնորդներն ու վարդապետները զայրանալով հալածական կ'առնեն Բունեցւոց կարգափոխներն և ոմանք կը կալանաւորին Լեւոն թագաւորի հրամանաւ։ Հալածեալ ծիսափոխներն Լեւոնի վրայ ամբաստանութիւններ կը գրեն պապին, ներկայացընելով իբրեւ խափանիչ ուղղափառութեան, եւ այս պատճառաւ Պապը կը մերժէ իւր խոստումը, որով դրամական օգնութիւն խոստացած էր Լեւոնին և գիր կը գրէ Յակոբ կաթողիկոսին՝ չը հալածել Բունեցւոց դասախումբը, և կաթո-

զինուոր կը ջանայ կերպով մը խաղաղել. բայց չը յաջողիր ։ Բարթուղիմէոս կը մեռնի եւ Քռնեցին 'ի Հռոմ կ'ապաստանի եւ Յովհաննէս պապէն օժանդակութիւն գտնելով ու հրաման առնելով կը դառնայ եւ կը հաստատէ Հայաստանի մէջ Դոմինիկեան Միաբարոյ կարգը, որ լատիներէն Ունիթոռ կը կոչուին ։ Պապէն վաւերացած այս Ունիթոռական կարգաւորները կրօնքին զանազան մասնքեր չինել, լատինական գրքեր թարգմանել եւ իբր թէ ժողովուրդն 'ի միութեան յուղղափառութիւն դարձնելու ջանալ ։ Իսկ որ Ունիթոռութեան կը յարի, կը ստիպուի նոր մկրտուիլ ու ձեռնադրուիլ եւ Դոմինիկեան կարգի լատինական զգեստը հագնիլ ։

Ունիթոռութեան գլխաւոր արբանեակներ կը գտնուին Ուրմիոյ Ներսէս եպիսկոպոսըն Պալըէնց եւ Կարնոյ եպիսկոպոսն Սիմէոն Պէկ, որք կը սկսին Հայոց մկրտութիւնն ու պատարագը երկբայելի քարոզել եւ բազմանիքներու, տուներու եւ այգեստաններու մէջ շատերը ծածուկ մկրտել, որովհետեւ սաստիկ երկիւղ կը կրէին յայտնապէս իրենց ցնորքները գործ դնելու ։ Վասն զի Ազգըն իրենց դէմ էր ։ Յակոբ կաթողիկոս եւ Լեւոն թագաւորն իշխանական սաստիւ Ունիթոռներէն ոմանք կ'աքսորեն, ոմանց պատիժ կը սպառնան եւ ոմանք կը կալանաւորեն,

Digitized by Google

որոնց հետ Սիմէոն և Ներսէս եպիսկոպոսներն, որ կարգէ և եկեղեցական հաղոր-դութենէ ևս կը լուծուին։ Սակայն կեղ-ծաւորութեամբ բանտարկութենէ վերստին ազատուելով՝ Ներսէս Կանչոյ բերդին մէջ կ'ամրանայ և զկաթողիկոսն ամբաստանելով խռովութիւն կը յուզէ և հազիւ հազ քար-կոծուելէ զերծանելով հեռաւոր տեղեր կ'ապաստանի։ Կաթողիկոսն գիր կը գրէ պա-պին Անիրաւութիւնը զսպել և Եկեղեցւոյ խաղաղութիւնը ապահովել. բայց Անիրաւ-ական խումբը կը յաջողի Թագաւորն ու կաթողիկոսը ամբաստանել գրով պապին առջեւ և այսպէս իւր դիրքը ապահովել։

Այն միջոցին եգիպտական բռնաւորներն վերստին կ'ասպատակեն Կիլիկիա և Լեւոնէն երդումն կը պահանջեն, որ ամենեւին չը թղթակցի պապի և կամ Արեւմտեան Թա-գաւորաց հետ։ Լեւոն կ'երդնու և երկիրը փոքր ինչ կը խաղաղի. բայց Բենեդիկտոս պապն, ընդդէմ խղճի, իրաւունք կը հա-մարի կոնդակաւ Լեւոնի երդումը լուծել և ստիպել, որ իւր ընտանութիւնը չը պակ-սեցնէ Արեւմուտքէն։ Լեւոն կուրօրէն կը հպատակի և կը դրժէ իւր երդմանը և ահա Եգիպտացիք զայրացին կատաղութեամբ Կի-լիկիա Թափուելով՝ բերդերն անգամ կը կոր-ծանեն։ Կաթողիկոսն Յակոբ կը գժկամակի

Լեւոնի արարմանց դէմ և Լեւոն զայրա-
նալով՝ աթոռէ կ'ընկենու զկաթողիկոսն և
տեղը կը հաստատէ Մխիթար Գռնեցին։

Ներսէս Պալենց խօսքն կը դնէ Մխի-
թար կաթողիկոսին, պաշտպանութիւն գըրա-
նելու յուսով. բայց չընդունուիր. ուստի
և զայրացած կը դիմէ Բենեդիկտոս ԺԲ Պա-
պին, որ Գաղղիոյ Աւինիոն քաղաքի մէջ էր,
և կը մատուցանէ գրքոյկ մի. Ունիթոռա-
կան խումբի հնարագիտութեամբ յերիւր-
ուած և 117 գլխաւոր յօդուածներէ բաղ-
կացած, որոց մեծ մասն ստայօդ զրպարտու-
թիւններ էին Հայոց դաւանութեան վրայ.
բայց յիշուած էր նմանապէս որ Հայոց կա-
թողիկոսն ամենեւին պապական գլխաւորու-
թիւնը չընդունիր և իւր ընտանութիւնը
Լատինաց հետ միայն արտաքուստ և առ-
երեսս է։ Պապն իսկոյն սոյն գրքոյկը Կիլիկիա
կը ղրկէ և թուղթ կը գրէ Լեւոնին ու Կա-
թողիկոսին որ ժողով գումարեն և պատաս-
խանեն գրքոյկի պարունակութեանը։ Տակա-
ւին ժողովը չգումարուած՝ Լեւոն կը վախ-
ճանի, իսկ Մխիթար կաթողիկոսն նորընտիր
Կոստանդին թագաւորի հետ (որ ՚ի հօրէ
Լատին էր) եպիսկոպոսներ և վարդապետ-
ներ կը հրաւիրէ ՚ի Սիս, ուր քննութեան
կ'առնուի Ունիթոռական գրքոյկն, կը գտնուի
պատասխանն և պատգամաւորաց ձեռքով

կը գրկուի Բենեդիկտոս պապին, որ արդէն վախճանած էր. ուստի իր յաջորդը Կղեմէս Զ կ'ընդունի պատգամաւորներն ու պատասխանագրութիւնը և սաստիկ կ'ուրախանայ, ըստ որում, Անխթռայ ինքնահը-նար զրպարտութեանց հերքումէն զատ, պատասխանագրութեան մէջ կային քանի մի շողոքորթութիւններ ևս. որք խիստ հաճոյական էին պապին և որոց համար գոհունակութեան կոնդակներ կը գրէ Հայոց կաթողիկոսին և թագաւորին:

Կոստանդին թագաւորն յայտնապէս կը ստիպէ Հայերն, որ լատինական ծիսիւ վարին, և այս պատճառաւ կը սպանուի զօրականներէն և կը յաջորդէ իր եղբայրն Գուիտոն, որ նմանապէս կը սպանուի իր նախորդին ընթացքով վարուելու համար և կը յաջորդէ Կոստանդին ոմն 'ի հօրէ հայ, որ և կը սկսի մտերմաբար թղթակցիլ պապին հետ, Երեւմտեան թագաւորաց օգնութեանը ապաւինելով: Եգիպտացւոց Եմիրան այս լատինական մտերմութեան առթիւ Կիլիկիա կը յարձակի քրիստոնէական կրօնքը սպառսպուռ ջնջելու, որով և սաստիկ պատերազմներ կրակուին: Կոստանդին օգնութիւն կը խնդրէ Երեւմուտքէն և կը խոստանայ յետ յաղթութեան, բոլոր Հայերն լատինացնել ծիսիւք և արարողութեամբք:

Մխիթար եւս գրութեամբ կը խնդրէ պապէն դադարեցնել կրօնական հարցափորձներըն ու պահանջմունքներն, զորս կը յուզէին Լատին կրօնաւորներն, եւ իւր հայրապետական իշխանութեանը արգելք կը դառնային։ Պապը կաթողիկոսի թուղթը, (որուն մէջ պապութեան հաճոյական կէտեր ալ կային) կը ներկայացնէ Ներսէս Պալիենցին եւ միւս Ունիթոռներուն, ատուգանելու նպատակաւ։ Բայց նոքա կը հաւատեն որ Մխիթարայ գրութիւնը լոկ քաղաքավարական է. իսկ իրօք ոչ պապական գլխաւորութիւն կը ճանաչէ նա եւ ոչ Կիլիկիոյ ղրկուած պապական դեսպաններուն կ'անսայ։ Պապը կը վրդովի եւ գրաւոր երդումն կը պահանջէ կաթողիկոսէն. բայց տակաւին պատասխան չընդունած կը վախճանի։ Կաթողիկոսն գրաւոր երդումն չըտար, այլ միայն Յակոբ Սսեցին (Երբեմն կաթողիկոս) ինքնին Գաղղիա երթալով կերպով մը կը հանէ Ինոկենտիոս Զ նոր Պապին սիրտը եւ դառնալով ի Կիլիկիա՝ Մխիթարայ մահէն զկնի վերստին կաթողիկոս կ'ընտրուի (1355), եւ 4 տարիէն յետոյ վախճանելով՝ աթոռը կը յաջորդէ Մեսրոպ Արտազեցին, Թադէի վանուց վանահայրն։

Կրօնական վէճերն անընդհատ կը շարունակէին, մանաւանդ Ունիթոռաց շնորհիւ, եւ հայ եկեղեցականներէն ոմանք սկսած էին

Ջրախառն պատարագել։ Ուստի նորընտիր կաթողիկոսն Ժողով կը գումարէ Սիս մէջ, ուր և Ժողովականաց հաւանութեամբ պատուէր կը գրուի ամէն տեղ, որ անփոփոխ պահպանեն Հայաստանեայց Եկեղեցւոյ առաքելական սովորութիւնն, այն է անապակ գինւով պատարագելն. Մեսրոպի կաթողիկոսութեան չորրորդ տարւոյն մէջ Կոստանդին թագաւորն կը վախճանի և տեղը կ'ընտրուի Լեւոն Զ Լուսինեան. Պուխտոնի ազգականութենէն, որոյ թագաւորութեան ժամանակամիջոցը Ռուբինեանց իշխանութեան վերջին ձգնաժամը կը կազմէ և արտաքին ու ներքին աղէտից յորդութեան սարսափելի վայրկեանը. Մէկ կողմէն ազգային քաղաքական կացութիւնը կը քայքայի Եգիպտոսի և Բաղդատի Սուլթանաց արիւնահեղ յարձակումներովը և միւս կողմէն կաթողիկոսական իշխանութիւնն արհաւրաց մէջ կը տատանի։ Լեւոն, քանի մի պատերազմներ մղելէն ըզկնի, կը կալանաւորուի և քանի մի կաթողիկոսունք, որոնք Մեսրոպին կը յաջորդեն, ինչպէս են Կոստանդին Դ, Պօղոս Ա և Թէոդորոս Բ, Թափառական կը շրջին և հազիւ-հազ ձեռնադրութեան և միւռոնի օրհնութեան համար կ'արժանանան կաթողիկոսարանի երեսը տեսնել. որովհետեւ Կիլիկիա արհաւրանաց ասպարէզ կը դառնայ։ Լեւոն Թա-

դաւորն հայրենաւորութենէ ազատուելով և Երուսաղէմէն Եւրոպա անցնելով՝ կը թափառի Սպանիոյ, Իտալիոյ, Անգլիոյ եւ Գաղղիոյ մէջ, օգնութիւն գտնելու և իւր իշխանութիւնը կանգնելու յուսով. բայց չըհասնելով իւր նպատակին՝ կը վախճանի (1393) Փարիզի մէջ և կը թաղուի Կելեստինեանց վանքի մէջ, որուն հետ կը թաղուի նմանապէս և Ռուբինեանց թագաւորական Հարստութիւնը ։

Թէոդորոս կաթողիկոս եւս կը կալանաւորուի Մելիք Օմար բռնաւորէն և կը սպանուի (1395) 18ամեայ կաթողիկոսութենէն զկնի ։

Այսպէս անա Կիլիկիոյ վերջին թագաւորներն և խեղճ կաթողիկոսներն ո՛չ միայն չեն շահիր լատինական ընտանութենէն և յարաբերութենէն, այլ մի կողմէն եգիպտական Սուլթանաց զայրոյթը առաւել գրգռուելով՝ պատճառ կը դառնան Ռուբինեանց թագաւորութեան բարձման, և միւս կողմէն Եկեղեցւոյ ներքին խաղաղութիւնը կը վրդովեն տարապարտ ժողովներով, ծիսական վէճերով և կրօնական երկպառակութիւններով ։ Թողունք ասել այն աղաւաղ վարդապետութիւններն ու դաւանաբանական խընդիրներն, որոնք լատինացեալ Ունիթորաց շնորհիւ կը յուզուին Հայաստանի մէջ բա-

նիւ և գրով և Եկեղեցւոյ նախկին անարա-տութիւնն ու պարզութիւնը պղտորելու կը ձգտին ։

---

## Է.

Դարձեալ մի քանի խօսք Ունիթոռաց վրայ.— Լանկ-թամուրեան արշաւանքները.— Դժնդակութիւնք.— Կաթողիկոսունք.— Կարապետ Ա Կեղեցի. Դաւիթ Դ. Կարապետ Բ. Յակոբ Բ. Գրիգոր Ը Խանձողատ. Պօղոս Բ Արաքանեցի. Կոստանդին Ե Վահկացի. Յովսէփ Գ Սսեցի. Գրիգոր Թ Մուսաբեկեան ։

(1396—1440).

ՈՒՆԻԹՈՌԱՑ գլխաւոր կեդրոնատեղին էր Սիւնեաց աշխարհի Ջահուկ գաւառն, և այս պատճառաւ կը կոչուին նաև Ջահուկեցիք կամ Ջահկեցիք. իսկ իրենց քարոզութեան վայրերն էին գլխաւորապէս Ջահուկ, Նախիջեւան (ուր կը նստէր իրենց առաջնորդ ե-պիսկոպոսն) Երնջակ և Գողթան գաւառ-ներն, և Թաւրիզու, Մարաղու և Սուլթա-նիոյ կողմերը ։

Այս Ունիթոռական վրդովման մէջոցին, որ երբեմն կը սաստկանար զանազան պարա-գայութեամբ և երբեմն կը մեղմանար, կա-յին Հայոց մէջ եւս նշանաւոր վարդապետ-

ներ, որոնք քանիցս և գրով ընդդէմ կը գրէին Ունիթոռութեան։ Այսպիսի վարդապետաց կարգէն էր Յովհաննէս Որոտնեցին, մականուամբ Կախիկ, Վանանդ գեղջէն, Իշխանի որդին, որ կանխապէս աշակերտելով Նչեցի Եսայի վարդապետին, ինքն եւս Տաթեւու վանուց մէջ կ'ուսուցանէր վարդապետական ուսմունքներ։ Սորա աշակերտներէն էին Մաղաքիա վարդապետ և Գրիգոր Տաթեւացի, որոց առաջինն իշխանաց և մեծամեծաց ձեռքով շատ Ունիթոռներ կը պատուհասէ և ինքն թունաւորուելով Ունիթոռներէն կը մեռնի, ինչպէս կը պատմէ իւր աշակերտն Թովմա Մեծոփեցի։ Իսկ երկրորդն նախ ուսուցիչ կը կարգուի Ապրակունեաց վանքին մէջ և ապա իւր վարժապետի մահէն զկնի կը փոխադրուի Տաթեւու վանքը, որոյ համար և կը կոչուի Տաթեւացի, և այս տեղ ուսուցչութեան հետ միասին անպարտելի ախոյեան կը հանդիսանայ Ունիթոռութեան դէմ, մանաւանդ գրաւոր երկասիրութեամբք, որոց վրայ պիտի խօսինք ներկայ Շրջանի մատենագրական պատմութեան մէջ, ինչպէս և պիտի խօսինք սորա ժամանակաց վրայ։

Մինչդեռ մի կողմէն Ունիթոռութիւնը կը վրդովէր Հայաստանեայց Եկեղեցւոյ ներքին խաղաղութիւնը, միւս կողմէն եւս Սու-

քինեան թագաւորութեան բարձման միջոցէն ՚ի վեր Լանկթամուրեան արիւնոտ սուրը սկսած էր քակել Հայաստանի զաւակները ։ Քաղաքներ և գիւղեր սակաւ ժամանակի մէջ կը փոշիանային , ընտանիքն ու անապատները փառաւորանքի ժողովրդեան ապաստանարան դարձած էին , ինչպէս էր ՚ի ժամանակս Մարզպանաց ։ Իսկ կոտորածներուն , հրդեհուածներուն , ողջ ողջ թաղուածներուն եւ սովամահներուն թիւ չը կար ․ վասն զի թէ Լանկթամուրի և թէ իւր յաջորդաց ժամանակ Հայաստանի Արեւելքէն մինչեւ Արեւմուտք , Վանէն մինչեւ Սեբաստիա համարեա թէ տեղ չը մնաց , որ աւերման և արիւնհեղութեան չը հանդիպի ։ Թողունք ասել , որ շատերը գերութեան և շատերն եւս ինքնին գաղթեցան զանազան երկիրներ , որոց մէջ բազմաթիւ էին մանաւանդ Պոլիս գաղթողներն ։ Թէպէտ և Լանկթամուրեանց արշաւանաց միջոցին գոյցես համայն Հայոց ազգի կեանքը տեւական մի նահատակութիւն էր , ինչպէս և կ՚ասէ յիշատակարան մի ․ «Նշանի էին նահատակեալքն , մինչեւ նոքա միայն գիտել զթիւ բազմութեան նոցա , որ սպանեցան զնոսա » . բայց ժամանակակից պատմիչներն ակամայ յանուանէ եւս անձինքներ կը թուեն , որք մարտիրոսացան իրենց հա-

Digitized by Google

ւաւորք չուբանդարուն համար, և որոց մէջ կա-յին եպիսկոպոսներ, կաթողիկոսն Էջմիածնայ Զաքարիա, վարդապետներ, քահանաներ, դեռ անհասակ պատանիներ ու օրիորդներ, և ուր հասարակ արք և կանայք։ Բայց մի առ մի պատկերացնել այս նահատակութեանց դէպքերը՝ շատ երկար կը լինի։ Ուստի հար-ցաւէրներուն թողլով կարգաւ ուր հարկն է, դառնանք դարձեալ մեր պատմութեան թելը շարունակելու։

Թէոդորոս Բին կը յաջորդեն Կարապետ Ա. Բողիկ մականուանեալ (1396), Դաւիթ Գ. Կարապետ Բ (1402) և Յակոբ Գ (1409), որ կաթողիկոսական աթոռն կը դրաւէ առանց հաւանութեան Սսոյ ոմանց միաբանից և յատկապէս պաշտպանողութեամբ Ակլեկեց ամիրային։

Յակոբ Գի կաթողիկոսութեան ժամանակ Վասպուրականի առաջնորդներն ու իշխան-ներն միաբանելով յիշխանութենէ կ՚ընկեցնեն Էջմիածնայ կաթողիկոսն և կը գրեն 'ի Կի-լիկիա, որ իրենք համ և հաւան են Սսոյ կա-թողիկոսին հպատակիլ. ուստի և Յակոբ օրհնութեան գիր կը գրէ յիշեալ իշխաննե-րուն և առաջնորդներուն. սակայն Էջմիա-ծնայ կաթողիկոսի պաշտպաններն վերստին կը նուաճեցնեն. իսկ Յակոբն եւս իւր հա-կառակորդներէն թունաւորուելով կը վախ-

Մեծին Վարդանայ ժամանակակից կը համարուին հետեւեալ մատենագիրները՝ ՎԱՐԽԱՄ կամ ՎԱՐԴԱՆ և ՄԽԻԹԱՐ ՍԿԵՒՌԱՑԻ, որոնք խիստ սաստիկ շարադրածներ յօրինած են պապականութեան եւ պապին դէմ, որ Կոստանդին կաթողիկոսի ժամանակ կը յորդորէր զՀայերն՝ պապական գլխաւորութիւնն ընդունելու։ Զարմանալի չէ այն հեղինակաց սաստկագոյն գրուածներն, որովհետեւ պապականութիւնն այնպիսի գաղափարներ կ'ուզէր տարածել Հայաստանի մէջ, որոնք բոլորովին օտարոտի էին, ինչպէս են Պետրոսի առաքելապետութեան, պապական յաջորդաց գլխաւորութեան և անսխալականութեան անհեթեթ գաղափարներն։ ԿԻՐԱԿՈՍ ԱՐԵՒԵԼՑԻ, որ Սիս քաղաքի մէջ, Հեթումի թագաւորութեան ժամանակ Յայսմաւուրք հաւաքած է, 170 ճառերն իւրենին յաւելցնելով։

ՅՈՎՀԱՆ ԵՐԶՆԿԱՑԻ, որ կը կոչուի նաև Պլուզ հայրուստաչեայ, լինելուն պատճառաւ, և Ծործորեցի, Արտազու գաւառի Ծործորի վանքի մէջ շատ բնակելուն պատճառաւ։ Յովհան, Երզնկայ քաղաքի Սարգիս արքեպիսկոպոսի որդին, իւր ուսման առաջին ընթացքը կը կատարէ Սեպուհ լերան սուրբ Մինաս անապատին մէջ, և ապա ճանապար-

հորդելով զանազան հեռաւոր տեղեր․ և յատկապէս 'ի ձորն Կայենոյ 'ի Հաղբատ և 'ի Սանահին առ Վարդան վարդապետ։ Նոյն ընկալեալ ժամանակ կը գտնուին Մեծին Ներսիսի Նշխարքն Թիլն աւանի մէջ և նորա հայր Սարգիս արքեպիսկոպոսի ձեռքով կը փոխադրուին յԵրզնկայ։ Կը կարծուի որ այս գիւտի և փոխադրութեան պատմութիւնը Երզնկացին գրած է, ինչպէս և յօրինած է շարական մի 'ի պատիւ Ս. Ներսիսի, որ երգուած է նոյն եկեղեցւոյ նաւակատեաց և օծման հանդիսին մէջ, զոր Լևոն Գ. Հայոց Թագաւորն հրամայած էր կառուցանել 'ի պատիւ սրբոյն։ Այս դէպքէն բաւական ժամանակ յետոյ, (1280), կանոններ կը գըրէ Սրբոյն Գրիգորի վանուց միաբաններուն համար այս վերնագրով — Կանոնք և սահման միաբանութեան եղբարց, որ ապաստանեալքն սիրով միաբանեցան յեղբայրութիւն միմեանց յԵրզնկոյ։

Նոյն Յովհան կը ճանապարհորդէ 'ի Կիլիկիա, ուր մեծ ընդունելութիւն կը գտնէ Յակոբ կաթողիկոսէն և ուսումնարաններն վերակացու կը կարգուի։ Մեծարանք կը գտնէ նաև Լևոն Թագաւորէն և երբ նորա որդիքն Հեթում և Թորոս ասպետական նորահաստատ կարգին համեմատ Զինուոր կ'ընտրուին, նոյն հանդիսին մէջ կը խօսի Երզնըկացին մի ճառ, որ այժմ կը գտնուի Էջմի-

ածին , և այսպէս աւելի համբաւ կըստանայ և կը գրաւէ Հեթումի մտերմութիւնը ։

Այս տեղէն կ'անցնի Յովհան Արտազու Պաւասի Թադէի վանքը և մեծ սիրով կ'ընդունուի տեղւոյն Զաքարիա եպիսկոպոսէն և իւր ծերութեան օրերն այն տեղ կ'անցընէ ։ Ինչպէս Յովհան Թադէի վանուց առանձնութեան մէջ էր, Անաւարզեցի Գրիգոր կաթողիկոսն կամելով ժողով գումարել՝ ՚ի Սիս կը հրաւիրէ զՅովհան և զԶաքարիա. սակայն փոքր չեն երթար , և ժողովք չը գումարուած՝ կաթողիկոսն կը վախճանի և կը յաջորդէ Կոստանդին , որ կամելով իւր նախորդի ժողովական բաղձանքն ՚ի կատար հանել , կը հրաւիրէ դարձեալ վարդապետաց հետ Երզնկացին ևս ՚ի Սիս ։ Սակայն սա ամենեւին տեղէն չը շարժիր , որովհետեւ կը տեսնէ որ Արեւելեան վարդապետք , մանաւանդ Ստեփաննոս Օրբէլեան , սաստիկ ընդդէմ են Սսական ժողովին գումարման ։

Երզնկացի տակաւին կենդանի , լատին քարոզիչներն Հայաստան կը գան սիրոյ և միաբանութեան պատրուակաւ , յորոց Յովհան սակաւ ինչ լատիններէն ուսանելով Թովմաս Ագուինեցւոյն աստուածաբանութեան մի մասն կը թարգմանէ ։ Եւ այս քարոզիչներու շնորհիւ Ունիթոռական խմբակն կը կազմըւի , որոց վրայ արդէն խօսած ենք ։

Երզնկացւոյ երկասիրութիւններն են հե-տեւեալներն. — Ոսկեփորիկն Միքայէլի, զոր գրած է Յակոբ կաթողիկոսի խնդրանօք։ Բանք յաղագս Երկնային շարժմանց, զոր գրած է Տփխիսի Ոսմէկ իշխանի որդի Վախթանկի խնդրանօք. նոյն ժամանակներս աստեղա-բաշխական հասկացողութեան համեմատ։ Նոյն նիւթոյն վրայ գրած է 1000 տուն ո-տանաւոր եւս, Շպլոց իշխանի թախանձա-նօք։ Ներբող ի սուրբ Լուսաւորիչն, զոր յօ-րինած և կարդացած է Սեպուհ լերան Գրի-գորի վանքին մէջ, բազմախուռն ուխտա-ւորաց առջեւ, որոնք տարուէ տարի նոյն լերան վրայ կը համախմբէին գեղեցիկ սո-վորութեամբ Լուսաւորչի անմահ յիշատակը պատուելու։ Այս ներբողին մէջ ճարտա-սանական լեզուով նկարագրուած է Յով-հաննու գեղեցիկ հայրենագաւառն, մանա-ւանդ Մանեայ այրքն և Սեպուհ ու Դարա-նաղեաց լերինքն։ Ներբողն կը սկսի այս-պէս — Յարաշարժ խնդութեամբ բերկրեալ։

Ոսկեփորիկն Մամբրէի, որով շարայարած է Ներսիսի Շնորհալւոյ անկատար թողած մեկ-նութիւնը։ Խրատականք, որով զանազան զգու-շաւորութեան խրատներ յօրինած է հաւատա-ցելոց համար։ Տաղք և Շարականք, որոց մէջ նշանաւոր են Զ քորհնեաց տաղերն — Յանճառելի ժամ օրհնեմք և Այսօր յայտնի հոգեղինաց. Լուսաւորչի

շարականներն — Իգնատիոսի ամենայն և Սարգսի [illegible] ծայրեալ, որոնք ամենայն մասամբ գեղեցիկ են։ Սրբոյն Ներսէսի շարականն — Առ զ[illegible] անձառ, և Խոստածարակաց շարականն — Յաւուրս վերջին ժամանակի։ Նշմարկացին ունի մասնաւորապէս քանի մի տաղաչափական գրուածքներ, բայց այնքան նշանաւոր չեն։

Նշմարկացւոյն աշակերտակից է ՆԵՐՍԷՍ ՏԱՐՕՆԱՑԻ, որ գրաւոր երկասիրութիւն թողած չէ, բայց ունեցած է աշակերտներ ՅՈՎՀԱՆ ԵՐԶՆԿԱՑԻ, ԵՍԱՅԻ ՆՉԵՑԻ և ՄԽԻԹԱՐ ՍԱՍՆԵՑԻ, որոց մէջ համբաւաւոր է Երզնկեցին, որ Ողոնակէր եւս կը կոչուի, (ըստ աւանդութեան 15 տարի միայն թրջած ոսպով կերակրուելոյն համար) և երկասիրած է համառօտ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ [illegible], որ քանի մի անգամ տպագրուած է։

ՍՄԲԱՏ ՊԱՏՄԻՉ, Հեթում թագաւորի եղբայրն, որ Գունդստապլ կը կոչուի, որ ըսպարապետ կամ ախոռապետ կը թարգմանուի։ Աս երկասիրած է համառօտ ժամանակագրական պատմութիւն, որ կը սկսի Քրիստոսի 951 թուականէն և կը հասնի մինչեւ 1331ն։

ՍՏԵՓԱՆՆՈՍ ՕՐԲԵԼԵԱՆ, որդի Տարսայիճ իշխանին Սիւնեաց, եպիսկոպոս Հայրե-

նական գաւառին։ Ստեփաննոս երկասիրած է Պատմութիւն, որուն մէջ մանաւանդապէս կը խօսի Հայաստանեաց և Օրբէլեան իշխանացեղապետաց վրայ, և ընդհանրապէս Հայոց, Պարսից և Թաթարաց վրայ։ Մոնղոլաց և Թաթարաց արշաւանքներուն ժամանակակից ըլլալով՝ ճշդիւ կը նկարագրէ այս կատաղի ցեղերը՝ թէ ինչպէս Արալի ափունքներէն և Ալթայի լեռներէն իջնելով աւերեցին Ասիա և Եւրոպիա։

Ստեփաննոսի պատմական երկասիրութիւնն, բաց 'ի այն արժանաւորութենէն որ ունի պատմական անցից նկատմամբ, մանաւանդապէս հետաքրքրական է եկեղեցական իրողութեանց պարունակութեան կողմէն։ Վասն զի, կը պատմէ զանազան կաթողիկոսաց և վարդապետաց գործքեր, կ'աւանդէ զանազան թղթեր և դաւանաբանական գրութիւններ, վանքերու պատմութիւններ և մանաւանդ մի առ մի կը յիշատակէ Սիւնեաց եպիսկոպոսութեան և եպիսկոպոսաց պատմութիւնը։ Ստեփաննոս այն եպիսկոպոսներէն մին է, որ սաստիկ ընդդէմ էին Կիլիկիոյ մէջ եղած տարապայման ժողովներուն, ուստի և սաստիկ յուզմամբ կը խօսի յունական և լատինական միաբանական հրապոյրներուն դէմ։

Երեքտասաներորդ դարուն մէջ կը յիշա-

տակուին այլ եւս քանի մի մատենագիրներ, որոց ոմանց երկասիրութիւններն երեւցած չեն ցարդ. և ոմանց գրուածներն առ ձեռն չունենալով կարող չենք նկատողութեան առնուլ :

Զորեքտասան և հնգետասաներորդ դարուց մէջ գլխաւոր ուսումնավայրք էին, բաց 'ի վերոգրելոցն, Երնջակայ գաւառին մէջ՝ Ապրակունեաց վանքն, Սիւնեաց գաւառին մէջ՝ Տաթեւու վանքն, Բաջբերունեաց գաւառին մէջ՝ Աստուածածնի վանքն (Մուխարայ կոչուած) Արճիշու մօտ ; ուր նմանապէս և Մեծոփայ վանքն :

Այս դարերուն մէջ, որովհետեւ Ունիթոռական գրուածքներ եւս 'ի վեր կ'երեւին Հայկական մատենագրութեան մէջ, հակառակասէր և տաղտուկ պարունակութիւներով, ուստի մենք այնպիսիքն զանցառութեան տալով, որոնք ըստ ամենայնի սառն արհամարհանաց արժանի են, կը յիշատակենք միայն այն մատենագիրներն, որոնք պաշտպան հանդիսացան Հայաստանեաց Եկեղեցւոյ անկախութեանն, իրենց գրուածքներով, որք և են սոքա.

ՅՈՎՀԱՆ ՈՐՈՏՆԵՑԻ, որ և Կախիկ. — Սա Տաթեւու վանքին մէջ ուսուցչական և վարդապետական պաշտօն վարելով. շատ աշակերտներ կ'ունենայ և կ'երկասիրէ զանազան

նական գաւառին ։ Ստեփաննոս երկասիրած է Պատմութիւն, որուն մէջ ժամանակաւորապէս կը խօսի Հայաստանեաց և Օրբէլեան իշխան ցեղակցաց վրայ, և ընդհանրապէս Հայոց, Պարսից և Թաթարաց վրայ ։ Մոնղոլաց և Թաթարաց արշաւանքներուն ժամանակակից լինելով ճշդիւ կը նկարագրէ այս կատաղի ցեղերը՝ թէ ինչպէս Ասիոյ ափունքներէն և Ասիոյ լեռներէն իջնելով աւերեցին Ասիա և Եւրոպիա ։

Ստեփաննոսի պատմական երկասիրութիւնն, բաց 'ի այն արժանաւորութենէն որ ունի պատմական անցից նկատմամբ, մասնաւորապէս հարցաւորական է եկեղեցական իրողութեանց պարունակութեան կողմէն ։ Վասն զի, կը պատմէ զանազան կաթողիկոսաց և վարդապետաց գործքեր, կ'աւանդէ զանազան թղթեր և դաւանաբանական գըրութիւններ, վանքերու պատմութիւններ և մանաւանդ մի առ մի կը յիշատակէ Սիւնեաց եպիսկոպոսութեան և եպիսկոպոսաց պատմութիւնը ։ Ստեփաննոս այն եպիսկոպոսներէն մին է, որ սաստիկ ընդդէմ էին Կիլիկիոյ մէջ եղած տարապարտ ժողովներուն, ուստի և սաստիկ յանդիմանմամբ կը խօսի յունական և լատինական միաբանական հըռապետներուն դէմ ։

Երեքտասաներորդ դարուն մէջ կը յիշա-

տակաւին այլ եւս քանի մի մատենագիրներ, որոց ոմանց երկասիրութիւններն երեւցած չեն ցարդ. և ոմանց գրուածներն առ ձեռն չունենալով կարող չենք նկատողութեան առնուլ:

Զորեքտասան և հնգետասաներորդ դարուց մէջ գլխաւոր ուսումնավայրք էին, բաց 'ի վերոգրելոցն, Երնջակայ գաւառին մէջ Ապրակունեաց վանքն, Սիւնեաց գաւառին մէջ Տաթեւու վանքն, Բաջբերունեաց գաւառին մէջ Աստուածածնի վանքն (Մուխարայ կոչուած) Արճիշու մօտ; ուր նմանապէս և Մեծոփայ վանքն:

Այս դարերուն մէջ, որովհետեւ Ունիթոռական գրուածքներ և 'ի վեր կ'երեւին Հայկական մատենագրութեան մէջ, հակառակասէր և տաղտուկ պարունակութիւններով, ուստի մենք այնպիսիքն զանցառութեան տալով, որոնք ըստ ամենայնի սառն արհամարհանաց արժանի են, կը յիշատակենք միայն այն մատենագիրներն, որոնք պաշտպան հանդիսացան Հայաստանեայց Եկեղեցւոյ անխախտութեան, իրենց գրուածքներով, որք և են սոքա.

ՅՈՎՀԱՆ ՈՐՈՏՆԵՑԻ, որ և Կախիկ. — Սա Տաթեւու վանքին մէջ ուսուցչական և վարդապետական պաշտօն վարելով՝ շատ աշակերտներ կ'ունենայ և կ'երկասիրէ զանազան

նական դարուն։ Ստեփաննոս երկասիրած է Պատմութիւն, որուն մէջ մասնաւորապէս կը խօսի Հայաստանեաց և Օրբելեան իշխող ցեղապետաց վրայ, և ընդհանրապէս Հայոց, Պարսից և Թաթարաց վրայ։ Մոնղոլաց և Թաթարաց արշաւանքներուն ժամանակակից լինելով՝ ճշդիւ կը նկարագրէ այս կատաղի ցեղերը՝ թէ ինչպէս Արալի ափունքներէն և Ալթայի լեռներէն իջնելով աւերեցին Ասիա և Եւրոպիա։

Ստեփաննոսի պատմական երկասիրութիւնն, բաց 'ի այն արժանաւորութենէն որ ունի պատմական անցից նկատմամբ, մասնաւորապէս հարցասիրական է եկեղեցական խրոզութեանց պարունակութեան կողմէն։ Վասն զի, կը պատմէ զանազան կաթողիկոսաց և վարդապետաց գործքեր, կ'աւանդէ զանազան թղթեր և դաւանաբանական գըրութիւններ, վանքերու պատմութիւններ և մանաւանդ մի առ մի կը յիշատակէ Սիւնեաց եպիսկոպոսութեան և եպիսկոպոսաց պատմութիւնը։ Ստեփաննոս այն եպիսկոպոսներէն մին է, որ սաստիկ ընդդէմ էին Կիլիկիոյ մէջ եղած տարապարտ ժողովներուն, ուստի և սաստիկ յուզմամբ կը խօսի յունական և լատինական միաբանական հըքաղոզներուն դէմ։

Երեքտասաներորդ դարուն մէջ կը յիշա-

տակաւին այլ եւս քանի մի մատենագիրներ, որոց ոմանց երկասիրութիւններն երեւցած չեն ցարդ. և ոմանց գրուածներն առ ձեռն չունենալով կարող չենք նկատողութեան առ-նուլ։

Չորեքտասան և հնգետասաներորդ դա-րուց մէջ գլխաւոր ուսումնավայրք էին, բաց 'ի վերոգրելոցն, Երնջակայ գաւառին մէջ՝ Ապրակունեաց վանքն, Սիւնեաց գաւառին մէջ՝ Տաթեւու վանքն, Բաղքերունեաց գաւառին մէջ՝ Աստուածածնի վանքն (Սուխարայ կոչուած) Արճի-շու մօտ; ուր նմանապէս և Մեծոփայ վանքն։

Այս դարերուն մէջ, որովհետեւ Ունի-թոռական գրուածքներ ևս 'ի վեր կ'երեւին Հայկական մատենագրութեան մէջ, հակա-ռակասէր և տաղտուկ պարունակութիւննե-րով, ուստի մենք այնպիսիքն զանցառութեան տալով, որոնք ըստ ամենայնի սառն արհա-մարհանաց արժանի են, կը յիշատակենք մի-այն այն մատենագիրներն, որոնք պաշտպան հանդիսացան Հայաստանեաց Եկեղեցւոյ անկախութեանն, իրենց գրուածքներով, որք և են սոքա.

ՅՈՎՀԱՆ ՈՐՈՏՆԵՑԻ, որ և Կախիկ. — Սա Տաթեւու վանքին մէջ ուսուցչական և վար-դապետական պաշտօն վարելով. շատ աշա-կերտներ կ'ունենայ և կ'երկասիրէ զանազան

քարոզներ և մեկնութիւններ․ որոց մէջ սաստիկ կը կշտամբէ Ունիթոռաց արարքներըն ու Թերամիա վարդապետութիւններն։ Սորա աշակերտներէն էր Մաղաքիա վարդապետ, որ սաստիկ պատուհասակոծ արար Ունիթոռներն, ինչպէս առաջ պատմեցինք։

ԳՐԻԳՈՐ ՏԱԹԵՒԱՑԻ, աշակերտ Որոտնեցւոյն, որ նախ Սպրակունեաց և ապա Տաթեւու վանաց մէջ կ'ուսուցանէ ու կ'աշակերտէ շատերն և Ունիթոռական խռովայոյզ վիճաբանութեան ժամանակ հզօր ախոյեան կը հանդիսանայ ընդդէմ Թշնամեաց Հայաստանեայց Եկեղեցւոյ, բանիւ և գըրով։ Սա երկասիրած է ընդարձակ Քարոզագիրք և առանձին Գիրք Հարցմանց։ Թողլով սոյն երկասիրութեանց մանրամասն նկարագրութիւնը, որ մասնաւոր աշխատութեան կարօտ է, այսչափ միայն կ'ասենք, որ Գրիգոր Տաթեւացին ԺԴ դարուն մէջ միակ վարդապետն է, որ Ունիթոռական ահագին յորձանքին դիմադրելով յաջողած է պապանձեցնել հակառակորդներն իւր ընդարձակ հմտութեամբ և անձանձրոյթ տքնութեամբ։ Ժամանակակիցքն պատուած են այսպիսի նշանաւոր անձի յիշատակը փառաւոր արձանով, որ մինչեւ ցայսօր կանգուն կայ Տաթեւու վանքին մօտ։

**ԳՐԻԳՈՐ ՎԱՐԴԱՊԵՏ ԽԼԱԹԵՑԻ**, *որ և Ծերենց.— Գրած է սա զանազան ճառեր և ներբողներ Սրբոց վրայ, նոյնպէս երգեր, տաղեր և գանձեր։ Երկասիրած է նմանապէս իւր ժամանակի նահատակաց պատմութիւնը, յաւելլով Յայսմաւուրքի մէջ, և ինքն մարտիրոսանալով այլազգիներէն* (1425) *թաղուած է Արծկէոյ քաղաքաքի մօտ եղած Ստեփաննոս Նախավկայի վանքին մէջ։*

**ԱՌԱՔԵԼ ՎԱՐԴԱՊԵՏ ՍԻՒՆԵՑԻ**, *երկասիրած է զանազան ոտանաւորներ, Ադամագիրք անունով, նոյնպէս և քանի մի ներբողեաններ։*

**ԳԷՈՐԳ ՎԱՐԴԱՊԵՏ ԵՐԶՆԿԱՑԻ**, *որոյ երկասիրութիւնքն են — Լուծմունք գրոց Գրիգորի Աստուածաբանին. Խրատ վասն կիրաուութեան Մաշտոցի և քանի մի քարոզներ։ Սորան աշակերտեցան Յակոբ վարդապետ Գռիմեցի, Յովհաննէս վարդապետ Կոլոտիկ, Մատթէոս և Տիրատուր վարդապետք, որոնք աշխատասիրած են զանազան մեկնական և քարոզական գրուածքներ։*

**ԹՈՎՄԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՄԵԾՈՓԵՑԻ**, *որ գրած է Լանկթամուրի արշաւանաց Պատմութիւնն ’ի Հայաստան։ Թովմայի երկասիրութիւնն առաւել արտասունքով գրուած է քան թէ*

Digitized by Google

մելանով, վասն զի ոչ միայն ինքնին ականատես եղած է արիւնահեղ կոտորածներուն և աւերմունքներուն, այլ և քանի մի անգամ տանջանքներ և կալանաւորութիւններ կրած։ Թովմայ, որ Աղիովիտ գաւառի Բաղքերունեաց գեղջէն էր, Մեծոփայ վանքին մէջ վարդապետանալով երեւելի հանգիստացած էր նմանապէս Աւետարանի մշակութեան մէջ։ Սա ինքն գործակից եղաւ հայրապետական Աթոռոյ փոխադրութեանն Սսէն յԷջմիածին, ներկայ գտնուեցաւ Վաղարշապատու ժողովին, ուր կաթողիկոս ընտրուեցաւ Կիրակոս Վիրապեցին (1441), և արդիւնաւոր կեանքով վախճանեցաւ (1448)։ Չորեքտասան և հնգետասան դարուց մէջ կը յիշատակուին նմանապէս քանի մի ուսումնասէրներ և գրագէտներ, բայց ոմանք գրաւոր երկասիրութիւն թողած չեն և ոմանք եթէ թողած են, մանաւոր բաներ են. ուստի մատենագրութեան վրայ այսքան խօսիլն բաւական համարելով՝ անցնինք այժըմ շարունակել մեր պատմութիւնն ՚ի փոխադրութենէ կաթողիկոսական Աթոռոյն ՚ի Սսոյ յԷջմիածին։



Digitized by Google

# ՎԵՑԵՐՈՐԴ ՑՐՋԱՆ

Հայրապետական Աթոռոյ փոխադրութենէն յԷջմիածին մինչեւ 'ի բաժանումն Լատինահայոց 'ի ծոցոյ Հայաստանեայց Եկեղեցւոյ։

## 1441–1700

### Ա.

Վիճակ Հայաստանեայց Եկեղեցւոյ.—Կաթողիկոսունք՝ Կիրակոս Ա. Վիրապեցի. Գրիգոր Ժ. Զաքարիա Բ. Արիստակէս Բ. Սարգիս Բ. Արիստակէս Գ. Թադէոս Ա։

Երբ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ Հայրապետական Աթոռն երկարատեւ պանդխտականութենէ զկնի վերստին յԷջմիածին փոխադրեցաւ և Կիրակոս Վիրապեցին կաթողիկոսացաւ, Գրիգոր Մուսաբեգեանցն ևս իբրեւ կաթողիկոս 'ի Սիս մնաց։ Եւ այսպէս Ազգն երեք կաթողիկոսական աթոռներ ունեցաւ յԷջմիածին, 'ի Սիս և յԱղթամար, (որ մասնաւոր աթոռ եղած էր 1113 թուականէն, Դաւթի կաթողիկոսութենէն 'ի վեր) որոնք կը տեւեն մինչեւ մեր օրերը։ Սակայն այս բաժանումը լոկ աթոռական եղած է և ոչ եր-

Digitized by Google

բէք ժողովրդային կամ տարբեր դաւանութեան։ Այս բաժանմամբ երբէք խախտած չէ ժողովրդային միութիւնը՝ և թէպէտ երեք աթոռոց կաթողիկոսներն երբեմն իրարու դէմ զինած են և հակառակութիւններ յարուցած, բայց բարեբաղդաբար Ազգը միշտ հաւատարիմ մնացած է իւր մայրենի Եկեղեցւոյ վարդապետական, դաւանաբանական և ծիսական միութեանը, Էջմիածնի Աթոռը հանուր հայրապետական աթոռ համարելով, իսկ Սսոյ և Աղթամարայ աթոռներն՝ մասնաւոր կաթողիկոսական։ Եթէ պատմագիտական նուրբ աչքով նայինք, կը տեսնենք որ այս աթոռոց սկզբնաւորութիւնն ու տեւականութիւնը հետեւանք է Ազգի քաղաքական վիճակի տարբերութեան։ Ազգային ինքնօրէն քաղաքականութեան բարձումէն եւ տարբեր քաղաքական իշխանութեանց ենթարկուելէն յառաջ եկած է այս կաթողիկոսական երեքնութիւնը։ Մի կողմէն քաղաքական տարբեր իշխանութեանց հակակիր ազդեցութիւններն և միւս կողմէն Հայկազն ժողովրդի ցրուածութիւնը և միակ կաթողիկոսութեան հետ ունեցած հաղորդութեան դժուարութիւնքն առիթ տուած են մանաւանդ Էջմիածնի և Սսոյ կաթողիկոսութեանց առանձին գոյութեանն ու տեւականութեանն, վասն զի արդէն տե-

ըսինք նախընթաց Շրջանին մէջ, թէ ինչ դժուարութիւններ կային Արեւելեան Հայոց համար յարաբերութիւն ունենալ Արեւմտականաց կամ Կիլիկեցւոց հետ։ Եթէ նուրբ նայինք, նոյն դժուարութիւններն ակներեւ կը տեսնենք մինչեւ ցայսօր։ Իսկ Աղթամարայ կաթողիկոսական գոյութեան եւ անկախութեան գլխաւոր պատճառն իւր կղզիական դիրքն եղած է, քան թէ մի այլ պարագայ։ Հետեւապէս, եթէ մտածենք որ կաթողիկոսութիւնը մի վսեմ պարտակատարութիւն է եւ ոչ լոկ անուանակրութիւն, եթէ մտածենք որ կաթողիկոսական օրհնաւոր, պարտավճար եւ համամիտ աթոռակալներ կարող են աւելի նպաստել Ազգի վիճակին եւ դիւրել զանազան լուծութիւններ եկեղեցական վարչութեան, եպիսկոպոսական ձեռնադրութեան եւ այլ ժողովրդային մտաւոր յարաբերութեանց մասին, կը տեսնենք որ կաթողիկոսական երեքնութիւնն ամենեւին վնասակարութիւն կարող չէ ունենալ։ Քանի որ Եկեղեցին ու ժողովուրդն մի է, քանի որ իշխող տէրութիւններն քաղաքականօրէն տարբեր ազդեցութիւն ունեցած են եւ ունին Ազգին վրայ, կաթողիկոսական երեքնութիւնը կամ երկուութիւնը կարեւոր եղած է եւ է։ Այս երեքնութիւնն ինքնին կը միանայ, երբ

Ս. Գէր յաղթող իւր Եկեղեցւոյ համար Հայրապետութեան նախնի խրատունքներն մերահաստատել և քաղաքական ազդեցութիւնները ու վտանգները անկախ և ազատ կացուցանել ։ Թողունք այս, և ներկայ Շրջանի տատանման թելն շարունակենք ։

Աբրահամ Բ Խոշաբեցին, Էջմիածնի մէջ կաթողիկոսական օծումն ընդունելէն զկնի, շրջաբերական գիր կ'ուղղէ Հայաստանի վիճակաւոր եպիսկոպոսներուն և նոյնպէս Սսոյ, Աղթամարայ և Աղուանից կաթողիկոսներուն, յորդորելով զամենեսեան ՚ի սէր և ՚ի խաղաղութիւն ։ Եր կարգաւորէ Հայրապետական աթոռն, ստացութեամբ Թովմայ վարդապետի Ընծաբեցւոյ, կը նորոգէ Վաղարշապատի հինօրեայ տաճարն և այլ վանորայք և եկեղեցիք, և մինչդեռ սոյնօրինակ բարեկարգութեամբ կը պարապի, յանկարծ քանի մի եպիսկոպոսաց և վանականաց շնորհիւ Աբրահամ կը զրպարտուի իբրև կախարդ և հերձուածող, կը չարախօսուի Արարատեան գաւառի սարդարին իշխանին առջև ։ Եւ մինչդեռ չարախօսները կը յորձանկեն կաթողիկոսը գահամերժել, նա կը փախչի և կը թաքչի, որոյ հակառակորդները խաբելով կաթողիկոս կ'ընտրեն եպիսկոպոսն Աստուածատուր Գրիգոր. իսկ Աբրահամ կը վախճանի, երկամեայ կաթողիկոսութենէն զկնի ։

Գրիգոր Ժ. Մակուեցի կը շարունակէ Կի-
րակոսի կիսակատար թողած նորոգութիւն-
ները ու բարեկարգութիւնները, իրեն գոր-
ծակից ընտրէ Արիստակէս անուն մը վար-
դապետ և կ'անուանէ Աթոռակից: Սակայն
այս պատուանունը, որ միայն կաթողիկոսաց
պահուած էր, ժամանակաց մէջ սովորական
դառնալով՝ կաթողիկոսական փոխանորդնե-
րու կամ աթոռակիցներու համար, և շատե-
րու իշխանասիրութեանը ճարակ տալով՝
տեղի կը տայ զանազան հակառակութեանց
եւ հայրապետական անուանց շփոթու-
թեան:

Գրիգորի կաթողիկոսութեան ժամանակ
Օսմանցիք կը տիրեն Կ. Պոլսոյ և Սուլթա-
նըն Մէհմէտ Ֆէթիհ արքունի հրովարտա-
կաւ Յունաստանի և Անատոլիոյ հայկազանց
վրայ առաջնորդ կը կարգէ (1461) Պուրսայի
Յովակիմ եպիսկոպոսն, Փոքրիկ, այսինքն Պատ-
րիարք տիտղոսով, յորմէ և կը սկսի Կ. Պոլսոյ
Պատրիարքութիւնն և կը տեւէ մինչեւ
ցարդ զանազան արտօնութիւններով: Իսկ
բուն Հայաստանի մէջ ներքին և արտաքին
աղմուկներն անընդհատ կը տագնապեն
զԱզգն ու Եկեղեցին: Արիստակէս աթոռա-
կալը և Գրիգոր կաթողիկոսի մէջ սաստիկ
գժտութիւն կը ծագի և կաթողիկոսարանի
Սարգիս անուն վարդապետը Լուսաւորչի

Digitized by Google

ալը Էջմիածնէն գողանալով. Պարսկաստան կը փախչի, որպէս զի Զահան Շահի օգնութեամբ յինքն յափշտակէ կաթողիկոսական իշխանութիւնը։ Սակայն Աղթամարայ Զաքարիա կաթողիկոսն իրազեկ լինելով այս անցքին կը դիմէ 'ի Թաւրէժ նոյն Շահին առջեւ, զանազան նուէրներով յետ կ'առնու Լուսաւորչի աջն և իշխանական պատուով դառնալով յԷջմիածին, Գրիգորն ու Սրբատակէսն կը մերժէ և ինքն կ'աթոռակալէ իբրեւ ընդհանուր կաթողիկոս, իւր իշխանութեան ներքեւ ունենալով նըմանապէս և Աղթամարայ աթոռն։ Իսկ Սագիս վարդապետը կը կարգէ կաթողիկոսական փոխանորդ, եպիսկոպոս ձեռնադրելով յԷջմիածին,

Զաքարիա կը յաջողի Զահան Շահի և Ջհանգիր Սուլթանի հակառակութիւններն խափանել և Հայաստանի աւերումներն առժամանակ մի դադարեցնել։ Սակայն Գրիգորի և Սրբատակիսի ձեռքով կը չարախօսուի իբրեւ բազմագանձ և ճոխ որ Զահան Շահի որդւոյն առջեւ և տեսնելով թէ անհնարին պէտք է լինի կաթողիկոսական իշխանութիւն վարել Էջմիածնի մէջ, ծածկաբար Լուսաւորչի աջն առնելով կը փախչի յԱղթամար, շատ մեծարանք գտնելով թէ՛ տեղական առաջնորդի իշխաններէն և թէ ժողովրդէն։

Զաքարիայի փախստենէն յետոյ Գրիգոր կը վախճանի և Արիստակէս կ'աթոռակալէ իբրև կաթողիկոս և Սարգիս կը վարէ փոխանորդութիւնը։ Սակայն Արիստակէս Բ չորս տարիէն յետոյ կը վախճանի առանց նըշանաւոր գործոյ և կը յաջորդէ Սարգիս (1466)։

Սարգիս կաթողիկոսանալէն զկնի կը ջանայ Լուսաւորչի աջը դարձուցանել Աղթամարէն, բայց անհնարին կը լինի։ Վերջապէս, ըստ պատմական աւանդութեան, Վըրթանէս եպիսկոպոս ոմն ծպտեալ կերպարանօք Աղթամար մտնելէն և երկար ժամանակ մնալէն յետոյ կը յաջողի նոյն սուրբ աջն Էջմիածին դարձնել, և այս ճարտարութեան համար փակակալ կը կարգուի Էջմիածնի։ Սարգսի կաթողիկոսութեան ժամանակ Սսոյ կաթողիկոս էր Յովհաննէս Թըլկուրանցի, որ թողած ունի քանի մի տաղաչափական գրուածքներ։ Սարգիս 24 ամեայ կաթողիկոսութենէն զկնի կը վախճանի և կը յաջորդէ Արիստակէս Գ. առանց նշանաւոր ինչ գործողութեան, և սորան կը յաջորդէ իւր փոխանորդն Տէր Թադէոս Ա։

# Ի.

Եղիշէ Բ. Զաքարիա Գ. Սարգիս Գ. Գրիգոր ԺԱ. Ստեփաննոս Ե Սալմաստացի. Միքայէլ Սեբաստացի. Բարսեղ Բ. Գրիգոր ԺԲ. Ստեփաննոս Զ. Առնչացի. Թադէոս Բ. Առաքել Վաղարշապատեցի. Դաւիթ Ե. Մելքիսեթ.

ԹԱԴԷՈՍԻ մահէն յետոյ կը յաջորդեն մի զկնի միւսոյ Եղիշէ, Զաքարիա, Սարգիս, Գրիգոր (1503–1541), որոց կաթողիկոսութեան վրայ ազգային պատմական յիշատակարանք մասնաւոր տեղեկութիւններ չեն աւանդեր։ Միայն այս յայտնի է, որ այն ժամանակին մէջ Հայաստանի ժողովուրդը կը տառապէր զանազան բռնակալաց հարստահարութեան տակ և կաթողիկոսունք ստիպուած էին հայրապետական աթոռն իւրենց փոխանորդներուն յանձնել և փախստական շրջիլ այս ինչ կամ այն ինչ բռնաւորի սիրտը շահելու և ժողովուրդը ըստ կարելւոյ մխիթարելու համար։ Իսկ Ստեփաննոսի և Միքայէլի վրայ, Չամչեանն, առնլով լատին գրուածներէ, երկար վէպեր կը պատմէ ՚ի նպաստ հռովմէական պապութեան, սակայն չենք կարող հաւատ ընծայել, որովհետ-

Digitized by Google

տեւ ազգային դաստիարակութեան մէջ նոյն մէ-պերու նշմարանքն անգամ չենք տեսներ։ Միայն այսչափն գուցէ հաւանական է, որ Ստեփաննոս ճանապարհորդած է Եւրոպա իրեն յաջորդ թողլով Միքայէլ Սեբաստա-ցին, և Միքայէլ Արարատեան երկրի հա-լածանքներէն խուսելով մեկնած է ի Սե-բաստիա, աթոռակալ կարգելով իրեն տեղ Բարսեղ վարդապետ։ Միքայէլ կը վախճա-նի (1569) և կարգաւ կը յաջորդեն Գրիգոր ԺԱ. Ստեփաննոս Ջ. Թադէոս Բ. Առաքել Վաղարշապատեցի, որ առիթմամբ կաթողի-կոսանալով և աղա բռնաւորաց հարստահա-րութենէն ազատելով կաթողիկոս կը ձեռ-նադրէ իւր փոխանորդն Դաւիթ և ինքն կ՚ա-ռանձնանայ մենաւորական վանքի մէջ իւր կեանքն անցնելու։ Առաքելի կաթողիկոսու-թեան ժամանակ Սսոյ կաթողիկոսութեան վիճակն եւս խիստ աղէտալի էր, որովհետեւ երեք անձինք կրարու ներհակ կաթողիկոսա-ցած էին, այն է Ազարիա, Տիրատուր հրա-ժարեալ պատրիարք Կ. Պոլսոյ և Յովհան-նէս [illegible]։ Այս երկպառակութեան շարժա-ռիթն օտար տիրապետողաց ազդեցութիւ-նն էր, որոնք, առանց Սսոյ հաւանութեան, կաշառք առնելով զանազան փառասէր եպիս-կոպոսներէ և վարդապետներէ իրաւունք կը տային կաթողիկոսանալու և կը պաշտպանէ-

Digitized by Google

րին ընդդէմ կամաց ժողովրդեան ։

Դաւիթ, ծանր հարկապահանջութենէ ազատելու համար, որուն ենթարկուած էր աթոռն Էջմիածնի, երբեմն աթոռակից կ'ընտրէ Մելքիսեթ եպիսկոպոսը Գառնեցի, որով կը լինին երկու կաթողիկոսունք։

Ինչպէս Դաւթի և Մելքիսեթի, նոյնպէս և իրենց քանի մի աթոռակցաց և յաջորդաց կաթողիկոսութեան դէպքերու և Եկեղեցւոյ ու Ազգի ժամանակակից տառապանքներուն վրայ խիստ մանրապատում կերպիւ կը խօսի Առաքել պատմագիրն, զոր անհնարին է ընթեռնուլ առանց արտասուելոյ։ Այսօր և մեք ընդարձակ տեղեկութեան համար բաւական համարելով նոյն պատմագրին մատնանիշ ընել հարցասէրներուն, կը ջանանք միայն Հայրապետութեան, Եկեղեցւոյ և ժողովրդի նոյն ժամանակներու վիճակի համառօտ նկարագիրն ևեթ պատկերացնել։ Հայաստանեայց ազատ Հայրապետութիւնը ծանր պարտուց և հարկաց տակ կը հեծի և կը մաշի։ Կաթողիկոսաց թիւն կը բազմանայ, բայց ոմանք փախստեան և թափառեան և ոմանք տաժանապարտութեան և տարագրութեան մէջ կը դեգերին և կը տագնապին։ Եկեղեցիները ու վանքերը կը կողոպտուին, կ'անարգուին և կը քայքայուին։ Ժողովուրդն Օսմանեան և

Պարսկական անհաշտութեան և պատերազմներուն պատճառաւ երկու սուրին մէջ կը դողդողայ և կը զարհուրի ։ Մէկ կողմէն Շահաբասեանք Արարատեան ընդարձակ գաւառն կ'աւերէն և ժողովուրդը բիւրերով Պարսկաստան կը տարագրեն, և միւս կողմէն Տաճկաց աւազակախումբերն Հայաստանի միւս գաւառներն ապստամբութեամբ և արիւնհեղութեամբ կը լնուն ։ Մինչդեռ հայրենադարձներն այս վիճակը կը կրեն Պարսիկներէն և Օսմանցիներէն, Լեհաստանի գաղթական Հայերն ալ Հռովմէական Յեզուիտաց մոլեռանդութեան և հալածանաց կը մատնուին, եկեղեցիները կը փակուին և կը բռնադատուին իրենց կրօնքը փոխելու և լատինանալու ։ Թողունք ասել որ Պոլսոյ մէջ պատրիարքական խռովութիւններն, Նորաշէնի մէջ յունական մոլեռանդութիւնն ընդդէմ տեղական միաբանութեան Հայոց և Սսոյ մէջ կաթողիկոսական պայտոց զանցառութիւններն ալ քան զալ կը յաւելուն Եկեղեցւոյ զաւակաց վշտակրութիւնը ։

Այս խառնաշփոթ ժամանակին մէջ խառնաշփոթ է բաւ ամենայնի և կաթողիկոսաց կեանքն, և անդադար են ներհակութիւնք և դաւաճանութիւնք, ինչպէս պիտի տեսնենք ։

Մելքիսեթ, որ երբեմն աթոռակից և

օգնական կարգեցաւ Դուլթին, պատրիարքա-
կան հարկապահանջութենէն խուսելով ։ Ի Պոլիս կը դիմէ նպաստ գտնելու յուսով և կաթողիկոսութենէ հրաժարելով պատրիարք կ'ընտրուի փոխանակ Տիրատուր վարդապետի. սակայն մի տարիէն վերի կը զրկուի պատրիարքական իշխանութենէն ժողովրդեան ձեռքով ։ Պոլսէն կը դառնայ Էջմիածին և Դաւիթ կաթողիկոսի հետ կը թաքչի յանծանօթ տեղւոջ, պարտատէրներէն չը նեղուելու համար ։

Աթոռոյ պարտքերն օր աւուր կը ծանրանան և երկուզակութիւններն ու բարբարոսութիւնքն կը յաճախեն Հայաստանի մէջ, որով և կը սաստկանան Դաւթի և Մելքիսէթի վէճերն ։ Սորա, հաւանութեամբ այլոց վարդապետաց, կը միաբանին կոչել Տիգրանակերտի առաջնորդ Սրապիոն եպիսկոպոսն Եդեսացի և կաթողիկոս ձեռնադրել այն պայմանաւ, որպէս զի վճարէ Աթոռոյ պարտքերը, որովհետեւ ինքն ճոխ էր ստացուածով, ազնուատոհմ և միանգամայն անուանի իւր բանիմացութեամբ ։ Սրապիոն հրաւէրն ընդունելով կ'ուղեւորի Նախկին Ջուղայ քաղաքը, ուր կը ժողովին Մելքիսէթ, Դաւիթ, եպիսկոպոսունք և վարդապետք, խորհելու ազգային և եկեղեցական նեղանձուկ վիճակին և Սրապիոնի կաթողի-

կային նա ակղաններն, առաջնորդներն և ուրիշ նը-
շանաւոր անձերէ քարեր հանել տալով նախ
յՍպահան և ապա ՚ի Ջուղայ կը փոխադ-
րէ, որուն կը դիմաւորէ ժողովուրդն հան-
դիսաւորութեամբ և արտասուքով և կը համ-
բուրէ այն քարերն իբրև Թանկագին ա-
ւանդք Հայրենեաց, իբրև աստանդական
յիշատակարանք հայրապետանոցին։ Սեղբի-
սէթի ամբաստանութեան գլխաւոր կէտն
քարերու փոխադրութեան համար տուած
չար խորհուրդն էր։ Այս ամբաստանութեան
համար Դաւիթ կաթողիկոսն Ջուղայեցւոց
խնդրանօք Էջմիածին կը դիմէ, բայց կ'ար-
գելուի Սեղբիսէթէն՝ Էջմիածին մտնելու,
որով և երկար հակառակութիւններ տեղի
կ'ունենան. Շահաբաս վերստին յԱրարատ
կը դիմէ և կը զայրանայ սպաննել զՍեղբի-
սէթ, սակայն նա Էմիրկէն Պարսիկ նախա-
րարի շնորհիւ (որուն շատ բարեկամ էր)
մահուանէ կ'ազատի, խոստանալով ծանր
տուգանքներ վճարել, սակայն անկարող կը
գտնուի։ Սուտի (1620) եպիսկոպոս կը ձեռ-
նադրէ զՄովսէս վարդապետ և հրաման կը
տայ միւռոն օրհնել Էջմիածնի մէջ. (որով-
հետև Դաւիթ՝ տարագրուած կը չըլէր
յԱսպահան և ՚ի Ջուղայ) որպէս զի նպաստ
գտնէ ժողովքէն, սակայն իւր նպատակին
չը հասնիր. Սուտի երկար տառապանքո-

թենէ յետոյ իր եղբօրորդւոյն Սահակ Կա-
թողիկոս կ՚օծէ և ինքն կը փախչի ՚ի Պոլիս.
սակայն և այն տեղ ամենևին ընդունելու-
թիւն չը գտներ : Պօլսէն կը դրկէ Մելքիսէթ
՚ի Լեհաստան, ՚ի քաղաքն Լվով. ուր քաղ-
մաթիւ հայազգի ժողովուրդ կար : Մելքի-
սէթ ընդդէմ կամաց ժողովրդեան Նիկոլ
Թորոսովիչն եպիսկոպոս կը ձեռնադրէ և այս
պատճառաւ ահագին գժտութիւնք կը ծա-
գին : Մելքիսէթ Նիկոլի ձեռնադրութե-
նէն զկնի Կամենից քաղաքը կը քաշուի և
այն տեղ կը վախճանի, երկար ժամանակ
ազգի տառապանաց առիթ տալով և ինքնին
տառապելով : Մելքիսէթի ձեռնադրած Նի-
կոլն լատինականութիւն ընդունելով և Ճե-
զուիթներէն օգնութիւն գտնելով սարսա-
փելի հալածանքներ կը հանէ Լեհաստանի
հայ ժողովրդեան դէմ, որով եկեղեցիները
կը փակուին, հայրական ծիսակատարութիւ-
նը կ՚արգելուի, և այսպէս յետ ժամանակաց
Լեհաստանի գաղթականք իսպառ կրօնա-
փոխ լինելով ստիպմամբ՝ կ՚անհետին պապա-
կանութեան անդունդին մէջ, իրենց ազգայ-
ին դաւանութեան հետ կորուսանելով ի-
րենց անունն ու ազգայնութիւնը, որոյ ման-
րապատում անցից նկարագրութիւնն մի ա-
հագին մատենի նիւթ կարող է կազմել.
քան թէ սոյն պատմական գաւազանգրքի :

## Գ.

Սահակ Դ. Մովսէս Գ. Փիլիպպոս Աղբակեցի. Յակոբ Դ Ջուղայեցի. Եղիազար Անթապեցի. Նահապետ Եդեսացի.

Սահակ Դ. եղբօրորդի Մելքիսեթի, որ կաթողիկոսացած էր իւր հօրեղբօր կամքով և ոչ ընտրութեամբ Ազգին, կը մատնուի նմանօրինակ տառապանաց, ինչպէս Մելքիսեթ, մանաւանդ որ ժողովուրդէն եւս ընդունելութիւն չը գտներ, որոնք իրմէն աւելի զՄուրիթ նախամեծար կը համարէին, որ իւր ծեր հասակին մէջ անգամ սիրելի էր յաչըս ժողովրդեան։ Սահակ ջանալով իւր հօրեղբօր թողած ծանր պարտքերէն ազատուիլ և տեսնելով թէ անկար է ինքն և շարունակ կը նեղուի հարկապահանջներէն, կը փախչի ի Վան, որ Օսմանցւոց իշխանութեան տակն էր։

Սահակի փախչելէն զկնի հաւանութեամբ Ազգին (1629) կաթողիկոս կ՚ընտրուի Մովսէս Գ. որ փակակալ էր Էջմիածնի։ Շահաբաս կը մեռանի և կը յաջորդէ Շահ-Սեֆի, ուստի և Մովսէս խորհրդով ազգայնոց կ՚աճապարէ շուտով յԱսպահան, կաթողիկոսական հաստատութեան հրովարտակ կ՚ընդունի



Digitized by Google

Թագաւորէն և միանգամայն կ'աղաչէ Էջմիածին տարեկան հարկէ, որուն ենթարկուած էր բարբարոսութեան շնորհիւ։ Մովսէս կը դառնայ յԷջմիածին հայրապետական ծանր պաշտօնը վարելու և Սահակ լսելով նորա կաթողիկոսանալը, ինքն ևս ջանահընար կը լինի Օսմանեան Տէրութեան մէջ առանձինն կաթողիկոսութիւն վարել։ Այս երկպառակտիչ արարման առաջն առնելու համար, Մովսէսի աշակերտն, Փիլիպպոս վարդապետ, անձամբ Սահակին կ'երթայ և կը համոզէ յետս կալ իւր մտադրութենէն, նոյնպէս և Ազգին մէջէն շատերն կը ջանան Սահակի թիւր խորհուրդներն ցրել և յաւելապէս եկամուտներ կը խոստանան։ Բայց նա կը յամառի և Սոյ Յովհաննէս կաթողիկոսի եղբայր Պօղոս վարդապետը կը ղրկէ 'ի Պօլիս առ Զաքարիա պատրիարքն, որ հակառակ էր Մովսէսին, և պատրիարքի միջամտութեամբ հրովարտակ կըստանայ Սուլթան Մուրատ Դէն, որ կաթողիկոսական աթոռ հաստատելով 'ի Տարոն Ս. Կարապետոյ վանուց մէջ ազատօրէն վարէ իւր պաշտօնն, անկախ Էջմիածնի կաթողիկոսէն։

Մովսէս կաթողիկոսն և Փիլիպպոս վարդապետն զանազան գրեր կը գրեն Սահակին դադարել հակառակութենէ, նմանապէս կը յորդորէին զնա և Տիգրանակերտցիք։

Սակայն Սահակ յաճախ եւ ալ կը մնայ ։ Խնդիրըը սաստիկ կը մեծնայ եւ Եղիազարեանք կը հասնին, առանց հաւանութեան որոյ Սուլթանի հրովարտակը կարելի չէր որ գործադրուի ։ Սահակ մի կողմէն, եւ Մովսիսեանք միւս կողմէն, խնդրամատոյց կը լինին Եղիազարեանին. Մովսիսեանք կը յաջողին եւ Սահակ տանջանաց կը մատնուի Եղիազարեանի հրամանաւ եւ կը բանադատուի յուրացութիւն հաւատոյ. Սակայն Մովսիսեանց աղերսանօք կ'ազատի տանջանքէ եւ խոյս հրաժարելով իւր միտադրութենէն կը դառնայ յԷջմիածին եւ այն տեղ առանձնական կեանք կը վարէ, առանց որ եւ իցէ գործոյ խառնուելու մինչեւ իւր մահը ։

Մովսէս, անկասկած մնալով հակառակութեան վրա հետեւանքներէն, կը սկսի (1631) նորոգել եւ վայելչացուցանել ոչ միայն Էջմիածնի շինուածքը, այլ եւ կարգ եւ կանոն կը դնէ միաբանից համար, աստուածային պաշտամանց ժամանակներն կ'որոշէ, որ աղաւաղուած էր, դպրատուն կը կառուցանէ Էջմիածնի մօտ Յովհաննավանքի մէջ եւ Հայաստանի մենաստաններուն մէջ վայելուչ ուղղութիւններ կը մուծանէ ։ Էջմիածնի անօթները կ'ազատէ, որոնք պարտուց համար գրաւ դրուած էին իւր նախորդաց ձեռքով ։

Մովսէս, որ իւր վարդապետութեան եւ

եպիսկոպոսութեան որէն բաւական երկիր-
ներ ճանապարհորդած էր, այն է 'ի Պոլիս,
Սեբաստացի Գրիգոր պատրիարքի օրով, յորմէ
և եպիսկոպոսացած էր, Եգիպտոս, Ե-
րուսաղէմ, ուր լուսաւորութեան պաշտօն
վարած էր և ապա Մոկացի (ըստ այլոց Գան-
ձակեցի) Գրիգոր Պարոն Տէր պատրիարքի
կոնդակաւ նուիրակութեան եկած, խիստ
սխրալի գործեր կը գործէ յօգուտ Եկեղեց-
ւոյ և 'ի պարծանս Հայաստանեայց Հայրա-
պետութեան, որուն վրայ սքանչանալով կը
խօսի Առաքել պատմագիրն: Սակայն Միք.
Չամչեան առանց պատմական հայեցի աղ-
բիւր ցոյց տալու, անհիմն կերպիւ կը պատ-
մէ, որպէս թէ Մովսէս կաթողիկոսն քանի
մի նամակներ գրած է Պապին հպատակու-
թեան համար, որուն առասպելաբաններն
միայն գուցէ հաճին հաւատք ընծայել:

Մովսէս կը վախճանի եկեղեցաշէն սխ-
րագործութեամբ և կաթողիկոս կ'ընտր-
ուի (1633) նորա աշակերտն Փիլիպպոս
Աղբակեցի, որ իւր նախորդի անկատար թո-
ղած նորոգութիւններն ու բարեկարգու-
թիւնները կը ջանայ 'ի գլուխ հասուցանել,
ձեռնտուութեամբ Սպահանի Հայ ժողո-
վրդոց: Փիլիպպոս կաթողիկոսն կ'ուղեւորի
Երուսաղէմ, ուր Սիս Ներսէս կաթողի-
կոսի և Երուսաղէմի Աստուածատուր պատ-

րիարքի խորհրդակցութեամբ ժողով կը կազմէ Երուսաղէմի մէջ, զանազան կանոններ կը հաստատէ Էջմիածնի և Սսոյ կաթողիկոսաց մտերմական յարաբերութեանց մասին, ինչ ինչ նորոգութիւններ կ'առնէ Ս. Յակոբեանց վանուց մէջ և ապա կը դառնայ 'ի Պոլիս: Այս տեղ ևս, ուր պատրիարքական հակառակութիւններ և շփոթութիւններ կային և պատրիարքութիւնը փոփոխակի կը յափշտակուէր զանազան հակառակորդներէ, կուսակցութիւններն անդադար կը յուզուէին 'ի վնաս անձանց և հանրութեան, այս ամեն խռովութիւնները կ'անդորրացնէ ազդու քարոզներով և նոր պատրիարք կը հաստատէ հաւանութեամբ ամենեցուն: Փիլիպպոսի 'ի Տաճկաստան գտնուած ժամանակ Նիկոլ Թորոսովիչն, որ խռովասէր և լատինասէր վարուք աւելի եղած էր Լեհաստանի ժողովրդին և միանգամայն եպիսկոպոսութենէ լուծուած Փիլիպպոսի նախորդներէն, կը գրէ առ Փիլիպպոս և խորամանկութեամբ կը յաջողի պատրել հայրապետի գթասրտութիւնը, ներումն առնուլ և ապա դառնալով 'ի Լեհաստան կը սկսի աւելի խռովասանօք վարել ժողովրդեան հետ և դաւանափոխութեան առիթ տալ:

Փիլիպպոս կաթողիկոս Պոլսոյ խռովու-

թիւններն անդորրայնելէն, եկեղեցեաց պարտքերը վճարելէն և Եղիազարի տեղ Յովհաննէս Մուղնեցին պատրիարք հաստատելէն զկնի կը դառնայ յԷջմիածին և կը սկսի զանգակատուն կառուցանել, սակայն նոյն տակաւին կիսակատար, ինքն կը վախճանի 22 ամեայ կաթողիկոսութենէն զկնի և կը յաջորդէ (1655) Յակոբ Դ. Ջուղայեցի: Չըմոռանանք ասել, որ Միք. Չամչեան ջանացած է Փիլիպպոս կաթողիկոսն ևս արատաւորել, որպէս թէ հպատակութեան թուղթ դրած է Հռոմայ պապին:

Յակոբ Ջուղայեցի կ'աշխատի իւր նախորդի կիսակատար թողած նորոգութիւններն աւարտել և միանգամայն կը յաւելու նորանոր շինուածներ: Կը ջանայ Հայեցի տպագրութիւնը վայելուչ յարդարել, որոյ համար և Ծարեցի Մատթէոս սարկաւագն կ'ուղարկուի յԱմստերդամ կատարելագործելու գրոց գաղափարներն կամ ձեւերն ճարտար արուեստաւորաց ձեռքով, որ յետոյ աւելի ընտիր կը յարդարուի Ոսկան Վանանդեցւոյ աշխատութեամբ: Յակոբայ կաթողիկոսութեան ժամանակ վերստին կը յուզին Պոլսոյ պատրիարքական խռովութիւններն, ուր պատրիարքական պաշտօն կը վարէին ոչ միայն եկեղեցական անձինք, այլ և աշխարհականք, որոնցմէ ետեւ իրաւունքը կը

տալէն այս մասին Օսմանեան Տէրութեան հրովարտակներն ։ Մինչդեռ Պոլսոյ մէջ խըռովութիւններն կը յուզէին , Անթապցի Եղիազար վարդապետն , որ երբեմն պատրիարք էր , պատրիարքական փոխանորդ կը կարգուի Երուսաղէմ ։ Սա հետազննին մարդկըներով՝ կը հետախուզէ Ս. Յակոբեանց վանուց յիշատակարաններն և յայտագիրներ գտնելով ըստ այնմ կը հետազօտէ և պղնձեայ երկու թակոյկով ոսկի և արծաթ կը գտնէ և նոյն դրամներով կը զինէ ընդդէմ Յունաց , որոնք ջանահնար էին Հայոց տնօրինական ուխտատեղիքն յափշտակել և Ս. Յակոբայ վանուց տիրել ։ Եղիազար կը յաջողի Յոյներն յաղթահարել , բայց միանգամայն ջանահնար կը լինի ոչ միայն Երուսաղէմի պատրիարքութիւնն առնել , այլ և կաթողիկոսութիւն՝ Օսմանեան Տէրութեան մէջ բնակած Հայոց վրայ ։ Այս Խաչատուր կաթողիկոսի սիրտը գրաւելով կաթողիկոս կ՚օծուի նորա ձեռօք Բերիոյ մէջ , օրհնութեան նամակներ կը գրէ Օսմանեան հպատակ ազգայնոց և ապա կ՚ուղեւորի Երուսաղէմ , սակայն կը վարի անտի Աստուածատուր պատրիարքէն և կը սկսի շրջիլ Եգիպտոս , Ասորիս և այլ տեղեր , հաստատութեան հնար գտնելու յուսով ։

Յակոբ կաթողիկոս , Եղիազարի այս ա-

նախնեաց_ արքայքն ըսելով, ազգասիրութեան կանոնականներ կ՚ուզէ զանազան տեղեր, որպէս զի զգուշանան Եղիազարի անպատեհ արարքէն և Լուսաւորչեան աթոռոյ պառակտումէն։ Այս առթիւ Յակոբ կ՚ուղեւորի ՚ի Պոլիս, նորայոյզ խռովութեանց առաջն առնելու։ Եղիազար իրեն դէմ սաստիկ արգելքներ տեսնելով Ադրիանուպոլսոյ Եպարքոսէն նորոգ հաստատութեան հրովարտակ կը հանէ կաթողիկոսութեան համար և կը դառնայ ՚ի Պուրսա։ Սակայն անդ ևս ընդդիմութեան հանդիպելով կը դառնայ ՚ի Պոլիս, ուր շատերէն ընդունելութիւն կը գտնէ իբրեւ կաթողիկոս։

Յակոբ, որ փոխանակ ուղղակի Պոլիս դիմելու, նախ Երուսաղէմ գնացած էր, որպէս զի տեղական պատրիարքի ձեռքով Եղիազարն ամեն տեսակ գործակալութենէ հրաժարեցնէ, երբ Երուսաղէմէն կը մեկնի ՚ի Պոլիս դառնալ, Եղիազար արդէն իւր պատրիարքական և կաթողիկոսական հաստատութեան հրովարտակն առած՝ Պոլսէն 250 ուխտաւորներու հետ միասին կ՚ուղեւորի Երուսաղէմ, ուստի մեկնած էր Յակոբ։

Յակոբ Պոլիս հասնելով և Եղիազարի արարմանց տեղեկանալով կը դիմէ Ադրիանուպոլիս, կը խափանէ Եղիազարի հաստատութեան հրովարտակը և ինքն ծանր ըն-

ծանրով Եպարքոսէն նոր հրովարտակ կը հանէ իրեն համար. որպէս կաթողիկոս Համօրէն Հայոց։ Եղիազար այս լուրն առնելով Երուսաղէմէն կը մեկնի և Ռէմլէ կը բընակի։ Իսկ Յակոբ կաթողիկոս իւր գործը վճարելէն զկնի կը դառնայ յԷջմիածին։

Երուսաղէմի և Պօլսոյ պատրիարքական աթոռներն վերստին շփոթութեանց մէջ կը յուզին. Եղիազար ձեռք կը բերէ Երուսաղէմի պատրիարքութիւնը Աստուածատուրի մահէն զկնի, միանգամայն կաթողիկոսական անուն կրելով. Պօլսոյ մէջ ևս պատրիարքութիւնը կը բռնաբարուի զանազան անձինքներէ։ Յակոբ կաթողիկոսն կըստիպուի Էջմիածնէն վերստին Պօլիս երթալ խաղաղութեան ելք գտնելու համար։ Պօլսէն խաղաղասիրական թղթով կը հրաւիրէ զԵղիազար, բայց Զատիկը մերձեցած լինելով Եղիազար կը յապաղէ իւր երթալն 'ի Պօլիս։ Իսկ յետ Զատկին երբ կ'ուղևորի առ Յակոբ կաթողիկոս, Յակոբ կը վախճանի և կը թաղուի Բերայի կամ Պէյօղլուի Հայոց գերեզմանատան մէջ։ Եղիազար վերստին կը դառնայ յԵրուսաղէմ և համարձակ կը վարէ պատրիարքութեան և միանգամայն Օսմանեան հպատակ Հայոց կաթողիկոսութեան պաշտօն, Երուսաղէմի մէջ յատուկ եկեղեցի շինելով և Էջմիածին անուանելով։

Digitized by Google

Յակոբ կաթողիկոսի մահէն վերջ Էջմիածնի կաթողիկոսական Աթոռն երկու տարի պարապ կը մնայ : Այս խորհրդով Էջմիածնի միաբանից և հաւանութեամբ Երեւանի պարսիկ իշխանին՝ Եղիազար կը հրաւիրուի Երուսաղէմէն յԷջմիածին կաթողիկոսական պաշտօն վարել համօրէն Ազգին համար :

Եղիազար Երուսաղէմէն Պոլիս դիմելով հաստատութեան հրովարտակ կ'առնու և կ'երթայ յԷջմիածին : Եղիազար ձեռնամուխ կը լինի շինութեանց և նորոգութեանց . կը կանգնէ երկու փոքր զանգակատուններ և կը նորոգէ Զորագեղոյ եկեղեցին : Եղիազարու կաթողիկոսութեան ժամանակէն կըսկըսին Պոլսոյ մէջ կրօնական վէճերն և պառակտումներն , որոց վրայ պիտի խօսինք յաջորդ Շրջանին մէջ : Հայերէն ոմանք լատինական դաւանութեան կը յարին և. ատելութիւնը կը պայրդի Եկեղեցւոյ զաւակաց մէջ : Առաջին անգամ լսելի կը լինին տարբեր անուններ համամայր զաւակաց մէջ , այն է Կաթօլիկ . Ֆռանկ , Ուղղափառ , ո՛չ ուղղափառ և այլն բառեր:

Եղիազար այս նորամուտ պառակտմանց դէմն առնելով կը ջանայ խաղաղութեան ելք գտնել և մինչդեռ կը խորհի բանիւն և խաղաղարար մարդիկ ղրկել 'ի Պոլիս . կը վախճանի (1691) , ինն տարի Էջմիածնի մէջ կաթողիկոսութիւն վարելէն զկնի :

Digitized by Google

Եղիազարին կը յաջորդէ իր աշակերտն Նահապետ Եդեսացի, որ հանգոյն իր նախորդին շինութեանց կը պարապի և ազգային խռովութեանց առաջն առնելու կը ջանայ։ Նահապետի կաթողիկոսութեան առաջին տարիներուն մէջ Լատին կրօնաւորք ոմանք, Յիսուսեան կարգէն, յԱրարատեան աշխարհն դիմելով և յԷջմիածին հանդիպելով հիւրասիրական ընդունելութիւն կը գտնեն կաթողիկոսէն. բայց որովհետեւ իրենց գաղտնի նպատակը մարդ որսալ էր, ուստի զանազան խարամանկութիւններ կը բանեցնեն կաթողիկոսի առջեւ։ Նահապետ իւր կաթողիկոսութեան հինգերորդ տարւոյն մէջ թուղթ կը գրէ Հռովմայ Իննովկենտիոս ԺԲ պապին և կը խնդրէ սէր ցուցանել պանդուխտ Հայերուն, ինչպէս ինքն կը ցուցնէ Լատիններուն։ Նահապետ կաթողիկոսի վրայ ամբաստանութիւն կը յուզի, որպէս թէ կամի ազգը լատինացնել և այս պատճառաւ գահընկէց կը լինի ու կ՚աքսորուի և կ՚աթոռակալէ Ստեփաննոս Ջուղայեցի, որ ամբաստանութեան գլխաւոր առիթն էր։ Սակայն Ստեփաննոս տասն ամսէն զկնի կը զրկուի աթոռակալութենէ և կը բանտարկուի, ամբաստանութիւններ գրելով Նահապետ կաթողիկոսի վրայ առ Եփրեմ պատրիարքն Պօլսոյ Ստեփաննոս կը մեռ-

նի առաջնորդարանի մէջ և Նահապետ արձակ համարձակ կը շարունակէ իւր կաթողիկոսութիւնն և իւր գրութեան պատասխանւոյն հետ կ'ընդունի Հռովմայ պապէն, ձեռամբ Կարնեցի Խաչատուր վարդապետին, քանի մի ընծաներ, ընդ որս և մի փառազարդ աթոռ:

Նահապետի թղթակցութիւնը Հռովմայ պապի հետ վարանման մէջ կը ձգէ Պոլսոյ Հայերն, որոնք արդէն լատինական վէճաբանութեանց մէջ կը յուզէին, և Եփրեմ պատրիարք կը պատրաստուի ստուգել Նահապետի վրայ եղած կասկածները, սակայն ինքն կ'աքսորուի և իրեն կը յաջորդէ Մելքիսէթ, որոյ ձեռամբ և աքսորանքէ կ'ազատի Եփրեմ: Խռովութիւններն երթալով կը սաստկանան, լատինամիտները կողմէն եկեղեցաւոր անկարգութիւններ և բուն Հայոց կողմէն հալածանքներ կը յաճախեն և բանտ ու աքսորանք տեղի կ'ունենան: Բայց սոյն օրինակ ազգամիջեան փոթորիկներն ընդարձակ խորհրդածութեան կը կարօտին քան թէ նկարագրութեան, ուստի կը թողունք այս մասին յաջորդ Շրջանին մէջ սակաւուք խօսելու: Այս խռովութեանց ժամանակ կը վախճանի Նահապետ կաթողիկոս (1705) և Հայրապետական Աթոռն պարապ կը մնայ մօտ երկու տարի:

# ԵԿԵՂԵՑԱԿԱՆ

# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

---

## Ա.

*Ընդհանուր տեսութիւն և մատենագիրք։*

Յաճախ արհաւրանաց, աւերմանց, և գաղթականութեանց պատճառաւ ուսումնական յառաջդիմութիւնն գոգցես կը դադարի ներկայ Շրջանին մէջ։ Այն վանքերն, որոնք երբեմն ուսումնավայրք էին, գոգցես կը նսեմանան և շատերն կ'աւերին։ Թէպէտ և կը յիշուին պատմագրութեան մէջ զանազան ուսումնախնդիր վարդապետներ, թէպէտ և կը յիշատակուին զանազան կաթողիկոսաց թղթեր, բայց օրինաւոր երկասիրութիւններ խիստ պակաս են, մանաւանդ որ եղածներէն շատերն ալ տպագրուած չեն և առ ձեռն չունինք, որ կարենանք գնահատել։ Թէպէտ և Եկեղեցւոյ սոյնժամանակեայ վիճակին վերայ օրինաւոր տեղեկութիւն ստանալու համար խիստ կարևոր է, որ

ժամանակակից ձեռագիրներն տպագրուելին ։ Շատերն գուցէ տպագրուած չեն այն պատճառաւ, որ լատինականութեան դարաններ կը պարունակեն իրենց մէջ և կամ ստորին ոճով գրուած են։ Բայց պատմական քննութիւնը ոճոյն չը նայիր, այլ յիշատակարանաց մէջ աւանդուած անցից, եղելութեանց և փաստից ։

Նշանաւոր ուսումնականներն ու մատենագիրներն ներկայ Շրջանին մէջ սոքա են. —ՈՍԿԱՆ ԵՐԵՒԱՆՑԻ, ՎԱՐԴԱՆ ՅՈՒՆԱՆԵԱՆ, ՅԱԿՈԲ ՀՈԼՈՎ և ՆԱՐՍԵՂ, որոնք տպագրութեան հետամուտ եղան. սակայն Աստուածաշնչի տպագրութեան մէջ տեղ տեղ աղաւաղեցին նախնեաց ընտիր Թարգմանութիւնը, և որչափ գովելի է իրենց փոյթն ու եռանդը Ա. Գրոց տպագրութեան և տարածման համար, այնչափ պախարակելի է իրենց արած ինքնահաճ փոփոխութիւններն ։

ՍՏԵՓԱՆՆՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ ԼԵՀԱՑԻ, միաբան Էջմիածնի, որ Թարգմանած է Յակոբ կաթողիկոսի հրամանաւ Դիոնէսիոս Արիսպագացւոյն գիրքը, Յովսեպոսի պատմութիւնը, Յոհանու ոսկեբերանին Ճառից, և շարագրած է բառարան 'ի հայ և 'ի լատին լեզու ։

ՍՈՒՔԵԼ ՎԱՐԴԱՊԵՏ ԴԱՒՐԻԺԵՑԻ, որ երկարած է, յընթացս վաթսուն ամաց (1601

—1662) պատահած անցքերն, այն է Շահաբասի, իւր յաջորդաց, Պարսից և Օսմանեանց պատերազմներու պատմութիւնը և ընդ նմին Հայոց ազգի կրած տառապանքներն։ Առաքել վարդապետի պատմութիւնը, որչափ որ կարգաբանութեամբ չէ, սակայն խիստ սրտաշարժ է և մանրապատում։

ՂՈՒԿԱՍ ՎԱՆԱՆԴԵՑԻ, որ Ոսկան վարդապետին աշխատակից եղաւ տպագրութեան արուեստը կատարելագործելու Հայոց մէջ և զանազան մատեաններ տպագրելու։

ԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻ ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆ, որ զանազան գրքեր շարագրած է, այն է պատմական, վիճաբանական և այլ տապխսնք։

ԿՈՄԻՏԱՍ ՔԱՀԱՆԱՅ, եղբայր Երեմիայի, որ իւր ժամանակի պատմական համառօտ յիշատակարանը գրած է (ստուգութեան կարօտ), և Մեկնութիւն Գործոց Առաքելոց՝ ոտանաւոր բանիւ։

ԽԱՉԱՏՈՒՐ ՎԱՐԴԱՊԵՏ ԿԱՐՆԵՑԻ, աշակերտ Փրոփականդայի, որ քարոզագիրք շարագրած է և աստուածաբանական ինչ ինչ երկասիրութիւններ, լատինական հետեւողութեամբ։

Digitized by Google

## ՇՐՋԱՆ ԵՕԹՆԵՐՈՐԴ

## 1700—1867

### Ա.

Համառօտ տեսութիւն ։

ՆԵՐԿԱՅ ՇՐՋԱՆԻ պատմագրութիւնը խիստ տխուր երեւոյթներ ունի Հայաստանեայց Եկեղեցւոյն նկատմամբ ։ Եթէ առաջին շրջաններուն մէջ հալածանքներն ու մոլեռանդութիւններն արտաքին էին, այն է Պարսկական, Հագարական, Յունական և Հռովմէական, ներկայ Շրջանին մէջ ներքին կրօնական պառակտումներն եւս կը յաւելունան ։ Սւնիթոռական վրդովմունքներն Արեւելեան Հայաստանի մէջ և Պապական հետամտութիւններն Կիլիկիոյ մէջ կարծես թէ երկար ժամանակ աստ և անդ արմատներ տարածելով յատկապէս պառակտման ոստեր կ'ընձիւղեն ներկայ Շրջանին մէջ ։ Պապականութիւնը վեշտասաներորդ դարէն 'ի վեր բազմաթիւ ժողովուրդներ կորուսանելով իւր ծոցէն Արեւմուտքի մէջ, գոգցես



Digitized by Google

ջանահնար կը լինի նոյն կարատեան տեղը լը-
ցուցանել Հայոց տառապանքը Ազգի ան-
դամներին որպարով։ Ժամանակին եւս կ՚օգնէ
Պապականութեան, Հայոց ազգին նկատ-
մամբ։ Հայոց հայրապետական Աթոռոյ
հաստահարեալ վիճակին և Պօլսոյ ու Երու-
սաղէմի պատրիարքութեանց շփոթութիւն-
ները լայն ասպարէզ կը բանան Պապականու-
թեան առջեւ ներկխուղ ձուկն որսալու Հայ
ազգայնութեան յուզուած և պղտորուած ջը-
րոյն մէջ։ Արդէն Լեհաստանի և Մաջառստա-
նի (Հունգարիոյ) Հայերը կրօնքով և ազգու-
թեամբ զոհ գնացած էին Պապականութեան
և արդէն բաժանման դուռն բացուած էր
Պօլսոյ գաղթականաց համար։ Ամենափոքր հա-
մէ պառակտման հրդեհը պիտի բորբոքուէր
և եղբայր եղբօր դէմ յատելութիւն վառէր։
Այսպէս իսկ եղեւ։ Հետեւապէս պիտի
տեսնենք, որ ներկայ Շրջանին մէջ երկար
խռովայուզութիւններէն յետոյ մեր Ազգի
մի հատուածը Պապականութեան կը յարի
և իրեն համար առանձին եկեղեցի կը կազմէ։
Պիտի տեսնենք, որ այս հատուածը կամ պա-
ռակտումն խիստ աղէտալի դէպքերով կը
կատարուի և տխուր հետքեր կը թողու ազ-
գային մարմնոյ մէջ և մանաւանդ ամենա-
տխուր էջեր ազգային պատմագրութեան
մէջ։ Քանի մի պատրիարքներ և իշխաններ

կը ջանան այս պատուականն առաջին առնուլ մերթ սաստիւ, մերթ յորդորանօք և մերթ ժողովներով, բայց անհնարին կը լինի ։ Երկու կողմէն ևս շատ անգամ կիրքերն այնպէս կը զայրանան, որ զանազան մատնութիւններ կը լինին և Տէրութիւնը կստիպուի միջամտել և սաստել բանիւ և աքսորանքով ։ Հաստատեալներն պաշտպանութիւն կը գտնեն Գաղղիական դեսպանէն, իսկ Միաբանեալներն մեծ մասամբ Օսմանեան Տէրութեան նախարարներէն, և այսպէս ամեն տեսակ ազգավնաս դէպքեր և մինչեւ անգամ սպանութիւններ տեղի կ'ունենան ։ Պատմական անաչառ դատաստանը կստիպէ զմեզ և ոչ մի կողմն արդարացնել, որովհետեւ ինչպէս որ հաստատեալներու գործած կրօնափոխութիւնը և իրենց մայրենի Եկեղեցւոյն դէմ տեղացած անարգանքներն դատապարտելի են, նոյնպէս ոչ սակաւ դատապարտելի է և միւս մասին գործ դրած հալածասիրական միջոցները ։ Արդէն Պապականութիւնը Հայոց Ազգէն որսեր պիտի ունար, բայց չենք տարակուսիր ասելու, որ այնչափ բազմաթիւ պիտի չը լինէին, եթէ միւս կողմէն հալածասիրական միջոցները պակսէին ։ Սակայն ժամանակի ոգին այնպէս էր, դէպքերն այնպէս կը թելադրէին եւ Հայաստանեայց Եկեղեցին որ շարունակ

ներողամիտ եղած էր օտարաց դէմ, չըկարաց նոյն վիճակի մէջ գտնուիլ իւր ծոցէն բաժնուած զաւակներուն դէմ, որոնք օտարներէն աւելի սկսան նախատել, հալածել և անարգել իրենց Մայրը։ Որչափ որ նպատակ չունինք այս դասն ժամանակի մանրապատում անցքերն մի առ մի գրել, որոնք զգայուն Հայու երեսն ամօթահար կը կարմրեցնեն. որչափ որ զզուելի են մեզ համար այն կրօնական վիճաբանութիւններն, որոնք հատուածեալներն իրենց մայրենի Եկեղեցւոյ դէմ գրած են. որչափ որ անհնարին վիշտ է մեզ համար այս պատահմանն յիշատակութիւնը արձանագրել մեր ազգային պատմութեան ընթացքին մէջ, այնու ամենայնիւ չենք կարող գէթ նշանաւորներու վրայ անցնել չըձգել։ Սկսինք ուրեմն։

---

## Բ.

Կրօնափոխական յուզմունք. — Յիշատակութիւնք քանի մի անուր անցից. կաթողիկոսունք՝ Աղէքսանդր Ջուղայեցի. Աստուածատուր Համադանեցի. Կարապետ Ուլնեցի. Աբրահամ Բ Վանեցի. Աբրահամ Գ Կրետացի. Ղազար Ջահկեցի. Պետրոս Անթացի։

ՀԱՅԱՍՏԱՆԻ քաղաքական անկախութեան և Թագաւորական հարստութեան ան-

կողմէն, զի ի Հայաստանեայց Եկեղեցին և ազգային կրօնքը համարուած էր բովանդակ Ազգին համար կեդրոն միութեան և անկախութեան։ Եկեղեցին համարուած էր նմանապէս և Հայրենիք գաղթականի և հայրենազուրկ հայուն համար։ Ուստի մայրենի Եկեղեցւոյ ծոցէն բաժնուիլն ոչ միայն լոկ կրօնափոխութիւն էր, այլ և ազգուրացութիւն։ Բայց դժբաղդաբար այս կրօնափոխական բաժանումն արդէն սպրդած էր Հայաստանեայց Եկեղեցւոյ զաւակաց ոմանց մէջ և կը խմորէր շատերու սրտերը։ Եղիազար կաթողիկոսի օրէն 'ի վեր, ինչպէս առաջ տեսանք, պառակտման հուրը սկըսած էր արծարծիլ։ Այս պառակտման միջոցին քանի մի պատրիարքունք Կ. Պոլսոյ կը փոփոխին, մերթ ալ կը հաստատին, ինչպէս յայտնի է հետեւեալ պատրիարքաց պաշտօնական տխուր անցքերէն, այն է Եփրեմի, Աւետիքի (1), Կայծակն Գալուստ վարդապետի,

(1) Այն ժամանակի անցից նկարագիրը ուսումնասիրութեան արժանի է — Երեւումն դիւական մարդը և Աւետիք Պատրիարք Հայոց — վերնագրով տետրակն, զոր հրատարակած է (1871) Մասեաց Արգոյ խմբագիրն Կ. Ս. Իւթիւճեան, թարգմանելով Մարքոս Թօքէն Գաղղիական հեղինակաց բանասիրի երկասիրութենէն։ Այս վաւերական աղբիւրներէ քաղուած գըրուած երկն իսպառ կը փարատէ այն մռայլն, զոր ձեռնտուութեան ջանացեր էր կուսակալներ ազգային պատմական կենաց վրայ, ներկայ Շրջանին մէջ։

Digitized by Google

Մատթէոս Կեսարացւոյ, Քիւրհանճի Մարտիրոս վարդապետի, Անգուրեցի Տիրացու, Սահակ վարդապետի Սեբաստացւոյ, Յովհաննէս վարդապետի Զմիւռնացւոյ և Յովհաննէս Տիրացու Գանձակեցւոյ։ Սոքա ամենքը, բաց չափու իրենց հասկացողութեան, մէրթ օրէնաւոր և մէրթ ապօրինի միջոցներով, կը ջանան պառակտման առաջն առնուլ, բայց դժբաղդաբար յուզումն աւելի կը սաստկանայ եւ Գանձակեցւոյ պատրիարքութեան ժամանակ Պապականութեան յարածներն կը խորհին իրենց համար առանձին եկեղեցի հաստատել և պատրիարք ընտրել, բայց չեն յաջողիր, որովհետեւ Տէրութեան աչքերուն Ազգի ներկայացուցիչն միայն հայկական պատրիարքն էր։ Սակայն առանձին պատրիարք չունենալը մի արգելք չէր պապականամիտներու բազմանալուն, որովհետեւ մի կողմէն արդէն բաց էր իրենց առջեւ լատինական եկեղեցիները և լատին կրօնաւորները շարունակ կը յորդորէին հաստատել Հայերը, որ ամենեւին մայրենի եկեղեցին չերթան և հաղորդակցութիւն չունենան իրենց ազգակցաց հետ, և միւս կողմէն Մխիթար Սեբաստացին արդէն (1700) Կարնէն 'ի Պօլիս գալով, (1703) աշակերտներով Մոռայի Մեթոն քաղաքն անցնելով (որ Վենետիկոյ իշխանութեան ներքեւ էր) և այն

տեղ, մէկ նաւատորմ չկրնալով հաստատելու՝ արտաքին Հռովմայ, և այսպէս անկէ (1717) Վենետիկոյ Ս. Ղազարու կղզին փոխադրուելով՝ սկսած էր հիմն դնել այն Միաբանութեան, որ օր աւուր երթալով և մայրենին Եկեղեցին խորթանալով՝ պիտի ոչ միայն իրենք կուրօրէն հպատակէր Պապութեան լուծին, այլ և գրագիտութիւն տարածելու պատրուակաւ պիտի ջանար պապական հիւթերով Հայ սրտերը թունաւորել, ազգային պառակտման պատառուածը աւելի լայնել, նախնի մատենից ուղղութեանը և պապական մեկնութեամբ մտքեր պղտորել և շարունակ Հռոմայ և Պապ տեղակալներ, կարծելով թէ այս առնելով՝ մեծ պաշտօն կը մատուցանէ Աստուծոյ։ Թողունք նախատինքները, թշնամանքները և պայքագին ատելութիւնն ընդդէմ Հայաստանեայց Եկեղեցւոյ, որոց մի առ մի յիշատակութիւնը տաղտկալի են փափկալուր լսելեաց և զգայուն սրտից։

Այսպէս ահա Գրանձակեցւոյ պատրիարքութեան ժամանակ կրօնափոխութեան պառակտումն և խռովութիւններն արդէն սաստիկ զայրացած էին և միանգամայն Նորաւոյն պատրիարքական Աթոռն ծանր պարտուց տակ կը հեծէր։ Իսկ Էջմիածնի կաթողիկոսական Աթոռն ոչ պակաս վշտակրութեան մէջ էր թէ առանձինն իւր վիճակին

Հռոմայ և թէ Պօլսոյ խռովայոյզ անցքերուն համար ։ Նահապետ կաթողիկոսի մահէն երկու տարի վերջ (1707) Հայրապետ ընտրուած էր Աղեքսանդր Ջուղայեցին, որ չը կարենալով հեռուէն դարման մատուցանել ազգային պառակտման, գէթ կը գրէ Կղեմէս ԺԱ պապին տեղի չը տալ երկպառակութեան Հայոց բազմամիլիոն Ազգին մէջ և չը սերմանել որոմն կրօնափոխութեան, որ նախատինք է Քրիստոնէութեան ։ Թէպէտ և Մ. Չամչեան (՚ի հարկէ և իւր կուսակից հետեւողներն) անհիմն մեկնութեամբ Աղեքսանդրի առ Պապն գրած ախտողապական կամ պատուասիրական բառերէն պայծառեցընելով եզրակացուցած է, որպէս թէ հպատակութեան թուղթ գրած է ՚ի գիտաց Ազգին, մինչդեռ Ազգն, մանաւանդ սոյն միջոցին, Պապականութենէ այնչափ կը զարհուրէր, որչափ մի կորստական անդունդէ ։

Աղեքսանդր կը վախճանի զատն փչառակռութեան մէջ և կը յաջորդէ Աստուածատուր Համատանեցի, որ կ՚աշխատի քանի մի նորոգութիւններ առնել Էջմիածնի մէջ։ Աղեքսանդրի կաթողիկոսանալու թուականին մէջ Կ. Պօլսոյ պատրիարք կ՚ընտրուի Մշոյ Ս. Կարապետի վանուց միաբան Բաղիշեցի Յովհաննէս վարդապետն, Կոլոտ մականուանեալ, և կը ջանայ ազգային պառակտումները

բարեկարգել և հեղինակաւորներն բանալ։ Ե-
րուսաղէմի և Պօլսոյ պատրիարքութիւնները
իրարմէ կը զատէ, որ առ ժամանակ մի միա-
ցած էին և իւր ընկերակիցն Գրիգոր վար-
դապետը միաբան Ա. Կարապետի կը հաստա-
տէ պատրիարք Երուսաղէմի Աթոռոյ, որ շըղ-
թայ առնելով իւր վիզն ութ տարի կ'աշխա-
տի և կը հաստատէ Երուսաղէմի պատրիարքն
և այս պատճառաւ Շղթայակիր կը կոչուի։ Բաց
յայսմանէ Ա. Յարութեան տաճարի նորո-
գութեանը կը ձեռնարկէ Յունաց և Լատի-
նաց հետ, և շատ շինութեանց հետ Ա.
Յակոբեանց տաճարն ալ կը նորոգէ։ Նոյն-
պէս Յովհաննէս պատրիարքն Պօլսոյ մէջ
շատ եկեղեցիներ կը շինէ և կը նորոգէ եւ
վախճանելով կը թաղուի Պալաթիոյ եկե-
ղեցւոյ գաւթին մէջ։ Այս երկու պատ-
րիարքներն ալ այն խռովայոյզ ժամանակին
մէջ մեծ ծառայութիւններ կը մատուցանեն
Ազգին։ Իսկ Աստուածատուր կաթողիկոսն,
իւր հայրապետութեան առաջին տարինե-
րուն մէջ ամէն ինչ խաղաղական կեանք
ունենալէն զինքը կը ստիպուի այս Թահմա-
ռական շըլթը յերկիւղէ Թահմազեան — Պարսի
խանին, որ Երեւանը կը սասանեցնէր, և մի-
ջո, Օշական գիւղին մէջ, եղնելով լուանի
խռովարարութեանց Նկը անէծի ամենքէն և
կը վախճանի ամենայնեւս կաթողիկոսութե-

նէն վերջ, որոյ մարմինն կը թաղուի Հռիփ-սիմեանց վկայարանին մէջ. Աստուածատու-րի՝ կաթողիկոսութեան վերջին տարիներուն մէջ, այն է 1723ին, Տրապիզոնի Աբրահամ առաջնորդն իբրև հեռանալով Հայաստա-նեայց Եկեղեցւոյ ծոցէն կ'երթայ 'ի Լիբա-նան և այն տեղ կը հաստատէ լատինացեալ կրօնաւորաց վանքն և ապա Պապի հրամա-նաւ լատինահայոց կաթողիկոսութեան հի-մը կը դնէ, ինքնին կաթողիկոսանալով. 1868ին այս կաթողիկոսութիւնը կը միանայ Պոլսոյ Հռովմէականաց պատրիարքութեան հետ և բոլորովին Պապին կը հպատակի Անտօն Հա-սունի շնորհիւ, և յետ այնորիկ Հասունեան և Հակահասունեան կուսակցութիւններն կը գոյանան, որոնք ցարդ կը տևեն.

Աստուածատուրին կը յաջորդէ Կարա-պետ Ուլնեցի. արքեպիսկոպոս Գաղատիոյ, որ կ'ընտրուի Պոլսոյ մէջ և կը ջանայ հակառա-կութիւններն խաղաղել, բայց 'ի զուր. Կը ճանապարհորդէ սա յԱնկիւրիա և յԵւդո-կիա, սպասելով խաղաղութեան լուր տա-նելու Արարատեան աշխարհէն, որ Օսմա-նեան և Պարսկական պատերազմներու մէջ կը ծփար. բայց չյաջողելով կը դիմէ Էջ-միածին և Կամենայ կաթողիկոսութենէն ըն-կնի կը վախճանի, մինչդեռ արդէն Պոլսոյ մէջ լատինահայոց խռովութիւններն և Ա-

րուսաղէմի մէջ յունական հալածասիրու-թիւնները կը բորբոքէին ։

Կարապետ Ուլնեցւոյն կը յաջորդէ Աբրահամ Բ. Մանցի, առաջնորդ Մշոյ (1730), և երկու տարուն կը կանգնէ Էջմիածնի տաճարին մէջ յանուն Ս. Լուսաւորչին և Յակոբ Մծբնայ հայրապետին, վախճանելով 5ամեայ կաթողիկոսութենէն զկնի ։

Աբրահամին կը յաջորդէ Աբրահամ Գ. առաջնորդ Թեքիրտաղի, որ ներկայ էր իբր նախորդի մահուանն Էջմիածնի մէջ ։ Սորա համար կ'աւանդուի թէ հրաւիրեցաւ Թահմազ—Գուլի խանէն Մուղան դաշտը տուրբ օրհնելու և Թահմազի մէջքը կապելու ի նշան թագաւորութեան, և այս մեծամեծ պարգևներով յԷջմիածին դառնալով կը վախճանի (1737) ։

Աբրահամի մահէն զկնի կաթողիկոսական ընտրութիւնն կը յետաձգի, որովհետև ոմանք կը կամէին Երուսաղէմի Գրիգոր պատրիարքն ընտրել, որ տակաւին կենդանի էր, և ոմանք Ղազար Ջահկեցին, առաջնորդն Զմիւռնիոյ ։

Էջմիածնի միաբաններէն շատերն թուղթ կը գրեն Պոլիս, Գրիգորի կաթողիկոսութեան համար, որ և իսկոյն կ'ընտրուի հաւանութեամբ Յովհաննէս Կոլոտի, որ տակաւին կենդանի էր, իսկ ոմանք ծածուկ Ղազար

Ձանիկեցւոյ անունն ամէնքը տառապելով կը
զրկեն և նորա կաթողիկոսութիւնը կ'ուզեն.
Գրիգոր երբ կը լսէ այս, իսկոյն կը հրաժարի
նոր խռովութեան առիթ չըտալու համար
և ընտրութիւնը Ղազարին կը վիճակի.

Ղազար, տակաւին արքունի հրովարտակ
չըստացած, կ'ուղեւորի յԷջմիածին և մեծ
շքով կը մտնէ Վանքին, ուր քաղաքացւոց
սիրտն ետ շահելով որ դժկամակած էր ու-
ղեւորութեան տարապայման շքեղութեան
վրայ, կ'անցնի 'ի Կարս և այս կասկածե-
լով երկար մնալու Օսմանեան սահմանի մէջ.
շուտով կ'անցնի Պարսից սահմանը և (1737)
Կաթողիկոս կ'օծուի Էջմիածնի մէջ. Բայց
մի տարիէն յետոյ Շահ Մահմուտ Խանի
հետ ունեցած գժտութեան համար կը բան-
տարկուի և Թահմազի ձեռքով կ'ազատի.
Մի պարսիկ նախարարի հետ ունեցած գժ-
տութեան պատճառաւ կը բանտարկուի
Թահմազէն հինգ ամսոյ չափ, զրկուելով թէ
կաթողիկոսութենէ և թէ շատ ստացուած-
քէ. Իւր եղբայր Տէր Յովսէփի ձեռամբ
կ'ազատի և վերստին կը հաստատուի իւր
իշխանութեան մէջ. Նա կոչնաւորէ Պետ-
րոս (Բիւթիւր կոչեցեալ) և Եզէքիանեց
վարդապետները իբրև ամբաստանիչներ և
խնդրանօք իշխանաց բանտէ կ'ազատէ. Վե-
րջին պայքարմամբ (1746) Պետրոս վարդա-

պետն Սևան կղզին կ՚աքսորէ, բայց և ինքն շատերու ձեռամբ Թահմազին կը մատնուի և Էջմիածնի Աթոռոյ սպասաւորներն ծախելով և մեծ տուգանք տալով կ՚ազատի տառապանքէ։ Էջմիածնի միաբաններն զայրանալով կը բողոքեն ՚ի Պօլիս, ուր պատրիարք էր Յակոբ Նալեան (որուն վրայ յետոյ պիտի խօսինք) և աթոռէ ընկենլով կ՚աքսորեն ՚ի Սեւան կղզին և նորա փոխանակ կը կացուցանեն Պետրոս վարդապետն։ Սակայն Ղազար տասն ամսէն զկնի ազատելով Սեւանայ աքսորանքէն կը դառնայ յԷջմիածին, Պետրոսը կը ղրկէ ՚ի Ջահուկ մի սենեկի մէջ կալանաւորելով, ուր և կը վախճանի սովէն և սրտնեղութենէն։ Ղազար այս անցքէն յետոյ տարի ու կէս եւս կ՚աթոռակալէ և կը վախճանի (1750) ընդ ամենն մօտ 13ամեայ կաթողիկոսութենէն զկնի։ Կաթողիկոսական աթոռոյ այս խռովալի վիճակէն, Տաճկաստանի մէջ յուզուած լատինական խռովութիւններէն և Արեւելեան Հայաստանի մէջ կատարուած Պարսկական հարստահարութենէն արդէն դիւրին է գուշակել Հայաստանեայց Եկեղեցւոյ այն ժամանակուայ տառապալից վիճակը։

## Դ.

Կաթողիկոսունք. — Մինաս Ակնցի. Աղեքսանդր Բ Պօլսեցի. Սահակ Ե Կեղեցի. Յակոբ Ե Շամախեցի. Սիմէոն Երեւանցի, Ղուկաս Կարնեցի, Դանիէլ Գայ-ազլոնեցի.

Սոյն կաթողիկոսներէն առաջին չորսը խիստ կարճատեւ կեանք կ'ունենան իրենց ընտրութենէն յետոյ։ Մինաս Ակնցին (1751) Պոլսոյ մէջ ընտրուելէն եւ Էջմիածնի մէջ օծուելէն զկնի մի տարի միայն աթոռակալելով կը վախճանի։ Աղեքսանդր Պոլսեցին եւս կ'ընտրուի նոյն քաղաքի մէջ եւ Էջմիածին կաթողիկոսական օծումն ընդունելով տարի ու կէսէն յետոյ կը վախճանի։ Սահակ Կեղեցին, Ահագին կոչեցեալ, որոյ ընտրութեան մասին մեծամեծ յուզումներ կը պատահին, Պոլսոյ մէջ մի տարի մնալէն զկնի կ'անցնի 'ի Կարին, ուր կը մնայ երեք տարի, չը կամելով Էջմիածին երթալ։ Սահակի համար ժողով կը գումարուի Պոլսոյ մէջ Յակոբ Նալեանի պատրիարքութեան ժամանակ, կաթողիկոսութենէ կը մերժուի եւ առանց Էջմիածին երթալու եւ օծումն ընդունելու կը վախճանի (1759) եւ կը թաղուի Լուսաւորչի վանքին մէջ, որ 'ի Կարին։ Սահակին տեղ կ'ընտ-

Digitized by Google

րուն Յակոբ Շամախեցին և չորս տարի համագարտութեամբ վարելով իւր իշխանութիւնը կը վախճանի Իզմիրի մէջ։ Նոյնպէս աննշան կ'անցնին սոյն կաթողիկոսաց կարճատեւ կեանքը, բայց սոցա կաթողիկոսութեան ժամանակ լատինահայոց յուզմունքներն անընդհատ կը շարունակէին, ընդ նմին և փոփոխութիւնք Երուսաղէմի և Պոլսոյ պատրիարքութեանց։

Յակոբ Շամախեցւոյ մահէն զկնի ժողով կը գումարուի Էջմիածին նոր կաթողիկոսի ընտրութեան համար, ուր երկար խորհրդակցութիւններէն յետոյ հինգերորդ գումարման մէջ կ'ընտրուի Սիմէօն Երեւանցի, որ խնդրոյն Թուղթ կը գրէ և իւր ընտրութիւնն կը ծանուցանէ Տաճկաստանի ազգայնոց և նոցա հաւանութիւնն եւս կ'ընդունի։ Սիմէօնի կաթողիկոսութեան ժամանակ հայ վարդապետներէն ոմանք, մանաւանդ Զմիւռնիոյ առաջնորդ Սատաղացի Աբրահամ վարդապետն, կը խորհէին Պոլսոյ մէջ կաթողիկոսական փոխանորդութիւն հաստատել. սակայն այս խորհուրդը կը մերժուի, որովհետեւ պատրիարքութիւնն արդէն կաթողիկոսական փոխանորդութիւն էր։ Սիմէօն կաթողիկոս, որոյ հայրապետութեան ժամանակ անպակաս էին պարսկական հարստահարութիւնք, կը յաջողի Տպարան հաստա-

Ղուկասի վախճանէն և մահէն զկնի Էջ-միածնի միաբանները կը ծանուցանեն Տաճ-կաստանի ազգային նոր կաթողիկոսի ընտ-րութեան հանդէս խորհելու : Եւ մինչդեռ խորհրդեան մէջ կը լինին, Յովսէփ արքեպիս-կոպոսն Արղութեանց, Երկայնաբազուկ անուա-նեալ, որ Ռուսաց նորոգ գաղթական Հայ-ոց նուիրակն ու առաջնորդն էր և միանգա-մայն սաստիկ մտերիմն Կատարինէ Թագուհ-ւոյն, (որուն հետ Հայոց Թագաւորութեան վերահաստատման դաշնագիր անգամ պատ-րաստած էր), կը յաջողի կաթողիկոսական ընտրելի ներկայանալ Ազգին, ուստի և հրա-վարտակ կը հանուի Օսմանեան Տէրութե-նէն որ երթայ Էջմիածին օծուելու : Սա-կայն մինչ Ռուսաստանէն կը հասնի Տփխիս և մեծաշուք ընդունելութիւն կը գտնէ իւր իշխանաւոր ազգակիցներէն, յանկարծ ա-նակնկալ մահուամբ կը վախճանի անդ ա-ռանց Էջմիածին երթալու և կաթողիկոսա-կան օծումն ընդունելու :

Յովսէփի մահուան լուրն Պոլիս կը հա-նի Էջմիածնի միաբան Լոռեցի Դաւիթ ե-պիսկոպոսն և հաւանութեամբ Ազգին կա-թողիկոս կ՚ընտրուի Պոլսոյ Դանիէլ պատրի-արքն : Դաւիթ իբր աւետաւոր ընտրու-թեան Դանիէլի կ՚աճապարէ յԷջմիածին և ինքն կը նստի կաթողիկոսական աթոռն :

զաւիրտ և հեզաբարոյ, որոյ կաթողիկոսութեան միջոցին լատինահպատակութիւնը արդէն բաւական առաջ գնացած էր ՚ի Պոլիս և Տաճկաստանի քանի մի քաղաքներուն մէջ։ Պօլսոյ Պօղոս պատրիարքն Ադրիանուպօլսեցի, կաթողիկոսէն հաւանութիւն առնելով և Յունաց հետ խորհրդակցելով, Օրազատկի խոտորումն կը վերցնէ, որոյ համար երբեմն մեծամեծ գժտութիւններ կը ծագէին Հայոց և Յունաց մէջ, մանաւանդ Երուսաղէմ։ Պօղոս կը ջանայ լատինամիտ Հայերն ևս վերստին միացնել Հայաստանեայց Եկեղեցւոյ հետ, բայց ապարդիւն կը մնայ իւր աշխատանքն և խաւալութիւններն աւելի կը սաստկանան։ Այս միութեան շարժառիթը կը լինի աւելի Օսմանեան Տէրութիւնը, որ կը հրամայէ Պօղոս պատրիարքին բոլոր Հայերն իւր պատասխանատուութեան տակ առնուլ, որովհետև Լատինահայք տակաւին առանձին պատրիարք չունէին։ Պօղոս կը յօժարի և երկու կողմէն բուն Հայերէն և հատուածեալ ազգայիններէն զանազան իշխանք և եկեղեցականք ՚ի ժողով կը գումարին միութեան վրայ խորհելու։ Ժողովական խորհրդները կը տևեն Ծննդեան 8դ. օրէն մինչև Աւագ Չորեքշաբաթին։ Այս մանաւանդ ժողովումներէն զկնի կը լինի եկեղեցական ընդհանուր ժողով Մայր Ե-

բանտելու պատրիարքներին և այլ նշանաւոր անձինք Ի. Դուռը կը կոչուէին, որպէս զի երաշխաւորութիւն յանձն առնուն. Թէ՛ բուն Հայոց և թէ՛ հռոմէական Հայոց համար։ Եւ նոքա հռոմէադաւանից զրպարտութիւնը հերքելէն յետոյ, միայն Հայոց համար կը խոստանան երաշխաւորել։ Եւ որովհետև Յոյնք ապստամբած էին Օսմանեան Տէրութեան դէմ, Սուլթան Մահմուտէն հրաման կ'ելնէ որ Գաղղիոյ, Անգղիոյ և Ռուսիոյ դեսպաններին ճամբուին և նմանապէս աքսորուին հռոմէական Հայերն, որոնք չը կամեցան գալ և միանալ Ազգին հետ և հայկական պատրիարքի պատասխանատուութեան տակ մըտնել։ Եւ ահա այսպէս կրկին պապականաց և հռոմէադաւան Հայոց աքսորն, որուն վրայ չենք ախորժեր երկար խօսիլ։ Իսկ վերատին Հայաստանեայց Եկեղեցւոյ ծոցը դիմողները կ'ազատին։

Երբ (1829) Գաղղիոյ և Անգղիոյ դեսպաններն վերստին Պօլիս կը դառնան, Սուլթան Մահմուտին խնձոյք տուած ժամանակ, կը խնդրեն Հռոմէադաւան Հայոց դարձն աքսորանքէ։ Աքսորանքէ կը դառնան նոքա, և ահա (1830) Նուրիճեան Հայր Անտոն եւս արքեպիսկոպոս ձեռնադրուած Պիոս Ը Պապէն, կը դառնայ Հռոմէն ի Պօլիս իբրև մետրապոլիտ հռոմէադաւան Հայոց։ Սա

կայծ Նուարդինեանցւոյ Հայաստանի ընծայել է։ Պօղոսին ջերմեռանդութիւնը և ազգութիւնն Հոլանդական տպարանք կը կազմէ Ոսկան Երեւան Յակոբ վարդապետ, և այսպէս առաջին Հոգեւորական, բայց երկրորդն աշխարհական կամ քաղաքական տպարանք կը կոչուին։ Այսպէս երկար և փառաւոր խաղաղութիւններէն յետոյ Հայաստանեայց Եկեղեցւոյ դաւանութեան մի մասն կը բաժնուի մայրենի գրկէն և Պապութեան հովանւոյն տակ առանձին եկեղեցի և վարչութիւն կը կազմէ ՚ի ցաւ սրտի բոլոր Հայութեան։ Բայց թողունք մենք այս խնդիր անցքն և դառնանք վերստին մեր պատմութեան։

Մինչդեռ Սիմէոն կաթողիկոս կ'աթոռակալէր յԷջմիածին, նորա հաւատարիմն Ներսէս արքեպիսկոպոս Աշտարակեցի Տփխիսի մէջ Վրաստանի և Իմերէթի Հայոց առաջնորդական պաշտօնը կը վարէր։ Ռուսական և Պարսկական պատերազմի նշաններն կ'երեւին։ Ներսէս կը գրէ Սիմէոն կաթողիկոսին Էջմիածնէն գալ և Հաղբատու վանքի մէջ նստիլ, որ Տփխիսու մօտակն էր։ Սիմէոն Հաղբատ կու գայ, բայց Ներսէս քարոզիչներ հանելով ժողովուրդը կը յորդորէ, որ Ռուսական արշաւանաց մասնակցին։ Սպասողութիւնը կը տիրէ բոլոր ժողովրդեան մէջ, որովհետեւ ամէնքը կը յուսան, որ Պարսկա-

կան լուծէն ազատուելով և Ռուսիոյ հովանաւորութեան տակ մտնելով՝ պիտի երջանկութիւն և բարօրութիւն վայելեն ։ Պատերազմական որոտումներն արդէն լսելի կը լինին (1826) և Ներսէս պատերազմական շարժման գլուխն անցնելով ոչ միայն հաց և կերակուր կը մատակարարէ Ռուսական զօրքին, այլ և յաճախապէս Հայկական հեծելազօր կը հանէ առանձին հագուստով և դրօշակով, և ինքն անձամբ կը մասնակցի, ստոյգ տեղեկութիւններ հաղորդելով Ռուս զօրապետներուն Պարսկական զօրաց մասին ։ Այս ամեն զոհողութիւնները կը կատարէ Ներսէս, որովհետեւ առաջուց խոստումն ընդունած էր Ռուսիոյ Տէրութենէն, որ յաղթութենէն զկնի Հայոց Ազգն ազատ պիտի լինի և անկախ իշխանութիւն պիտի ունենայ Արարատեան գաւառի մէջ ։ Ռուսք կը յաղթանակեն, պատերազմներն կը դադարին և Ներսէս կը պահանջէ խոստացած անկախութիւնն ու ազատութիւնը իւր Ազգին համար, սակայն ՚ի զուր ։ Պասկեւիչ և Կրասովսկի զօրապետներու մէջ գժտութիւն կը ծագի և Ներսէս միջամտելով ասոնց կը գրգռէ իւր դէմ Պասկեւիչի թշնամութիւնը ։ Ներսէս կը պահանջէ Ռուսական խոստման կատարումն և Պասկեւիչ կ'առաջարկէ Ներսիսին անձամբ Պետրբուրգ երթալ և

Կայսեր հետ խօսակցիլ ։ Ներսէս կ՚ուղեւորի պատարագին յուսով ՚ի Ռուսիա, սակայն երբ Պրոտ գետը կ՚անցնի, Ն. քայսի մէջ հրաման կայսերական Տէրութենէն երթալ ՚ի Բեսարաբիա եւ վիճակաւորութեան պաշտօն վարել։ Ներսէս կը զգայ որ ինքն իսկապէս աքսորուած է Պետերբուրգի Թշնամական թելադրութեամբ, բայց կը հպատակի եւ հաւանելով Բեսարաբիա կ՚երթայ ։ Չը մոռանանք ասել, որ բազմաթիւ Հայեր, որոնք Տաճկաց եւ Պարսկաց սահմաններէն գաղթած էին ազատութիւն եւ բարօրութիւն վայելելու յուսով Ռուսիոյ հովանաւորութեան տակ, սաստիկ նեղութիւններ եւ տառապանքներ կը կրեն Պետերբուրգէն, երկար ժամանակ անբնակ մնալով եւ սովէ ու նեղութիւններէ մեռնելով, որոց համար Ներսէս շարունակ կը հառաչէ իւր աքսորանաց մէջ, վասն զի գլխաւորապէս ինքն պատճառ եղած էր այս գաղթականութեան ։

Ներսէս կը մնայ ՚ի Բեսարաբիա, Եփրեմ ցաւօք եւ հեծութեամբ կը վախճանի եւ (1831) Կաթողիկոս կ՚ընտրուի Յովհաննէս Կարբեցին, որ եւ կը հաստատուի Ռուսական կառավարութենէ ։ Ռուսիոյ Տէրութիւնն իւր տուած խոստումը չը կատարելէն զատ կը մտաբերէ կաթողիկոսական Վարչութիւնն եւս ստրկութեան ենթարկել և կամաց կա-

մաց Հայոց Հոգևոր ազատութիւնն եւս խեղդել, որուն դէմ մեղանչած չէին երբէք Գաթոլիկական և Հագարական բռնութիւններն։ Կայսերական Հրամանաւ քանի մի անգամ մասնաժողովներ կը կազմուէին անդամակցութեամբ քանի մի կաշառաբեկ և օտարամիտ Հայերու, և ահա (1836) Կայսերական Կնքով վաւերացած Նոր Կանոնադրութիւն մի երեւան կ'ելնէ Հայաստանեայց Եկեղեցւոյ վարչութեան համար։ Կանոնադրութիւն, որով բոլորովին կը սահմանափակուի հայրապետական իշխանութիւնն, և կ'ենթարկուի Նորաստեղծ Սինոդի և Պրոքուրորի իշխանութեան, վիճակաւոր առաջնորդաց հաստատութիւն և արձակումն կը յափշտակուի ժողովրդի և իւր Հայրապետի ձեռքէն, եկեղեցական գանձերուն կառավարութեան ծաւոր երաշխաւորութեան ներքեւ կը դրուէին, և բոլորովին տակն ու վրայ կը լինի Հայաստանեայց Եկեղեցւոյ առաքելական վարչութեան ձեւն ու եղանակն և ըստ ամենայնի քաղաքականութեան քողոյն տակ կը ծածկուի։ Կը պատմեն, թէ Կարբեցի կաթողիկոսն երբ այս կանոնադրութիւնը Ռուսիոյ Տէրութենէն կ'ընդունայ և կը կարդայ, այլայլած վերջարը գետին կը ձգէ եւ կ'ասէ. « Եթէ իմանայի որ այսպիսի Կանոնադրութիւն պիտի առաջարկուի ինձ, ես

երբէք կաթողիկոս չէր ըլլիլ ։ Սակայն Ռուսիոյ ահաւոր Տէրութեան երկիւղն կը լռեցընէ ամէն ձայն և խռովութիւնք և Կանոնադրութիւնն կը սկսի գործադրուիլ ։

Յովհաննէս կաթողիկոս կը վախճանի (1842) և Ազգի հաւանութեամբ կ՚ընտրուի Ներսէս Ե Աշտարակեցի (1843), որ տակաւին Բեսարաբիոյ աքսորանաց մէջ էր 1829 թըւականէն 'ի վեր ։

Ներսէս Բեսարաբիայէն կ՚ուղեւորի 'ի Պետրբուրգ և (1844) այն ինչ կը պատրաստուի այն տեղէն դառնալ դէպ 'ի Վրաստան և ապա Էջմիածին, օտար դաւանութեանց Դեպարտամենտի (տեսչութեան) դիրեքտորն (Նախագահ) Սկրիպցին Կայսեր կողմէն կը ներկայանայ Ներսիսին և կ՚առաջարկէ Հայաստանեայց Եկեղեցին Ռուսաստանին հետ միացնել ։ Ներսէս վեհանձնաբար կը մերժէ այն ամօթալի առաջարկութիւնը, որով պիտի հարուածուէր Հայաստանեայց Եկեղեցւոյ ինքնօրէնութիւնը, որ հիմնուած է Հայոց Ազգի հազարամեայ չարչարանաց հիման վրայ ։

Ներսէս դառնալով Էջմիածին կը շարունակէ իւր պաշտօնը մի կողմէն ազգային լուսաւորութեան համար քրտնելով, ինչպէս և իւր առաջնորդութեան ժամանակ արդէն կանգնած էր Թիֆլիզի Ներսիսեան վարժա-

րանն . և միւս կողմէն Ռուսական Տէրութեան հետ անընդհատ իւր գրութիւններն շարունակելով ։ Ներսէս ամեն կերպով կ՚աշխատէր ոչնչացնել Ռուսաց առած Կանոնադրութիւնն, ամենևին չը սահմանափակելով իւր իշխանութիւնը քաղաքականութեան շրջանին մէջ ։ Սակայն իւր դէմ կը դրդուէ ոչ միայն Ռուսիոյ Տէրութիւնն , այլ և քանի մի ստորադաս իշխանաց և եպիսկոպոսաց ատելութիւնը , որոնք անխղճաբար զազրելի բողոքներ կը գրեն Ներսիսէն առ Տէրութիւնն Ռուսիոյ ։ Ներսէս այս ամենը կ՚իմանայ , բայց երբեք չը վհատիր , այլ կը շարունակէ իւր մեծ պաշտօնը ։ Ռուսիոյ Տէրութեան կողմէն (1857) Կովկասեան Փոխարքայի միջնորդութեամբ կ՚առաջարկուի Ներսիսին պատուանշան և ադամանդ վեղար , որպէս զի հրաժարի իւր պահանջումներէն եւ խաղաղութեամբ վարուի Տէրութեան հետ , սակայն Ներսէս կը մերժէ այս առաջարկութիւնը և իւր պահանջողական գրութիւններն կը շարունակէ , բայց սակաւ օրէն յետոյ , նոյն թուականի Փետրուար ամսոյն մէջ , գիշերը յանկարծամահ կը մեռանի Թիֆլիզի մէջ , գրիչը ձեռքին և կիսակատար թուղթը սեղանին վրայ , զոր կը գրէր յանուն Տէրութեան Ռուսիոյ ։ Թէ ինչ անցքեր կ՚անցնին այս մահուան միջոցին , չենք

ուզէր մի առ մի գրել, որովհետեւ իւրեն ժամանակակից դէպք արդէն շատ անգամ գրուած է ։ Ներսէսի մարմինը Թէֆլիզէն կը փոխադրուի և Էջմիածին կը թաղուի, որոյ տապանին վրայ կը քանդակուի – ՊԱՀՏՊԱՆ ՀԱՅՐԵՆԵԱՑ – վայելուչ սրբադրոշմն ։

Ներսէսի յաջորդի ընտրութեան և կաթողիկոսութեան վրայ խօսելէն առաջ քանի մի խօսք ևս մեր արդէն հաստատուած Բողոքականաց վրայ խօսինք ։

Մինչդեռ մի կողմէն Հռոմէադաւան ազգայնոց խռովութիւններն ու կրօնական վէճերն կը յուզէին, միւս կողմէն ևս Բողոքական Միսիոնարներն (քարոզիչներն) կամաց կամաց սկսած էին Տաճկաստանի մէջ գործոյներ բանալ, Հայ մեծամեծաց հետ բարեկամանալ և քարոզելով միտքերը պատրաստել նոր պառակտման համար ։ Մաթէոս պատրիարքի ժամանակ (տակաւին կենդանի էր Ներսէս կաթողիկոսն), բողոքական քարոզներն արդէն խմորած էին շատերու սրտերը ։ Մաթէոս պատրիարքն սկսած էր արդէն կրօնական վիճաբանութիւններ բողոքական քարոզիչներու հետ, բայց սոյն այս վիճաբանութիւններն արդէն երկուքն էին նոր պառակտման ։ Բողոքականութեան յառաջներն վերջերեւելու վրայ էին և Մաթէոսի բռնած բանադրական ընթացքը խիստ

ձեռնտու եղաւ բողոքական քարոզիչներու նպատակին, վասն զի հալածել՝ կը նշանակէ տարածել: Ըսել է, այսպէս, մի կողմէն բողոքական քարոզիչներու հետամտութիւնը, միւս կողմէն Բողոքականութեան յարողներու թեթեւամտութիւնը և միւս կողմէն Մատթէոս պատրիարքի անխոհեմ ընթացքն պատճառ կը լինին և մեր եղբայրներէն մի մասն կը հեռանայ մայրենի Եկեղեցւոյ ծոցէն և Բողոքականութեան յարելով առանձին հատուած կը կազմէ առանձին ազգապետ ընտրելով իւր համար: Այս նոր բաժանումն եւս սաստիկ կը վրդովէ Հայաստանեայց Եկեղեցւոյ խաղաղութիւնը, ինչպէս վրդոված էր արդէն Հռոմէական բաժանումն:

Ներսիսի մահէն յետոյ Ռուսաստանի Հայոց ողջամիտ մասն կը խորհէր կաթողիկոսին Տաճկաստանէն ընտրել, որպէս զի առաւել ազատօրէն կարող լինի հայրապետական իշխանութիւն վարել և այն քաղաքական դժուարութեանց առաջն առնուլ, որուն ենթարկուած էր կաթողիկոսական վարչութիւնը Ռուսիոյ տուած Կանոնադրութեան շնորհիւ: Ընտրութիւնը Մատթէոսին կը վիճակի, որ արդէն հրաժարած էր պատրիարքութենէ: Մատթէոս տակաւին ի Պոլիս, Ռուսիոյ [illegible] կը յաջողի,

տեղական Հայոց պարզմտութենէն շահուելով, Առաջարկութիւն մի խմբագրել և տպագրել տալ, որպէս զի Մատթէոս Էջմիածին երթալէն զկնի կատարէ։ Սակայն աչալուրջ ազգայնոց խորամտութեամբ այս առաջարկութեան պատրուակը կը բացուի և կը խափանուի։

Մատթէոս կաթողիկոսն կ'ուղեւորի 'ի Տփխիս և անտի յԷջմիածին։ Ի սկզբան խիստ յուսալից ընթացք կը բռնէ ազգային յառաջադիմութեան նկատմամբ, յարգելով ժողովրդեան կամքը և զանազան քաղաքաց մէջ դպրոցական Կանոնագրութիւններ վաւերացնելով և Հոգաբարձութիւններ հաստատելով, Էջմիածնի Մատենադարանի կարգաւորութեան համար փութաջան անձինք նշանակելով և մանաւանդ, որ աւելի մեծն է, Ռուսիոյ Տէրութենէն (1836) տրուած Կանոնադրութեան տեղ՝ եկեղեցական վարչութեան նոր Կանոնագրութիւն խմբագրել տալով բանիբուն Հայերու ձեռամբ և Տէրութեան մատուցանելով 'ի հաստատութիւն։ Սակայն այս յուսալից ընթացքը երկար չը տեւեր, առաջարկած Կանոնագրութիւնն այլ եւս չը դառնար Տէրութենէն, օտարամոլ եկեղեցականք և աշխարհականք ոմանք կը յաջողին շատ դիւրութեամբ Մատթէոսի միտքը խաբաղել և իւր 'ի սկզբանէ յարգած սկզբունքը

տեղ կը լուծին կաթողիկոսական Աթոռոյ տխուր և տարօրինակ վիճակի լուրերն։ Մատթէոսի հրաժարումն կը խափանուի, բայց այն անձինքն, որոնք մեքենայ լարողներ էին, իմանալով որ Մատթէոս, փոփոխամտութեան ենթակայ անձն ըլլալով, անշուշտ օր մի պիտի վերստին իրենց դէմ ըլլայ, զանազան նորանոր խորհուրդներ յղանալու կը ջանային, և այնչափ յանկարծ (1865) Օգոստոս ամսոյն մէջ Մատթէոսի մահուան գոյժը կը տարածուի։ Մատթէոս կը վախճանի և անձապարանօք կը թաղուի իբրև ժանտախտահար։

Էջմիածնի Աթոռոյ տխուր վիճակն, որ արդէն Մատթէոս կաթողիկոսի կենդանութեան վերջին տարւոյն մէջ գրաւած էր ոչ միայն Ռուսաստանի, այլ և Տաճկաստանի ազգայնոց ուշադրութիւնը, առաւել ևս կը գրաւէ նորա մահէն զկնի։ Տաճկաստանի ազգայինք, որ արդէն (1860) Օսմանեան բարեխնամ Տէրութենէն Սահմանադրական Վարչութեան արտօնութիւններ ստացած էին և Ռուսաստանցիներէն աւելի ազատ էին կաթողիկոսական Աթոռոյ վիճակին վրայ խորհելու, Մատթէոսի մահէն զկնի խիստ եռանդուն կերպով կը սկսին հայրապետական խնդիրը յուզել։ Շնորհով սահմանադրական արտօնութեամբ Երեսփոխանական Ընդհանուր Ժողով կը գումարուի քանի մի անգամ,

և կաթողիկոսական վիճակի տարտամութեան աղբիւրը Ռուսիոյ Տէրութենէն (1836) տրուած Կանոնադրութեան մէջ տեսնելով՝ առանձին Յանձնաժողովոյ կը յանձնուի, որ քննէ և Տեղեկագիր մատուցանէ Ընդհանուր Ժողովին։ Յանձնաժողովը խիստ անաչառ կերպով կը կատարէ իր պաշտօնը. Ռուսիոյ տուած Կանոնադրութեան վնասակար և Հայաստանեայց Եկեղեցւոյ անկախութեան և նախնականութեան դէմ եղած բոլոր կէտերն կը պարզէ և Տեղեկագրով կը մատուցանէ Ընդհանուր Ժողովին, որ երկար դիտողութեան և խորհրդածութեան ենթարկուելէն զկնի՝ բացառ կը հաստատուի Ռուսիոյ տուած Կանոնադրութեան վնասակարութիւնն և բոլոր ժողովականաց հաւանութեամբ կը վճռուի, որ նոյն Կանոնադրութիւնը բոլորովին բարձուի և նորա տեղ (եթէ անհրաժեշտ հարկ կայ) Ընդհանուր Ազգի գիտակցութեամբ լոկ վարչական նոր Կանոնադրութիւն խմբագրուի Հայաստանեայց Եկեղեցւոյ Տեսչութեան համար։ Մոռացանք ասել, որ Սսոյ և Աղթամարայ աթոռներն ևս նոյն ժամանակ խիստ աղէտալի վիճակի մէջ լինելով, նոյն Աթոռներն ևս խորհրդածութեան առարկայ կը դառնան Ընդհանուր Ժողովի և Կաթողիկոսական Յանձնաժողովի համար և կը խորհուի,

որ Աղթամարին ու Սսին եւս բարեկարգու-թեան և օրինաւորութեան վերածնութիւն Էջ-միածնի Աթոռոյն հետ միութիւն ։

Այս ազգային շարժումներուն կը յաջոր-դեն կաթողիկոսական ընտրութեան խոր-հուրդները, այն է Ազգը կ՚որոշէ Էջմիածնի Աթոռոյն և Սսոյ ու Աղթամարայ Աթոռոց (որոց ներկայ կաթողիկոսներն ինքն-ընտիր և ապօրինաւոր դատուած էին) հա-մար կաթողիկոսներ ընտրել, և այս Ազգի ընտրելոց հաւանութեամբ Հայաստանեայց Եկեղեցւոյ Վարչութեան վիճակը ապահո-վել, յատուկ Կանոնադրութիւն խմբագրե-լով և ամբողջութեան ու համընթացութեան դրութիւնը զօրացնելով ։ Խորհուրդներ կը գումարին ընտրութեան համար և երեք Ա-թոռոց ընտրելիներն կ՚որոշուին ։ Սսոյ և Աղթամարայ ընտրութիւններն տարաժամու-թեան մէջ կը մնան (1). իսկ Էջմիածնի համար կ՚ընտրուի Տ. Տ., Գէորգ Պօլսեցի եւ Տաճկաստանի քուէից առաւելութեան պատ-

(1) Յետ ժամանակաց (1871) Կիլիկիոյ Հայ ժողովրդեան և Տաճկաստանի Ազգային Երեսփոխանական Ժողովոյ քուէ-արկութեամբ ու վաւերացմամբ Սսոյ կաթողիկոս կ՚ընտրուի Տ. Տ. Մկրտիչ Մարաշցի ։ Սակայն ներկայ պատմական երկա-սիրութիւնն 1868ին շարադրուած լինելով և 1867 թուականն ժամանակագրական եզերակէտ ունենալով՝ բարւոք դատեցինք անփոփոխ հրատարակել, առանց յաջորդ քանի մի տարինե-րու դէպքերն յիշատակելու ։

Digitized by Google

ծառաս կ'ընդունուի նաև Սուրբ ատեանին մէջ: Մինչդեռ Ներսէս կը խօսի, ողբերգակը կաթօ-ղիկոսի ներկայութեամբ, եկեղեցական Վար-չութեան, Սինօդոյ անուամբ Պալամէնեանի մերժման և նոր վարչական Սահմանադրու-թեան ազգային խմբագրութեան մասին յուզուած խնդիրներուն վախճանական որո-շումն տալ, Տ. Տ. Գէորգ (1867) ողբերգակը կաթողիկոսն կ'ուղեւորի յԷջմիածին և ա-մեն խնդիր կը մնայ անկատար:

Այսպէս մենք, որ կը հաւատանք և կը խոս-տովանինք, որ ճշմարիտ իրաւունքը մահ չու-նի և հայկական ներկայ սերունդը կարող չէ անտարբեր աչօք նայիլ իւր բազմադարեան և բազմաչարչար Մօր վիճակին վրայ, յու-սով ենք որ մեր Եկեղեցւոյ իրաւանց պաշտ-պանութիւնը, յարատեւութիւնը և քրիս-տոնէական բազմադարին պայծառութիւնը պիտի մնայ իբրև առաջին նուիրական պարտք թէ ներկայ և թէ ապագայ սերունդին հա-մար, և որ կաթողիկոսն որ աջակցի այս հան-րաշահ գործոյ արդիւնաւորութեան համար, դարուց ՚ի դարս օրհնութեամբ պիտի յիշ-ուի իւր անունն ու յիշատակն:



# ԵԿԵՂԵՑԱԿԱՆ

# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

## Ա.

*Հարեւանցի ակնարկ ԺԸ. և ԺԹ. դարուց մատենագրական վիճակի վրայ. — Մատենագիրք։*

ՏԱՍՆ ԵՒ ՈՒԹԵՐՈՐԴ դարու վերջերէն և ԺԹ դարու սկիզբէն մի մտաւոր վերակենդանութիւն նշմարելի կը լինի հայկական մատենագրութեան մէջ․ հայկական տպագրութեան սկզբնաւորութիւնն և նորանոր դպրոցաց հաստատութիւնն պատճառ կը լինին մտաւորական զարթնութեան։ Մէկ կողմէն Մխիթարեան Միաբանութիւնն և միւս կողմէն Եւրոպական լուսէն շահուած ազգային բանագէտներ հետամուտ կը լինին թարգմանութեանց և ինչ ինչ օգտակար հեղինակութեանց։ Սակայն այս շարժման մէջ առաւել նշմարելի է աշխարհային քան թէ եկեղեցական մատենագրութեան յառաջադիմութիւնը։ Մխիթարեան միաբանից երկասիրութեանց վրայ խօսիլն անդէպ կը համարինք, քանի զի նոքա կրօնական կամ եկե-

ղեցական գրուածներն առ հասարակ ա-
պական տօթով խանձուած ու մեծ մասամբ
թշնամանք են մեր Եկեղեցւոյն դէմ, և հե-
տեւաբար մեր կողմէն առաւել արհամարհա-
նաց արժանի քան թէ հետազօտութեան.
Իսկ աշխարհային կամ գիտնական գրուածոց
և թարգմանութեանց նկատողութիւնը մեր
նպատակէն դուրս է. վասն զի մեր մտադ-
րութիւնը գրաւողն գլխաւորապէս եկեղե-
ցական գրուածքներն են։ Մեր բուն ազգա-
յին հեղինակաց երկասիրութեանց աշխար-
հային և գիտնական մասերու հետազօտու-
թիւնը կը թողունք ազգային պատմական
մատենագրութեան և միայն համառօտիւ
կը նկատենք եկեղեցական մատենագիրները,
որոց մէջ նշանաւոր են.—

ՀԱՆՆԱ ԵՐՈՒՍԱՂԷՄԱՑԻ, որ գրած է իւր
ժամանակակից անցից պատմութիւնը, մա-
նաւանդ Երուսաղէմի պատրիարքութեան
և Սուրբ Տեղեաց դէպքերն, սահմանափակ
տեսութեամբ։

ՅԱԿՈԲ ՆԱԼԵԱՆ, որ երկասիրած է 20-24
հատոր գրուածքներ, յորոց տպագրուած են
Զէն հոգեւոր, Վէմ հաւատոյ, Արմաղանն Նա-
լէնի, Գանձարան ծանուցմանց, և աղօթքները իւր
ժամանակին յուզուած էին հռոմէադաւան

Հայոց վէճերն , դիտաւորապէս իւր երկասիրութիւնները պաշտպանողական են եւ յարձակողական ։

ՊԵՏՐՈՍ ՂԱՓԱՆՑԻ , որ երկասիրած է խիստ սրտաշարժ տաղեր և տաղաչափական հատուածներ , որոց մէջ կը փայլի բանաստեղծական մաքուր զգացմունքներ , թէ՛ կրօնական և թէ՛ հայրենասիրական ։

ՍԻՄԷՕՆ ԵՐԵՒԱՆՑԻ , որ Տօնացոյցն ու Մաշտոցն կանոնաւորած է , ինչ ինչ խրատական գրուածոց երկասիրութեամբ հանդերձ ։

ՊԵՏՐՈՍ ԲԵՐԴՈՒՄԵԱՆ , որ աստուածաբանական քաղուածոյք շարագրած է ։

ՄԻՔԱՅԷԼ ՍԱԼԼԱՆԹԵԱՆ , որ հռովմէադաւանութենէ դառնալով երկասիրած է Կրօնագիտութիւն և քանի մի հատուածներ ընդդէմ հռովմէականաց , Թողունք իւր քերականութիւնն , ճարտասանութիւնն և տրամաբանութիւնն ։

ՊՕՂՈՍ ՊԱՏՐԻԱՐՔ Անդրիանուպօլսեցի , երկասիրած է Թանգարան խրատու և Տնտեսութիւն

Digitized by Google

Ս. Գիրք, որոց մէջ յայտնապէս կ՚երեւի իւր հմտութիւնը բարոյական եւ կրօնական ուսմանց մէջ։

ԳՐԻԳՈՐ ՓԵՇՏԵՄԱԼՃԵԱՆ, երկասիրած է, ի մէջ այլոց, Լուսաւորիչ Գիրք, որ մեկնութիւն է Հաւատոյ Հանգանակին։

ՆԵՐՍԷՍ Ե. ԱՇՏԱՐԱԿԵՑԻ, իւր 14 ամեայ կաթողիկոսութեան մէջ անընդհատ գրած է զանազան թղթեր առ վիճակաւորսն, առ ազգայինսն եւ առ Ռուսաց Տէրութիւնն, որոց տպագրութիւնն խիստ մեծ լոյս կարող է տարածել իւր գործառնութեան եւ նոյն ժամանակեայ անցից վրայ։

ՄԱՏԹԷՈՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ, որ շարագրած է մօտ 12 կտոր երկասիրութիւններ, որոց գըլխաւորներն են՝ Հանդէս ուղղափառութեան Հայաստանեայց Եկեղեցւոյ. Բարի ձայն ու Բարի [illegible]նեայ։ Մատթէոս մեծ հմտութեան տէր չըլլալով՝ իւր գրուածներն մեծաւ մասամբ ժողովածոյք են համանման խմաստներով։ Մատթէոսի գրուածոց մէջ խիստ շատ հակասութիւններ կան, որ անհմտութեան նըշան է եւ մանաւանդ որ կամելով Հայաստանեայց Եկեղեցին պաշտպանել Բողոքականութեան դէմ՝ [illegible]

տարրը խորասուզուած է Պապականութեան մէջ։

ԿԱՐԱՊԵՏ Վ. ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆ, միաբան Ս. Էջմիածնի Աթոռոյ. գրուածոց մէջ նշանաւորներն են Հերքումն քաղկեդոնի ժողովոյն եւ Օրագիր պատմութեան Հայոց, Պաշտպանողական Կրօնագիտութիւն եւ այլն։ Կ. Վ. Շահնազարեան մեծ ծառայութիւն մատուցած է Ազգին տպագրելով Հայոց քանի մի պատմագիրներն, հանդերձ գիտնական ծանօթութեամբք։

Եթէ մեր նպատակէն դուրս չը լինէր մի առ մի յիշատակել ներկայ դարուս մէջ եւ բեղուած երկասիրութիւններն եւ օրագրութեանց մէջ հրատարակուած նշանաւոր յօդուածներն, պիտի տեսնուէր յայտնապէս որ մտաւոր զարգացումն առաւել յառաջ գնացած է աշխարհականաց՝ քան թէ եկեղեցականաց մէջ, մինչդեռ Նախնի դարուց մատենագիրներն մեծ մասամբ եկեղեցականք էին։ Եթէ մի կողմէն տխուր է եկեղեցականաց մատենագրական յետադիմութիւնը, միւս կողմէն խիստ մխիթարական է ժողովրդային շարժումն, որ եթէ յառաջանայ, անշուշտ պիտի յառաջ բերէ եւ ընտիր եկեղեցականներ, որոց կարօտութիւնը արդէն զգալի եղած է ոչ միայն աշխարհականաց, այլ եւ եկեղեցական դասուն մէջ։

Digitized by Google

# ԱՄՓՈՓՈՒՄՆ

Մեր երկրորդական ուսումնասիրութեան բազմադարեան ընթացքին մէջ տեսանք ան- հերքելի, որ մեր Եկեղեցին շարունակ հալա- ծանաց մէջ գտնուած է, թէ՛ հեթանոս և թէ՛ քրիստոնեայ ազգաց կողմէն, և հալածանքը քրիստոնէական Եկեղեցւոյ դրօշն է։ Տե- սանք հալածանքներ Պարսից կողմէն, հալա- ծանքներ Հագարացւոց կողմէն, հալածանք- ներ Յունաց և Լատինաց կողմէն, հալա- ծանքներ Բողոքականաց կողմէն, և տակային այն եւս տեսանք որ այս ամեն հալածանք- ներուն տոկաց մեր Եկեղեցին։ Պարսկա- կան և Հագարական հալածանքներուն մէջ զոհուեցան անթիւ նահատակներ ու մար- տիրոսներ, իսկ Յունական, Լատինական և Բողոքական հետամտութիւններուն որս ե- ղան քանի մի ազգային հատուածներ. և սա- կայն Հայաստանեայց Եկեղեցին միշտ կանգուն մնաց, և այս մի պատմական հաստատուն ա- պացոյց է, որ իւր դաւանանքը երկնային ճշմար- տութիւն է. որովհետեւ սուտ գրութիւն մի կամ դաւանանք կարող չէ երբեք երկար տեւել, մնալով անփոփոխ այնքան հալածանաց մէջ։ Տեսանք որ թէպէտ քանի մի կաթողի-

կրօնական մասնաւոր աթոռներ վեր երեւա-ցին Ազգին մէջ, այն է Աղթամար, 'ի Սիս և վերջերս ժամանակներս 'ի Գանձասար (1), սակայն Ընդհանուր Հայրապետութիւնը միշտ նուիրական մնաց Ընդհանուր Ազգին համար: Այս մասնաւորներն Ազգի վտա-րանդութենէն և ժամանակի պատահական դէպքերէն ծնունդ առին և ո՛չ երբէք ազ-գային երկպառակութենէ կամ կրօնական տարբերութենէ: Վասն զի ժողովուրդը միշտ նոյն մնաց իր Եկեղեցւոյ դաւանու-թեան նկատմամբ: Տեսանք, որ մեր Եկե-

(1) Գանձասարայ կաթողիկոսութեան վրայ մենք մասնա-ւորապէս չը խօսեցանք մեր պատմական ընթացքին մէջ. ո-րովհետեւ, իբրեւ ընձիւղ Աղուանից կաթողիկոսութեան, Սիւնեաց մետրապօլիտներին, որոնք սկսան Գանձասար նստիլ, Աղուանից կաթողիկոս կ'անուանէին և սակայն իրենց իշխա-նութիւնը դարձեալ մետրապօլիտական կամ արքեպիսկոպոսա-կան էր: Սոյն և Աղթամարայ կաթողիկոսութեանց և Երու-սաղէմի ու Պոլսոյ պատրիարքութեանց վրայ եւս այնչափ խօսեցանք, որչափ մեր ընդհանուր նիւթի հետ առնչած կապակցութիւնը կը ներէր. իսկ մասնաւոր խօսքին անդէտ հանդիպեցինք. պարզապէս չուզեցինք Եկեղեցւոյ ընդհանուր պատմութիւնը մասնաւոր աթոռներու պատմութեան վերածել: Մեր նպատակն էր եկեղեցական պատմութեան մէջ առաւել նոյն իսկ Եկեղեցւոյ կամ ժողովրդի կեանքը պատկերացնել. և եթէ ընդհանուր կաթողիկոսաց յաջորդական կարգը ան-ընդհատ պահպանեցինք, այն եւս ուրիշ նպատակաւ չէր, եթէ ո՛չ կաթողիկոսաց յիշատակութեամբ՝ նոցա ժամանա-կակից անցքերն յիշատակել և անոնց դիւրութիւն տալ գա-[illegible] ունենալ:

ղեցւոյ ներքին կեանքն այն ժամանակ միայն սկսաւ մղզուիլ, երբ Լատինականն և Յունականն մեծարանութիւնները ճաշ. գործեցին Ազգին մէջ և դաւանաբանական հակառակութիւններ տեղի ունեցան. երբ Հայք ստիպուեցան հակառակութեանց դէմ հակառակութեամբ պատասխանել։ Տեսանք պատմութեան մէջ, որ գլխաւորապէս այն կաթողիկոսներն Թերևս գտնուեցան իրենց պարապաւորութեանց մէջ, որոնք առանց ազգային գիտակցութեան կամ համաձայնութեան Աթոռ բարձրացան. Այս ամենը տեսնելէն զկնի՝ կը մնայ մեզ այժմ համառօտիւ պատկերացնել, թէ ինչ կը պահանջէ մեր Ազգի և Եկեղեցւոյ օգուտը ներկայիս մէջ։

Մեր Ազգի և Եկեղեցւոյ օգուտը կը պահանջէ որ աշխարհականք և եկեղեցականք միաբանին գործեն. վասն զի այս է մեր Եկեղեցւոյ բուն ոգին և առաքելական բազմադարեան յատկանիշը, և այս հոգին է որով կարողացած է տոկալ հալածանաց և բռնութեանց և ուրախութեամբ կրել իւր խաչը ալէկոծեալ Հայրենեաց և Գաղթականութեան մէջ։

Մեր Ազգի և Եկեղեցւոյ օգուտը կը պահանջէ այնպիսի դրութեան մէջ դնել մեր Ընդհանուր Հայրապետութեան Աթոռը. որ

ժամանակ որ Տէրութեան հպատակութենէ ազատ և անկախ ըլլալով՝ կրնային այն ամեն Տէրութեանց պաշտպանութիւնը վայելել, որոց հովանաւորութեան տակ հաստատուած կը գտնուի մեր Ազգն. վասն զի առանց այս ընդհանուր իրաւանց կարող չէ երբեք ընդհանուր կրօնական միութեան կեդրոն ըլլալ բոլոր Ազգին համար և ընդհանուր կաթողիկոսութեան կոչումն ըստ վերացականութեան կը մնայ և ոչ իրականութիւն։

Մեր Ազգի և Եկեղեցւոյ օգուտը կը պահանջէ Աղթամարայ և մանաւանդ Սսոյ կաթողիկոսութիւնն այնչափ պահպանել, մինչև որ Էջմիածնի կաթողիկոսութիւնն իւր նախնական ազատ և անկախ վիճակն ունենայ և իւր ընդհանուր կոչման համեմատ կարող ըլլի գործել։ Վասն զի Աղթամարայ և Սսոյ Աթոռոց գոյութիւնը ամենևին վնասակար չէ ազգային միութեան, քանի որ Ազգը ՚ի հոգևորս միշտ անխտիր կը պահպանէ իւր միութիւնը, և նոյն աթոռոց գոյութիւնը ըստ քաղաքական պարագաներու վրայ կայացած է։

Մեր Ազգի և Եկեղեցւոյ օգուտը կը պահանջէ օտար միաբանութիւններէ իսպառ հեռի կենալ, իւր զուտ ազգային եկեղեցական դաւանութիւնն ու աւանդութիւններն անփոփոխ և անքննադատելի պահ-

պահել, միշտ սէր և համակրութիւն ցոյց տալ մեր հաստատած հասարակական և քաղաքական եղբայրներուն, որպէս զի վերստին դառնան իրենց մայրենի Եկեղեցւոյ ծոցը. վասն զի մեր Եկեղեցին, մեր քաղաքական ինքնօրէնութեան անկումէն և հայրենական միութեան խախտումէն 'ի վեր, տեսակ մի նուիրական Հայրենիք դարձած է մեզ համար. և հետեւապէս մեր ազգային կրօնական ընդհանուր միութիւնը խիստ նպաստաւոր է նոյն իսկ մեր ազգայնութեան յարատեւութեանն ու յառաջադիմութեանը։ Մեր ազգային հաստատութիւնները երբէք չը պիտի կարենան խոր արմատ բռնել պապականութեան և բողոքականութեան հողին վրայ. նոքա երբ և իցէ պիտի հակամիտին դառնալ, ուստի մեզ կը վայելէ սիրով նոցա դարձը աճապարեցնել։

Մեր Ազգի և Եկեղեցւոյ օգուտը կը պահանջէ օրինաւոր դպրոցները բազմացնել ամեն քաղաքներու և գիւղերու մէջ և քրիստոնէական լոյս և գիտութիւն ծաւալել ժողովրդի մէջ, որպէս զի պարտուց և իրաւանց ուսման մէջ վարժին, յառաջադէմ ազգաց մէջ օրինաւոր տեղ գրաւեն, որով և ազատ լինին օտար յարձակումներէ, թէ՛ ըստ քաղաքականին և թէ՛ ըստ կրօնականին։

Մեր Ազգի և Եկեղեցւոյ օգուտը կը պա-

հանջէ միշտ պահպանել իւր առաքելական սովորութիւնը կաթողիկոսի ընտրութեան մասին, այն է միշտ ազգովին ընտրել ընդհանուր կաթողիկոսը և ընդհանուր Ազգի առջեւ պատասխանատու կացուցանել։ Այն զի ինչպէս ազգովին ընտրութիւնը, նոյնպէս և կաթողիկոսի պատասխանատուութիւնը հայրապետական վարչութեան անհրաժեշտ պայմաններէն մին եղած է Հայաստանեայց Եկեղեցւոյ հիմնադրութեան օրէն 'ի վեր։

Այսպէս ուրեմն, այս համառօտ ամփոփումով կնքելով մեր ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ, կը խնդրենք վերին Նախախնամութենէն, որ անխախտ և անսասան պահէ մեր Եկեղեցին մինչեւ 'ի կատարած աշխարհի, ինչպէս պահպանած է երկար դարերէն 'ի վեր, 'ի փառս անուան իւրոյ և 'ի շինութիւն իւրոց ճշմարիտ երկրպագուաց։




Digitized by Google

# ՊԱՐՈՒՆԱԿՈՒԹԻՒՆ

## ՅԱՌԱՋԱԲԱՆ



Digitized by Google

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ

## ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

Digitized by Google

Digitized by Google

## Զ.



# ԵԿԵՂԵՑԱԿԱՆ

# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

## Ա.



## Բ.



Digitized by Google

# ՉՈՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

Հայաստանեայց Եկեղեցւոյ Յունականութենէ և Մահմետականութենէ կրած հալածանքներէն մինչև կաթողիկոսական Աթոռոյ փոխադրութեան և բաժանման ներքին յուզումներն։

640–1080

## Ա.



## Բ.

Գ.



Դ.



## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՇՐՋԱՆ

Հայաստանեայց հայրապետութեան 'ի կիլիկիա փոխադրուելէն մինչեւ վերստին փոխադրութիւնն յԱրարատեան նախկին աթոռանիստն Էջմիածին եւ մինչեւ սկզբնաւորութիւն կիլիկիոյ մասնաւոր կաթողիկոսութեան։

## 1080–1441

Ա.



Բ.



Գ.

## Դ.



## Ե.



## Զ.



## Է.



# ԵԿԵՂԵՑԱԿԱՆ
# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

## Ա.



Digitized by Google

Digitized by Google

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ
## ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

### Ա.





## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ
## ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

### Ա.





Digitized by Google

